**ակուած է Սահակ-Մեսրոպեան մրցանակաբաշխութեան ամբողջ մրցանակով 1888 թուին**

# ՀԱՅՈՑ ԳԻՐԸ

*„Համամարդկութեան ոգին մեր դարու ճիշտ գիտնական ոգին է":*

**ՄԱՔՍ ՄԻՒԼԼԵՐ**

---


**Աշխատասիրեց**

*ԻՍԱՀԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ,*

*Ուսուցիչ հոգեբանութեան և տրամաբանութեան Ներսիսեան դպրանոցում:*







**ԹԻՖԼԻՍ**

*Տպարան Մ. Շարաձէ*

1892

Ն Ո Ւ Է Ր

Լ Ա Յ Պ Ց Ի Գ Ի

# ՀԱՅ ԱԿԱԴԵՄԻԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ՄԵԾԱՐԳՈՅ ԱՆԴԱՄՆԵՐԻՆ*

ՀԵՂԻՆԱԿԻՑ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



Մի որ և է գրքի յառաջաբանի մէջ, ըստ Լէսինգի՝ պէտք է գրուած լինի նոյն իսկ այդ գրքի պատմութիւնը. սոյն մտքի ճշտութիւնն ընդունելով՝ մի քանի խօսքով կամենում ենք նկարագրել մեր ընթերցողներին „Հայոց գիրը“ աշխատութեան գաղափարի ծագման հանգամանքները։

1884 թ. գերմանական Լայպցիգ և Հալէ քաղաքների համալսարաններում ուսանող մի բուռն հայ երիտասարդներս կազմեցինք մի „Հայ ակադէմիական ընկերութիւն“—armenisch-akademischer Verein—Լայպցիգի համալսարանի վարչութեան թոյլտուութեամբ և նորա գերիշխանութեան ներքոյ։ Վարչութիւնից հաստատուած կանոնադրութեան համաձայն՝ մեր նպատակն էր գլխաւորապէս ուսումնասիրել մեր ազգի անցեալը. այս նպատակին ձգտելով՝ որոշեցինք նախապէս ուսումնասիրել մեր պատմահայր Մովսէս Խորենացու „Հայոց պատմութիւնը“ և այդ գիրքը բաժանելով ամէն մէկս մի հատուած վերցրինք, որպէս զի ուսումնասիրենք և գրաւոր աշխատութիւններ ներկայացնենք ընկերութեան նիստերին։ Դէպքի բերմամբ ինձ ընկաւ Խորենացու երրորդ գրքի վերջին մասը—Սահակ-Մեսրոպի գործունէութեան շրջանը. որոշեալ ժա-

մանակից յետոյ ընկերութեան նստերից մէկում կարդացի—մօտաւորապէս տասը սովորական թերթերից բաղկացած—մի դասախօսութիւն՝ ինձ վիճակուած նիւթի վերաբերութեամբ։ Սակայն ընկերներիս խրախոյսը և Սբ. Մեսրոպի գործունէութեան ամենանշանաւոր մասի—տառերի գիւտի—քողարկուած և ոչ բոլորովին պարզ լինելը, չ'թոյլ տուին ինձ դորանով բաւականանալ։ Այդ օրից սկսած ուսանողական ազատ ժամերս նուիրեցի այդ խնդրի ուսումնասիրելուն՝ ազատ մուտք ունենալով Լայպցիգի և ապա Ենայի հարուստ մատենադարաններում. սակայն որչափ որ հարուստ նիւթ ունէի օտարազգի գրերի ծագումն ուսումնասիրելու համար, այնչափ ևս սահմանափակ էր բուն հայկական աղբիւրների թիւը. ձեռքիս տակ ունէի միմիայն երկու հատ ձեռագիր Խորենացի։ Այնուամենայնիւ չ'վհատելով այս կամ այն տեղից բերել էի տալիս կարևորագոյն աղբիւրներն և արդէն 1887 թ. պատրաստ աշխատութիւնս ուղարկեցի Կոստանդնուպոլիս՝ երջանկայիշատակ հանգուցեալ Իզմիրեանի կտակած մրցանակաբաշխութեան յարգելի „Մնայուն մասնաժողով"-ին՝ խնդրելով, որ եթէ կարելի է, այդ երկի քննադատութիւնը յանձնուի Պետերբուրգի համալսարանի հայագիտութեան ուսուցչապետ Քերովբէ Պատկանեանին, իբրև ամենաձեռնհաս անձին այդ խնդրում։ Հետևանքի մասին առաջ ենք բերում մրցանակաբաշխութեան „Մնայուն յանձնաժողով"-ի պաշտօնական յայտարարութիւնից քաղուածքներ, որովհետև ամբողջը շատ երկար կլինէր։

„Հ ա յ ո ց  գ ի ր ն" երկասիրութեան քննութիւնն յանձնուեցաւ նախ ի Պետերբուրգ բնակեալ բրոֆէսօր պ. Քերովբէ Պատկանեանի, ինչպէս կը բաղձար նաեւ նոյն ինքն հեղինակն, բայց պ. Պատկանեան իւր անձնական տկարութեան պատճառաւ տակաւին երկու տարի այսպիսի քննական զբաղմանց չկրնար հետեւիլը առարկելով, հրաժարած ըլլալուն, Յանձնաժողովս պատշաճ տեսաւ յղել այդ գործն ի Ս. Էջմիածին, Տ. Մաղաքիա եպիսկոպոսի, որպէս զի

Մայր Աթոռոյ ճեմարանին պատուարժան ուսուցչական մարմնոյն հետ քննութեան ենթարկէ: Գեր. Օրմանեան Սրբազան այս մասին հետեւեալ Տեղեկագիրն հաղորդած է Ցանձնաժողովիս. Վսեմապատիւ Առեւտրական գործակալ Ալթունեան Ցանձնաժողովոյ Ցովսէփ-Իզմիրեանց կտակի. ի Կ. Պօլիս.

„Անցեալ 2 Թուականի պաշտօնագիրնիդ կը յանձնարարէր ինձ, պ. Իսահակ Ցարութիւնեանցի „Հայոց գիրը" մակագրեալ ձեռագիր երկասիրութեան վրայ ստանալ Մայր Աթոռոյս Հոգեւոր ճեմարանի ուսուցչական մարմնոյն կարծիքն՝ Ցովսէփ Իզմիրեանց կտակով հաստատուած Սահակ-Մեսրոպեան մրցանակին ոգւոյն եւ նպատակին համեմատ, եւ փութացնել առ այդ պէտք եղած յայտագիրը... Պատուարժան ուսուցչական խումբը վերոյիշեալ երկասիրութեան վրայ մասնաւոր քննութիւններէ յետոյ ի միասին գումարուելով կարծեաց փոխանակութիւններ կատարեց, եւ այդ գումարմանց մասնակցեցան մեծայարգ ուսուցիչք. Ա. Նաջարեանեան, տեսուչ, Մ. Պալեան, Ս. Պալասանեան, Կ. Կոստանեան, Փ. Վարդանեան, Ս. Տէր-Գաբրիէլեան և ստորագրեալս:

...Այս տեսութեանց վերայ հիմնուելով ճեմարանիս ուսուցչական մարմինն կը կարծէ թէ պ. Ի. Ցարութիւնեանցի „Հայոց գիրը" մակագրեալ աշխատութիւնը, վերջին գլուխը դուրս առած, աշխատալի եւ օգտակար եւ գովելի գործ մին է, որոյ ընթերցումը կարող է մեծապէս հետաքրքրել հայ ընթերցողները... Այդչափ ինչ համառօտակի պատասխանելով ի կատարումն Ձեր յանձնարարութեան, յարգանաց հաւատիքս Մեծ. ուսուցչաց եւ իմ եմ

Ձեր վսեմութեան եւ Ցանձնաժողովոյդ Մեծայարգ անդամոց Աղօթարար

Մաղաքիա եպիսկոպոս Օրմանեան:

Ի Սրբ. Էջմիածին.
13 յունիսի 1888 ամի:

Ցանձնաժողովը տեսնելով. „որ բաւական խնամօք եւ երկար աշխատութեամբ պատրաստուած է սոյն երկն, եւ թէ առաջին անգամն է որ հայ լեզուին վերաբերեալ այսպիսի ձեռնարկ մը երեւան կուգայ մեր ազգին մէջ... սոյն 1888 տարւոյ համար, արժանի համարեց պարոն Իսահակ Ցարութիւնեանցի „Հայոց գիրը“ անուն աշխատութիւնը, նուիրելով նմա 600 րուբլի՝ որ շուրջ 60 օսմ. ոսկի կընէ, յանուն բարեյիշատակ օրհնեալ Ցովսէփ Իզմիրեանց գրասիրին եւ ազգասիրին...“։

---

Ցայժմ ուշացնելով այս աշխատութեան հրատարակութիւնը՝ մեր նպատակն էր միջոց գտնել ուսումնասիրելու նիւթիս վերաբերեալ ձեռագիր աղբիւրները սբ. Էջմիածնի մատենադարանում, սակայն անկարելի եղաւ մեր նպատակի իրագործումը, որովհետեւ ուսուցչական պաշտօնը չէ թոյլ տալիս մեզ Թիֆլիզից հեռանալու, իսկ ամառային արձակուրդին սբ. Էջմիածնի մատենադարանը փակուած է մնում։

„Հայոց գիրը“ թէեւ մշակուած է ժամանակակից գիտնական մեթոդով, սակայն չէ մի զուտ գիտնական հետազօտութիւն, այլ սահմանուած է աւելի ընդարձակ շրջանի համար։ Մեր նպատակն էր ի մի ամփոփել այն ամենն, որ վերաբերում է հայոց այբուբենի ծագման, նորա պատմական զարգացման եւ օտար տառերի հետ ունեցած յարաբերութեան։ Լեզուն եւս անխզելի կերպով կապուած լինելով գրի հետ, աշխատեցինք դորա մասին եւս ամփոփ տեսութիւններ առաջ բերել։

Դեռ եւս իրական, կամ աւելի լաւ է ասել նիւթական, փաստեր չկան, որով կարելի լինէր հաստատապէս պնդել թէ սբ. Մեսրոպից առաջ մեր նախնիքը սեպհական ինքնուրոյն գիր ունէին, սակայն հիմնուելով մեր մատենագիրների վկայութիւնների եւ ակնարկութիւնների վրայ՝ ձգտեցինք ապացուցանել գրաւոր փաս-

տերի շարայարութեամբ, որ մեր կուապաշտ նախնիքը պէտք է սեպհական գիր ունենային և այդ գիրն առնուած էր ոչ թէ Յոյներից, այլ ասորա-բաբելացիների միջնորդութեամբ՝ Փիւնիկեցիներից։

Ի. Յ.

1891 Թ. Հոկտեմբերին
Թիֆլիս։



# ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Թէ մեր զբաղուած խնդրով հետաքրքրուողներին մի հարուստ գրականութիւն մատուցանելու դիտաւորութեամբ և թէ մեր քըննադատների գործը դիւրացնելու մտքով՝ առաջ ենք բերում այս աշխատութեան մէջ յիշուած հեղինակութեանց լիակատար անունները: Մենք միշտ դիմել ենք առաջնակարգ և անմիջական աղբիւրներին. միայն այն դէպքում, երբ անկարելի է եղել օգուտ քաղել ուղղակի սկզբնական աղբիւրից, դիմել ենք թարգմանութեանց:*

---

1) *Սրբոյ հօրն մերոյ Խորենացւոյ պատմութիւն Հայոց. Տփխիս* 1881. *համեմատութեան համար մեր ձեռքի տակ ենք ունեցել հետեւեալ ձեռագիրներն ու թարգմանութիւնները:*

2) *Լայպցիգի քաղաքային մատենադարանում եղած ձեռագիրը. „Մովսիսի Խորենացւոյ մականուամբ քերթողի. . . պատմութիւն Հայոց ընդօրինակեալ ի Լէօպօլիս Ռուսաց յամի Տեառն* ՌՈՂԶ (1696).

3) *Էնայի համալսարանի գրադարանում եղած ձեռագիրը, որի վերնագիրն և տարեթիւը պակասում է:*

4) *Վ. Լանգլուայի թարգմանութիւնը, ֆրանսերէն, որ տըպուած է նորա հրատարակած* „Collection“*-ի մէջ:*

5) Moise de Khorène... ouvrage de die à S. M. Imp. Nicolas I. Empereur de toutes les Russies, par Le Vaillant de Florival. Paris 1845. *Հայերէն բնագրի հետ միասին:*

6) Mosis Chorenensis Historiae Armeniacae... Armeniacae

ediderunt, latine verterunt, natisque illustrarunt Gulielmus et Georgius Gul. Whistoni Fili. Londoni, MDCCXXXVI—1736. լատիներէն-հայերէն բնագրի հետ:

7) Исторія Арменіи Моисея Хоренскаго, перевелъ съ Армянскаго и объяснилъ Н. Эминъ, Москва 1858.

8) Ղազարայ Փարպեցւոյ պատմութիւն Հայոց և թուղթ առ Վահան Մամիկոնեան. ի Վենետիկ 1873. ՌՅԻԲ.

9) Գ. ԽԱԼԱԹԵԱՆ, Ղազար Փարպեցի և գործք նորին. Մոսկուա:

10) Ագաթանգեղեայ պատմութիւն. Վենետիկ 1862.

11) Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի, լուսաբանեալ. Վենետիկ 1862.

12) Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն տիեզերական. Ս. Պետերբուրգ 1885.

13) ՀԱՅՐ ՄԻՔ. ՉԱՄՉԵԱՆ, Պատմութիւն Հայոց. Վենետիկ: 1784.

14) ՀԱՅՐ ՂՈՒԿԱՍ ԻՆՃԻՃԵԱՆ, Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի. Վենետիկ 1835.

15) Աստուածաշունչ գիրք. ջանիւք և արդեամբք ռուսաց բիբլիական ժողովոյն—յամի Տեառն 1817. ի Ստ. Պետերբուրգ.

16) Prof. dr. Welte. „Goriun's Lebensbeschreibung des hl. Mesrop, aus der armenischen Urtexte zum ersten Male übersetzt und aus arm. Schriftstellern erlaütert". Tübingen. 1841.

17) Исторія Агванъ Мойсея Каганкатваци, писателя X вѣка. С. Петербургъ 1861. Թարգմանութիւն պրօֆ. Պատկանեանի.

18) Հայկական հին դպրութեան պատմութիւն (դ—ժգ դար) բ. տիպ. Վենետիկ 1886.

19) V. Langlois, Collection des Historiens Anciens et Modernes de L'Arménie. Paris I. 1867. II. 1869.

20) Sain-Martin. Mémoires Historiques et géographiques sur L'Arménie. Paris I. 1818. II. 1819.

21) Brosset. Deux Historiens Arméniens—Kirakos de Gantzac, Ouktanès D'ourha. St. Pet. 1870.

22) Brosset. Collection d'Historiens Arméniens St. Petersbourg I—II 1874.

23) Histoire du Bas-Empire, par Lebeau. Nouvell édition revue entièrement, corrigée et augmentée d'après les Historiens Orientaux, par M. de Saint-Martin. Paris 1824.

24) F. Lenormant. Histoire Ancienne de l'Orient. neuvieme Edition Paris. I. 1881. II. 1882. III. 1883. IV. 1885.

25) Maspero. Geschichte der morgenländischen Völker im Altertum-übersetzt von Pietschman. Leipzig 1877.

26) Eduard Meyer. Geschichte des Altertums I. Band. Stuttgart 1884.

27) Tabari. Geschichte der Perser und Araber zur Zeit der Sasaniden. Übersetzt von Nöldeke. Leyden 1879.

28) Frd. Iusti. Geschichte des alten Persiens, որ կազմում է Onken-ի հրատարակած „Allgemeine Geschichte in Einzeldarstellungen"-ի IV մասը. Berlin 1879.

29) Geschichte von Persien von den frühesten Zeiten bis zu den neuesten nach morgenländischen Quellen von Sir Iohn Malcolm, gouverneur von Bombay; bearbeitet von D-r Spazier. Stutgart und Tübingen. I. 1830, II. 1831.

30) Tyler: Forschungen zur Urgeschichte der Menschheit, aus dem englischen von Müller. Leipzig.

31) Richter: Historisch-kritischer Versuch über die Arsaciden und Sasaniden Dynastie. Leipzig 1804.

32) Iulius von Klaproth. Reise in den Kaukasus und nach Georgien unternomen in den Iahren 1807 und 1808. Halle und Berlin I. 1812. II. 1814.

33) Movers: Die Phönizier I. 1841. Bonn. II. 1, 2, 3, 1849—1856. Berlin.

34) S. Wahl: Allgemeine Geschichte der morgenländischen Sprachen und Litteratur. Leipzig 1784.

35) Արամեան լեզուի գանձ: hoc est: Ioh. Ioachimi Schröderi: Thesaurus linguae armenicae etc. Amstelodami MDCCXI.

36) Paul de Lagard. Armenische Studien. Göttingen 1877.

37) H. Hübschmann· Armenische Studien. I· Leipzig·
83·

38) Paul de Lagard: Gesammelte Abhandlungen· Leip-
g 1806·

39) W· von Humboldt: Über die Verschiedenheit des
enschlichen Sprachbaues, որ կազմում է die Kawi-Sprache նշա-
ւոր գործի ընդարձակ յառաջաբանը. I· Berlin 1836·

40) H· Steinthal: Gesammelte Sprachwissenschaftliche
bhandlungen· Berlin 1856·

41) Iacob Grimm: Über den Ursprung der Sprache
erlin 1862·

42) Wilhelm Wundt: Essays. Leipzig 1885.

43) M· Lazarus: Das Leben der Seele· I և II երրորդ
ալ 1883—1885· III· երկրորդ տիպ:

44) A· H· Sayce: Alte Denkmäler im Lichte neuer For-
hungen. Leipzig·

45) F· Lenormant: Essai sur la Propagation de l'al-
habet Phénicien I· Paris 1872·

46) K, Faulmann: Illustrirte Geschichte der Schrift·
ien·

47) Uhlrich Kopp: Bilder und Schriften der Vorzeit·
annheim 1819·

48) H· Wutke: Geschichte der Schrift und des Schrift-
ms. I Leipzig 1872·

49) Lepsius: Paläographie als Mittel für die Sprach-
rschung· Leipzig 1842·

50) W· Wundt [1]: Die Sprache und das Denken·

Այն բազմաթիւ աշխատութիւններն, որ տպուած են ղանա-
ան պարբերական հրատարակութեանց մէջ և յիշուած այս աշ-
ատութեան մէջ, անյարմար է կրկին մի առ մի թուել այստեղ.
յդ պարբերական հրատարակութիւններից յառաջ ենք բերում մի

---

[1]) Կամաւ բաց թողինք բոլոր հեղինակների տիտղոսներն, որով-
հետև դրանք ահագին տեղ կբռնէին. դրանք բոլորն ևս պրոֆէսօրներ
իրանց մասնագիտութեան մէջ նշանաւոր հեղինակութիւն ունեցող
գիտնականներ են:

*քանի ակադեմիական և գիտնական ընկերութեանց հրատարակութիւնների լիակատար անունները։*

1) S i t z u n g s b e r i c h t e der kaiserlichen Akademie der Wissenschaften· Philologisch-historische Classe· Wien·

2) A b h a n d l u n g e n der königlichen Akademie der Wissenschaften zu Berlin·

3) M é m o i r e s l'académie impériale des sciences de St· Pétersbourg·

4) B u l l e t i n de l'académie imperial des Sience de St· Pétersbourg·

5) A b h a n d l u n g e n der-philos-philol. Classe der königlichen bayerischen Akademie der Wissenschaften. München·

6) A b h a n d l u n g e n der königlichen Gesellschaft der Wissenschaften zu Göttingen·

7) M o n a t s b e r i c h t e der königlichen preussischen Akademie der Wissenschaften zu Berlin.

8) B e r i c h t e über die Verhandlungen der königlich-sächsischen Gesellschaft der Wissenschaften zu Leipzig· phil·—hist· Classe·

9) Z e i t s c h r i f t der deutschen morgenländischen Gesellschaft· Leipzig·

10) N o u v e a u Journal Asiatique *եւ* Journal Asiatique· Paris·

11) A· K u h n u n d A. S c h l e i c h e r: Beiträge zur vergleichenden Sprachforschung. Berlin·

12) M i t t h e i l u n g e n des vereins fur Erdkunde zu Halle a/s etc· etc·



ներ, գ. բառեր և դ. գիր. սակայն սոցանից երկուսը միայն՝ նշանացի խօսելն ու պատկեր ձևակերպելը մարդկային ոգու անմիջական արտադրութիւններն են. լեզուն և գիրը յառաջացել են հետզհետէ ժամանակի ընթացքում և կապակցուել հազարաւոր տարիներ առաջ գոյութիւն ունեցող նշանների հետ։

Յայտնի է, որ մի որ և է առարկայ անձայն նշանով ներկայացնելու համար, ամենաբնական ճանապարհն է նորա ձևի պատկերացումը. ինչպէս որ նշանացի խօսակցութեան ժամանակ առարկաների ձևը գծագրւում է օդի մէջ, նոյնպէս և պէտք է գծագրուի մի որ և է այլ նիւթի վերայ, որպէս զի նոյնը հասկացուի մի այլ տեղ կամ յետագայ սերունդների ժամանակ։ Այդ պատճառով և մարդկային սերունդն ամենից առաջ գործ է դրել այսպէս անուանեալ *պատկերագիրը*. այս գրից իւրաքանչիւրը ներկայացնում է մի որ և է առարկայի կամ էակի պատկերը։ Սակայն երբ մարդկային լեզուն առաւել զարգացաւ և վերացական գաղափարների աստիճանին հասաւ, գիրն ևս չէր կարող այդ աստիճանի վերայ մնալ, որովհետև այդպիսով չէր կարող արտայայտել վերացական գաղափարները, որ աներևոյթ լինելով՝ գծագրել անկարելի էր։ Ուստի և պատկերագիրը փոխուեցաւ *պայմանական նշանագրի*, որ սկզբում արտայայտում էր միայն ամբողջ բառեր, յետոյ փոքր առ փոքր լեզուի զարգացման հետևելով՝ արտայայտում է լեզուի (բառերի) վանկերն և ապա հնչիւնները. և ահա իւրաքանչիւր հնչիւնն արտայայտող այդ պայմանական նշաններին անուանում ենք *տառեր*, որոնք և կազմում են իւրաքանչիւր զարգացած լեզուի *այբուբենը*։

Թէև պատմաբանօրէն կարելի է ապացուցանել, որ իւրաքանչիւր տառ կրում է իւր սկզբնական ձևի, այսինքն պատկերագրի հետքերը, սակայն այսօրուայ տառերը կորցրել են մեզ համար այդ զգալական նշանակութիւնը, որովհետև գրի

սխտեմատիքական գծագիրների փոխարկուիլը տեղի է ունեցել նպատակայարմար և կամաւոր պայմանադրութեամբ։

Մեր միտքն արտայայտելու համար ունեցած միջոցներից՝ լեզուն գերազանցում է միւսներին և այդ պատճառով մտքի արտայայտութիւն ասելով սովորաբար հասկացւում է, որ այդ տեղի է ունենում բառերի միջնորդութեամբ։

Լեզուն եւ գիրն իւրեանց նպատակի վերաբերութեամբ մի աչքի ընկնող նմանութիւն ունին. լեզուն յառաջանում է շարայարուած հնչիւնների արտասանութեամբ և իւր նպատակն է հասկանալի լինել, գիրը յառաջանում է նոյնպէս որոշ շարքերի կազմակերպութեամբ, նոյնանման նպատակով։ Դոքա թէև միջոցներով տարբերւում են միմեանցից, որովհետև մէկը ներգործում է լսողութեան, իսկ միւսը տեսողութեան վերայ, սակայն մտքերի կապակցութեան օրէնքն երկուսի մօտ ևս միևնոյնն է։ Բացի սորանից իւրաքանչիւրը դոցանից ունի և իւր առաւելութիւնները. լեզուն իւր շուտափոյթ յատկութեամբ և դիւրութեամբ, գիրը տևականութեամբ կամ յարատևութեամբ։

Լեզուն և գիրը յարաբերում են միմեանց ուղիղ այնպէս, որպէս նկարչութիւնն ու երաժշտութիւնն են յարաբերում միմեանց. նկարները մնում են երկար ժամանակի ընթացքում պահուած. այն ինչ ձայներն անյայտանում են իսկոյն։ Հնչիւնն անցողական է ինչպէս ծովի ալիքն, արտաշնչելուց յետոյ նա արդէն պատկանում է անցեալին, միայն նորա յիշողութիւնն է մնում հոգւոյ մէջ, այն ևս տատանման և անապահով դրութեան մէջ, այնպէս որ մտքի հոսանքի մէջ դոքա կարող են անյայտանալ։ Այդ պատճառով և մարդը զարգանալով՝ պէտք է աշխատէր այդ հնչիւնը պինդ պահել և խօսքը լսելեաց շրջանից տեղափոխէր տեսանելեաց շրջանը. այսպէս և յառաջացաւ գիրը և մի արաբացի մատենագիր ճշտութեամբ նկատում է, որ «գիրն է ձեռքի լեզուն»։

Գիրն ոչ այլ ինչ է, եթէ ոչ գծագրուած լեզու և այն-

պիսի հրաշալի ներգործութիւն ունի, որ վայրենի ժողովուրդները դորան գերբնական ոյժ են տալիս։ Հնդիկները, չկարողանալով ըմբռնել, թէ ի՞նչպէս եւրոպացիք կարողանում են ստացուած նամակից տեղեկանալ հեռու տեղեր պատահած դէպքերի մասին, գրուած թուղթը դնում էին իւրեանց ականջին, որպէս զի տեսնեն թէ արդեօք իւրեանք եւս մի բան կը հասկանա՞ն [1]։

Նատ վայրենիներ գրած թուղթը կոչում են «խօսող թուղթ»։ Թէ ի՛նչ անսպասելի ազդեցութիւն ունի գիրն այն անձանց վերայ, որոնք բոլորովին գաղափար չունին դորա մասին, ամենապարզ կերպիւ կարելի է տեսնել անգլիացի Դր. Մարտինի նկարագրութիւնից, որ Տօնգա կղզին էր ընկել։ Այդ անձը 1806 թուին ցամաք ելած հայրենակիցներին մի նամակ է գրում՝ նոցա զանազան խորհուրդներ տալիս և իւր ազատութիւնը խնդրում, սակայն նամակն ընկնում է կղզու վայրենի իշխանի ձեռքը։

Դր. Մարտինը պատմում է հետևեալը. երբ նամակն իշխանի ձեռքն ընկաւ, նա սկսեց դիտել նորան ամենայն կողմից. բոլորովին անկարող լինելով այդ առարկայի էութիւնն ըմբռնելու, նամակը տալիս է իւր մօտ եղած մի անգլիացու և պահանջում է իմանալ թէ ինչ բան է այդ. սա թարգմանում է նամակի մի մասը, սակայն իշխանը զարմանալով՝ թէ ի՞նչպէս կարող է մի թղթի կտոր այդպիսի մըտ-

---

[1]) Մի պերուացի գերի մի անգամ տեղեկանալով, որ իւր տարած նամակը մտնել էր տիրոջը ճանապարհին կերած պտուղների քանակութիւնը—իրեն յանձնուած կողովի միջից—, միւս անգամ մի և նոյն յանձնարարութեան միջոցին, պտուղներն ուտելիս նամակը դնում է մի մեծ քարի տակ, հաստատ համոզուած լինելով, որ այժմ նամակը չտեսնելով իւր արարքը, այլ եւս չէր կարող մատնել իրեն։ Տես. Frid. Kopp. „Bilder und Schriften der vorzeit“ հատ. I. եջ 54.

․ հաղորդել, առնում է նամակը կրկին իւր ձեռքը և հե-
պզօտում բաղձալի հայեացքով, սակայն գիրն ոչինչ չէ
ում նորան։ Նա լռութեամբ մտածում է մի քանի վայր-
ան և կանչելով նամակի հեղինակին՝ հրամայում է մի
ն գրել․ դր․ Մարտինի հարցման թէ ի՞նչ պէտք է գրել՝
տասխանում է իշխանը «ինձ գրիր»։ Դր․ Մարտինը կա-
րում է այդ․ իշխանը կանչել է տալիս մի այլ անգլիացի
հրամայում կարդալ—այդ միջոցին դր․ Մարտինին կանգ-
նում են կռնակը դէպի անգլիացին և հայեացքն այլ
մն ուղղուած, որպէս զի չլինի թէ նա նշանով մի բան
սկացնէ կարդացողին։—Անգլիացին կարդում է իշխանի
ունը, իսկ սա ապշած մնալով խլում է թղթի կտորը կար-
ցողի ձեռքից և ամեն կողմը շրջելով և ամեն գծերը
նրամասն քննելով՝ բացագանչում է վերջապէս. «սա ոչ
է է նմանում (և ոչ մի այլ անձի, ո՞ւր են իմ աչքերը,
․ իմ գլուխը, ո՞ւր են ոտքերս, ի՞նչպէս կարելի է իմանալ,
այս ես եմ»։ Եւ անհամբերութեամբ հրամայում է դր․
րտինին այլ իրերի մասին գրել և կարդացնել է տալիս
․ս անգլիացուն. այս գործողութիւնը տեւում է 3—4 ժամ
զբաղեցնում իշխանին ու իւր շրջապատողներին։ Ապա
անն այդ գիւտով սկսում է կատակներ անել. Նա պատ-
․մ է դր. Մարտինին իւր պալատի տիկնանց փոքրիկ սի-
ին արկածները, որ գրում է թղթի վերայ և միւս անգ-
ցին կարդալով այդ թուղթը նոյն կանանց մօտ, մեծ
մանք ու ապշութիւն է պատճառում նոցա։ Մի այլ ան-
մ նա գրել է տալիս մի այլ իշխանի անունը, որ մի աչ-
լ կոյր է լինում և կարդացող անգլիացուն անծանօթ.
․ սա կարդում է գրած անունը, իշխանը հարցնում է.
դ մարդը կո՞յր է թէ ոչ»[2]։

[2]) Տես. N. Wuttke: Geschichte der Schrift und des Schrift-
ms հատ. I. եր 49.

Թէև այժմ գիրը սովորական իրերի կարգն անցնելով, մեզ համար այլ ևս մի արտաքոյ կարգի բան չէ, այնուամենայնիւ եթէ մի փոքր խորը մտածենք և ի նկատի առնենք դորա տուած անչափ օգուտները, կարող ենք երևակայել, թէ որպիսի ծառայութիւն են մատուցել մարդկութեան՝ գիրը գտնող ազգերը—որովհետև, ինչպէս իւր կարգին կապացուցանենք, անհասների ուժից վեր գործ է այդ։— Քաղաքակրթութեան և գրի զարգացումն այնպէս են կապակցուած միմեանց հետ, որ մէկն առանց միւսի գոյութիւն չէր կարող ունենալ. քաղաքակրթութեան հիմնաքարն է գիրը, իսկ առանց քաղաքակրթութեան չկայ գիր։

Եթէ հետազօտենք զանազան ազգերի, նա մանաւանդ եգիպտացիների և չինացիների,—որոնք միմեանց հետ պատմական կապակցութիւն չեն ունեցել—գրի զարգացման պատմութիւնը, մի զարմանալի նմանութիւն կը նշմարենք, որից կարելի է եզրակացնել, որ գրի կազմակերպութիւնը և զարգացումը յառաջ է ընթանում մարդկային հոգւոյ որոշ օրէնքների հիման վրայ։ Գրի զարգացումը ցոյց է տալիս մարդկային հոգւոյ զարգացման աստիճանը [3]։ Գիրն աչքի լեզուն է, նա խօսքը ներկայացնում է տեսանելի նշաններով. ուրիշի ասածը փոխանակ ականջով լսելու, ըմբռնում ենք աչքի միջնորդութեամբ։ Գրի մէջ կարելի է միմեանցից զանազանել երեք գործիչներ-ֆակտորներ-որոնք են՝ ա. խօսքը կամ հաղորդելու իրը, բ. տեսանելի նշանը կամ գրի արտաքին ձևը, գ. գրի ներքին ձևը, կամ այն եղանակը, որով խօսքի արտաքին նշանակութիւնն է ըմբռնւում։

Գրի զարգացումն իբրև մի ընդհանուր պատմական և և հոգեբանական երևոյթ, հիմնւում է առաւելապէս լեզուի

---

[3] „Առանց տառերի ամբողջ մարդկութիւնը կը մնար յաւիտենական մանկութեան մէջ“. Տես S. Wahl: Allgemeine Geschichte der morgenländischen Sprachen und Litteratur. էջ 593.

միշտ կատարելագործուող ներքին ձևերի վերայ։ Տարբեր ազգերի գրերը ներկայացնում են նոյն իսկ գրի զարգացման աստիճանները։

Գիրն և լեզուն տարբերւում են նորանով, որ մէկն ենթադրում է խօսողի ներկայութիւնը, իսկ միւսը ժամանակի և տարածութեան հեռաւորութիւն՝ գրողի և ընթերցողի մէջ։ Այստեղից հետևում է, որ լեզուն խօսողից անբաժան լինելով պահանջում է խօսողի ներկայութիւնը, իսկ գիրն ընդհակառակը գրողից բոլորովին ազատ և աւելի գոյութիւն ունի։

Գրելու արուեստն է, որ գերազանց քան ամեն բերանացի աւանդութիւն, կարելի է դարձնում անցեալ ժամանակների պատմութիւնն ուսումնասիրել. գիրն է, որ դիւրացնում է մարդկութեան իմացութեան յառաջադիմութիւնը, դորա միջնորդութեամբ միայն կարողանում են գիտնական անձինք իւրեանց նախորդների հետազօտութեան վերայ յենուելով՝ իւրեանց տեսութեան սահմանն առաւել ևս ընդլայնել. գրի միջնորդութեամբ են միմեանցից հեռու գտնուող ազգերի գաղափարները միմեանց հետ շփւում և օգտակար գիւտերը շուտափոյթ տարածւում։ Առանց գրի մարդկային քաղաքակրթութեան գործը շատ դանդաղ կերպիւ կ՚յառաջանար։

Գրի էութեան և նորա առ լեզուն ունեցած յարաբերութեան այս համառօտ տեսութիւնից յետոյ մի փոքր ընդարձակենք մեր ասելիքը՝ մարդկային մտքի այլոց հաղորդելու միջոցների մասին։ Ինչպէս տեսանք, այդ միջոցներն են ա. նշանացի խօսակցութիւն, բ. լեզու և գ. գիրն իւր տեսակներով։

## ԳԼՈՒԽ Բ.

## ՆՇԱՆԱՑԻ ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ

*Արտայայտիչ շարժողութիւն. նշանացի խօսակցութիւնն իբրեւ միջոց հաղորդակցութեան՝ սկզբնական մարդու համար. նշանացի խօսակցութիւնն իբրեւ արուեստ. նշ. խօսակցութեան ծագումը. նշ. խօսակ. վայրենի հնդիկների մէջ. Անդերսօնի պատմած արկածը. նշ. խօսակ. ճոխութիւնը. նկարագրող եւ մատնանիշ նշ. խօսակ. նշ. խօսակ. իբրեւ ընդհանուր մարդկութեան սեպհականութիւն. նշ. խօսակ. երաժշտական գործիքների միջնորդութեամբ. նշ. խօսակ. հայ ժողովրդի մէջ:*

---



Երկու տեսակէտից կարելի է Լեզուի ծագման խնդիրը դատողութեան ենթարկել՝ լեզուաբանական և հոգեբանական. վերջին տեսակէտը կլինի մեր հետազօտութեան ուղեցոյցը։

Լեզուն ևս ենթարկւում է հոգեբանական քննադատութեան, որովհետև նա անջատուած չէ կեանքից. ինչպէս կեանքն ամբողջապէս առած շարժողութիւն է, լեզուն նոյնպէս այդ շարժողութեան մի մասն է։ Հոգեբանութեան տեսակէտից լեզուն մի շարժողութիւն է՝ ձայնակից հնչիւններով. այդ շարժողութիւնն ընդհանրապէս կոչւում է արտայայտութեանց շարժողութիւն, ուստի և կարելի է ասել. լե-

ւն արտայայտութեանց շարժողութիւն է։ Այս արտայայտիչ
րժողութիւնն է, որ մեր հոգեկան մտապատկերները հա-
րդում է արտաքին աշխարհին։ Իսկ հոգեկան մտապատ-
րներն արտաքին աշխարհին հաղորդելու գործողութիւնն
ւանց ձայնի օգնութեան, կոչւում է նշանացի խօսակ-
ւթիւն։

Բազմաթիւ գիտնական հետազօտութիւններով համա-
ա́ թէ ապացուցուած է, որ մարդկային այն ցեղերի մէջ,
ոնք դեռ ևս բնական դրութեան մէջ են, նշանացի խօ-
կցութիւնն աւելի ազդեցութիւն ունի, քան իսկական լե-
ւն, որովհետև երևակայութիւնն այդտեղ աւելի ընդար-
կ սահմանի մէջ է գործում։ Նոյն իսկ քաղաքակրթուած
րդիկ, խօսելու ժամանակ, ակամայ զանազան շարժողու-
իւններ են անում—նա մանաւանդ գրգռուած միջոցին—
էև դրանք այլ ևս պէտք չեն. այդ շարժողութիւնները
ացորդներ են արդէն վաղուց անցած ժամանակների սովո-
ւթեանց և մեքենայաբար կրկնւում են այսօր ևս։ Թէև
ղաքակրթութիւնը և դաստիարակութիւնն աշխատում են
սեցնել արտայայտութեան այդ ուժեղ շարժողութիւնները,
կայն այնուամենայնիւ դեռ ևս անկարելի է դրանց բոլո-
վին մոռացութեան տալ։

Այդպիսի արտայայտութեանց նշաններ և շարժողու-
իւններ գործ են դնում նաև մանուկները, համր-խուլերը
միմեանց լեզու չ՚հասկացող նոյն իսկ հասակաւոր անձինք։

Նշանացի խօսակցութիւնն էր այն միակ միջոցը, որով
րդկութիւնն իւր մանուկ հասակում կարող էր արտայայ-
ել իւր գաղափարները, քանի որ դեռ ևս մարդկային լե-
ւն արտասանութեան չէր վարժուել և նոյն իսկ լեզուն
նւում էր մանկական հասակում [1]։ Նշանացի խօսակցու-

---

[1]) Եթէ ի նկատի ունենանք այն մարդկանց սակաւիկ կարիք-
րը, որոնք քաղաքակրթութեան ամենաստորին աստիճանների

թիւնը, որ բնութեան մայրենի լեզուն է, միջոց է տալիս մարդուն՝ իւր միտքն արտայայտել անհրաժեշտ և կարևորագոյն իրերի և պահանջների վերաբերութեամբ։ Գիտնականներից ոմանք մինչև անգամ հաստատում են, որ մարդս իւր ձեռքի, մատների, մարմնի և դէմքի շարժողութեան նշանների միջնորդութեամբ կարող է արտայայտել այն բոլոր մտքերը, որ մենք լեզուով ենք յայտնում։ Ամերիկայի հնդիկների նշանացի խօսակցութիւնն ուսումնասիրողներն ևս հաստատում են այն հանգամանքը, որ դորանց լեզուն այնպէս աղքատ չէ վերացական գաղափարներով, ինչպէս որ սովորաբար կարծւում է [2]։

Մի ընդհանուր օրէնք է, որ ոչ մի իր կամ գործողութիւն չի կարելի կատարելապէս ըմբռնել, առանց նորա ծագումը հասկանալու կամ գիտենալու, ուստի և անհրաժեշտ ենք համարում նշանացի խօսակցութեան ծագման մասին փոքր ինչ երկարել մեր խօսքը։

Մանուկը լեզուն սովորելուց առաջ գործ է դնում հասկանալի շարժումներ. նա լեզուն հասկանում է այդ շարժումների և նշանների միջնորդութեամբ։ Նոյն իսկ այն ժամանակ, երբ մանուկն արդէն սովորել է փոքր ինչ խօսել, միշտ հետևում է ծնողների դէմքի արտայայտութիւններին, կարծես թէ ցանկանում է նրանց խօսքերն այդ արտայայտութիւնների միջնորդութեամբ ըմբռնել։ Այն անձինք, որ

---

վերայ են գտանւում, չենք կարող մերժել այն կարծիքը, որ լեզուն դրանց համար մի աւելորդ զարդ է. դրանք կարողանում են նոյնպէս աղաղակով և նշանացի շարժողութիւններով իրանց միտքն արտայայտել։ Նշանացի շարժողութիւնը բռնում է արտասանութեան տեղը։ Տես. Faulmann եր 236.

[2]) Պէտք է ի նկատի ունենալ այն հանգամանքը, որ ամերիկացի հնդիկների նշանացի խօսակցութիւնը այսօր մի զարգացած արուեստ է, որ ունի իւր որոշ սկզբունքները։

լեզուի բառականին պաշար չունին—նոյն իսկ քաղաքակրթուած երկրներում, ուր նշանացի խօսակցութիւնը վաղուց արդէն անյայտացել է—մի բառ պակասելու ժամանակ իսկոյն դիմում են մարմնի շարժուածքի օգնութեան։ Նոյն իսկ վարժուած ճառախօսները շատ անգամ դիմում են այդ միջոցին, որպէս զի իւրեանց խօսքերն աւելի ազդեն ունկնդիրների վերայ։ Պատահել են դէպքեր, որ զանազան անհատներ զրկուելով մարդկային յարաբերութիւնից, կորցրել են խօսելու ընդունակութիւնը և նշանացի խօսակցութեան միջնորդութեամբ կարողացել են կրկին՝ փոքր առ փոքր սովորել։ Այս բոլորից պարզ երևում է, որ նշանացի խօսակցութիւնն ընդհանուր մարդկութեան յատուկ ընդունակութիւններից մէկն ու սկզբնականն է։ Մարդս յառաջ քան խօսելու կարողութիւնը ձեռք բերելն, իւր գաղափարներն արտայայտել է շարժումով, նշաններով և բնութեան մէջ գտնուած առարկաներն օդի մէջ ձևակերպելով. սորանից և յառաջացել է նշանացի խօսակցութիւնը։ Սկզբնական մարդը մի որ և է գործողութիւն մի երկրորդ անձին հաղորդելու համար, պէտք է այդ գործողութիւնը կամ դորա ձևակերպութիւնը կրկնէր նորա առաջ։

Նշանացի խօսակցութիւնն արտայայտում է մարդկային հոգւոյ նախկին դրութիւնը. այդ դրութեան հետքերը կարելի է գտնել նոյն իսկ քաղաքակրթուած ազգերի մօտ։ Դա թէ սովորական խօսակցութեան ժամանակ և թէ ճառելիս՝ ոյժ է տալիս խօսքի զօրութեանը, որ չասել է թէ՝ աւելի ազդու է քան խօսքը, ուստի և աւելի մօտիկ մարդկային հոգուն, քան խօսքը։

Ցայժմ կարծւում էր, թէ նշանացի խօսակցութիւնը գործածական է միայն այն ցեղերի մէջ, որոնց լեզուն դեռ ևս զարգացման ամենաստորին աստիճանի վերայ է գտնւում. սակայն նոր հետազօտութիւնները ցոյց են տալիս, որ վայրենի հնդիկ ցեղերից շատերը, որոնք խօսում են նշանացի,

առաւել զարգացած լեզու ունեն, քան շատ այլ ցեղեր, որոնց մէջ նշանացի խօսակցութիւնը գործածական չէ։ Նշանացի խօսակցութեան այդ երկարատևութիւնը բացատրւում է հաղորդակցութիւնը դիւրացնելու հանգամանքով։ Հնդիկները թէև բաժանուած են բազմաթիւ ցեղերի, սակայն դոցանից իւրաքանչիւրը բաղկացած է սակաւաթիւ ընտանիքներից և ունի իւր առանձին բարբառը, որ այլոց կամ բոլորովին անհասկանալի կամ թէ դժուար հասկանալի է. ահա այդ իսկ պատճառով նշանացի խօսակցութիւնը համարւում է հաղորդակցութեան դիւրին միջոցը։ Կան և այնպիսի վայրենի ցեղեր, որոնք իւրեանց հաղորդակցութեան համար ստեղծել են մի արուեստական լեզու՝ զանազան բարբառների խառնուրդից և մոռացել են իւրեանց սկզբնական հաղորդակցութեան ընդհանուր և բնական միջոցը—նշանացի խօսակցութիւնը։

Ինչպէս որ գրի սկզբնական ձևն է առարկաների գծագրելը մի որ և է *նիւթի վերայ*, այնպէս ևս նշանացի խօսակցութեան նախնական ձևն է՝ առարկաների գծագրելն *օդի մէջ*։ Եւ ինչպէս որ գիրը զարգանալով շեղւում է իւր սկզբնական ձևից և պայմանական նշան դառնում, այնպէս ևս նշանացի խօսակցութիւնը հետզհետէ կրճատւում է առարկաները ձևակերպելու եղանակը և նշանները կամ շարժողութիւնները պայմանական է դարձնում։ Այդ պատճառով և այսօր նշանացի խօսակցութիւնը մի արուեստ է դարձել ամերիկական հնդիկների մէջ։ Այդ արուեստի զարգացման նպաստել է նաև այն հանգամանքը, որ վայրենի ցեղերն իւրեանց կեանքի մեծ մասն անցնելով որսի և պատերազմի մէջ, պարտաւոր են զգոյշ լինել աղաղակ բարձրացնելուց, որովհետև այն լուռ անտառներում և ամայի վայրերում, ուր դոքանք բնակւում են, մի փոքրիկ աղմուկն անգամ կարող է բաւականին տարածութեամբ հեռու գտնուող թշնամու կամ որսի կենդանու ուշադրութիւնը գրաւել։

Այժմ դառնանք նշանացի խօսակցութեան բուն էութեան։ Նշանացի խօսակցութիւնն, ինչպէս արդէն ասացինք, ներկայացնում է առարկաների կամ գաղափարների արտաքին նշանների կոպիտ գծագրութիւնն, ըստ կարելոյն նմանութեամբ, ուստի և գաղափարի և դորան արտայայտող նշանի մէջ միշտ գոյութիւն ունի մի տեսակ ազգակցութիւն։ Օրինակ եթէ մէկը նշանացի խօսակցութեամբ կամենում է հասկացնել մի երկրորդին, որ ինքը ցանկանում է քնել, գլուխը թեքում է աջ կամ ձախ ձեռքի ափի մէջ և աչերը փակում, այսինքն ներկայացնում է քնելու եղանակը։ Եթէ մի համր-խուլ իւր երկու մատը պատառաքաղի ձևով մեկնած՝ դնում է սեղանի վերայ և յառաջ խաղացնում, դըժուար չէ հասկանալ, որ նա կամենում է մանգալու գաղափարն արտայայտել՝ նմանեցնելով երկու մատը ոտքերի գրութեան և ընթացիկ շարժողութեան։ Ամերիկացի հնդիկներն և համր—խուլերը կարողանում են այդպիսի անձայն նշաններով այնպիսի երկար պատմութիւններ անել, որ զարմանք է պատճառում։

Սակայն նշանացի խօսակցութիւնն այն պակասութիւնն ունի, որ մի որ և է նշանից կարելի է մի քանի, միմեանցից տարբեր, բան հասկանալ։ Այս իրողութիւնը պարզապէս ցոյց տալու համար յառաջ ենք բերում մի զուարճալի պատմութիւն, որ 1853 թ. «Գլասգով»-ի համր-խուլերի դպրոցի տեսուչ Անդերսոնը պատմել էՎաշինգտոնում՝ իբրև ճշմարիտ իրողութիւն։ Անգղիայի Յակոբ I արքան ցանկանալով մի «օյին խաղալ» Իսպանիայի դեսպանի հետ—որ մի գիտնական անձնաւորութիւն լինելով՝ նշանացի խօսակցութիւնն իւր համար մի զբաղմունք էր դարձրել—յայտնում է նորան, որ «Աբերդինի»ի համալսարանում գտնւում է մի երևելի պրօֆէսոր նշանացի խօսակցութեան։ Դեսպանն իսկապէս ուղևորւում է այդ գիտնականին այցելելու, որ իսկապէս գոյութիւն չունէր. այլ այդ քաղաքում բնակւում էր մի մսավա-

ճառ, որ մի աչքով կոյր, ծաղրածու և կատակասէր մարդ էր։ Ահա այս մարդը պատուէր է ընդունում գիտնական պրոֆէսորի դերը կատարել և ոչ մի խօսք չ՚արտասանել. նորան հագցնում են, ինչպէ՛ս վայել է մի պրոֆէսորի և գիտնական դեսպանին ներկայացնելուց յետոյ թողնում են նոցա միայնակ։ Դեսպանը դուրս է գալիս տեսակցութեան սենեակից՝ բոլորովին գոհ իւր փորձից. նա պատմում է. «Երբ ներս մտայ սենեակ, բարձրացրի ցուցամատս՝ նորան հասկացնելու համար, որ կայ միայն մի Աստուած. պրոֆէսորը պատասխանեց՝ բարձրացնելով իւր երկու մատը, ինձ հասկացնելու համար, որ այդ էակն իշխում է երկու, տեսանելի և անտեսանելի, աշխարհների վերայ. այն ժամանակ ես բարձրացրի երեք մատներս, որ նշանակում էր թէ Աստուածութիւնը բաղկացած է երեք անձից. նա իսկոյն փակեց իւր մատները՝ հասկացնելով որ այդ երեք անձինք մի միութիւն են կազմում».

Այս բացատրութիւնից յետոյ կանչում են բարկացած մսավաճառին և հարցնում տեղի ունեցած տեսակցութեան հետևանքի մասին. ահա նորա պատմածը. «Երբ այդ անխելք մարդը սենեակ մտաւ, իսկոյն բարձրացրեց մի՛ մատը՝ ինձ հասկացնելու համար, որ ես մի աչք ունեմ՝ միայն. այն ժամանակ ես բարձրացրի երկու մատներս՝ նորան հասկացնելու համար, որ ես իմ մի աչքով նոյնչափ լաւ եմ տեսնում, որչափ նա իւր երկու աչքով. յետոյ նա բարձրացրեց երեք մատը՝ ցոյց տալու համար, որ այնուամենայնիւ երկուսս միասին միայն երեք աչք ունենք. այդ ժամանակ ես բարձրացրի իմ բռունցքը և եթէ նա շտապով սենեակից դուրս չ՚գնար, մի լաւ պէտք է թակէի» [3]։

---

[3]) G. Mallery: Forschungen und Anregungen über die Zeichensprache der Indianer Nord-Amerikas. „տես. Mittheilungen des Vereins für Erdkunde". 1882 եջ 49—50.

Թէև վերջին ժամանակներս նշանակուել են մասնաժողովներ՝ Ամերիկայի Հնդիկների նշանացի խօսակցութիւնը տեղն ի տեղն ուսումնասիրելու համար, սակայն դորա հետազօտութիւնն առաւելապէս տեղի է ունեցել Համր-խուլերի շրջանում։ Այժմեան մանկավարժական մեթոդը թէև ձգտում է Համր-խուլերին ուսուցանել իսկական լեզուն, բայց այնուամենայնիւ նշանացի խօսակցութիւնը մնում է միշտ գլխաւոր միտք արտայայտիչ միջոցը։ Նշանացի խօսակցութիւնը քերականութիւն չունի, բառերը չեն խոնարհւում և հոլովւում, չեն կապակցւում միմեանց հետ. միևնոյն նշանն արտայայտում է գնալ, գնացի, գնում էի, կ՚գնամ, գնալով և այլն. մեր, մենք, մեզ, մեզնից և այլն։ Անունը, բայն, ածականն և այլն տարբերութիւն չունեն և միևնոյն նշանով են ցոյց տրւում. Համր-խուլը մատով ցոյց է տալիս իւր աչքը, երբ կամենում է աչք բառը գործ դնել, նոյնն անում է նա, երբ ցանկանում է «տեսնել» արտայայտել։ Եթէ նշանացի խօսակցութեամբ կամենում ենք արտայայտել օրինակ Հետևեալ նախադասութիւնը. «Հայոց գրի զարգացման պատմութիւնը ցայժմ չէ մշակուած», պէտք է ասենք—և այդպէս ևս ասում են Համր-խուլերը—«Հայ, գիր, զարգացումն, պատմութիւն, այժմ, մշակել, ոչ»։ Բառերի դասաւորութեան մէջ առաջին տեղը բռնում է միշտ անունն բայն. փոխանակ ասելու. «սուրբն և Հանճարեղն Մեսրոպ կատարելագործեց Հայոց այբուբենը», նշանացի խօսողն ասում է. Մեսրոպ, սուրբ, Հանճարեղ, այբուբեն, Հայ, կատարելագործել։

Նշանացի խօսակցութիւնը կարելի է երկու տեսակի բաժանել. ա. *մատնանիշ* և բ. *նկարագրող*։

*Մատնանիշ* անող նշանացի խօսակցութիւնն առաւել ընդարձակ սահմանների մէջ է գործում քան նկարագրողը. գործանով ցոյց են տրւում բոլոր առարկաները և այդ միջոցն աւելի ապահով է։ «Ականջ» կամ «լսել» արտայայտելու համար Հնդիկը կամ Համր-խուլը մատնանիշ է անում իւր

ականջը, «միս» ասելու ժամանակ նա բարձրացնում է իւր ձեռքի մորթը կամ մկանունքը, «սիրտ» ասելու տեղ ցոյց է տալիս իւր սիրտն և այլն։

*Նկարագրող* նշանացի խօսակցութիւնը տեղի է ունենում այն դէպքում, երբ կարելի չէ ուղղակի մատնացոյց անելով միտք արտայայտել։ Նկարագրող նշանացի խօսակցութիւնը կարելի է երեք դասակարգի բաժանել. 1) *Անմիջական*—օրինակ՝ մի տան մտապատկերն արտայայտելու համար ցոյց է տրւում մի հասարակ քառանկիւնի—2) *միջնորդական*—օրինակ՝ այր մարդ արտայայտելու համար համր-խուլը գլխարկ վերցնելու շարժողութիւն է անում, որովհետև միայն այր մարդիկ են գլխարկ վերցնում բարևելու ժամանակ, իսկ կանայք ո՛չ։ Գերմանացի մանուկն «իւղ» արտայայտելու համար այնպիսի շարժողութիւն է անում, որ իբր թէ մի կտոր հացի վերայ իւղ է քսում, որովհետև նորա համար իւղ քսած հացը—բուտերբրօդ—մեր սովորական «հաց ու պանիր»ն է. դորա փոխարէն հայ մանուկն երկու ձեռքերը փոփոխաբար դէպի բերանն է տանում, որ արտայայտում է «հաց ու պանիր» ուտելու շարժողութիւնը։ 3) *Խորհրդաւոր*. օրինակ՝ անցեալի և ապագայի մտապատկերներն արտայայտում է յառաջ և յետ մատնանիշ անելով. ուր որ երկուութիւն պէտք է արտայայտել—օրինակ՝ երկուորեակ, ամուսիններ, քոյր-եղբայր և այլն—միշտ ցոյց է տրւում երկու մատը [4])։

---

[1]) Ըստ Վունդի՝ „բարի" և „չար" արտայայտելու համար ցոյց են տրւում բութ և ճկոյթ մատները, այդպիսով մատի հաստութիւնն որոշում է բարոյական յատկութիւնը. համր-խուլը իւր ցուցամատը բերանից ուղղակի յառաջ շարժելով կամենում է արտայայտել „ճշմարիտ" գաղափարը, իսկ նոյն ցուցամատը բերանից ծուռ ուղղութեամբ յառաջ տանելը նշանակում է „սուտ".

Բացի վայրենիներից և համր-խուլերից նշանացի խօսում են այն անձինք, որոնք միմեանց լեզուն չեն հասկանում և այդպիսով փոխադարձաբար համրի դեր են կատարում 5)։

Նշանացի խօսակցութիւնն այն միակ միտք արտայայտող միջոցն է, որ պատկանում է ընդհանուր մարդկութեան. թէպէտ միւնոյնը մենք կրկնում ենք լեզուի վերաբերութեամբ, սակայն այդ բառացի ճիշտ չէ կարող լինել, որովհետև երկրիս վերայ գոյութիւն ունեն հարիւրաւոր լեզուներ, որոնք հասկանալի են մի որոշ ժողովրդի համար, իսկ այլոց համար—ոչ։ Իսկ եթէ մէկը ձեռքը դնում է ականջին և ապա բացասական շարժողութիւն անում, ամեն ոք և ամենայն տեղ—թէ զարգացած և թէ վայրենի, թէ Եւրոպայում, Ասիայում և թէ Աֆրիկայում, Ամերիկայում և այլն—կ'հասկանան, որ նա ուզում է արտայայտել, որ ինքը կամ մէկ ուրիշը խուլ է, չէ լսում։

Նշանացի խօսակցութեան դասին պատկանում է նաև երաժշտական գործիքների միջնորդութեամբ խօսելը, որ գործածական է Աֆրիկայի վայրենի ցեղերի մէջ։ Անձամբ դիտած և զարմացած ենք՝ տեսնելով այն ճարպիկութիւնը, որ Աֆրիկայի գերմանական գաղթականութեան, Քամերունի, բնիկները ցոյց էին տալիս թմբուկների միջնորդութեամբ հեռու

---

պարզ է, որ շարժողութիւնները կապ ունին „ուղիղ“ և ոչ „ուղիղ“ գաղափարների հետ։ Տես. W. Wundt: „Die Sprache und das Denken“ էջ 265.

5) Ռուս ժողովուրդն իւր արևմտեան սահմանակից ազգին—գերմանացիներին—տուել է համր—Немецъ—անունը, որովհետև ռուսերէն խօսել չկարողանալու համար գուցէ սոքա ստիպուած էին նշանացի խօսակցութեամբ իւրեանց միտքն արտայայտել։ Տես. Tyler: Forschungen über die Urgeschichte der Menschheit“ գլ. III. էջ 43.

եղող անձանց իւրեանց միտքը հասկացնելու համար [6]։

Հայ ազգը ընդհանուր մարդկութեան մի փոքրիկ հատուածը լինելով, պէտք է որ նոյն միջոցներն ի գործ դնէր իւր գաղափարներն արտայայտելու և իւրեան հասկանալի անելու համար, ինչ միջոցներ որ գործ են դրել մարդկութիւնը կազմող այլ ազգերը։ Ինչպէս տեսանք, այդ միջոցներից մէկն և անմիջականն է նշանացի խօսակցութիւնը. հարկ չկայ ապացուցանելու, որ հայերն ես սկզբնական ժամանակներում պէտք է գործ դրած լինէին այդ միջոցը, քանի որ դոքա ես մի անգամ գտնւում էին քաղաքակրթութեան ամենաստոր աստիճանների վերայ։

Նշանացի խօսակցութեան բազմաթիւ հետքերը դեռ այսօր ես—հայ գրի զարգացման կատարելագործութիւնից մօտ 15 դար անցնելուց յետոյ—կարելի է գտնել հայ ժողովրդի մէջ։ Այդպիսի հետքեր, որ համարեա թէ բոլորովին անյայտացել են եւրոպական ազգերի միջից, ուշադիր հետազօտողը մեր ժողովրդի մէջ հարիւրներով կարող է գտնել։ Յայտնի է թէ մեր ժողովուրդը—նա մանաւանդ վաճառական դասակարգը—միայն «աչքով-ունքով» անելով որչափ բան կարող է հասկացնել իւր դիմացը նստողին։ Փոխանակ այո ասելու, մենք շարժում ենք մեր գլուխը վերևից ներքև,

---

6) 1886 Թուի ամառը Լայպցիգի կենդանաբանական այգին պատիւ ունեցաւ հիւրընկալելու Քամերուն երկրի իշխաններից մէկին, սեւամորթ, սակայն գեղեցիկ և հսկայ կազմուածք ունեցող պրինց Դիդօ Փօն Դիդօվային, որի սև թիկնապահները ցոյց էին տալիս Լայպցիգի հետաքրքրուող հասարակութեան իւրեանց երկրի սովորութիւնները—ի թիւս այլոց և այդ թմբուկների միջոցով միտք արտայայտելը—իսկ ինքն, իշխանն իւր 3 կանանցով և մի փոքրիկ երեխայով մէջ տեղը բազմած՝ դիտում էր սպիտակ հասարակութիւնը և ժպտում իւր հաստ շրթունքներով։

իսկ աջ և ձախ շարժելով՝ ուզում ենք ասել—ո՛չ [7]. մէկին սպառնում ենք՝ մեր ցուցամատը յառաջ ու յետ շարժելով [8]. փոխանակ դրամի անունը տալու, շփում ենք մեր ցուցամատի և բութ մատի ծայրերը միմեանց հետ. ուսերը բարձրացնելը նշանակում է «չգիտեմ» [9]. գլուխը մի փոքր թեքելը և աորբին շրթունքը կախելը նշան է կասկածի. բութ և ցուցամատով բզի մորթը քաշել՝ նշանակում է խնդրել. երկու բութ մատերի եղունգները միմեանց քսելը նշանակում է մէկին ջղրացնել։ Երբ մէկն իւր մատն առնում է ատամների մէջ, կամենում է հասկացնել, որ մի բան յանկարծակի յիշեց կամ մոռացաւ. իսկ եթէ նոյն գործողութիւնն անելիս նա հաւաքում է և ճակատի կնճիռները, այդ նշանակում է, որ նա մոռացածը կամենում է մտաբերել։ Եթէ մէկը խօսելու ժամանակ բռունցք է շինում, նշանակում է որ նա սպառնում է. եթէ ոտքով տրոփում է, նշանակում է որ բարկացած է. գլուխը կամաց շարժելը նշան է զարմանքի. կնճիռներ հաւաքելը ուշադրութեան և այլն։ Հայ կինն իւր երկու ձեռքը հակառակորդի դէմ վերևից-ներքև թափ տալով ցանկանում է ասել. «հողեմ գլուխդ» կամ «թաղեմ քեզ», որ անէծքի նշանակութիւն ունի։

Ով եղել է բուն հայ ընտանիքի և ժողովրդի մէջ, նա

---

[7]) Արաբացիք „այո՛" արտայայտելու համար թափահարում են իւրեանց գլուխը, իսկ „ո՛չ" ասելու համար գլուխը դէպի յետ են շարժում։

[8]) Հետաքրքրական է այն երևոյթը, որ գերմանացիք եա սպառնալու ժամանակ շարժում են իւրեանց ցուցամատը, սակայն ո՛չ թէ վերև-ներքև, ինչպէս մենք, այլ աջ և ձախ՝ ձեռքի ներքին կողմը դէպի դէմքը դարձնելով։

[9]) Արաբացիք ուսերը փոփոխակի բարձրացնելով կասկած են ուզում արտայայտել։

*այսպիսի և այլ հարիւրաւոր օրինակներ կարող է յառաջ բերել, որովհետև նշանացի խօսակցութիւնը հայ ժողովրդի մէջ մի պատահական բան չէ, ինչպէս շատ եւրոպական ազգերի մէջ։ Մեր ժողովրդի մի ամբողջ դասակարգը ստիպուած է մի որոշ շրջանի մէջ, երկար տարիների ընթացքում, նշանացի խօսակցութիւնն իբրև միակ միտք արտայայտելու միջոց գործ դնել։ Հայ ժողովրդագէտն իսկոյն կ'ըմբռնէ, որ մեր խօսքը վերաբերում է գիւղական հարսների դասակարգին, որոնք երկար և ձիգ տարիների ընթացքում—հնազանդուելով սովորութեան աստուածուհուն—, իրաւունք չունեն իւրեանց սկեսուրի, սկեսրայրի, տագրների և ընտանիքի այլ մի շարք անդամների հետ իսկական լեզուով խօսելու. դոքա ոչ թէ վերայիշեալ անձանց հետ չեն կարող խօսել, այլ և դոցա ներկայութիւնն իսկ բաւական է, որ հարսները համրի դեր կատարեն։ Եթէ ի նկատի ունենանք, որ այս սովորութիւնը շարունակուել է երկար դարերի ընթացքում, հասկանալի կլինի մեզ համար, թէ ինչու նշանացի խօսակցութիւնը ցայժմ չէ անյայտացել հայ ժողովրդի միջից [10]։*



---

*[10]) Ցանկալի կը լինէր, որ հայ ժողովրդագէտ բանասէրները աշխատէին ժողովել նշանացի խօսակցութեան այս բազմաթիւ հետքերը. այդ ժողովածուի հրատարակութիւնը ոչ թէ միայն հետաքրքրական կ'լինէր հայ բանասէրների համար, այլ և մի ծառայութիւն գիտութեան համար։*

## ԳԼՈՒԽ Գ.

## ԼԵԶՈՒ

*„Մարդս միայն լեզուով է մարդ, սակայն լեզուն հնարելու համար՝ նա արդէն մարդ պէտք է լինէր":*

*Վ. ֆոն Հումբոլտ*

*Լեզուի եւ հոգու մէջ տեղի ունեցած յարաբերութիւնը. նշանի եւ մտքի մէջ տեղի ունեցած յարաբերութիւնը. բառերի ծագումը. մանկական լեզու. լեզուի ծագումը յունաց փիլիսոփայութեան մէջ. լեզուի ծագման խնդիրը պատմական եւ հոգեբանական տեսակէտից. լեզուի ծագման չորս տեսութիւնները—թէօրիաները—ա) վերացական կամ հրաշքի տեսութիւն. բ) գիւտի. գ) դիպուածի եւ դ) աստիճանաբար զարգացման տեսութիւնները. նշանացի շարժողութեան, մանկական եւ բնական լեզուի մէջ տեղի ունեցած յարաբերութիւնը. եզրակացութիւն:*

---



Ասացինք որ նշանացի խօսակցութիւնն խօսական լեզուի նախաստիճանն է եւ երկուսն եւս ոչ այլ ինչ են, եթէ ոչ արտայայտիչ շարժողութիւն. սակայն եթէ կամենայինք մի որոշ սահման գծել այդ երկուսի մէջ, շատ պէտք է դժուարանայ-

ինք։ Ե՞րբ է մարդկութիւնը դադարել նշանացի խօսելուց, երբ է սկսում իսկական լեզուն և այլն. սոքա այնպիսի խնդիրներ են, որոնց լուծումն ահագին հետազօտութիւններ է պահանջում, որովհետև մարդկային լեզուի յառաջադիմութիւնը սերտ կապ ունի հոգւոյ յառաջադիմութեան աստիճանների հետ, իսկ վերջինի յառաջադիմութիւնը կախումն ունի հազար ու մի հանգամանքներից։ Ուստի և այդ սահմանի որոշելը մեր ծրագրից դուրս թողնելով՝ դիտողութեան առնենք նոյն իսկ լեզուն, ինչպէս որ դիտեցինք դորա նախաստիճանը—նշանացի խօսակցութիւնը։

Մի փոքր առաջ ակնարկեցինք մարդկային լեզուի և հոգեկան զարգացման մէջ տեղի ունեցած յարաբերութիւնը. այժմ մի փոքր ընդարձակենք մեր խօսքն այդ մասին։

«Լեզուն, ասում է հռչակաւոր լեզուագէտ և լեզուաբան Վ. Հումբոլտ [1]), հոգւոյ այն յաւիտեան կրկնուող գործողութիւնն է, որ արտասանած հնչիւնին միտք արտայայտելու ընդունակութիւն է տալիս» [2])։ Մտածմունքը միայն լեզուի միջոցով է զարգանում մարդկային հոգւոյ մէջ. իւրաքանչիւր լեզու տրամաբանական ճիշտ մտածման բովանդակութեան մի որոշ յարաբերական ձև է։ Հայերէն «մարդ», գերմաներէն «մենշ», յունարէն «մենօս», բառերը ծագում են սանսկրիտից և բոլորի արմատն է «ման» որ նշանակում է մտածել» [3])։ Եւ մարդս անուանւում է այդպէս ոչ միայն

[1]) Վիլհէլմ և Աղէքսանդր փօն Հումբոլտ եղբայրները նշանաւոր տեղ են բռնում գերմանական գիտնականների շարքում. առաջինն իբրև լեզուաբան-պատմագէտ, իսկ երկրորդն իբրև բնագէտ և աշխարհագէտ։ Այս երկու արդիւնաւոր, եղբայրների արձանները դրուած են Բէրլինի համալսարանի շէնքի առաջ։

[2]) Տես. H. Steinthal: „Die Sprachwissenschaft W. von Humboldts und die Hegelische Philosophie“ էջ 91.

[3]) Տես. Iacob Grimm: Über den Ursprung der Sprache“ էջ 31.

նորա համար, որ նա մտածում է, այլ և նա մարդ է, որով-հետև մտածում է և խօսում է, վասն զի մտածում է։ Մարդկային մտածողութեան և խօսելու կարողութեան այս սերտ կապն արդէն ցոյց է տալիս լեզուի հիմն ու ծագումը [4])։

Թէև մարդկային սեռի զանազան *ժողովուրդների* և *ցե-ղերի* բաժանումը և դրանց *լեզուների* և *բարբառների* տար-բերութիւնը միմեանց հետ անմիջական կապ ունեն [5]), սա-կայն միևնոյն ժամանակ ենթարկւում ու կապակցւում են *մարդկային ոգեկան զօրութեան արտադրութեան* հետ։ Այս վերջինի մէջ են գտնում դրանք իւրեանց բացատրութիւնը։ Հազարաւոր տարիների ընթացքում և երկրիս ամենայն կող-մերում տարբեր կերպիւ յերևան եկող այս *ոգեկան զօրու-թիւնն է* ամեն մտաւոր շարժողութեան բարձրագոյն նպա-տակը. այս զօրութիւնն է նոյնպէս այն վերջին գաղափարը, որ ընդհանուր մարդկային պատմութիւնը պէտք է պարզ կերպիւ ցոլացնէ իւր միջից, վասն զի մտաւոր գոյու-թեան այս բարգաւաճումն է միայն, որ իւրաքանչիւր ան-հատ կարող է իբրև անխախտ սեպհականութիւն նկատել։ Անհատները կապուած են և կախումն ունին ամբողջութիւ-նից. *անհատների կեանքն* ամենայն կողմից անհրաժեշտ կեր-պիւ կապակցուած է *ընկերական կեանքի* հետ։

Մարդուս նոյն իսկ միայն բուսական գոյութեան ժա-մանակ՝ *օգնութեան կարօտութիւնը* դրդում է անհատներին այլոց հետ կապակցուելու. իսկ ընկերական ձեռնարկութեանց

---

[4]) „Լեզուն մարդկային բնութեան յատկանիշը, նորա հոգւոյ առանձնայատուկ գործն է. չկայ մարդ առանց լեզուի և մարդուց դուրս իսկական լեզու չկայ"։ Տես. Lazarus: „Das Leben der Seele" եր 129.

[5]) „Ընդհանրապէս կարող ենք ասել, որ լեզուների պատ-մութիւնը նաև ցեղերի ու ազգերի պատմութիւնն է"։

Diefenbach տես.

Beiträge von Kuhn und Schleicher հատ: II

կարելիութիւնը պահանջում է *միմեանց հասկանալու* մի միջոց և այդ միջոցը *լեզուն* է։ Մի ազգի լեզուի կազմակերպութիւնը և ոգեկան առանձնայատկութիւնն այնպէս են ներքին կապով միացած, որ եթէ մէկը գոյութիւն ունենար, միւսը կատարելապէս դրանից պէտք է յառաջանար։ Լեզուն ներկայանում է ազգերի ոգւոյ արտաքին երևոյթը. դոցա լեզուն իւրեանց ոգին է և ոգին իւրեանց լեզուն. երկու գաղափարներն ևս համանիշ են։ Եթէ նոյն իսկ տեսականապէս լեզուն և ոգեկան զօրութիւնը միմեանցից բաժանենք, իրականութեան մէջ այդպիսի բաժանումը գոյութիւն չունի [6]։ Լեզուն միտք կազմակերպող օրգանն է. մտաւոր գործողութիւնը, որ ամբողջովին մի ներքին, և կարելի է ասել, մի անցողական գործողութիւն է, շօշափելի է դառնում մեր արտաքին զգայարանների համար հնչիւնի միջնորդութեամբ. այդ պատճառով և մտաւոր գործողութիւնն ու լեզուն մի են և անբաժան միմեանցից։

Մտաւոր գործողութիւնն ինքն ըստ ինքեան հարկադրուած է լեզուի հետ կապակցուելու, որովհետև առանց այդ կապակցութեան մտածմունքը չի կարելի արտայայտել և բացատրել. մտապատկերը չի կարող գաղափար դառնալ [7]։ Մտքի, ձայնի և ականջի անքակտելի կապակցութիւնը լեզուի հետ՝ մարդկային բնութեան սկզբնական և անբացատրելի կազմակերպութիւնն է։ Աչքի ընկնող երևոյթ է նոյնպէս *հնչիւնի եւ մտքի մէջ տեղի ունեցած համաձայնութիւնը* [8]։ Ինչպէս որ միտքն ամբողջ մտապատկերների ոյժը

---

[6]) Իրաւամբ Լայբնից փիլիսոփան լեզուին „ոգւոյ հայելի“ է անուանում. լեզուի մէջ տեսնում ենք ոգւոյ էութեան պատկերը։

[7]) Նոյն իսկ այն ժամանակ, երբ չենք խօսում և լուռ ենք մտածում, այնուամենայնիւ մեր մտքերը մտածում ենք բառերով, ուստի երբ մտածում ենք, նշանակում է, որ նոյնպէս խօսում ենք. տես. Lazarus նոյն. էջ 3։

[8]) Հնչիւնը միայն արտաքին վարագոյր չէ մտքի համար, այլ

կեդրոնացնում է մի տեղ, այնպէս և հնչիւնը ներգործում է լսողի վերայ։ Ինչպէս որ միտքը տիրում է սիրտը, այնպէս և հնչիւնը մի թափանցող, մարդուս ջղերը լարող զօրութիւն ունի [9])։

Ինչպէս որ միտքը մարդկային յարաբերութեան մէջ միշտ խաւարից դէպի լոյս, սահմանափակ շրջանից դէպի անսահմանն է ձգտում, նոյնպէս և հնչիւնը կրծքի խորքերից հոսում է դէպի դուրս և տարածւում հրաշալի կերպիւ իրեն համապատասխանող միջնորդ նիւթի, այն է օդի մէջ, որ տարրերից ամենաքնքոյշը և շարժունն է և որի ըստ երևոյթին անմարմին լինելը գեղեցիկ կերպիւ համապատասխանում է ոգւոյ էութեան։ Մտաւոր ձգտումը զբաղեցնում է ո՛չ միայն միտքը, այլ և դրդում է մարդուն ամբողջապէս դէպի գործունէութիւն. սորան նպաստում է առաւելապէս ձայնի հընչիւնը, որովհետև սա դուրս է ցատկում մարդուս կրծքից կապակցուած ուրախութեան և վշտի, ցանկութեան և զըզուանքի հետ և ներշնչում է կեանք այն զգայարաններին, որոնք ընդունում են դորան։ Լեզուի հնչիւնին յարմարւում է նոյնպէս մարդուս ուղղահայեաց կազմուածքը—որից զուրկ են կենդանիները—ուստի և խօսքն անմիջապէս գետին չէ ընկնում, և խուլ կերպիւ անյայտանում, այլ ազատ-համար-

---

և նորա մի որոշ կազմակերպութեան պատճառն, որ առանց բանի հետ կապակցուելու տեղի չէր կարող ունենալ։

Մտածմունքն անձայն խօսակցութիւն է, իսկ խօսակցութիւնը հնչիւնաւոր մտածմունք։ Բառը մարմնացած միտք է։

Մաքս Միւլլեր։

[9]) Միակ հնչիւնը, բառը, շատ անգամ այնպիսի ազդեցութիւն է անում լսողի վերայ, որ նորան կեանք կամ մահ է պատճառում. ո՛չ միայն բարոյական մտքով առած, այլ նաև ֆիզիքական։ Յայտնի են այնպիսի դէպքեր, որ երբ մեկին հաղորդել են յանկարծակի մի չափազանց ուրախ կամ տխուր լուր, իսկոյն կաթուածահար լինելով վախճանել է։

ձայն դուրս է գալիս շրթունքներից և դէպի նպատակ ուղղւում.. Հնչիւնի հետ միանում է հայեացքի արտայայտութիւնը և ձեռքերի շարժողութիւնը 10)։

Մարդկային հոգւոյ մէջ տեղի ունեցած անցքերը յառաջանում են նոյն իսկ հոգւոյ գործունէութիւնից և հականալն ու խօսելը ոչ այլ ինչ են, եթէ ոչ նոյն լեզուի տարբեր ներգործութիւնները 11)։ Խօսակցութիւնն երբէք չի կարելի մի որևէ նիւթի վերադարձնելու հետ համեմատել, որովհետև դա թէ խօսողի և թէ հասկացողի մէջ զարգանում է իւր սեպհական ներքին ուժի զօրութեամբ. մարդու համար բնական է հասկացածն իսկոյն արտասանել։

Ո՛չ լեզուն է ոգի ստեղծում և ո՛չ ոգին լեզու, այլ երկուսն ևս միասին և միատեղ են յառաջանում, որովհետև երբ լեզուն զարգանում է, դա նոյն իսկ ոգւոյ զարգացում է նշանակում 12)։ Լեզուի յառաջացումը և արտայայտու-

---

10) Բառերը բղխում են կրծքից առանց դժուարութեան. նոյն իսկ վայրենի ազգերի մէջ չ'կայ մէկը, որ իւր երգերը չունենայ։ Մարդս մի երգող էակ է, սակայն ձայների հետ նա կապակցում է նաև մտքեր։ Տես. W. Humboldt նոյն էջ LXXVI.

11) Հասկանալ նշանակում է, որ այն ձայնի հետ, որ ես լսում եմ, կապակցում եմ միևնոյն միտքը, որ ես կապակցում եմ միևնոյն ձայնի հետ, երբ ես խօսում եմ։ Լեզուն մի կողմից նորանով է լեզու, որ հասկացւում է, այսինքն հնչիւնների արտադրութիւնը միայն այն ժամանակն է լեզու կոչւում, երբ լսողի համար մի նշանակութիւն ունի. ուրեմն ենթադրում է հասկացողութիւն։ Միւս կողմից հասկանալ կարելի է, երբ հասկացողը նոյն կերպիւ է խօսում, այսինքն միևնոյն մտքերի հետ նոյն ձայներն է կապակցում, այնպէս որ խօսելն և հասկացալն անհրաժեշտ հակադարձ պայմաններ են։ Տես. Lazarus նոյն էջ 23.

12) Լեզուն ոգւոյ ստեղծագործութիւնը չէ, այլ նորա ծննդավայրը, մարդուս իսկական էութիւնը, որովհետև լեզուի հետ յառաջ է գալիս և կազմակերպւում մարդկային ոգին։ Ոգւոյ առաջին ստեղծագործութեան և գործունէութեան ձևակերպու-

իւնը մարդկութեան համար մի ներքին պահանջ է և ոչ
հայն արտաքին աշխարհի և ընկերական հաղորդակցութեան
ամար ստեղծուած զօրութիւն։

Յաճախ լեզուն անուանում է նոյնպէս ոգւոյ մարմնա-
ւումն. այս ինքն ըստ ինքեան սխալ չէ, սակայն դիւրութեամբ
արող է թիւրիմացութեանց առիթ լինել. այդ ճշմարիտ չէ
յն տեսակէտից, որ լեզուն չէ մի մարմին, որի մէջ ամփո-
ուած լինի ոգին։ Լացարուսը լեզուն համեմատում է զար-
ացնող արուեստի հետ. արձանը կամ նկարը մի մարմնա-
ած միտք է, այսինքն քարի, քաթանի և գոյների մէջ կայ
ի ներքին ինչ, մի պատկեր։ Երբ ես զննում եմ մի արձան,
չքի միջնորդութեամբ ընդունում եմ մի զգայական պատ-
եր և այդ զգայական պատկերի հետ նոյն իսկ միտքը,
յսինքն այն ներքին պատկերը, որ մտածել է արուես-
ագէտը և արտայայտել այդ քարի վերայ։ այդպէս չէ
առը. իմ լսած բառը մտքի պատկերացումը չէ, ոչինչ
է պարունակում մտքից. երբ ես բառը, հնչիւնը, լսում
մ, պէտք է նոյն իսկ ինքս դորա հետ մի միտք կապակ-
եմ։ Այն միտքը, ներքին պատկերը, որ առաջուց արուես-
ագէտի հոգւոյ մէջ էր, իսկապէս արտայայտուած է մարմ-
ի մէջ։ Եթէ այդ նկարը մի տուն, ծառ, արծիւ է, ամեն
արդ, որ ճանաչում է դոցա իսկականը, կ՚ճանաչէ նաև դո-
ա պատկերը. սակայն ծառ, տուն, արծիւ բառերն այնչափ
ակաւ են միտք կամ պատկեր արտայայտում, որ միայն նա
հասկանայ, ով որ գիտէ այդ լեզուն։

Լացարուսի այս համեմատութիւնը յաջող չէ թւում մեզ.
թէ մենք մի անծանօթ լեզուի բառից ոչինչ չենք հասկա-
ում, ոչինչ չենք հասկանայ նոյնպէս մի անծանօթ առար-

---

իւնն է լեզուն։ Տես. H. Steinthal: „Der Ursprung der
prache, im Zusammenhang mit den letzten Fragen alles Wis-
ns" եջ 19.

վոյի պատկերից, ուստի և այդ պատկերն ոչինչ միտք չէ արտայայտում մեզ համար, ինչպէս նաև այն անծանօթ բառը։ Եթէ մի գերմաներէն չիմացող մարդուն ասենք ,,Haus“ (տուն) բառը, հարկաւ նա ոչինչ չի հասկանայ, սակայն եթէ այդ մարդուն ներկայացնենք մի անծանօթ և բարդ մեքենայի գեղեցիկ նկարը, նա դարձեալ ոչինչ չի հասկանայ, բացի դուցէ այն ընդհանուր գաղափարից, որ դա մի մեքենայ պէտք է լինի, ինչպէս որ ,,Haus“ ասած ժամանակը նա կարող է ասել, որ դա մի բառ պէտք է լինի։ Իսկ եթէ այդ մեքենայի պատկերը ներկայացնենք մեքենագէտին և ,,Haus“ բառը գերմանագէտին, նոքա իսկոյն կ՚կապակցեն դոցա հետ իւրեանց մտքերը.և պատրաստ կլինեն բացատրութիւն տալու։

Այսչափ լեզուի և հոգւոյ յարաբերութեան մասին. դառնանք բուն խնդրին։

Որչափ որ պարզ և հասկանալի է նշանացի խօսակցութեան առիթը և ծագումը, այնչափ ևս դժուար է իմանալ բառերի ծագման սկզբնաւիթը, դոցա և արտայայտած գաղափարի մէջ եղած կապակցութիւնը և յարաբերութիւնը։ Շատ սակաւ են այն բառերը, որոնց կապակցութիւնն իւրեանց արտայայտած գաղափարի հետ, գոնէ ըստ երևոյթին, հասկանալի և ըմբռնելի լինի—օրինակ բառաչել (բմ), թըխթըխկացնել (թըխկ-թըխկ), կտցահար (կտցահարող), հոպոպ (հոպ-հոպ ձայնից) և այլն.—իսկ անթիւ այն բառերը, որոնք այժմ բոլորովին կապ չունեն իւրեանց արտայայտած գաղափարի հետ—օրինակ՝ հաց, ջուր, քար և այլն. ինչ կապ ունի «հաց» բառը ջրից և ալիւրից շաղախած ու թըխած զանգուածի հետ, ինչո՞ւ միայն հեղանիւթների համար կարելի է «խմել» բառը գործ դնել և այլն—։ Որ ի սկզբաննէ բառերը չեն յառաջացել միմիայն իւրեանց արտաքին հընչիւնը կապակցելով գաղափարի հետ, ակներև է և այն հանգամանքից, որ նոյն իսկ համր-խուլ ծնուածները, որ երբէք մի որևէ բառ կամ մի որևէ գործողութեան ձայն չեն լսել,

ատում են իւրեանց սեպհական ձգտմամբ և առանց ու-
ցման՝ դասաւորուած հնչիւններ յառաջ կոչել և դոցա
չ նշանակութիւն տալով իբրև բառ գործ դնել [13]: Ակ-
և է, որ այս տեսակ բառերը ներգործում են ոչ թէ իւ-
նց հնչիւնով, այլ արտասանելու յատուկ եղանակով, որ
պակցուած է ձայնի գործարանի որոշ դրութեանց հետ:
յսն որ հնչիւնն ևս սկզբում կանչելու մի միջոց պէտք
ինէր, անվիճելի է. մենք ևս որտեղից որ մի ձայն ենք
մ, այն կողմն ենք դարձնում մեր հայեացքը, որովհետև
եղ լսելու մի բան կայ, այնտեղ կայ և տեսնելու բան.
աքանչիւր ոք դառնում է դէպի խօսողը. մեզ գրաւում է
միայն այն հանգամանքը, որ մէկը խօսում է, այլ նաև,
ինչի մասին է խօսում: Բառի, հնչիւնի և նշանակու-
ան մէջ եղած կապակցութեան ճիշտ ըմբռնումը կարելի է
-ք բերել միայն նախընթաց մտապատկերների հետազօ-
-թեամբ. պէտք է կամ ուսումնասիրել մի որոշ արմատի
հնչիւնի փոփոխութիւնները, կամ թէ տարբեր լեզունե-
մէջ եղած ազգակից հնչիւնները միատեղ հաւաքել և
ա նշանակութիւնը գտնել. առաջին միջոցն աւելի ապա-
է, պէտք է սկսել մի որոշ արմատից և զուգակցաբար
ւել հնչիւնների փոփոխութիւններին: Բառերի նշանա-
թիւնների պատմութիւնը, այսինքն իւրաքանչիւր բառի
ազան նշանակութիւն ստանալու հետազօտութիւնը՝ լե-
ն պատմական հետազօտութեան նպատակներից մէկն է,

---

[13]) Այս մասին Հայնիքէն առաջ է բերում մի քանի հե-
րքիր օրինակներ, որոնցից առնենք մէկը: „Ես ունէի մի 19
ւեկան համր-խուլ ծնուած աշակերտ, որ առաջուց զանազան
ափարների համար գտել էր բառեր և միշտ գործ էր դնում.
ակ նորա լեզուով ուտել (գերմաներէն էսսէն) նշանակում է
ամ“, խմել (գ. տրինքէն)—„շիպպ“, մանուկ (գ. կինդ.)—
ւտտէն“, ոսկի (գ. գոլդ) „պատտին“, և այլն: Տես Hei-
Beobachtungen über Stumme etc. էջ 137.

ուստի և մեր նպատակից դուրս։

Լեզուի զարգացման խնդիրն ուսումնասիրելու համար, բացի նշանացի խօսակցութիւնից, որ իւրաքանչիւր հոգեբանի համար մի արգիւնաւոր աշխատանք է, մենք ունենք և մի այլ ասպարէզ, որ [ոչ] պակաս ուշադրութեան արժանի հետազօտութեան նիւթ է մատակարարում։ Այս ասպարէզն է մանկական լեզուն [14]), թէև խիստպէս ասած՝ մանկանց լեզուն այնպէս չէ զարգանում, ինչպէս որ զարգացել է լեզուն իւր սկզբնական շրջաններում։

Մանուկն իսկական լեզուն սովորում է 2—4 տարեկան հասակից, սակայն նա արդէն առաջուց սկսում է հնչիւններ արտասանել—ինչպէս՝ պա, մա, գու, փու, և այլն—որոնք պարզ զգացումներ են. երբ արդէն այս հնչիւնները կան, այն ժամանակ միայն նա կարող է լեզու սովորել։ Թէև հնչիւններ արտասանելու ձգտումը ժառանգական է, սակայն լեզուի մտապատկերները միշտ նոր պէտք է կազմակերպուին։ Մանկանց լեզուն տարբերւում է հասակաւորների լեզուից. դորա յատկանիշներն են 1) հնչիւնների աղքատութիւն, 2) ձգտումն վանկակրկնութեանց և 3) ձգտումն ձայնի նմանողութեան—onomatopoie—

Մանկանց լեզուն ուսումնասիրելու համար պէտք է միշտ նոցա արտասանած բառերի ծագման մասին տեղեկութիւններ հաւաքել. մանուկն անձամբ չէ ստեղծում բառերը. նորա արտասանած բառերի ծագումը պէտք է որոնել նորա հետ խօսողների մօտ, ուստի և մանկանց իսկական լեզուն ոչ այլ ինչ է, եթէ ոչ նոցա շրջապատողների ստեղծագործութիւն։ Մանկան արտասանած առաջին հնչիւններն ոչինչ նշանակութիւն չունեն նորա համար. բայց նորան շրջապա-

---

14) Պէտք է ասել, որ մանկական լեզուի զարգացման հետազօտութիւնը դեռ ևս նոր ժամանակների ձեռնարկութիւն է և վերջին ատիճանի ուշադրութեան արժանի առարկայ է դարձել։

ողները կամենալով յարմարուել մանկական գիտակցութեան՝ ի որևէ նշանակութիւն են տալիս այդ հնչիւններին և մանուկն ապա թէ սովորում է իւր արտասանած այդ հնչիւններին հետ որոշ մտապատկերներ կապակցել։

Մանկական լեզուի զարգացման դիտողութիւնն այստեղ ընդհատելով—յօդուածիս վերջին մասի մէջ կրկին կ'վերադառնանք այս խնդրին—տեսնենք թէ լեզուի ծագման և զարգացման խնդիրը, պատմութեան ընթացքում, ինչ տեսութիւններ է յառաջացրել փիլիսոփայութեան մէջ։

Պիթագորասից սկսած մինչև այժմ իւրաքանչիւր փիլիսոփայական ուղղութիւն փորձել է այդ խնդրի լուծումը տալ՝ իւր որոշ տեսակէտից. բայց որովհետև այդ փիլիսոփայական ուղղութիւնները միշտ տարբերուել են միմեանցից և այսօր ևս տարբերւում են, հասկանալի է, որ լեզուի ծագման խնդիրն ևս պէտք է տարբեր կերպիւ որոշուէր։ Լեզուագիտութեան պատմութիւնը Յոյների մօտ սկսւում է երկու միմեանց հակառակ տեսութիւններով, որոնց նպատակն էր լեզուի էութեան որոշումը։ Սոկրատէսի և Սոփեստականների ժամանակ Աթէնքում վիճում էին. թէ արդեօք անունները յառաջացել են այն առարկաների ներքին բնութեան կամ յատկութեան համաձայն, որոնց ցոյց էին տալիս, թէ համաձայն մարդկանց սովորութեան՝ միայն արտաքուստ տրուել են առարկաներին։ Առաջին տեսութեան պաշտպանները հիմնւում էին Եփեսացի Հերակլիտոս անունով փիլիսոփայի մտքերի վերայ, որ թէ և այդ կարծիքը բացարձակ չէր արտայայտել, սակայն գործ էր դրել առարկաների անունները՝ նոցա էութիւնը բացատրելու համար։—Մի գործողութիւն, որ բնականաբար թոյլատրելի է միայն այն ենթադրութեամբ, որ առարկաների անունները որոշում են նոցա էութիւնը ճշտօրէն, այսինքն համաձայն իւրեանց ներքին յատկութեան։ Հակառակ տեսութեան կուսակիցները հիմնւում էին Աբդերացի փիլիսոփայ Դեմոկրիտոսի ասածների վերայ, որ այդ ժողովրդական դար-

ձած և Հերակլիտոսի պաշտպանած կարծիքը մերժում էր այն փաստով, որ *տարբեր* առարկաները միևնոյն և միայն մի անուն են կրում, որ *միևնոյն* առարկան տարբեր անուններ ունի և վերջապէս մի քանի առարկաներ *ոչ մի* անուն չունին։ Դեմոկրիտոսը կարծում էր, որ առարկաների անունները յառաջացել են միայն այն պատճառով, որ մարդս սովորութիւն ունի իւր տեսած առարկաներին մի որևէ անուն տալ. այս տեսութեան եզրակացութիւնն այն էր, որ անունները յառաջացել են մարդոց կամաւոր համաձայնութեամբ։

Այս երկու տեսութիւնները հարկաւ խնդիրը չ’լուծեցին և անկարելի ևս էր լուծել այն ժամանակ, քանի որ այժմ ևս—երբ գիտնական հետազօտութիւնն այն աստիճանի զարգացման է հասել, որին յունական փիլիսոփայութիւնը մոտենալ անգամ չ’կարողացաւ—այդ խնդիրը վճռուած չէ և գուցէ դեռ ևս երկար ժամանակ անվճիռ մնայ, որովհետև լեզուի կազմակերպութեան և ծագման ժամանակամիջոցը քննական և պատմական հետազօտութիւնից անձեռնմխելի է և գուցէ կմնայ յաւիտեան [15]։

---

[15]) *Ես իրաւամբ կարող եմ, ասում է հռչակաւոր լեզուագէտ Յ. Գրիմը, լեզուի ծագման հետազօտութեան կարելիութիւնն իբրև պրօբլէմ ներկայացնել, որի յաջողութիւնը շատերին կարող է կասկածելի թուալ։ Խնդիրը լուծելու և մեր կասկածները փարատելու համար պէտք է առաւել սկզբնական ժամանակների պատմութիւնը և լեզուները հետազօտութեան մատչելի լինէին, որովհետև հաւանական է—աւելի ճիշտն ասել՝ հաստատ է,—որ սանսկրիտ կամ զէնդ լեզուի, ինչպէս և եբրայական և այլ սկզբնական սեպուած լեզուների, ամենահին մնացորդները շատ հազար տարիներով յետ են լեզուի իսկական ծագման կամ մարդկային ցեղի ստեղծագործութեան ժամանակից։ Ի՞նչպէս կարելի է այսպիսի մի ահագին անդունդից այն կողմն անցնել և հետազօտել լեզուի ծագումը։ Տես.* Iacob Grimm: Über den Ursprung der Sprache· *էջ* 10—11.

Լեզուաբանական հետազօտութեան ժամանակ մենք ամ-ողջովին պատմական միջավայրումն ենք գտնւում և մեզ յտնի լեզուներից ոչ մէկին չէ կարելի սկզբնական անուա-ել։ Եւ որովհետև դոցանից իւրաքանչիւրը մեզ անյայտ զբնական ժամանակի սերունդներից ստացած մի բան ու-ն, ուստի և մտքերի արտայայտութիւնը յառաջ բերող ոգե-ան զօրութիւնը միշտ կապակցուած է արդէն տուածի կամ ւածի հետ, որ մեզ անծանօթ է։

Այսպէս ուրեմն՝ լեզուի իսկական ծագման պատմու-թիւնն անմատչելի լինելով գիտնական հետազօտութեան, էտք է որ լեզուի ծագման խնդիրն ևս չ'ենթարկուէր քըն-ական դատողութեան և այդ խնդրի մասին յայտնուած բո-ր տեսութիւններն ևս ոչինչ արժէք չպէտք է ունենային միայն վերացական ենթադրութիւններ լինէին, եթէ այլ նապարհ չ'գտնէինք այդ խնդիրը քննադատութեան են-արկելու։

Սակայն արդէն տեսանք, թէ լեզուն ինչ յարաբերու-եան մէջ է գտնւում մարդկային ոգու հետ. այդ տեսակէ-ից արդէն ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ քննելով հետազօտելով մեր ներքին, ոգեկան կեանքը, դորա հետ միասին հետազօտած կլինենք նաև լեզուի գլխաւոր էու-թիւնը։ Այսպիսով լեզուի ծագման խնդիրը պատմական աս-արեզից փոխադրւում է հոգեբանական շրջանը և հոգեբա-ական հետազօտութիւնը միայն կարող է առաւել պայծառ յս ձգել այդ խնդրի վերայ [16]։

[16]) Եթէ մի հայեացք ձգենք լեզուի ծագման խնդրի վերայ, տեսնենք որ դորան լուսաբանելու համար պէտք չեն ո՛չ պատ-ական յիշատակարաններ և ոչ դատարկ ենթադրութիւններ— պօտէզ—այլ միայն պէտք է մեր սեպհական էութիւնը հետա-ենք, մեր հոգւոյ խորքերը թափանցենք՝ լեզուի ծագումն այդ-եղ գտնելու համար, որովհետև լեզուն ինչպէս որ մեր մէջն է առաջանում, նոյնպէս և յառաջացաւ այն վայրկեանին, երբ

Լեզուի ծագման խնդիրը վերաբերում է հոգեբանութեան հետազօտութեան շրջանին, սակայն այնուամենայնիւ պատմականը բոլորովին մերժել անկարելի է. որչափ որ հոգեբանական գիտութիւնը խորը թափանցէ մարդկային ներքին աշխարհը և հետազօտէ հոգեկան երևոյթները, այնչափ ևս աւելի պայծառ կերպիւ կ'լուսաւորուի պատմականը, որ իւր կողմից դարձեալ կ'նպաստէ հոգեկանի հետազօտութեան։ Հոգեբանութիւնը գործ ունի առաւելապէս անհատների հետ. երբ արդէն բազմաթիւ փորձեր կատարուել են անհատների վերայ և հոգեբանական օրէնքներ որոշուել, այն ժամանակ միայն այդ օրէնքները մի տեսակ ընդհանուր բնաւորութիւն են ստանում. իսկ պատմական քննութեան ասպարէզը սկզբից արդէն անհատների հաւաքածուն, ընդհանուրն է։ Ինչպէս որ հոգեբանական հետազօտութեան նըպատակը մարդուս ներքին ա խարհի, հոգւոյ ուսումնասիրութիւնը պէտք է լինի, նոյնպէս և ճիշտ պատմական հետազօտութեան նպատակը պէտք է լինի, ո՛չ թէ անհատի, այլ ընդհանուրի ոգեկան զարգացումն ուսումնասիրել և նորա կազմակերպութեան աստիճանները պարզաբանել [17]։

Համառօտակի յառաջ բերենք լեզուի ծագման չորս դը-

---

մարդս իւր ոտքն երկրի վերայ կոխեց—լինէր դա մի զոյգ, թէ շատ զոյգեր, միաժամանակ և միևնոյն տեղը, թէ տարբեր տեղեր և զանազան ժամանակներում։ Տես. H. Steinthal: Der Ursprung der Sprache etc. եջ 14.

17) Նախապատմական ժամանակի հետազօտութիւնն ամբողջովին կախումն ունի անհատական և ընդհանուր լեզուի զարգացման ընթացքի բաւականացուցիչ բացատրութիւնից՝ ըստ պատմական հիմանց, որովհետև միայն պատմութեան մէջ կարող ենք ձեռք բերել առողջամիտ, այսինքն մտածուած և պտղաւէտ գաղափարաձևեր (kategorien)։ Նախապատմական այրերի մէջ ամենայն ինչ մութը կմնայ, եթէ մենք պատմութեան լուսով չկարողանանք լուսաւորել դոցա։ Տես. Lazarus: Geist und Sprache. եջ 12. ծանօթ. ա.

ւոր տեսութիւնները, որոնք են. ա) վերացական կամ
աշքի տեսութիւնը—Թէօրիան— բ) գիտի, գ) դիպուածի
դ) աստիճանաբար զարգացման կամ գենետական տեսու-
իւնները։

ա) Վերացական կամ հրաշքի տեսութիւնը։

Աւանդական և իւր ծագումն առաւելապէս եկեղեցա-
ոններից առնող այս տեսութիւնը բացատրում է, որ լե-
ուն, ինչպէս այն ամենն, որ մարդուն անասուններից գե-
ազանց դիրք է տալիս, անմիջապէս տրուած է շնորհիւն
ստուծոյ։ Ի հարկէ այդ սկզբնական լեզուն համարւում է
ոլորովին կատարելագործուած, ինչպէս որ կատարեալ էր
արդը նոյն իսկ ստեղծման ժամանակ։ Այս տեսութեան յա-
աջանալու գլխաւոր առիթն եղել է լեզուի վսեմութիւնը
գործնական բարձր նշանակութիւնը։ Եթէ ի նկատի ու-
ենանք լեզուի գեղեցկութիւնը, ոյժը, զօրութիւնը, զանա-
անակերպութիւնը և երկրագնտի ամենայն կողմերում տա-
ածուիլը, այն ժամանակ անհասկանալի չի լինի թէ ինչո՞ւ
յս տեսութիւնը դորան մարդկային կարողութիւնից վեր
ռեղծագործութիւն է համարում և անմիջական Աստուա-
ային ծագումն տալիս։ Լեզուն ևս, ինչպէս Աստուծոյ միւս
ոեղծագործութիւնները—մարդ, անասուն, բոյս —, բաժան-
ւում է զանազան ցեղերի, տեսակների և ընտանիքների։
աջող հանգամանքների մէջ լեզուն ծաղկում և բարգաւա-
ւում է ինչպէս ծառը պարարտ հողի մէջ և տարածում
ր ճիւղերն ու արմատները դէպ ամենայն կողմը. իսկ ան-
յջող հանգամանքներում անփոյթ մնալով և խառնուելով
լլ տարրերի հետ, լեզուն կորցնում է իւր գեղեցիկ յատկու-
իւնները, ինչպէս որ մի անտէր թողնուած արտ՝ հետզհե-
է խառնուելով որոմի հետ աներևոյթանում և կորցնում
իւր նշանակութիւնն իբր արտ։ Արդեօք ո՞վ և ի՞նչն այն-
իսի դիւթիչ զօրութիւն ունի, ինչպէս լեզուն. դորա մի-

միայն մի խօսքը բաւական է մարդուս ամենադառնացած և թշուառ սիրտն ու հոգին ամոքելու, սակայն միւս կողմից նաև ամենախաղաղ և երջանիկ սիրտն ալեկոծելու և ոգին վրդովելու։

Կրկնում ենք, որ այս բոլորն աննշան պատճառներ չեն, որ մարդոց առիթ տուեցին լեզուի ծագումը մարդկային շըրջանից դուրս հանել և գերմարդկային զօրութեան նուիրել։ Թէ ինչպէս կարողացաւ առաջին մարդը, որ լեզու չունէր, լեզուի միջնորդութեամբ իւրեան հաղորդուած լեզուն ըմբռնել և հասկանալ— ահա այդ է հարցը [18]։

բ) *Գիւտի եւ գ) ղիպուածի տեսութիւնները* [19]։

Բոլորովին հակառակ առաջին տեսութեան հանդիսանում է փիլիսոփայական այն ուղղութիւնը, որ լեզուն համարում է մարդկային ստեղծագործութիւն և մերժում աստուածային օժանդակութիւնը։ Ըստ այս տեսութեան մարդս կարող էր իւր բնական ձիրքով, առանց աստուածային օժանդակութեան, գտնել լեզուն, ինչպէս որ գտաւ գիրը։

Ուշադրութեան արժանի է այն հանգամանքը, որ սուրբ

---

[18]) Լեզուի աստուածային ծագումը պաշտպանողներին դըժուարութեան մէջ դնող խնդիրներից մէկը հետևեալն է. արդեօք Աստուած ի՞նչ առարկաների, ի՞նչ հոգեկան բովանդակութեան համար բառեր սովորեցրեց մարդուն. արդեօք մարդս ստացա՞ւ նոյնպէս այն կենդանիների անունները, որոնք յետոյ յերևան եկան. արդեօք յետոյ գտնուած գործիքների և այլ բազմաթիւ իրեղէնների համար արդէն պատրաստի բառեր կային. . .: Տես. Lazarus նոյն հատ. II. էջ 15.

[19]) Այս երկու տեսութիւնները, որոնք լեզուն համարում են մարդու ստեղծագործութիւն, տարբերւում են միմեանցից այն հանգամանքով, որ առաջինն ընդունում է լեզուն իբրև բնութեան և հարկի պահանջ—ինչպէս կենդանիների ձայները—երկրորդը լեզուն համարում է արդիւնք կամայականութեան և դիպուածի։

*գիրքը վկայում է թէ լեզուն ո՛չ թէ Աստուծոյ, այլ մարդկային գործ է. Մովսէսի ա. գրքից յայտնի է, որ Աստուած ժողովում է իւր բոլոր ստեղծած կենդանիներին, թռչուններին, սողուններին և այլն առաջին մարդու մօտ, որպէս զի տեսնէ թէ նա ի՛նչ անուններ կ'տայ դոցա։ Ադամ իւրաքանչիւրին մի անուն է տալիս և այդ անունները մնում են իբրև մշտական կոչումներ բոլորի համար* [20])։

*Լեզուի ծագումը բացատրել միայն ձայների կամ հնչիւնների նմանողութեամբ, նոյնպէս անյաջող փաստաբանութիւն է, որովհետև ամենասկզբնական դրութեան մէջ մարդըս այդ ևս անկարող էր անել. դա առաւել յետագայ ժամանակների արդիւնք է և միայն երկրորդական տեղ է բըռնում լեզուի զարգացման ընթացքում։ Այս տեսութիւնն ինքն ըստ ինքեան ենթադրում է, որ մարդս մի ժամանակ կենդանիների նման զուրկ էր լեզուից և ապա դիպուածով*

---

[20]) *Եւ ստեղծ ևս Տէր Աստուած զամենայն գազանս վայրի և զամենայն թռչունս երկնից և էած զնոսա առ Ադամ, տեսանել զինչ կոչեսցէ զնոսա։ և ամենայն շնչոյ կենդանւոյ, զինչ և անուանեաց Ադամ, այն անուն է նորա։ Եւ կոչեաց Ադամ անուանս ամենայն անասնոց. և ամենայն թռչնոց երկնից. և ամենայն գազանաց վայրի։ Գիրք Ծննդոց. գլխ. բ.* 19, 20։

*Գերմանացի Հ ե ր դ ե ր փիլիսոփան, որ առաջ լեզուի ծագման այս երկրորդ տեսութեան գլխաւոր ներկայացուցիչներից մէկն էր—վերջը փոխեց իւր կարծիքը և եղաւ հետևող ա. տեսութեան—բացագանչում է սուրբ գրքի այս տողերի վերաբերութեամբ. „Հարցնում եմ, թէ արդեօք այս ճշմարտութիւնն երբ և իցէ ըստ արևելեան ոճի առաւել ազնիւ և գեղեցիկ կերպիւ կարելի՞ էր ասել, քան թէ. Աստուած առաջնորդեց բոլոր կենդանիներին մարդու մօտ, որպէս զի տեսնէ թէ նա ի՛նչ անուններ կտայ նոցա և որպէս զի միևնոյն անունով կոչուին ընդ միշտ։ Ի՞նչպէս կարելի էր, ըստ արևելեան, ըստ բանաստեղծական ոճի առաւել որոշ ասել թէ՝ մարդս ինքն իւր համար լեզու գտաւ, կենդանի բնութեան հնչիւններից"։*

կամ թէ հարկից սովորած ուշադրութիւն է դարձրել իւր կամ իւր նմանների արձակած ձայնի վերայ և հասկացողութեամբ գործ դրել իւր լեզուի գործարանները։ Սակայն այստեղ ևս մութն է մնում այն խնդիրը՝ թէ արդեօք կարելի էր առանց լեզուի՝ հասկացողութեամբ և մտածելով գործել ու այլոց հետ հաղորդակցութիւն ունենալ։ Աւելի պարզ ասել. մարդս քանի որ լեզու չունէր, կարո՞ղ էր խելք ունենալ. թէև այս հարցման պատասխանը բացասական է. սակայն նոյնպէս անկարելի է դրական պատասխան տալ այն հարցման, որ ուղիղ դորա հակապատկերն է ներկայացնում, այսինքն, մարդս կարո՞ղ էր լեզու ունենալ, քանի որ խելք չունէր։ Առանց խելքի լեզուն չէ իսկական լեզու, այլ միայն զգացումն արտայայտող հնչիւն. իսկ միմիայն զգացման հնչիւնները չեն կարող լեզուի ծագումը բացատրել. դոքա նման են կենդանիների լեզուին։ Սակայն մարդկային լեզուն անկարելի է մինչև իսկ համեմատել կենդանիների ձայների հետ։ Բնութիւնն իւրաքանչիւր կենդանու մէջ յառաջացրել է՝ իւր արտաքին կազմուածքին յատուկ ձայն և կենդանին արտայայտում է այդ ձայնն առանց սովորելու, իսկ լեզուն մարդուս համար սկզբնական չէ [21]։ Եթէ մի հայ մանուկ իւր ծննդից անմիջապէս յետոյ տանենք մի այլ օտարախօս

---

21) Վերցրէք ձուից նոր դուրս եկած մի թռչնակ և կերակրեցէք նորան մի այլ տեղ, միայնակութեան մէջ, ուր նա անկարող լինի իւր տեսակների հետ յարաբերութիւն ունենալ. չնայելով դորան, նա կարտայայտէ այն բոլոր ձայները, որ յատուկ է իւր նմաններին, որոնց հետ նա երբէք չէ եղել և նոցա երգը չէ լսել։ Կենդանեաց իւրաքանչիւր ցեղի ձայնը միշտ մնում է միակերպ և անփոփոխ. շունը հաջում է այսօր ևս նոյն եղանակով, ինչպէս որ հաջում էր ստեղծագործութեան միջոցին և միևնոյն ծլվլոցով է դէպի վեր սլանում այսօր արտոյտը, ինչպէս որ շատ հազար տարիներ առաջ։ Տես. Grimm: Über den Urspung etc. էջ 15.

երկիր, կամ յանձնենք օտարախօս անձի խնամակալութեան, նա մի քանի ժամանակից յետոյ կսկսի խօսել, բայց ո՛չ Հայերէն, այլ իւր խնամակալի լեզուով. իսկ եթէ նորան բոլորովին միայնակ թողնենք, նա չի կարող խօսել։ Իւրաքանչիւր լեզուի առանձնայատկութիւնը կախումն ունի այն տարածութիւնից և ժամանակից, որի մէջ մարդս ծնւում և դաստիարակւում է. տեղն ու ժամանակը առիթ են մարդկային լեզուի փոփոխութեանց. դորանով կարելի է բացատրել մի և նոյն ծագումն ունեցող լեզուների տարբերութիւնները [22]։

Մարդկային լեզուն ո՛չ պատրաստի կերպիւ է տրուել նորան և ոչ ևս նորա գիւտն է [23]), ուստի և կենդանեաց ձայնի հետ անհամեմատելի. միայն մի հանգամանք երկուսի համար ևս ընդհանուր է, այդ է. մարմնի կամ առաւել ևս լեզուի գործարանների անհրաժեշտութիւնը։

դ) *Լեզուի աստիճանաբար զարգացման տեսութիւնը:*

Արդեօք լեզուն հարկի՞ց ստիպուած թէ կամայական կերպիւ է յառաջացել, արդեօք աստուածայի՞ն թէ մարդկային ստեղծագործութիւն է. մենք կարող ենք այս հարցումներին պատասխանել այսպէս. *լեզուն յառաջացել է ուղիղ այնպէս, ինչպէս որ ոգին, եւ մի եւ նոյն ծագումն ունի*։ Միտքը և լեզուն մեր սեպհականութիւնն է, սակայն այնուամենայնիւ մենք պէտք է նախ դոցա ուսանենք։ Լեզուն մարդուս գոր-

---

[22]) Այսօրուայ Շիրակեցին և Ղրիմի ու Նոր-Նախիջևանի հայը հաղիւ թէ միմեանց հասկանան, այն ինչ երկուսն ևս ոչ շատ ժամանակ առաջ միևնոյն բարբառն էին յօրջօրջում։

[23]) Եթէ լեզուն մի գիւտ լինէր, այն ժամանակ մարդկային իմաստութիւնն առաւել մեծ պէտք է լինէր այդ գիւտից առաջ քան այժմ. նոյնը կարող ենք ասել և գրի մասին։ Տես. Geiger: Über die Entstehung der Schrift. Zeitschrift d. d. morg. Gesel. հատոր 23 էջ 173.

ծարանական և ոգեկան բնութեան երկը, հոգւոյ անհրաժեշտ և ազատ գործունէութեան հետևանքն է։

Ահա այդ համառօտ նախադասութեանց մէջ է ամփոփուած լեզուի ծագման ու աստիճանաբար զարգացման տեսութիւնը, որ համապատասխանում է ներկայիս փիլիսոփայական գիտութիւնների ուղղութեան և ընթացքին։ Այս տեսութիւնը վերջապէս ոյժ ունեցաւ յետ մղելու լեզուի գերմարդկային կամ պատահական սկզբնաւորութեան տեսութիւնները, որ դեռ ևս անցեալ դարու վերջին կիսին տաք վիճաբանութեան առիթ էին տալիս փիլիսոփաներին, թէև այն երկու գիտութիւններն ևս, որոնցից կարելի էր այս խնդրի լուծումը սպասել, հազիւ թէ ըմբռնել էին աստիճանաբար զարգացման միտքը։ Ներկայումս անցեալ դարու հայեացքները լեզուի էութեան և ծագման մասին ընդունելի չեն կարող լինել, որովհետև նորանք անպայման ենթադրում էին, որ լեզուն նոյն իսկ սկզբից կատարելագործուած էր. վէճը միայն նորանումն էր՝ թէ արդեօք այդ պատրաստի գործն Աստուած տուեց մարդուն, թէ նոյն իսկ ինքը, մարդը գտաւ [24]։ Լեզուի փիլիսոփայութեան այս սխալ հայեացքն առաջին անգամ կատարելապէս ըմբռնեց Վիլհէլմ ֆօն Հումբօլտը. նա բացատրեց, որ լեզուն մտքի սկզբնապատճառը և միևնոյն ժամանակ նորա ազդեցութիւնն է. նա չէ մի պատրաստի գործիք, որ ամեն ցանկացածի համար ծառայէ. այլ նա նոյն իսկ ոգեկան գործունէութեան մէջն

24) *Հ ե ր դ ե ր փիլիսոփան եղաւ այս երկու ուղղութեանց ներկայացուցիչը. նա իւր երիտասարդական աշխատութեան մէջ —* „Über den Ursprung der Sprache“ *ապացուցանել է ձգտում, որ լեզուն մարդկային գիւտ է, սակայն իւր վերջին աշխատութեանց մէջ —* „Ideen zur Philosophie der Geschichte“, „Die älteste Urkunde des Menschengeschlechts“ *և այլն գրուածներում — նա թողեց այդ տեսութիւնը և ընդունեց լեզուի աստուածային ծագումը։*

և այդ գործունէութեամբ է միայն շարունակաբար եղծւում և կատարելագործւում։ Լեզուի խակական սկըզ-ական ծագումը մեր անմիջական դիտողութեան չէ են-րկւում, ուստի և իւրաքանչիւր լեզուի ծագման խ-կան պատմութիւնը կարելի չէ վերականգնել։ Մենք կա- ենք միայն լեզուի զարգացման հոգեբանական օրէնք-ն ուսումնասիրել, որովհետև լեզուն զարգանում է ն խսկ իւրաքանչիւր անհատի մէջ—հարկաւ այն շրը-պատողների ազդեցութեան ներքոյ, որոնց լեզուն նա ղհականում է։ Անհատների մէջ մտքերի հաղորդակցու-ան ընդունակութիւնը զարգանում է անկախ այդպիսի դեցութիւնից՝ միայն այն ժամանակ, երբ դոքա խօսել սրողանալու դժբաղդութիւնն են ունենում, որովհետև ժամանակ դոցա լսելեաց զգայարանը փակուած է մը-ւմ արտաքին աշխարհի համար։ Մանկական լեզուի զար-ցումը և համր-խուլերի նշանացի խօսակցութիւնը լեզուի րգացման այն հանգամանքներն են, որոնք ընդ միշտ տչելի են հոգեբանական դիտողութեանց։ Երբ այս դիտո-թեանց միջնորդութեամբ արդէն ծանօթացել ենք այն երի հետ, որոնք նպաստում են լեզուի զարգացման, այն ժա-նակ կարող ենք պարզել այն խնդիրը՝ թէ ի՞նչ յարաբերու-ան մէջ են գտնւում խօսելու և մտածելու կարողու-ւնները։

Անլեզու ծնուած մանուկն իւր կեանքի առաջին տարի-ում արդէն ձեռք է բերում խօսելու և հասկանալու կա-ւթիւն։ Թէև չէ կարելի այս գործողութիւնը—պրօցէսը հաւասարեցնել լեզուի սկզբնական ծագման գործողու-ան, սակայն եթէ կարողանայինք այն բոլոր արտաքին դեցութիւնները հեռացնել, որոնք մանկական լեզուի զար-ցման միջոցին ներգործում են, կարող էինք յուսալ՝ այսօր գտնել այն սաղմը, որից երբեմն յառաջացել է լեզուն։ կայն արտաքին ազդեցութեանց հեռացնելը սահմանա-

փակւում է մի որոշ աստիճանով, որովհետև նոյն իսկ այն ժամանակ, երբ դեռ ևս մանուկը զուրկ է արտայայտելու միջոցից, այդ ազդեցութիւնները տեղի են ունենում և ձգտում, որ մանուկը մի և նոյնը կրկնէ. ուստի և դժուար է որոշել մանկան արտասանածից՝ թէ ո՛րն է իւր սեպհականը և որն արտաքուստ ընդունածը։ Թէև մանուկն իւր առաջին հնչիւնները ինքնուրոյն կերպիւ է արտասանում, սակայն լեզուի գործարանի այս առաջին փորձերը լեզուի նշանակութիւն չունին. այդ ձայներն ըստ մեծի մասին արտայայտւում են առանց որ և է արտաքին պատճառի, յաճախ՝ երբ մանուկն առանձին է, կամ ուրախ տրամադրութեան մէջ՝ քնելուց առաջ կամ արթնանալուց յետոյ։ Այս հնչիւններն, որ պատահմամբ նմանութիւն ունեն մի քանի հնդկա-գերմանական արմատների հետ—օրինակ դա, գա, մա, և այլն—ցոյց են տալիս, որ մարդ արդէն իւր կեանքի սկզբներում ձգտում է չափաւոր ոյժ ունեցող զգայումներ արտայայտել ձայնի միջոցով։ Թէև այս առաջին արտասանած ձայները լեզուի արտայայտութեան նշանակութիւն չունեն, սակայն ապագայում սկսուող լեզուի զարգացումը ծառայեցնում է այդ ձայներն իւր նպատակների համար։ Արդէն վաղուց նկատուել է, որ լեզուի զարգացումը սկսւում է այն ժամանակ, երբ մանկան մէջ յերևան է գալիս նմանողութեան կամ հետևողութեան ձգտումը. բայց որովհետև միշտ ուշադրութիւն է դարձնւում միայն մանկան արածի վերայ և ո՛չ այն անձի վարման, որի առաջնորդութեամբ մանուկը ստանում է իւր ոգեկան զարգացման առաջին աստիճանները, այդ պատճառով և չէ նկատւում, որ նմանողութեան ձգտումը ո՛չ թէ միայն մանկան կողմից է յառաջանում, այլ նաև այդ առաջնորդի։ Նմանողութիւնը տեղի է ունենում երկու կողմից ևս փոխադարձաբար։

Մանուկն իւր շարժումներն և որչափ կարող է, նաև լեզուի հնչիւնները նմանեցնում է իւր շրջապատողների շարժմանց և ձայներին. իսկ մանկան շրջապատողներն ևս իւ-

անց ցանկացածը, մանկան հասկանալի անելու համար՝
անում են նորա արտասանութեան եղանակին։ Եւ
ա-պա», «մա-մա», «ա-փու», «դէ-դա» խօսքերը—փոխա-
կ «հայր» և «մայր» — անկասկած առաջացել են այդ
խադարձ դաստուութիւնից։ Դոքա պատկանում են
ն սկզբնական արտասանուած հնչիւններին, որոնց մա-
ւկն արտայայտում է առանց մի որ և է որոշ նպատակի.
դ ձայներն ամենահասարակներն են և այդ պատճառով
կ սովորաբար սկզբնականը։ Եթէ աչքի առաջ ունենանք
ն ձգտումը, որ ծնողները ցանկանում են մանկան արտասա-
ծ սկզբնական բառերի շարքում գտնել նաև իւրեանց անուն-
ը, այն ժամանակ հասկանալի կլինի թէ ինչու նոքա
նկան արտասանած «մա» և «պա» պարզ ձայների կրկնու-
անը տուել են իւրեանց կոչման նշանակութիւնը։ Այս
ատճառով սխալ կլինէր, եթէ ասէինք, որ մանուկն այդ
արզ հնչիւններին ինքն է մի որ և է նշանակութիւն
ւել։ Նա յառաջ է բերել միայն հնչիւնները. իսկ այդ
չիւնների գործադրութիւնը լեզուի հաղորդակցութեան նը-
ատակի համար, պատկանում է մանկան շրջապատող-
րին։

Մանկանց շրջանին պատկանող այլ շատ բառերի նշա-
կութիւնը, որ համարւում էր նոյնպէս մանկանց գիւտ,
ծ մասամբ նոցա շրջապատողների ստեղծագործութիւնն է։
ս կարծիքը պարզապէս հաստատում է այն իրողութիւնը,
զանազան ազգերին պատկանող մանուկների սկզբնական
չիւնները տարբեր նշանակութիւն ունեն. նոյն իսկ կենդա-
ների, նոցա ձայնի նմանողութեամբ առնուած, անունները
րբերւում են միմեանցից. գերմանացի մանուկը շանը
նչում է «վաու-վաու», ձիուն «դա-դա», հաւին «տուկ-տուկ»
մ «հու-հու» և այլն. հայ մանուկը կանչում է դոցա
ւ-աւ», «հաչու» կամ «դահ-դահ», «ջուջու» և այլն—։

«Մամ», «համ», «հափու» բառերն ինքն ըստ ինքեան

 են յառաջանում, երբ մենք ուտելու շարժողութիւն անելիս ցանկանայինք մի ձայն ևս արտայայտել․ և որովհետև «ուտել» բառը դժուար է մանկան արտասանութեան համար, հասկանալի է, որ մայրը կամ ծծմայրը այդ ձայնի շարժողութեանը տար ուտելու գաղափարը։ Այսպիսով մի կողմից մանուկներն առնում են իրենց շրջապատողների շարժողութիւններն ու հնչիւնները, իսկ միւս կողմից մանկան շրջապատողներն առնում են նոցա դիպուածական ձայներն և մի որոշ նշանակութիւն տալիս նոցա։

Մանուկն ոչ թէ միայն աշխատում է իւր լսած ձայնի նմանութեամբ հնչիւններ արտայայտել, այլ և ուշադրութիւն է դարձնում արտաքին շարժողութեանց վերայ և մասամբ դէմքի գծագրութեամբ, մասամբ ևս նշանացի անելով սովորում է դոցա նման շարժողութիւններ ինքն ևս արտայայտել։ Որ մանուկը նշանացի շարժողութիւնը կամ խօսակցութիւնն աւելի շուտ է հասկանում քան բառերը, մի յայտնի իրողութիւն է․ ով որ դէպք է ունենում մանկան հետ խօսակցելու, նա կարծես ակամայ նշանացի շարժողութեան օգնութեան է դիմում, որպէս զի շուտով հասկացնի նորան իւր ասածը։ Նշանացի շարժողութիւնը ծառայում է իբրև թարգման և մանուկը դորանից է ուսանում բառերի նշանակութիւնը։ Նոյն եղանակով և մենք հասկանում ենք մանկանց․ նոցա փոքրիկ ցանկութիւնները և կարծիքները մենք չենք գուշակում նոցա սկզբնական, նշանակութիւնից զուրկ արտասանած ձայներից, այլ այն նշանացի շարժողութիւններից, որոնք միացած են այդ ձայների հետ։

Մանկան սկզբնական լեզուն է նշանացի շարժողութիւնը, որ շատ անգամ կապակցւում է դիպուածական հնչիւնների հետ․ այդ շարժողութիւններից մի մասը մանուկն առնում է իւր շրջապատողներից, միւս մասն ևս ստեղծում է ինքնուրոյն կերպիւ․ սակայն այդ երկու մասերի միմեանցից տարբերելը շատ դժուար խնդիր է։ Օրինակ՝ անկարելի է

մենայն ճշտութեամբ որոշել՝ թէ արդեօք առարկաները մա-
ով ցոյց տալու շարժողութիւնը մանուկն ինքն է գտնում
է վերցնում է իւր շրջապատողներից, թէև հաստատ է,
իւրաքանչիւր մանուկ, երբ մտնում է լեզուի զարգաց-
ան սկզբնաւորութեան շրջանը, հասկանում է այդ շարժո-
ւթիւնը։ Մատնացոյց անելու շարժողութիւնը մեծ դեր է
աղում՝ լեզուի զարգացման ընթացքում. եթէ մենք այն
առարկան, որի անունը բառով արտասանում ենք, մատով
ոյց չտանք մանկան, նա երբէք այդ բառի նշանակութիւ-
 չի կարող ըմբռնել [25]: Իւրաքանչիւր կայտառ մանուկ
ատով մատնացոյց է անում այն առարկան, որ գրաւում է
ր ուշադրութիւնը։
Նշանացի շարժողութեան նշանակութիւնը յերևան է
ալիս նաև այն դէպքում, որ մանկան սկզբնական մտքերը
ամ նախադասութիւնները միշտ կցուած են լինում նշանա-
 շարժողութեանց հետ։ Երբ բառի և մտապատկերի կա-
պկցութիւնն աստիճանաբար առաւել ամրապնդւում է, յա-
աջանում է գիտակցութեան այն դրութիւնը, որի մէջ
ռան և իւր նշանակութիւնն այնպէս են միմեանց ծած-
ւմ, որ մենք բառի մէջ տեսնում ենք նոյն իսկ առարկան։
Նշանացի խօսակցութիւնը նմանւում է մանկական լե-
ւին, սակայն աւելի հարուստ և զարգացած է, թէև իս-
կան լեզուից շատ յետ է մնում։ Մինչդեռ ձայնով ար-
այայտուող լեզուի վերայ մարդկային միտքն աշխատել է
ադադար հազարաւոր տարիների ընթացքում, նշանացի խօ-
կցութիւնը վերածնւում է միշտ նորից, երբ մարդուս հա-
ր ձայների աշխարհը գոյութիւն չունի կամ թէ արտաքին
լ պատճառներ հարկադրում են նորան երևակայութեան

[25]) Հոգեբանական այս երևոյթն է առիթ տուել նաև ման-
վարժներին՝ տարրական դպրոցներում մտցնելու „նկատողական
ուսմ" կոչուած առարկան։

համր նշաններին դիմելու։ Նշանացի խօսակցութիւնը մարդկային հոգւոյ երբէք չդադարող և լեզու արտայայտող գօրութեան ապացոյցն է։

Լեզուի՝ մի անգամ տեղի ունեցած, ձայնի և նշանակութեան յարաբերութիւնը վաղուց արդէն անյայտացել է, այնպէս որ բառերը դարձել են կամայական արժողութիւն ունեցող դրամներ, որ ընդունակ են փոխուելու. իսկ նշանացի խօսակցութիւնը, որ զգայարանական գործողութիւն է, հազիւ կարող է շեղուել իւր սկզբնական նշանակութիւնից։ Սակայն այն ոյժը, որով մի նշանացի շարժողութիւն յառաջ է կոչում մեր մէջ իւր համապատասխան մտապատկերը, տալիս է նորան մի այնպիսի կենդանութիւն, որ մենք կարող ենք երևակայել այն բնական ոյժը, որ լեզուի զարգացման սկզբնական աստիճաններում ունէր իւրաքանչիւր արտասանած խօսք։

Թէև մարդիկ շատ անգամ ստեղծում են արուեստական նշանացի շարժողութիւններ—օրինակ՝ համր-խուլերի դաստուութեան համար՝ վերացական գաղափարներն արտայայտելու—սակայն դոքա նշանացի խօսակցութեան բնական մասերը չեն, չնայելով իւրեանց յարմարութեան։ Այդ արուեստական կերպիւ գրած նշանացի շարժողութիւններն այն ժամանակ միայն լաւ և ընդունելի կարող են լինել, երբ ըստ կարելոյն հետևեն այն սկզբունքին, որի վերայ հիմնւում է բնական նշանացի շարժողութիւնը։ Դոքա նմանւում են արուեստական կերպիւ յառաջացած բառերին, որոնք ընդունելի կարող են լինել, երբ գոնէ համապատասխանեն լեզուի ներքին ոգւոյն։ Նշանացի խօսակցութիւնը վերին աստիճանի հետաքրքրական է, որովհետև դորա մէջ ենք գտնում լեզուի սկզբնական զարգացման տարրերը։ Լեզուի մէջ այն բառերի թիւը, որոնք իսկապէս ցոյց են տալիս իւրեանց ձայնի և նշանակութեան մէջ եղած սկզբնական յարաբերութիւնը, այնչափով է պակասել, որչափով որ լեզուն զարգացել

դարձել է մտքի կատարեալ գործիքը. դոքա կազմում են Հատ
ւ կտոր յիշատակներն այն Հեռու անցեալի, երբ իւրաքանչիւր
առի մէջ մարմնացած էր մի կենդանի մտապատկեր։

Նշանացի շարժողութեան մէջ այսօր ևս ամեն բան
ւր լիակատար նշանակութիւնն ունի, նա յառաջանում է
իշտ նորից՝ ոգւոյ այն լեզու կազմակերպող զօրութիւնից,
ր դեռ ևս չէ անյայտացել։ Կարելի է ենթադրել, որ լե-
ուի սկզբնական ժամանակներում նշանացի շարժուածքը մե-
ապէս նպաստել է Հնչիւնների նշանակութեանց ամրապըն-
ուելուն։ Մարդու սկզբնական խօսակցութեան մէջ լեզուի
նչիւնը կարող էր արտայայտիչ շարժողութեանց շարքի մի-
իայն մի մասը լինել. նոյն գործողութեան դժգոյն պատ-
էրը կրկնւում է մանկական լեզուի զարգացման ժամանակ.
յստեղ նշանացի շարժուածքը Հանդիսանում է իբր օժան-
ակիչ միջոց մանկան Հասկանալու կամ թէ նորան Հասկա-
ալի լինելու Համար։

Զնայելով որ նշանացի խօսակցութիւնն ինքն ըստ ին-
եան մի անկատար գործիք է, այնուամենայնիւ կասկածե-
է՝ թէ արդեօք առանց մեր մարմնի օժանդակիչ շարժո-
ւթեանց երբ և իցէ կարո՞ղ է մի լեզու յառաջանալ։ Այն
արցման՝ թէ արդեօք կարո՞ղ էր առանց Հնչիւնների մի լե-
ու զարգանալ, բնութիւնը տալիս է մեզ մի դրական պա-
ասխան Համր-խուլերի նշանացի խօսակցութեամբ։ Իսկ այն
արցման՝ թէ արդեօք առանց այդ արտայայտիչ շարժողութեանց
արո՞ղ էր ձայներով կապակցուած լեզու զարգանալ, բնու-
իւնը չի կարող պատասխանել, որովՀետև՝ իւր ներքինն
րտաքին շարժողութեանց մէջ պատկերացնելու ընդունա-
ւթիւնը մարդուս սեպՀականութիւնն է և աւելի ընդՀա-
ուր քան նոյն իսկ լեզուն։

Լեզուի զարգացման այդ անկատար սկզբնաւորութիւնից
արող ենք առ սակաւն այն եզրակացութեան գալ՝ որ այժ-
եան մարդու մէջ դեռ ևս չէ անյայտացել լեզու արտա-

դրող զօրութիւնը. այլ վճռական եզրակացութիւններ անել կարող էր չափազանցութիւն լինել։ Սակայն նոյն իսկ այդ եզրակացութիւնը կատարելապէս բաւական է՝ բացատրելու մի խնդիր, որ լեզուի զարգացման հոգեբանական հետազօտութեան համար ծանրակշիռ նշանակութիւն ունի. այդ խնդիրն է՝ թէ արդեօք ինչ բնաւորութիւն ունեն այն ոգեկան ուժերն, որ գործում են լեզուի զարգացման միջոցին։ Եթէ համր-խուլի նշանացի խօսակցութեան և նոյն իսկ մանկական լեզուի զարգացման միջոցին այսօր ևս իշխում են միևնոյն ձգտումներն, որոնցից մի անգամ յառաջացաւ մարդկային լեզուն, այն ժամանակ լեզուի ծագման խնդիրը վերաբերում է միայն հոգեբանական դիտողութեան և հետազօտութեան։

---

Հաստատ կարելի է ասել, որ լեզուն սովորական մտքով առած մի գիւտ չէ. անկարելի է երևակայել, որ մտածող մարդը դիտմամբ որոնել է իւր մտքերն արտայայտելու համար մի օժանդակիչ միջոց և գուցէ մի քանի անյաջող փորձերից յետոյ կանգ է առել լեզուի վերայ։ Սակայն լեզուն չի կարող նմանապէս բնութեան մի արտադրութիւն լինել, որի ստեղծմանը մարդկային գիտակցութիւնը բոլորովին չէ մասնակցել. նա չի կարող մի անդրադարձ շարժողութիւն լինել, որից ինքը խօսողն ոչինչ չգիտէ։ Լեզուի առաջին ձայները կամ հնչիւնները կարելի է անդրադարձ շարժողութեան հետ համեմատել, որովհետև մարդս միշտ պահանջ է զգում իւր ներքինը ձայների միջոցով արտայայտել, սակայն լեզուի սկզբնաւորութիւնն իբր իսկական անդրադարձ շարժողութիւն ընդունելն անկարելի է։ Անդրադարձ շարժողութիւնները ջղային համակարգութեան շարժիչ և զգայական տարրերի որոշ կապակցութեանց մեքենայական հետևանքներն են։ Այսպիսի անդրադարձումները կարող են մեր շար-

ժողութեանց և լեզուի զարգացման գործակից լինել, սակայն ինչպէս որ մեր կամայական շարժողութիւնները, նոյնպէս և լեզուն չենք կարող ուղղակի անդրադարձ շարժողութիւն անուանել։ Նորածին մանկան առաջին աղաղակը, որ յառաջ է գալիս ցրտի ազդեցութիւնից, գուցէ կարելի լինի անդրադարձումն անուանել, ինչպէս նաև դէմքի այն ծամածռութիւնները, որ յառաջ են գալիս դառը, թթու, կծու, և ճաշակելեաց այլ գրգիռների ազդեցութիւնից. սակայն այս բոլոր շարժողութիւնները ո՛չ նշանացի խօսակցութիւն են և ոչ էլ լեզու։

Լեզուի սկզբնական ծագումը պէտք է որոնել նշանացի շարժողութեան և ոչ թէ ձայնի նմանողութեան մէջ։ Լեզուն չէ յառաջանում առանձին, այլ կցուած արտայայտիչ շարժողութեանց հետ. լեզուի ծագման սկզբներում արտայայտիչ շարժողութիւնը մեծ դեր է կատարում. նշանացի շարժողութիւնը յերևան է գալիս իբր օժանդակիչ միջոց հնչիւնի ըմբռնման համար։ Ձայնի նմանողութիւնը—օնօմատօպօյէ—երկրորդական դեր է կատարում. առաջնակարգ տեղը պատկանում է հնչիւնի արտայայտիչ շարժողութեան։

*Լեզուի ծագումը տեղի է ունեցել աստիճանաբար զարգացմամբ եւ կատարելագործուել է հետզհետէ՝ ժամանակի ընթացքում։*



## ԳԼՈՒԽ Գ.

### ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒ

*Հայոց լեզուի ծագումը հնդկա-գերմանականից. հին և նոր կարծիքներ այդ մասին. „զուտ հայկական" լեզու. դորա ծագումը. ազգային լեզու. լեզուն իբր ազգերի ստեղծագործութիւն. ի՛նչպէս են յառաջացել հայոց լեզուի բառերը. հայր Ինճիճեանի բացատրութիւնը. բառերի համեմատութիւններ. հայոց լեզուի աստիճանաբար զարգացումը. օտար ազդեցութիւններ:*

---



Հայոց լեզուն երկար ժամանակ համարւում էր սեմիտական ընտանիքի ճիւղերից մէկը, մինչև որ ականաւոր լեզուաբան գիտնականների —մեծ մասամբ գերմանացի, ինչպէս օրինակ Պետերման, Վինդիշման, դը Լագարդ, Միւլլէր, Հիւբշման և այլք—աշխատութիւններն ապացուցեցին, որ հայոց [1]) լեզուն պատկանում է ոչ թէ սեմիտական, այլ հնդկա-գերմանական (կամ հնդկա-եւրոպական) ընտանիքին։

---

[1]) „Հայ" բառը նշանաւոր արևելագէտ և հայագէտ Ֆրիդրիխ Միւլլէր համարում է հին բակտրիական „պայտի" բառից յառաջացած, որ նշանակում է „Տէր", „պետ" և մեր նախնիք

Գերմանական գիտնականներից յայտնի Հայագէտ-լեզուաբան Պ ե տ ե ր մ ա ն ն էր, որ դարուս առաջին կիսում իւր Հիմնաւոր աշխատութեան մէջ—«Հայոց լեզուի քերականութիւնը» լատիներէն գրուած [2])—ապացուցեց, որ Հայոց լեզուն պատկանում է Հնդկա-գերմանական մեծ ընտանիքին և մերժեց մինչև այն ժամանակ տիրող Հանդիսացած կարծիքներն, որով մեր լեզուն Համարւում էր՝ բոլորովին առանձին, այլ լեզուների Հետ ոչինչ կապ չունեցող կամ թէ եբրայականին ազգակից լեզու։ Պետերմանի կարծիքը Հաստատեցին Վ ի ն դ ի շ մ ա ն, Գ ո շ է և Ն ա լ ի գ է լ, այնպէս որ աշխարՀաՀռչակ Հեղինակ լեզուաբան Բոպը (Bopp) իւր Համեմատական քերականութեան նոր Հրատարակութեան մէջ Հայոց լեզուն Հաստատապէս ընդունեց իբրև Հնդկա-գերմանական և մեր լեզուի ձևերն ևս Համեմատութեամբ ազգակից լեզուների ձևերի Հետ յառաջ բերեց։

Այսպիսով թէև պարզուեցաւ, որ Հայոց լեզուն պատկանում է Հնդկա-գերմանական ընտանիքին, սակայն դեռ ևս որոշ կերպիւ չ'վճռուեցաւ թէ Հնդկա-գերմանական որ ճիւղին պէտք է վերագրել։ Գոշէ և դորանից առաջ Վինդիշման մասամբ դիցաբանական և այլ նմանութիւններով ապացուցեցին, որ Հայոց լեզուն պատկանում է Հնդկա-գերմանական արիական ճիւղին և պարսկականի, քրդականի և յառաջաւոր Ասիայի մի քանի լեզուների Հետ կազմում է մի առան-

---

տուել են այդ անունն իւրեանց՝ Հպատակ ազգերից զանազանուելու Համար։ Դորա Հակառակ „սորուկ" բառը յառաջացել է Հին Հնդկական „սատրու" բառից, որ նշանակում է թշնամի։ Տես. F r d. M ü l l e r: Beiträge zur Lautlehre der armenischen Sprache. տպուած է S i t z u n g s b e r i c h t e der kais. Akademie der Wissenschaften Wien. phil-hist. classe. Հատ. 41 (1863) էջ 9 ծնթ. 2.

[2]) P e t e r m a n n: „Grammatica linguae armeniacae" տպուած է Բեռլինում 1837 թ.

ձին խումբ [3]։ Յառաջ ենք բերում նոյն իսկ Վինդիշմանի խօսքերը. «Հայոց լեզուի դիրքը հնդկա-գերմանական լեզուների շարքում այլ ևս անկասկած է [4]։ Իւր սկզբնական մասերով նա պատկանում է երկրիս այն ամենաազնիւ բարբառներին, որոնք իւրեանց զանազանակերպութեամբ տարածուել են Արևելք և Արևմուտք, որոնց մնացորդների վերայ շարունակւում են այսօր գերմանական-ռոմանական—սլաւոնական և քելտական լեզուներն և որոնք դեռ ևս նոր են իւրեանց հին փառահեղութեամբ ուսումնասիրութեան առարկայ դառնում։ Սակայն Հայոց լեզուն անմիջապէս չէ պատկանում այդ բարբառների զարգացման առաջին դասակարգին, այլ ենթադրում է մի առաւել հին բարբառ, որ զենդի և բևեռագրերի հին պարսկականի հետ մեծ նմանութիւն պէտք է ունեցած լինի։ Այդ բարբառի հետ մնացել են և այլ տարրեր, ո՛չ միայն սեմիտական լեզուից—որի միացումը պէտք է վերագրել յետագայ ժամանակների յարաբերութեանց՝ ասորոց կամ պահլաւական ազդեցութեան—այլ և արմատներ, որոնք պատահում են քրդական և Կովկասեան լեզուների մէջ» [5]։

Ջնջելով այն աչքի ընկնող նմանութեանն, որ ունի Հայոց լեզուն պահլաւականի և մասամբ ևս նոր պարսկականի [6] հետ, նա ներկայացնում է մի ինքնուրոյն և պարսկա-

---

[3] Տե՛ս. „Zur charakteristik des armenischen" տպուած է „Beiträge zur vergleichenden Sprachforschung" von A. Kuhn und A. Schleicher. հրատարակութեան III հատորի (1863) մէջ, էջ 83.

[4] „Որ հայերէնը մի հնդկա-գերմանական լեզու է, ընդունում ենք իբր ապացուցուած ու ընդհանուրին յայտնի իրողութիւն": Տե՛ս. Zur charakteristik etc. նոյնը էջ 83։

[5] Տե՛ս. Frd. Windischmann: Grundlage des armenischen im arischen Sprachstamme. տպուած է Abhandlungen der phil—hist. classe der königlichen Bayerischen Akademie der Wissenschaften. հատ. IV. մասն 2 (1847) էջ 48.

[6] „Հայոց լեզուն իրանական խմբից է և կազմուել է զենդ-

 անից առանձնացած լեզու։ Այս ապացուցանում են մի կող-
ից լեզուի ձևերն և ամբողջ քերականական կազմութիւնը,
իւս կողմից այն բազմաթիւ հնչիւնները, որոնք լեզուին մի
ռանձին և լեռնական լեզուներին սեպհական յատկութիւն
տալիս [7]։

Հայագէտ պրոֆ. Հիւբշմանը թէև սկզբում նոյնպէս
դունում էր Հայոց լեզուի՝ հնդկա-գերմանական իրանա-
ն կամ արիական ճիւղին պատկանելը, սակայն աւելի լաւ
սումնասիրելով Հայոց լեզուն՝ այն եզրակացութեան եկաւ,
Հայոց լեզուն պատկանում է ոչ թէ արիական այլ եւրո-
ական—յունա-լատինա-սլաւոնական—ճիւղին։ Բայց Հիւբշ-
անի այս նոր կարծիքը ցայժմ ընդունելութիւն չէ գտել
այագէտ գիտնականների շրջանում և առաջուայ կարծիքը
ռ. ևս տիրող է հանդիսանում [8]։

---

պարսիկ լեզուների հետ ի միասին"։ Տես. F. Lenormant:
Histoire Ancienne de l'Orient" հատ. I. եջ 387։

7) „Հայոց լեզուն լեզուաբանների համար դեռ ևս մի գը-
ւար ապարէզ է. սորա պատճառը լեզուի առանձնայատուկ
ատրութիւնը եւ զարգացումն է։ Հայոց լեզուն թէև իւր
ճատութեամբ ճիշտ իրանական է, սակայն շատ օտար տար-
ր է պարունակում իւր մէջ, որոնք դեռ ևս բաւականացուցիչ
րպիւ զտուած և բացատրուած չեն"։ Տես. Frd. Müller
eiträge etc. նորոր Sitzungsberichte der k. Akad. etc.
որ հատ. 38 (1861) եջ 570։

8) Պրոֆ. Ֆրիդրիխ Միւլլերը հետևեալ կերպիւ է պատաս-
անում պրոֆ. Հիւբշմանի յայտնած կարծիքին. „Հիւբշմանի հա-
ռակ, ես դեռ ևս հաստատ համոզուած եմ, որ Հայոց լեզուն
անական լեզու է, և ծագում է ոչ թէ ուղղակի հին բակտ-
ական և հին պարսկական լեզուներից, այլ զուգակցաբար հին
ակտրիական և հին պարսկական լեզուների հետ ծագող մի հին
անական ճիւղից, որ մեզ անյայտ է մնացել"։ Տես. Über die
tellung des Armenischen in Kreise der indogermanischen
prachen տպուած է Sitzungsberichte etc. Wien: հատ. 84 (1877)
ջ 212.

Պաուլ-դը-Լագարդն իւր Հայոց լեզուի բառաքնն
կան մեծ և բեղմնաւոր աշխատութեան վերջը հետևեալ
րակացութեանց է գալիս. ա. Հայոց լեզուն բաղկացած
երեք մասերից, որոնք են՝ Հայկական, արշակունեան,—պ
լաւական—և սասանական։ բ. Արշակունեան և սասանակ
մասերն ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ իրանական
սակայն Հայկական մասն ևս պատկանում է լեզուի այն
տանեաց, որի ամենահին ներկայացուցիչն է զենդի լեզու
գ. Հայկականը տարբերւում է բակտրիականից և Հար
արևմտեան պարսկականից... Հայկականը բռնում է իրա
կանի և հելլենականի միջին տեղը [9]։

Մի այլ տեղ շարունակում է դը Լագարդ. արդէն հ
տատ է, որ Հայոց կեանքի հիմերը դրուել են ամենա
ժամանակներում. այդ հիմերի վերայ հաստատուել է
իրանական գաղթականութիւն, որ հեռու, անուղղակի
նապարհներով և շատ կռիւներից յետոյ հասել է Արա
տեան երկիրն և այդ պատճառով իրանական լեզուի սկզբ
կան կերպարանքն ինքնուրոյն կերպիւ է զարգացել և
չև իսկ փոփոխութեան ենթարկուել։ Սակայն այդ երկու
շերտերի վերայ աւելացաւ դարձեալ մի նոր իրանական շե
Պարթևներն ողողում են Հայաստանը, հիմնում Արշակ
նեաց հարստութիւնը, տիրում ամենալաւ նահանգն ու հ
ոց լեզուի վերայ աւելացնում ահագին քանակութեամբ ի
նական բառեր՝ իւրեանց լեզուից։ Ես կարծում եմ, աւս
դը Լագարդ, որ ով որ ընդհանրապէս լեզուն ըմբռնե
զգացումն (Sprachsinn) ունի, նա կարող է Հայոց լեզուի
երեք տարբեր մասերն որոշել [10]։

---

[9]) Տես. Paul de Lagard: „Armenische Studien“, որ
նում է „Abhandlungen der königl. Gesellschaft d. Wissenschaf
zu Göttingen“ հրատարակութեան ամբողջ 22-րդ մեծ հատորը (18
էջ 208.

[10]) Տես. Paul de Lagard. նոյնը էջ 291.

Ընդունելով պրօֆ. դը Լագարդի այս բաժանումն՝ են-
ադրենք որ մեր նախնեաց սկզբնական լեզուն զուտ հայ-
կան էր. այժմ խնդիր է՝ թէ ինչպէս յառաջացաւ այդ
ւտ հայկականը։ Ի հարկէ հայոց պատմութիւնը չի կարող
ատասխանել այդ հարցման, որովհետև այն ժամանակամի-
ցն, երբ մեր նախնիք զուտ հայկական կեանք [11]) էին
րում, ծածկուած է պատմական անյայտութեան թանձր և
թափանց քողի տակ. իսկ մենք շատ դժուարութեամբ
րող ենք մտքով տեղափոխուել մեր այսօրուայ անհուն
րպիւ խառնաշփոթ ընկերական կեանքից՝ մեր նախնեաց
ն համգամանքների մէջ, որ իւր պատմութիւնն և օրէնք-
րը բերանացի կերպիւ սերնդից-սերունդ է հաղորդել և
ր նահապետական պարզութեամբ և միամտութեամբ խօս-
ն այնպիսի հաւատ է ընծայել, ինչպէս որ այսօր մենք
հին յիշատակագրին։ Ուրեմն մեզ մնում է միայն կրկին
մել լեզուների զարգացման ընդհանուր օրէնքին։

Լեզուների գոյութիւնն ապացոյց է, որ կան այնպիսի
եկան ստեղծագործութիւններ, որոնք մի միայն մի ան-
ատից չեն ծագում և միւսների վերայ տարածւում, այլ բո-
րի միաժամանակեայ ինքնուրոյն գործունէութիւնից են
ռաջանում։ Լեզուների անմիջական ստեղծողները կարող
ս լինել նոյնպէս միայն ազգերն. իւրաքանչիւր լեզու միշտ
զգային որոշ կերպարանք ունի։ Իւրաքանչիւր լեզու ստա-
ում է իւր որոշ առանձնայատկութիւնն ազգի միջնորդու-
եամբ և ապա իւր կողմից ազդում ազգի առանձնայատ-
ւթեանց զարգացման ընթացքի վերայ։ Մի ազգի մտած-
ւն եղանակը նոյն իսկ սկզբից ներգործում է լեզուի վերայ,
ով և լեզուն գոյն և բնաւորութիւն է ստանում։ Դեռ

[11]) „Լեզուն և կեանքը անբաժան գաղափարներ են" տես.
· Humboldt: Über die Verschiedenheit des menschlichen
rachbaues էջ CXXVI.

քանի որ մի ազգի ոգին կենդանի առանձնայատկութիւններով ազդում է իւր լեզուի վերայ, լեզուն ևս Հաստատում և ազնուանում է և իւր կողմից փոխադարձաբար կրկին ազդում ազգային ոգու վերայ։ Սակայն այստեղ ևս ժամանակի ընթացքում կարող է այնպիսի դրութիւն յառաջ գալ, որտեղ լեզուն գերազանցում է ոգուն և վերջինն այլ ևս ստեղծող ազգեցութիւն չէ ունենում. այս դրութիւնը Հարկաւ կրկին ազդում է լեզուի վերայ և սա ևս թուլանում է։ Բայց լեզուներն և ազգերը կարող են մեծ մարդկանց Հանճարով կրկին արթնանալ և յառաջանալ։ Լեզուի վերայ ազդում է ոչ միայն ազգային առանձնայատկութեան սկզբնական դրութիւնն, այլ և ժամանակի ընթացքում ընդունուած—ներքին փոփոխութիւններն, որ յառաջ է գալիս իւրաքանչիւր արտաքին ծանրակշիռ իրողութիւնից և բարձրացնում կամ իջեցնում է ազգի ոգեկան ուղղութիւնը։ Լեզուն է ներքին էութեան գործարանը, նոյն իսկ այդ էութիւնն. այդ պատճառով իսկ լեզուն խոր արմատներ է ձգում ազգային ոգւոյ զօրութեան մէջ և որչափ որ դորա ազդեցութիւնը յարմար է լինում, այնչափ ևս կանոնաւոր և Հարուստ է լինում նորա զարգացումը։

Լեզուի բնաւորութիւնը զարգանում է առաւելապէս գրականութեան և դորա նախապատրաստիչ ժամանակամիջոցներում։ Եթէ մտաւոր ձգտման սկզբնական անտաշ և անզարգացած փորձերն ևս գրականութիւն 12) անուանենք,

---

12) Բանաստեղծութիւնն և փիլիսոփայութիւնը — արձակը, պրօզան — կարելի է լեզուի երեւոյթներ անուանել, որովհետև նոյն իսկ լեզուի սկզբնական ընդունակութիւնը այս կամ այն ուղղութիւնն է ընդունում. կամ թէ երկու ուղղութեան ևս Հաւասարաչափ զարգացումն է տալիս։ Իսկապէս դոքա խոՀականութեան, մտքի Հարթող ուղիներն են և պէտք է անՀրաժեշտ կերպիւ դորանից ծագեն։ Երկուսն ևս ձգտում են դէպի միևնոյն նպատակը, սակայն տարբեր ճանապարՀներով։ Երկուսն ևս ծա-

այն ժամանակ այդ երկուսը՝ լեզուն և գրականութիւնը կապակցուած են անբաժանելի կերպիւ։ Ազգերի մտաւոր զարգացման պատմութիւնն և քաղաքակրթութիւնը գտանւում են փոխադարձ յարաբերութեան մէջ իւրեանց լեզուների պատմութեան հետ։

Մարդս թէ իւր բնաւորութեամբ և թէ քաղաքակրթութեամբ մի պատմական էակ է. նա թէ իւր կարողութեամբ և թէ ձգտմամբ կապակցուած է իւր նախորդների և ժամանակակիցների պատմութեան հետ։ Միայն այդ կապակցութեամբ է նա մի ճշմարիտ, առողջ և գործունեայ մարդ և այդ կապակցութեան է պարտական նոյն իսկ իւր գոյութիւնը։ Մարդկութիւնն է այդ անհատների կապակցութեան միութիւնը. սակայն իւրաքանչիւրը կապակցուած չէ իւրաքանչիւրի հետ. այլ այդ միութիւնը կայանում է ցեղերի և ազգերի մէջ։ Ազգի միութեան գլխաւոր, եթէ ոչ միակ, սակայն ամենաապահով յատկանիշն է լեզուն։ Ինչպէս որ անհատի լեզուն՝ իւր անհատական ոգւոյ արտայայտութիւնն և չափն է, նոյնպէս և ազգի լեզուն, իբր ամենի ընդհանուր սեպհականութիւն, նոյն իսկ ազգի ոգւոյ չափն ու արտայայտութիւնն է։

Իւրաքանչիւր անհատ ընդունում է իւր լեզուն իւր

---

գում են իրականութիւնից և ձգտում մի ոչ իւրեանց պատկանող բանի։ Բանաստեղծութիւնն ըմբռնում է իրականութիւնն իւր զգայական երևոյթով. ապա զգայական երևոյթը կապակցում է երևակայութեան հետ և ձգտում մի արուեստական—իդէալական ամբողջութեան։ Փիլիսոփայութիւնը—պրօզան—իւր արմատները ձգում է նոյն իսկ իրականութեան մէջ և այդպիսով պահպանում իւր գոյութիւնը...։ Բանաստեղծութիւնը կարող է միայն կեանքի մոմէնտները—ոգւոյ վայրկենական դրութիւնը—ներկայացնել, իսկ փիլիսոփայութիւնն այդ մոմէնտների կապակցութիւնն և շարունակ գործունէութիւնը։ Տես. W. Humboldt։ նոյն. էջ CCXLI.

ազգից, ուրեմն անհատից առաջ արդէն գոյութիւն ունի լեզուն. սակայն ինչպէս՝ Եթէ նայենք իւրաքանչիւր անհատի վերայ առանձին, կտեսնենք որ լեզուն գոյութիւն ունի դորանից դուրս, սակայն եթէ նայենք լեզուի վերայ, կտեսնենք որ նա ապրում է իւրաքանչիւր առանձին անհատի մէջ։ Լեզուն կարող է միայն ազգի միութեան հետ կապակցուած ապրել։ Թէև կարելի է ամբողջ լեզուն երկու գրքի մէջ ամփոփուած երևակայել—*բառարանն ու քերականութիւնը* պարունակում են լեզուի բառերի և կապակցութեանց ամբողջ գանձը—, սակայն այդպիսի լեզուն թէև գոյութիւն ունի, բայց չէ ապրում. դա մի մեռած լեզու է։

Որտեղ որ ժողովրդական ոգին կենդանի է առանձին անհատների մէջ, այնտեղ և յառաջանում են ընդհանուր ոգւոյ գործեր. դոքա կամ ներգործում են փորձնական կեանքի վերայ կամ թէ կազմակերպում են գրականութիւնը։ Լեզուի ձևերն և նիւթը պէտք է անդադար կենդանի գործով կատարելագործուեն։ Մի ազգի լեզուն և հանճարը կարող է գոյութիւն ունենալ նոյն իսկ ազգի անյայտանալուց յետոյ, *սակայն ոչ մի ազգ չի կարող իւր լեզուից երկար ապրել*—իբր ազգ։ Լեզուն կորցնելով՝ ազգը կորցնում է իւր ոգեկան առանձնայատկութիւնն և այդպիսով դադարում այլ ևս առանձին ազգ լինելուց։ Այդ պատճառով և ոգին կարող է—չնչին բացառութեամբ—*մայրենի լեզուով* մեծ և նշանաւոր գործ ստեղծել։ Ինչ որ Փիզիքական աշխարհում հայրենիքը, բարոյականում խիղճը, նոյնն է և մտաւոր աշխարհում մայրենի լեզուն։ Մայրենի լեզուն սովորելով և գործ դնելով՝ մարդս մտնում է իւր ազգի մտաւոր համայնքի մէջ, որովհետև լեզուի մէջ է ամփոփուած ազգի ամբողջ աշխարհահայեցողութիւնը, զարգացումն և ամբողջ գաղափարների աշխարհը։ Թէ որչափ մի անհատ կարող է իւր ազգի ոգին իւր մէջ ներփակել՝ կախուած է իւր ձգտմանց և ընդունակութեանց չափից։ Բարեբաղդ ենք համարում նոցա—ասում է Լացա-

*բուս [13])—որոնց սեպհական անհատական մտածմունքն ազգի մտածմունքն է դառնում, որոնց խօսքը մի մենախօսութիւն է, որ արտայայտում է նոյն իսկ ազգի ոգին։*

*Այս ընդհանուր գիտողութիւնից արդէն դիւրին է ըմբռնել, որ հայոց լեզուի սկզբնական, այսինքն զուտ հայկական տարրը չէր կարող մի որ և է անհատի ստեղծագործութիւն լինել, այլ մարդկութեան այդ մի հատուածի, բուն հայ ժողովրդի, ընդհանուր ոգւոյ արտադրութիւնն, որ աստիճանաբար զարգացման շաւղով մի որոշ կատարելութեան հասաւ։ Այդ կանոնաւոր զարգացման շաւիղը միայն այն ժամանակ խանգարուեցաւ, երբ հայ ժողովուրդը դուրս գալով իւր սահմանափակ շրջանից՝ յարաբերութեան մէջ մտաւ իւր դրացի ազգերի հետ և վերջը նոցա ազդեցութեան ենթարկուեցաւ։ Ասացինք, որ իսկական լեզուն չի կարող անհատի ստեղծագործութիւն լինել, այլ մի ամբողջ ժողովրդի, սակայն ինչպէս։ Մի որ և է մտապատկեր չի կարող առաջին անգամ մի ժողովրդի գիտակցութեան մէջ յառաջանալ. մըտապատկերները կարող են միայն անհատների մէջ զարգանալ և ապա ընդհանուր ընդունելութիւն գտնել։ Անհատական մտածմունքը սկիզբն է ամեն փիլիսոփայական մտածմանց, սակայն փիլիսոփայական խորին մտքերն անգամ չեն մնում անհատական շրջանի մէջ և դառնում են ընդհանրութեան սեպհականութիւն։ Այդպէս և լեզուի բառերը սկզբում յառաջացել են անհատներից և ապա հասկացուել և ընդունուել են ընդհանուրից։ Այն բառերն [14]), որոնք*

---

[13]) Տես. Lazarus նոյն. էջ 402:

[14]) *„Բառ“ անուանում ենք լեզուի այն մասերին, որոնք ցոյց են տալիս մի առանձնակի մտապատկեր և որոնց կարելի է միմեանցից բաժանել։ Բառն ինքն ըստ ինքեան ի սկզբանէ առանձնակի չէ. ի սկզբանէ տուած է նախադասութիւնը. սակայն բառերն ևս իւրեանց կողմից պարզ չեն, այլ արմատների կապակցութիւններ. իսկ թէ լեզուի արմատներն երբեմն առանձնակի գոյութիւն են ունեցել, դա մի ենթա-*

անհատական ծագումն ունենալով՝ մնում են նոյն իսկ անհատական շրջանի մէջ և ընդունելութիւն չեն գտնում ընդհանրութիւնից, չեն կարող երկար տևողութիւն ունենար Ընդհանուր ստեղծագործութիւնն էլ ծագում է անհատներից, սակայն այնպիսի եղանակաւ, որ ոչ ոք կարող չէ ասել՝ թէ ումնից կամ ո՛ր անհատից։ Նոյն եղանակաւ յառաջ է գալիս նաև ժողովրդական երգը կամ բանաստեղծութիւնը. երգի մէկ տունը հիւսում է մի անհատ, երկրորդը շարադրում է մի այլ անձն, երրորդը յառաջանում է մի այլ ժամանակ, դարձեալ մի այլ անհատից. այսպիսով կազմակերպւում է ամբողջ երգը, բանաստեղծութիւնն և որովհետև այլ ևս անկարելի է ասել թէ ո՛վ է երգի հեղինակն և շարահիւսողը—կոչւում է *ժողովրդական*, այսինքն ընդհանրական երգ. թէև պարզ ու հասկանալի է, որ երգի շարահիւսողն ամբողջ ժողովուրդը չէ, այլ շատ ան-

---

գրութիւն է.—„․․․ իրապէս խօսքը, նախադասութիւնը չէ կազմուել առաջուց գոյութիւն ունեցող բառերից, այլ ընդհակառակը բառերը յառաջ են եկել խօսքի ամբողջութիւնից“։—Տես W. Humboldt. նոյն. էջ XC։ Սովորաբար բառի մի մասը միայն փոփոխութեանց է ենթարկւում՝ որոշ օրէնքով. իսկ միւս մասը մնում է բոլորովին անփոփոխ կամ թէ շատ գիւրին կերպիւ նկատելի փոփոխութիւն է կրում։ Բառերի այս անփոփոխ կամ հաստատուն մասերը կոչւում են՝ լեզուի *արմատներ*։ Այս արմատներն իւրեանց պարզ կազմութեամբ նախադասութեան մէջ հազուագիւտ են. իսկ արմատական բառերն ամենից շատ գտնւում են չինական և անգղիական լեզուների մէջ։

Ցայտնի լեզուաբան Պօտը (Pott) յայտնել է այն միտքն, որ հնդկա-եւրոպական լեզուների մէջ հազիւ կարելի է ապացուցանել հազար (1000) արմատի գոյութիւնը։ Իսկ նոր ժամանակներում փորձեր են լինում այդ ինքն ըստ ինքեան սակաւաթիւ արմատները սկզբնական տարրերի վերլուծելու և այդպիսով եզրակացնում, որ ամբողջ լեզուի հիմնական տարրերը հազիւ 15—20 լինեն։ Այս կնշանակէ, որ մեր այսօրուայ անթիւ գաղափարները կարելի է մինչև 20 թիւն իջեցնել։

տներ։—Ընդհանուր ընդունելութիւն է գտել այն կար-
իքն, որ Հոմերոսի «Եղիական»ն ու «Ոդիսական»ը նոյն
ակ այգ եղանակաւ են յառաջացել , ուստի և ներկայացնում
ն ամբողջ յոյն ժողովրդի ոգեկան արգասիքը։—

Մեզ մնում է այժմ միայն պատասխանել այն հարցման՝
է ինչպէս են յառաջացել հայոց լեզուի «զուտ հայկական»
արրը կազմող բառերը։

Այս խնդիրը զբաղեցրել է արդէն դարուս սկզբում նշա-
ւոր հանդիսացած և եւրոպական հռչակ ստացած պատ-
մբան-հնախոյզ հայր Ղուկաս Ինճիճեանին, ուստի և կա-
ւոր ենք համարում այս յայտնի հեղինակի բացատրութիւն-
րը յառաջ բերել այստեղ։

Հ. Ինճիճեանը իւր «Հնախօսութիւն աշխարհագրական
պատուանեայց աշխարհի» բազմահատոր աշխատութեան մէջ
ամենում է ոչ թէ միայն հայոց լեզուի բոլոր բառերին
ւտ հայկական ծագումն տալ. այլ և ճգնում է ապացու-
ցանել, որ հայոց լեզուն «անխառն» և առաջին մարդու,
դամի լեզուն է, հետևապէս և մերժում է հրէից լեզուի
զբնական լինելը [15]։

Հայր Ինճիճեանի տրամաբանութեան հիմն ի հարկէ ոչ
լ ինչ կարող է լինել, եթէ ոչ Խորենացու յառաջ բերած
զաբանութեան անսխալականութիւնը. Հայկի մեծ պապն
Նոյ, իսկ Նոյի մեծ պապն՝ Ադամ, հետևապէս հասկանալի
որ Հայկի խօսած հայերէն լեզուն խօսել են նաև նորա
պերը՝ Նոյ և Ադամ։

---

18) «... Արդ յառաջինկայ կրկին յօդուածս տեսցես զհա-
ստիս հնութեան լեզուիս մերոյ, յառաջնումն՝ եթէ յաշտարա-
ւշինութենէ անտի անխառն առ մեզ իջէ հասեալ. յերկրոր-
ումն՝ եթէ նոյն լեզու էր և յառաջ քան զջրհեղեղն որով խօ-
ր Նոյ. նմին իրի և նոյն լեզու առաջին մարդոյն Ադամայ...»
Ղ. Ի Ն Ճ Ի Ճ Ե Ա Ն. Հնախօսութիւն աշխարհագրական Հայաս-
տանեայց աշխարհի. հատ III. էջ 1։

Այսպէս Հայր Ինճիճեանն ընդունելով, որ Աստուած Ադամի հետ հայերէն է խօսել, ճգնում է նաև բացատրել թէ ինչպէս են յառաջացել այդ լեզուի բառերն և բնականապէս դիմում է մի դիւրին միջոցի, այն է կենդանեաց անուանների բացատրութեան։ Նա ցոյց է տալիս թէ ինչու Ադամ իւրաքանչիւր կենդանու մի յատուկ անուն է տալիս —Ադամի ժամանակ հարկաւ կենդանեաց իւրաքանչիւր ցեղ մի ներկայացուցիչ կարող էր ունենալ, ուստի և գործն այնչափ դժուար չէր լինի. . .—

Ըստ Հայր Ինճիճեանի Ադամ իւր այս աշխատութիւնը հիմնում է երկու սկզբունքի վերայ. ա. Նա ուսումնասիրում է իւրեան շրջապատող կենդանեաց *բնաւորութիւնը* և ապա այդ եզրակացութեանց հիման վերայ անուններ է տալիս նոցա։ բ. Նա ուսումնասիրում է նոցա *ձայները* և նման հնչիւններով անուններ տալիս նոցա։ Այս պատճառաւ և Նա անուանց բացատրութիւնն երկու մասի է բաժանում.

I «Անուանք կենդանեաց ի *բնութենէն* առեալ» և

II «Անուանք կենդանեաց ի *ձայնէն* առեալ» [16]։

Յառաջ ենք բերում բազմարդիւն հեղինակի ամբողջ բառերի ցանկը և սոցա, բաւական մեծ սրամտութեամբ կազմուած, բացատրութիւնները, որպէս զի շօշափելի կերպիւ կարելի լինի տեսնել, որ այդ բացատրութիւններն ոչ այլ ինչ են, եթէ ոչ երևակայական և մեծ մասամբ մտացածին շաբաղրութիւններ՝ զուրկ մի որ և է հիմնաւոր փաստից։

I.

«ԱՆՈՒԱՆՔ ԿԵՆԴԱՆԵԱՑ Ի ԲՆՈՒԹԵՆԷՆ ԱՌԵԱԼ»

1) *Առիւծ*
2) *Արծիւ* | իբր առօղ և ծուող, յափշտակիչ և գիշատիչ։

Բայց մտադիր ընթերցողն տեսանէ թէ արուեստիւ և խոհըր-

16) Տես. Ինճիճեան Նոյնն. հատ. III էջ 21.

վ կազմեալ են կրկին անուանքն, որպէս վայել էր կազմել ամայ։ Երկոքին ևս կենդանիք թագաւոր ծանուցեալք՝ ն չորքոտանեաց և միւսն թռչնոց. և ահա երկոքին ևս յնատառ անուամբ յորջորջեալ, միայն յետևառաջութեամբ նկից տարբերեալ։

3) *Երխվար*—յերի խուրում վարող՝ ի վերայ իւր կրող։

4) *Նապաստակ*—Ապաստանող, որոյ չիք այլ ինչ զէն, յց եթէ ապաստանեալ ի դժուարս և յամուր տեղիս։

5) *Կապիկ*—իբրև յինքն կապող. ունելով բնութիւն, նմանել կամի ամենայնի զոր տեսանէ։

6) *Շուն*—ի շնթող բնութենէ իւրմէ առեալ։

7) *Աղուէս* - որ աղու կամ քաղցր ձևանայ։

8) *Ուղտ*—ոխոտ, որոյ ոխ առաւելեալ է քան զամենայն նդանիս։

9) *Եղջերու*—եղջիւրաւոր։

10) *Սիրամարգ*—սիրող զմարգ։

11) *Աղաւնի*—աղու ունի։

12) *Կաքաւ*—քանզի ի գնացս իւր ի գետնի ոստոստելով թանայ իբր կաքաւելով։

13) *Արտուտ*—ի բնութենէն առեալ, զի յարտորայս ակի։

14) *Լօրամարգի*—ի բնակութենէն առեալ, այսինքն է լօռս կամ ի գիճին տեղիս բնակող։

15) *Բազէ*—վազէ։

16) *Աքաղաղ*—այգուն աղաղակող։

II.

«ԱՆՈՒԱՆՔ ԿԵՆԴԱՆԵԱՑ Ի ՁԱՅՆԷՆ ԱՌԵԱԼ»

| | |
|---|---|
| 17) *Ճպուռն*<br>18) *Ճնճղուկ*<br>19) *Ճանճ*<br>20) *Ճճի*<br>21) *Ջիղջ* | առեալ ի տառէս ճ և չ, որ տիրէ ի հնչմունս, նաև ի թռիչս և ի գնացս նոցա. |

| | |
|---|---|
| 22) *Չի*<br>23) *Կինճ*<br>24) *Ցին*<br>25) *Ցիռ* | ***ի ձայնաւոր տառէս ի առեալ, որ տիր***<br>***ի հնչմունս նոցա։*** |
| 26) *Ծիծեռն*<br>27) *Ծիտ* | ***ի հնչմանէս ծի։*** |
| 28) *Բադ*<br>29) *Սագ*<br>30) *Հաւ*<br>31) *Ճայ*<br>32) *Ճագար*<br>33) *Արջ*<br>34) *Գայլ*<br>35) *Վագր* | ***ի ձայնաւոր տառէս ա, որ տիրէ ի հըն***<br>***մունս ձայնից նոցա։*** |
| 36) *Կով*<br>37) *Լոր*<br>38) *Փոր* | ***ի ձայնաւոր տառէս ո, որ կայ ի հըն***<br>***մունս ձայնից նոցա։*** |
| 39) *Բու*<br>40) *Պասկուճ*<br>41) *Ուրուր*<br>42) *Ցուլ* | ***ի ձայնաւորէս ու։*** |
| 43) *Կռունկն*<br>44) *Ագռաւ* | ***ի ձայնէս կռ։*** |

45) *Խոզ*—***ի տառէս խ, որ տիրէ միշտ յամենայն հըն*** ***մունս նորա։***

46) *Վիշապ*—***ի ձայնէ շ տառի։***

47) *Կաչաղակ*—***ի ձայնէս կաչ, զոր ստէպ հանէ։***

48) *Թռչուն*—***ի ձայնէս թռ, զոր հանէ ի թռչելն։***

49) *Սրոըիկ*—***ի ձայնէս սր, զոր հանէ ի թռչելն։***

50) *Բզէզ*—***ի ձայնէ զ տառիս, զոր հանէ։***

51) *Ջեռուն*—***ի ձայնէս զոր հանեն բազմութիւն նոցա*** ***ի շարժիլն ի գետնի մի զմիով։***

52) *Սողուն*—***ի ձայնէս սղ, զոր հանեն ի սողալն։***

53) *Ժժմակ*
54) *Մժեխ* | ի ձայնէ ժ տառիս զոր հանին։
55) *Իժ*

56) *Կայտառք*—ի կայտառայոյն առեալ։

Ի յառաջ բերեալ անուանցդ մարթէ և այն մատդրել, ոչ սակաւք գտանին ի նոսա նմանավերջք, զոր օրինակ են.

ա. *Արջառ, ոչխար, երիվար*:

բ. *Հաւ, կաքաւ, ագռաւ*։

գ. *Վարազ, յովազ, նոխազ*:

դ. *Թռչուն, զեռուն, սողուն, անասուն*:

Որպէս թէ յայտ առնելով դիտմամբ այսպէս անուա-ալ յումեմնէ, որպիսի ոք էր Ադամ. և ոչ ի չփոթ լեզուէ ռաջ եկեալ, որպէս էր լեզու ժամանակի աշտարա-շինութեան. գոյ և այլ ինչ ի դիտել, զի ի լեզուի մերում սկասին անուանք ձկանց, զի ըստ սուրբ գրոց նաև Ադամ եդ նոցա անուանս, քանզի ոչ էած Աստուած առ Ադամ կունս, որպէս գրեն մեկնիչք... և այլն [17])։

Մեր յառաջ բերած հատուածը շարադրելիս՝ գիտնական ղինակի համար պակաս դեր չէ կատարել *ազգասիրութիւնը*: ն ազգերից իւրաքանչիւրը մրցում էր հրէից ազգի հետ և ր լեզուն Աստուածախօս անուանում, ուրեմն ինչու հայ զն ևս իւր լեզուն Աստուածախօս չհամարէ. Թէև յն իսկ եգիպտացւոց ժամանակ այդ պատիւը վերագրել են *ղեզացիներին*:—

—Յունաց երևելի պատմաբան Հերոդոտը պատմում որ եգիպտացւոց թագաւոր Պսամետիխը կամենալով անալ թէ ո՞ր ազգը կամ ո՞ր լեզուն է առաջին անգամ ոեղծուել, յանձնում է մի հովուի երկու *նորածին մանուկ*՝ րամայելով որ նորանց մեծացնէ մի անմարդաբնակ տեղ, ոչինչ սօք չարտասանէ նոցա մօտ և ուշադրութիւն դարձնէ թէ

---

[17]) Տես. Հայր Ինճիճեան, նոյն հատ. III էջ 21—22։

առաջին անգամ ինչ կասեն մանուկները։ Երկար ժամա
կէս յետոյ, երբ Հովիւը մօտենում է մանուկներին, ն
ձեռքերը տարածած դիմում են նորան «բէկոս» աղաղակ
և ապա նոյն խօսքը յաճախ արտասանում են Թագա
ւոր։ Ժողովուած տեղեկութիւններից յերեւան է գալիս,
փռիւգացիք հացին կոչում են «բէքոս»։ Այս իրողութի
եզրակացնում են, որ փռիւգացիք առաջին ազգն են եր
վերայ...։

Եթէ եգիպտացւոց արքայի այս փորձը «գլուխ գ
բան» լինէր, այն ժամանակ այդ միայնութեան մէջ մե
ցած մանուկները թէև չէին կարող խօսել մի որ և է
ութիւն ունեցող լեզուով, սակայն այնուամենայնիւ ն
կառվորէին իւրեանց զգացմունքը մի որ և է կերպիւ միմե
հաղորդել—լինէր այդ միայն նշաններով կամ թէ նշանացի
սակցութեամբ՝ այսինքն շարժումներով՝ կապակցուած գ
զան ձայների հետ։ Նոյն իսկ նորագոյն ժամանակներում շա
ախոսել են, որ մարդասիրութեան զգացմունքը թոյլ չէ
լիս իրագործել լեզուագիտութեան և հոգեբանութեան
մար այդպիսի մեծ նշանակութիւն ունեցող մի փորձ
ըստ աւանդութեան արել է եգիպտացւոց արքան. սա
իգուր է այդ ափսոսանքը, վասն զի այդ փորձի իրագոր
կարևոր չէ։ Նոյն իսկ բնութիւնն անում է այդ փորձը, ս
է միայն դիտել։ Մեր աչքի առաջ մեծանում ու զարգա
են այնպիսի անձնաւորութիւններ, որոնք լիովին համա
տասխանում են այդ փորձի պահանջած հանգամանքներ
լռութիւն և միայնութիւն—։

Այդ դժբաղդ անձնաւորութիւններն են համր-խուլ

Նոքա համր են, որովհետև նոցա համար ամբողջ աշխա
համր է, որովհետև չունին լսելեաց զգայարան։ Նոքա զ
են հնչիւնաւոր լեզուից, սակայն ոչ ընդհանրապէս լեզ
և նոքա զարգացնում են այդ լեզուն միակ կարելի ճա
պարհով՝ նշանացի խօսակցութեամբ։ Այդպիսով համր-

ը հանդիսանում են լռակեաց, սակայն կենդանի վկաներ
ն ճշմարտութեան, որ նոյն իսկ այսօր մարդկութիւնը դեռ
չէ կորցրել լեզու ստեղծելու ընդունակութիւնը։

Լեզուաբանութիւնն այս վերջին յիսուն տարուայ
թացքում այնպիսի յառաջադիմութիւն է արել, որ անի-
ուացի կլինէր այսօրուայ լեզուաբանական տեսակէտից քըն-
դատելով Հայր Ինճիճեանի կարծիքը՝ ծիծաղելի կացուցա-
լ [18]։

Հայր Ինճիճեանի բացատրութիւնն, որ կենդանիների
ձակած ձայնից կազմակերպուել է նոցա անունները, ոչ
լ ինչ է, եթէ ոչ «օնօմատօպօյի» տեսութիւնն, որ դարուս
ւաջին մասում տիրող էր հանդիսացած լեզուի ծագման
կխոսփայութեան մէջ [19]։

---

[18]) Հայր Ինճիճեանից շատ առաջ հայագէտ գերմա-
ցի „Շրեօդէր" իւր լատիներէն շարադրած հայերէն քերակա-
ւթեան մէջ խօսելով հայոց լեզուի մասին —„de antiquitate
nguae armenicae"—հետեւեալ եզրակացութեան է գալիս. «Հայ-
լեզուն չէ մայր եբրայականի և ոչ ևս նորա դուստրը»։ Տես.
Լրամեան լեզուին գանձ». Ioh. Ioachimi Schröderi:
hesaurus linguae armenicae etc. Amstelodami. MDCCXI. դլ.
էջ 2—4.

[19]) Այս տեսութեան մասին արդէն խօսեցինք, յարակցենք
և Հումբօլտի կարծիքը։ Ըստ Հումբօլտի՝ որովհետև բա-
երը միշտ իւրեանց դիմացն ունին գաղափարներ, բնական է, որ
զգակից գաղափարներն արտասանուին աղգակից հնչիւններով.
ղափարների ծագումը համապատասխանում է հնչիւնների ծագ-
ան։ Որ հնչիւնի և իւր նշանակութեան մէջ գոյութիւն ունի
կապակցութիւն, անկասկած է, սակայն այդ կապակցութեան
տկութիւնն անկարելի է միշտ ճանաչել։ Եթէ ի նկատի ու-
նենք միայն պարզ բառերը, կարելի է ենթադրել երեք պատ-
առներ, որոնք առիթ են եղել որոշ հնչիւնների, որոշ գաղա-
արների հետ կապակցուելուն։ Ըստ այսմ կարող ենք գաղա-
արների երեք նշանակութիւնները միմեանցից զանազանել.

ա. Անմիջապէս նմանութիւններ. որտեղ մի որ և է ձայնա-

Այսօր նոյն իսկ լեզուաբանութեան անհմուտ ան
եա գիտեն, որ մի որ և է բառ բացատրելու համար պ
է որոնել այդ բառի արմատն և ո՛չ թէ ածանցները վեր
լով՝ կամայական նշանակութիւններ տալ դոցա [21]։

---

ւոր իրի յառաջ բերած ձայնն ընդունւում է բառի մէջ,
որովհետև արտասանութիւնն այստեղ շատ անգամ անարտա
նելի հնչիւնների է պատահում, այդ պատճառաւ և դոքա փ
ւում և անճանաչելի են դառնում։ Այս կերպ յառաջացած
ները զուրկ չեն անհարթութիւններից և հեռահետէ անյայ
նում են զարգացող լեզուի միջից։

բ. Հնչիւնների եւ առարկայի յատկութեանց նմա
թիւն, որ կարելի է «սիմբօլական» անուանել. դա իրերի հա
ընտրում է այնպիսի հնչիւններ, որոնք մասամբ ինքն ըստ ինք
մասամբ այլոց հետ համեմատելով՝ ականջի վերայ այնպիսի
դեցութիւն են անում, ինչ ազդեցութիւն որ անում են նոյ
րերը հոգւոյ վերայ. . .։

գ. Նման գաղափարներն արտայայտւում են ն
հնչիւններով. այն բառերն, որոնց նշանակութիւնները միմ
նման են, ընդունում են նոյնպէս նման հնչիւններ։ Այս եղան
ամենից պարզ կերպիւ է ներկայացնում հնչիւնի և բառի
նակութեանց մէջ եղած կապակցութիւնը։ Միւս կողմից, եր
որ և է նշան գիտողի համար ուշադրութեան արժանի է
ւում, առիթ է լինում նոր անուան ստեղծման. այսպէս օր
կի համար արևին տուել են հետևեալ անունները. փայ
ջերմ, ոսկեայ, պահպանող, աւերող, գայլ, առիւծ, երկնքի
լուսոյ Հայր և այլն։ Այստեղից են յառաջացել հին բառ
մէջ համանիշ—synonym—անունները և բառերի կեանքի ու
հուան կռիւն, որ պատճառ է եղել թոյլ, անյարմար բառ
ոչնչացման և նոր բառերի յառաջացման. այսպէս օրինակի
մար ուղտ գաղափարի համար Hammerը համարել է 5744
նուն. Արաբացիք «առիւծի» համար ունեն 500, «օձի» հա
1000 անուն. իսկ իսլանդական լեզուն 120 բառ ունի «կղ
գաղափարի համար (Max Müller) [20]։

21) Սակայն մեզանում կան դեռ եա այնպիսի հայկաբան

---

20) Տես. Lazarus. նոյնն եջ 142. ծթ. բ.

Որպէս զի ցոյց տանք՝ թէ որչափ կամայական են Հայր
ծիծեանի բացատրութիւնները, յառաջ ենք բերում նորա
նկից մի քանի տասնեակ բառեր, որոնք բոլորովին «զուտ
այկական» ծագում չունին և առնուած են օտար լեզուներ
ց կամ կազմուած են օտար արմատներից, հետևապէս և
ոլորովին այլ նշանակութիւն ունեն։

1) *առիւծ* բառը ծագում է հին բակտրիականից—տես.
rd. Müller, Sitzungsberichte etc. Wien. հատ 48 (1865)
430. նոյնը հատ. 84 (1877) էջ 227—եբրայականից—տես. Schrö-
er Thesaurus etc. էջ 45. նոյնպէս և է վ ա լ դ. Ewald, Sprachwis-
nschaftliche Abhandlungen տպուած է Abhandlungen d. k. g.
Göttingen հատ. X (1862) էջ 66 ծթ. բ.—

2) *արծիւ* ծագում է սանսկրիտից—տես. Hübschmann. Arm.
tudien. էջ 21.

3) *երիվար* ծագում է հին բակտրիականից—տես. Frd. Mül-
r. Sitzungsberichte etc. Wien. հատ. 84 (1877) էջ 225. սանս-
կրիտից—տես. Paul Boetcher: Vergleichung der armenischen
onsonanten mit denen des Sanskrit. տես. Zeitschrift d. d. m.
esellschaft. հատ. 4. (1850) էջ 354—

4) *կապիկ* ծագում է սանսկրիտից—տես. Վինդիշման. Zeit-
hrift d. d. m. G. հատ. 4. էջ 356. նոյնպէս Sitzungsberichte
c. Wien հատ. 38 (1866) էջ 572. սեմիտականից—տես. Paul de
agard, armenische Studien էջ 175.

5) *շուն* ծագում է սանսկրիտից—տես. Վինդիշման zeitschrift
c. էջ 359 նոյնպէս և Hübschmann. Arm. Studien էջ 46. հին
ակտրիականից—տես. Paul de Lagard Arm. Stud. էջ 181. նոյն-
էս և Frd. Müller: Sitzungsberichte etc. հատ. 84 էջ 229 և
ատ. 88 էջ 11.

6) *աղուէս*—ծագում է սանսկրիտից կամ յունարէնից—տես.

---

* Հետևելով Հայր Մծիծեանի նապաստակ—ապաստանող և
բաղաղ—այգուն աղաղակող բացատրութեան՝ ասում են որ «կա-
ուն ծագել է «կայ ի տուն» բառերից... (կատու բառը ծագում
սեմիտականից. տես. Paul de Lagard. Arm. Studien. էջ
75. նոյնպէս հին բակտրիականից. տես. Frd. Müller, Sit-
ungsberichte etc. հատ. 84 էջ 228։

Hübschmann: Arm. Stud. էջ 17. Windischmann նոյնն էջ 17 եւ Frd. Müller: Sitzungsberichte etc. հատ. 64 էջ 450 եւ հատ. 84 էջ 226.

7) *ո ւ ղ տ*—*ծագում է սանսկրիտից—տես.* zeitschrift etc. հատ. 4 էջ 359 նոյնպէս եւ Frd. Müller: Sitzungsberichte հատ. 38 էջ 574. *Իրան պարսկերէնից—տես.* Paul de Lagard, Arm. Stud. էջ 181.

8) *ս ի ր ա մ ա ր գ*—*ծագում է Իրան պարսկերէնից—տես.* Paul de Lagard, Arm. Stud. էջ 184. Frd. Müller *ենթադրում է, որ այս բառի արմատը սէր պէտք է լինի—սիրուն թռչուն.* տես. Sitzungsberichte etc. հատ. 64. էջ 454:

9) *լ օ ր ա մ ա ր գ ի*—*ծագում է Իրան պարսկերէնից—տես.* Paul de Lagard, arm. studien էջ 173:

10) *ձ ի*—*ծագում է սանսկրիտից—տես.* Windischmann եւ Paul Boetcher. zeitschrift etc. հատ. 4 էջ 357 նոյնպէս եւ Hübschmann. armenische studien էջ 40:

11) *ց ի ն ծագում է սանսկրիտից—տես.* Paul Boetcher, zeitschrift etc. էջ 363. *Իրան բակտրիականից—տես.* Frd. Müller, Sitzungsberichte etc. հատ. 84 էջ 229

12) *բ ա ղ*—*ծագում է սեմիտականից—տես.* Paul de Lagard. armenische studien էջ 168:

13) *հ ա ւ*—*ծագում է սանսկրիտից—տես.* Hübschmann. armenische studien էջ 38.

14) *ա ր ջ*—*ծագում է սանսկրիտից—տես.* Paul Boetcher. zeitschrift etc. նոյնը էջ 351. նոյնպէս եւ Hübschmann, armenische studien էջ 27. Frd. Müller *համեմատում է օսերէնի եւ յունարէնի հետ:*

15) *գ ա յ լ*—*ծագում է Իրան բակտրիականից—տես.* Frd. Müller Sitzungsberichte etc. հատ. 38. էջ 576. հատ. 84. էջ 217 եւ 227 նոյնպէս եւ Kuhn-Schleicher: Beiträge etc. Հ. II էջ 499.

16) *վ ա գ ր*—*ծագում է սանսկրիտից—տես.* Paul de Lagard arm. studien էջ 185. նոյնպէս Hübschmann. arm. stud. էջ 14. Frd. Müller, Sitzungsberichte etc. Հ. 38 էջ 576:

17) *կ ո վ*—*ծագում է սանսկրիտից—տես.* Paul Boetcher նոյն էջ 356, նոյնպէս եւ Hübschmann, arm. stud. էջ 2, եւ Windischmann.

18) *բ ո ւ*—*ծագում է պարսկերէնից տես.* Paul de Lagard, arm. studien էջ 169.

19) կոռունկն—ծագում է սանսկրիտից—տես. Paul Boetcher
ն էջ 357. եւ Hübschmann arm. stud. էջ 36.

20) ագռաւ—ծագում է սանսկրիտից—տես. Paul Boetcher
յն էջ 350

21) վիշապ—ծագում է սանսկրիտից—տես. Paul Boetcher
յն էջ 362, նոյնպէս եւ Windischmann նոյն էջ 18

22) իժ—ծագում է սանսկրիտից կամ հին պարսկերէնից—տես.
übschmann arm. stud. էջ 31 եւ Paul de Lagard. arm. stud.
173:

23) վարազ—ծագում է սանսկրիտից—տես. Paul Boetcher
յն էջ 362. Windischmann նոյն էջ 21. նոյնպէս եւ Frd. Müller
itzungsberichte Հ. 38 էջ 580. նաեւ Kuhn-Schleicher: Beiträge
c. Հ. II. էջ 498 եւ Հ. III. էջ 84

24) յովազ—ծագում է պարսկերէնից—տես. Frd. Müller.
itzungsberichte etc. Հ. 78 էջ 430

25) նոխազ—ծագում է սանսկրիտից—տես. Kuhn-Schleicher:
eiträge etc. Հ. III էջ 84.

26) աղաւնի—Frd. Müller համեմատում է ոսերէնի հետ
-տես Sitzungsberichte etc. Հ. 84. էջ 226.

27) սագ—ծագում է հին բակտրիականից—տես. Frd. Müller.
itzungsberichte etc. Հ. 84. էջ 229.—

Հայր Ինճիճեանի աշխատութեան այս մասի վերաբերու-
թեամբ գալիս ենք այն եզրակացութեան, որ սխալը կայա-
ում է ոչ միայն բառերի ընտրութեան, որով հանգուցեալ գիտ-
ականը կամեցել է բացատրել իւր տեսութիւնը, այլ և նոյն
ի սկզբունքի մէջ, որ է «օնօմատօպօյ»-ի տեսութեան սկըզ-
ունքը։ Թէև կան և այնպիսի բառեր—առաւել գործողու-
իւն ցոյց տուող—որոնց ծագումը կարելի է բացատրել այդ
եսութեամբ, սակայն ոչ ամբողջ լեզուի բառերը։ Սկզբնա-
ան մարդը բառեր կազմելիս առաւել ուշադրութիւն է
արձրել գործողութեան, քան թէ ձայնի վերայ, ու այդ
ասկանալի է, քանի որ նորա համար գլխաւոր բանը գոր-
ծողութիւնն էր և ոչ թէ դորա պատճառած հնչիւնի տե-
սակն, ուստի և մի բառ կազմելիս նա պէտք է առաւել այդ
գործողութեան գաղափարը կապակցէր բառի հետ։

Եթէ Հայը Ինճիճեան կենդանիներից չսկսէր, այլ գործողութիւն ցոյց տուող բայերից, գուցէ այնչափ անյաջողութիւն չունենար, վասն զի բայերն են, որ քիչ թէ շատ կարող են փաստաբանել այդ տեսութիւնը: Թէև այն բառերի թիւն, որոնց գաղափարը բառի հնչիւնի հետ ըմբռնելի նմանութիւն ունի, շատ սակաւ է, բայց այնուամենայնիւ իբր օրինակ կարելի էր բերել հետևեալները. տրոփել, գոռալ, կարկաչել, մռնչել, ծվծվալ, մրթմրթալ, ճռճռալ, կռկռալ, կլկլալ, խռխռալ, խշխշալ, վշշալ, ճարճատել, և այլն: Որպէս զի չնկատուի թէ այս բառերից շատերը նոր են, յառաջ ենք բերում 13-րդ դարում գրուած հայերէն «ոսկիփորիկ» կոչուած ձեռագրից հետևեալ բառերը. «բարաչել, մընչել, կոռչել, գոչել, մռնչել, մոնչել, բբչել, մռմռալ, ճչել, կանչել, գոգոհալ, վրընջել, գոռոչել, հաջել, հնչել, կառաչել, խրխընջալ, կաղկանձել, վակել, ոռնալ, կարկաջել»: Ստեփանոս երաժիշտ բաժանեց—ձայներն—իգ (26) (վերոյիշեալները) և շինեաց գործիք իգ. երգէին նոքօք» [22]:

Արդէն ասացինք, որ Հայոց լեզուի «զուտ Հայկական» մասի հետազօտութիւնն անկարելի է, որովհետև այդ ժամանակաշրջանի պատմութիւնն անյայտ է մեզ, սակայն ինչ վերաբերում է Հայ «սկզբնական» լեզուի ծագման և զարգացման, հասկանալի է, որ այդ տեղի պէտք է ունենար նոյն օրէնքներով, ինչ օրէնքով որ զարգացել են միւս բոլոր լեզուներն՝ ըստ մեր հիմնական տեսութեան՝ *աստիճանաբար զարգացման* օրէնքով: Նախնի Հայ ցեղը կազմելով ընդհանուր մարդկութեան մի փոքրիկ հատուածն, ապրում էր մի որոշ երկրում, ունէր իւր որոշ կեանքը, բարքն ու վարքը. իսկ իւրաքանչիւր ցեղ ներմուծում է իւր լեզուի ընտանե-

---

[22]) Այս ձեռագրի մի հատուածը տպուած է ,,N. Journal Asiatique"-ի մէջ. տես. tome IX (1867) էջ 196.

ան առանձնայատկութիւնները։ Կլիման, օդը, ջուրը, կե-
ակուրն և ըմպելին ազդում են լեզուի գործարանների և
ջգալիսով բնականաբար նաև լեզուի վերայ։ Լեզուի բնաւո-
ութիւնը միշտ նման է լինում իւր ծննդավայրի բնութեան
եա. ուստի և Հայաստանի դիրքն ու կլիման պակաս ներ-
ործութիւն չեն ունեցել Հայոց լեզուի կազմակերպութեան
երայ, որ պարունակում է իւր մէջ լեռնոտ երկրի բոլոր ազ-
եցութիւնը [23])։

Քանի որ Հայկական ցեղը դեռ ևս չէր ենթարկուել
ատր ազդեցութեանց և առանձնակի կեանք էր վարում,
եզուն ևս զարգանում էր աստիճանաբար. իսկ երբ Հայը
ուրս եկաւ իւր սահմանափակ շրջանից և շփուեցաւ իւր
րացի և իւրեանից զօրեղ ցեղերի հետ, նորա լեզուն ևս են-
թարկուեցաւ այդ զօրեղ ցեղերի ազդեցութեանը։

Լեզուն իւր իսկական էութեամբ վերցրած՝ Հաստատուն
միևնոյն ժամանակ իւրաքանչիւր վայրկեան անցողական է.
որա պահպանումը նոյն իսկ գրի միջնորդութեամբ անկա-
ար է. նա կարօտ է միշտ կենդանի խօսքի ազդեցութեան։
յսպէս ևս թէև Հայոց լեզուն մինչ այսօր հաստատուն է
նացել, բայց իւր զարգացման շրջանում ունեցել է այնպի-
ի վայրկեաններ, ուր նորա զարգացումն ընդհատուել և մինչ
սկ յետադիմել է։ Ի՞նչ ասել կուզէ, որ այս մոմէնտները միշտ
ապակցուած են եղել Հայոց կեանքի քաղաքական կամ աւե-
լաւ է ասել պատմական զարգացման ընթացքի հետ.
րբ Հայկական ցեղն ենթարկւում է դրացի զօրեղ ցեղերի

---

„Ընկերութեան վարքն ու բարքը և սովորութեան զօրեղ
ստուածուհին ներմուծում են լեզուի մէջ տարբերութիւններ և
ըգալիսով յառաջ բերում բարբառները—դիալէկտ" տես. Stein-
hal.—Der Ursprung der Sprache im zusammenhang mit den
tzten Fragen alles Wissens. էջ 72.

„Der Charakter der Sprache athmet schwüle Luft in Gebir-
en, ist Ernst und Härte". տես. Wahl: Allgemeine geschichte
er morgenländischen Sprachen und Litteratur էջ 74։

ազգեցութեան, լեզուն եւս դադարում է ինքնուրոյն և ընական ճանապարհով զարգանալուց. լեզուի ձեւերը խանգարւում և խառնւում են օտար լեզուների հետ. օտար ուժերը խանգարում են նորա ինքնուրոյն յառաջադիմութիւնը [24]։

Հայ ազգն իւր քաղաքակրթութիւնը գլխաւորապէս միշտ օտարից ստանալով՝ հասկանալի է, որ դորա հետ ի միասին և պէտք է ընդունէր այդ քաղաքակրթութեան գաղափարներն արտայայտող բառեր։ Օտար քաղաքակրթութիւնը բերում է իւր հետ իւրաքանչիւր ազգի համար անծանօթ գաղափարներ և այդ գաղափարներն արտայայտելու համար ընդունող ազգըստիպուած է լինում կամ այդ գաղափարների հետ կցուած բառերը նոյնութեամբ ընդունել կամ թէ դոցա տեղ նոր բառեր ստեղծել [25]։ Բառից առաջ պէտք է ընթանալ միշտ գաղափարի պահանջն, որովհետև բառը գաղափարի կատարեալ պարզութեան արտայայտութիւնն է. այստեղից է յառաջանում և այն հանգամանքն, որ լեզուի մի որոշ շրջանը չունի այն բոլոր բառերն, որոնք կարողանային արտայայտել այդ լեզուի տէր ազգի ունեցած նոյնաժամանակեայ բոլոր գաղափարները։ Եւ ճիշտ չէր լինի, եթէ այդ ազգի այդ ժամանակաշրջանում ունեցած գաղափարների պա-

---

[24]) Paul de Lagard իւր Armenische Studien աշխատութեան մէջ համեմատում է 2413 հայերէն (գրաբառ) բառ օտար բառերի հետ, իսկ մի այլ յօդուածում 283 բառ սանսկրիտի հետ։

[25]) Համարեա իւրաքանչիւր լեզուի մէջ գտանւում են այնպիսի խօսքեր, որոնց բոլորովին անկարելի է բացատրել նոյն լեզուի բառագիտութեամբ. թէև օտար եւս չեն երևում դոքա։ Այսպիսի խօսքերը մեծ մասամբ են՝ անօթների, զէնքերի, բոյսերի, կենդանիների և այլն անունները։ Սակայն այս բառերը մեծ մասամբ իւրաքանչիւր անգամուայ լեզուի ոգուն համեմատ են կազմուած և այնպէս յարմարեցրած, որ չի կարելի իբր օտար բառ ճանաչել։ Տես. Frd. Müller: Kuhn-Schleicher, Beiträge etc. հատ. II. էջ 490։

րը համահաւասար համարէինք նորա այդ ժամանակամի-
ւի բառերի հետ։

Սակայն ով չգիտէ, որ նոյն իսկ առանց օտարի ազդե-
թեան, լեզուի բառերն և ձևերը դարերի ընթացքում
փոխութեան են ենթարկւում. այս մասին գեղեցիկ կեր-
ւ նկատում է Լագարդ. «եթէ կեանքն այն զօրութիւնն է,
մշտական նիւթափոխութեան միջոցին միևնոյնն է մնում,
կարող է կեանքի-կեանքը, լեզուն—այդպիսի փոփոխու-
ւնից ազատել։ Ո՞վ կարող է պնդել, որ անունները չեն
փոխւում ժողովրդի բերանում մինչ այն աստիճան, որ
ն իսկ ինքը, դորա ստեղծող ժողովուրդը չէ ճանաչում
ևս, ուր մնաց թէ օտարները» [26])։



---

[26]) Տես. Paul de Lagard: Gesammelte Abhandlungen— 253:

# ԳԼՈՒԽ Ե.

## ԳԻՐ

...Կամ յարևելս և խօսիմ յարևմուտս. ի հիւսիսոյ և ի հարաւոյ բարբառիմ, յամենայնս ձայն ածեմ և ի մեռեալս բարբառիմ։ Անուն իմ բաղկանայ երեք տառիւք. երրեակ ի միակէն, միակն ի հնգեկէն և հնգեակն ի հինգ հազարացն։ Ծնունդ իմ ի ջրոյ է և մահ իմ ի նմանէ։ Ի հրոյ զարհուրիմ, և ի վէմս նստեալ արհամարհեմ զնոսա։

Եթէ կարես՝ ճաշակեա, եթէ չկարես ի զատ կաց։

Դաւթի փիլիսոփայի իմաստութիւն

*Գրի տեսակները. բերանացի աւանդութիւն. պատկերագիր. դորա ծագումը. եգիպտական „հիերօգլիֆներ", „քրմական" եւ „ժողովրդական" գիր. գաղափարագրի եւ ձայնի մէջ եղած տարբերութիւնը. պատկերագրի հնդկաչինական կողմը. նշանագիր. պատկերագրի եւ նշանագրի գործածութիւնը հայոց մէջ. պրոֆ. Էմինի կարծիքը. ցուցակ հայոց նշանագրերի։*

---



Յարմար դասաւորութեան համար գիրը կարելի է երկու տեսակի բաժանել. դոցանից մէկն արտայայտում է գաղափարներ և կոչւում „գաղափարագիր", իսկ միւսը միայն հնչիւններ և կոչւում „հնչիւնագիր"։ Այդ երկու տեսակներից իւրաքանչիւրն ունի դարձեալ երկու բաժանումն. գաղափարները կարելի է արտայայտել պատկերներով և նշաններով, իսկ հնչիւնները վան-

րով և տառերով. այսպիսով կունենանք գրի հետևեալ ժանումները.

I *Գաղափարագիր* [1]. ա. պատկերագիր [2] բ. նշանա-իր [3]:

II. *Հնչիւնագիր* [4]. ա. վանկագիր [5], բ. տառագիր [6] մ տառ:

## I. Գաղափարագիր

Գրի էութեան գլխաւոր յատկանիշն է գաղափարների պակցութիւնը. այդ պատճառաւ և իւրաքանչիւր գիր այն-խի յատկութիւն պէտք է ունենայ, որ ցանկացած մտապատ-րներն արթնացնէ մեր հոգւոյ մէջ. այլ խօսքով իւրաքան-ւր գրի *արտաքին տեսքը* պէտք է մի որոշ գաղափար յա-աջ կոչէ մեր մտքի մէջ: Արդ, ինչը կարող է մեր մտքի ջ մի որև է առարկայի ճիշտ մտապատկերն առաւել դիւ-ւթեամբ պատկերացնել քան նոյն իսկ այդ առարկայի *նկա-* . ուստի և հասկանալի ու պարզ է՝ թէ ինչու մարդս իւր գա-ափարները գրով այլոց յայտնելու համար ընտրել է բնակա-րաբ այդ միջոցը: Նկարների միջոցաւ մի որև է գաղափար մ դէպք այլոց հաղորդելու արուեստը կոչւում է *պատկե-ագիր*: Պատկերագիրը ներկայացնում է այն *սկզբնական* մի-ցն, որով ազգերն իւրեանց մէջ պատահած իրողութիւններն տայայտել են *գրաւոր կերպիւ*: Նշանաւոր և զարմանալի

---

[1] Begriffsschrift (գերմաներէն), Idéographisme անսերէն):

[2] Bilderschrift գերմաներէն. Hiéroglyphe ֆրանսերէն:

[3] Zeichenschrift գերմ. Symbolisme ֆրան.

[4] Lautschrift գերմ. Phonétisme ֆրան.

[5] Silbenschrift գերմ. Syllabisme ֆրան.

[6] Buchstabenschrift գերմ. Alphabétisme ֆրան-

Իրողութեանց յետագաներին հաղորդելու ձգտումը նոյնչափ հին է, որչափ մարդկային ցեղի սկզբնական զարգացումը։ Սկզբնական ժամանակներում, քանի որ գրի տեսակները դեռ ևս գոյութիւն չէին կարող ունենալ, մարդկութիւնը միմիայն մի միջոց ունէր իւր այդ ձգտմանը բաւականութիւն տալու. այդ միջոցն էր *բերանացի աւանդութիւնը*։ Այն ժամանակուայ մարդիկ շատ երկար ապրելով, որդիքը, թոռները և թոռանթոռները կարող էին իւրեանց մեծ պապի շուրջը ժողովուել և նորա պատմածները լսելով՝ իւրեանց թոռներին աւանդել։ Այսպիսով բերանացի աւանդութիւնը կատարելապէս բաւականութիւն էր տալիս սկզբնական մարդկանց վերոյիշեալ ձըգտմանը. Նահապետական կամ հովուական կեանքը միջոց էր տալիս նոցա ազատ երգելու և այդ երգերը «բերնէ-բերան» անցնելով դառնում են ժողովրդական երգեր, որոնց մէջ և պարունակուած է այն ժամանակի ամբողջ պատմութիւնը։

Մի որև է իրողութիւն յետագաներին հաղորդելու ձըգտման զարգացման երկրորդ աստիճանն է *պատկերագիրը*. Վայրենի ցեղերն այսօր ևս գործ են դնում պատկերագիր, համարեա երկրիս ամենայն մասերում և ամենայն տեղ միևնոյն սկզբունքով, այսինքն որչափ կարելի է առարկաների նմանութեամբ նկարներ գծագրել կարծր և կակուղ մարմինների վերայ։—Ամերիկայի հնդիկները պատկերագիրը գծագրում են սովորաբար բարձր ժայռերի վերայ. յայտնի գիտնական Հումբօլտը պատմում է, որ երբ ինքը մի անգամ Օրինոքկոյի հընդիկներին զարմացմամբ հարցնում էր, թէ ինչպէս կարողացել են նոքա գետեզրի այնչափ բարձր ժայռի վերայ պատկերներ գծագրել՝ ժպտալով պատասխանել են պարզապէս, որ իւրեանց նախահայրերը ջրի վարար ժամանակը նաւակներով են հասել մինչ այն տեղ։—

Պատկերագրի ընթերցումը դժուար է և ամենայն ոք չի կարող հասկանալ դորա նշանակութիւնը, վասն զի նշանացի խօսակցութեան նման քերականութիւն չունի ու վերացական

(1)



ՎԱՅՐԵՆԻ ՀՆԴԻԿՆԵՐԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ

ունների ու գործողութեանց նկարագրութիւնն խիկապէս
այմանական է [7]:

Պատկերագրի մայր և պատմական երկիրն է Եգիպտոսը:
է մի երկիր այնչափ հարուստ չէ արձանագրութիւններով,
չափ Եգիպտոսն. այդ երկրի պատկերագիր արձանագրու-
իւնները կազմում են մի ընդարձակ և անզուգական գրակա-
ւթիւն: Եգիպտական պատկերագիր արձանագրութիւնները
չւում են «Հիերօգլիֆ» - յունարէն բառ, որ նշանակում է
րբազան փորագրութիւն» — և զարդարում Եգիպտական բուր-
երի պատերը, յիշատակարաններն և մումիաներ պարունա-
ղ դամբարաններն ու դագաղները: [8]) «Հիերօգլիֆ»-ները բաղ-
ացած են կենդանի և անշունչ առարկաների, մարդկանց և

[7])Ցառաջ ենք բերում վայրենի ցեղերի պատկերագիր ար-
անագրութեան մի օրինակն, որ ներկայացնում է հնդիկների մի
անաւոր առաջնորդի ծովային ճանապարհորդութիւնն և գտան-
ւմ է „Օբեր" կամ „վերին" լճի—հիւսիսային Ամերիկայում,
անդեան հինգ լճերից ամենամեծը—ափին գտանուող ժայռի
րայ: Նկարուած են հինգ նաւակներ, որոնք ցոյց են տալիս,
նաւակների թիւն այդչափ էր. նաւակների մէջ եղած ուղղա-
ւյեաց գծերը ցոյց են տալիս իւրաքանչիւրի մէջ գտանուած
րդկանց թիւն. առաջին նաւակի մէջ է առաջնորդի գլխաւոր
ւշնակիցն, որ կոչւում է „Կիշկէմունազի" և որովհետև „Կիշ-
մունազի" մի թռչնի անուն է, այդ պատճառաւ և նկարուած
ւչունը պէտք է արտայայտէ այդ անունը: Նկարուած երեք
աշրջանները երեք գունտերով ցոյց են տալիս, որ երեք արև-
ր երկնքի տակ էին արդէն, այսինքն ճանապարհորդութիւնը
եց երեք օր: Կրիան ցոյց է տալիս ցամաք դուրս գալն, իսկ
աջնորդի պատկերը ձիու հետ ի միասին ցոյց է տալիս, որ այդ
նապարհորդութիւնը տեղի է ունեցել այն ժամանակ, երբ ար-
ն Ֆանագայում ձիեր էին ներմուծուած տես T y l e r: „For-
ungen über die Urgeschicte der Menschheit" գլխ. V. էջ. 107:

[8]) Բէրլինի ազգային թանգարանը շատ հարուստ ժողովա-
ունի եգիպտական մումիաների և դամբարանների, որոնցից
ները քառանկիւնի ու շատերն և դագաղի ձև ունեն և ա-
կողմից շրջապատուած են զանազան գոյնի պատկերագրերով.

կենդանեաց և դոցա մասերի, բոյսերի, երկնային մարմինների. զէնքերի, գործիքների և այլն պատկերներից։ Այս պատկերները շարայարուած են ուղղահայեաց սիւնակներով կամ հօրիզոնական գիրքով ու կարդացւում են կարգով։

Երկար դարերի ընթացքում Եգիպտական պատկերագիր արձանագրութիւնները գիտնական աշխարհի համար «Գորդեան հանգոյցներ» էին ու մինչև 19-րդ դարու սկիզբն եւրոպական գիտնականների բոլոր աշխատանքն այդ արձանագրութիւնները կարդալու համար համարեա թէ իզուր էին անցնում։ Նատերն այն համոզման էին գալիս, որ Եգիպտոսը մի մշտական գաղտնիք պէտք է մնայ, երբ 1799 թ. Փրանսիացի սպայ Boussard-ը գտաւ մի արձանագրութիւն «Րոզէտէ»-ի մօտերն, որ գրուած էր երեք տեսակ գրով. այսինքն. ա. Եգիպտական պատկերագրով. բ. Եգիպտական «ժողովրդական» կոչուած գրով և յունաց *այբուբենով*։ Յունարէն գրուած բնագիրը ցոյց էր տալիս, որ դորա բովանդակութիւնն եգիպտական եկեղեցականների մի հրովարտակ էր ի պատիւ Պտղոմէոս V-ի [9]։ Ահա այս արձանագրութիւնն եղաւ առաջին բանալին, որ բացեց Եգիպտական այն բազմատարած և անթիւ գրականական և պատմական գանձերի փակուած դռները։ Այնուհետև կարճ ժամանակամիջոցում եգիպտական արձանագրութեանց կարդալու արուեստը կատարելագործուեցաւ և այսօր այդ «գորդեան հանգոյցը» լուծուած կարելի է համարել։ Այդ արձանագրութեանց բովանդակութիւնը լոյս ձգեց պատմական այնպիսի ժամանակաշրջանների վերայ, որոնք *նախապատմական* էին համարուած [10]։

---

*այնպէս որ եթէ առաջուց չը գիտենայինք դոցա էութիւնը, կարող էինք դիւրութեամբ այդ նկարներն իբրև զարդարանք նկատել:*

[9]) Տես. Maspero: Geschichte der morgenländischen Völker im Altertum. եջ 577.

[10]) Գիցեհի Բուրգերին, որ շինուած են 6000 տարի Քրիստոսից առաջ, եգիպտական չորրորդ իշխանութեան ժամանակ,

Եգիպտական հիէրօգլիֆ արձանագրութիւններն իսկապէս միմիայն պատկերագրերից չեն բաղկացած, այլ պարունակում են երեք տեսակ գիր որոնք են. ա. իսկական պատկերագիր— այսինքն ինքնաքանչիւր պատկեր արտայայտում է իւր առարկայի գաղափարն. օրի. համար նկարուած թռչունը կընշանակէ թռչուն. մարդը—մարդ և ձին—ձի։ Բ. նշանագիր—այսինքն նկարուած պատկերներն արտայայտում են բառեր, որոնք արտաքուստ նկարի հետ նմանութիւն չունին. օրինակի համար նկարած մարդկային պատկերը, բացի նորանից, որ արտայայտում է մարդ գաղափարն, ունի և հետևեալ բառերի նշանակութիւնը. «սէ»—անձն, ,,րօտ''—մարդ, ,,ա''—ես, իմ և այլն [11])—վերացական գաղափարներ արտայայտելու համար ընտրուած նշանագիր պատկերները շատ անգամ խորին միտք են պարունակում իւրեանց մէջ, օրինակի համար ,,մայր'' գաղափարն արտայայտելու համար եգիպտացիք նկարել են մի ,,անգղ'', որովհետև նոքա կարծում էին, որ թռչուններն այս ցեղն արգինաքերում է առանց արուների հետ միութիւն ունենալու։ [12]) Մի առարկայի պատկերն, որ պարունակում է իւր մէջ առաւելապէս մի որոշ յատկութիւն, գործ է դրւում նոյն իսկ այդ յատկութիւնն արտայայտելու համար. երբ մենք բանաստեղծական կերպիւ ենք կամենում մեր միտքն արտայայտել՝ վերացական գաղափարների տեղ գործ ենք դընում զգայական նշանակութիւն ունեցող բառեր. ինչպէս օրինակի համար ,,փառք'' արտայայտելու համար, ,,դափնի'', արքայական իշխանութեան համար ,,գահ'' կամ ,,գայիսոն'' և այլն. այդպէս և վարւում է այսօր Հնդիկը կամ վարուել

---

իրենց մէջ պարունակում են բազմաթիւ արձանագրած յիշատակարաններ։

[11]) Տես. Eduard Mayer: Geschichte des Alterthums. Հատ. I էջ 29։

[12]) Տես. Lenormant: Essai sur la Propagation de l'alphabet Phénicien. Հատ. I էջ 16։

է Հին Եգիպտացին՝ — երբ արեգակ նկարելով կարդում է ,,լոյս", նկարած ականջը նշանակում է լսել, աչքը տեսնել և այլն: —

Գ. Վանկ և տառ արտայայտող *Ֆոնետիկագիր*, այսինքն նկարած պատկերներ, որոնք բոլորովին անկախ իւրեանց արտաքին տեսքից արտայայտում են մի վանկ կամ տառ. օրինակի համար նկարուած ,,բերանը" բացի բերան նշանակելուց կարդացւում է նաև իբր ,,ր" կամ ,,րօ" — որ նոյնպէս բերան է նշանակում. առաջին գիպուածում յաճախ նկարը պարունակում է մի գիծ, որպէս գի գանազանուի ,,ր" կամ ,,րօ"-ից:[13])

Այսպիսով եգիպտական աւձանագրութիւնները պարունակում են իւրեանց մէջ գրի բոլոր տեսակներն. որոնք նոյնպէս ապացուցանում են եգիպտական գրի ծագման հնութիւնն և աստիճանաբար զարգացումը: Հիէրօգլիֆները ցոյց են տալիս այն ամբողջ ճանապարհն, որով մարդկային միտքը ձրգտել է հետզհետէ իւր արտասանած անցողական հնչիւններին ու բառերին՝ *մնայուն* յաւկութիւն տալու: Եւ եգիպտացւոց պահպանողական բնաւորութեան պէտք է վերագրել, որ գրի զարգացման իւրաքանչիւր աստիճանն անբաժան է մնացել պատկերից. նոյն իսկ այն ժամանակ, երբ արդէն կազմուած էր այբուբենական գիրը: Նոյն իսկ մի բառի գրութեան եղանակի փոփոխութիւնը պարունակում է իւր մէջ գրի զարգացման պատմութիւնը. սկզբում եգիպտացիք ,,ճշմարտութիւն", ,,արդարութիւն" արտայայտելու համար նկարում են մի ձեռք, որև բաւականացուցիչ է համարւում այդ գաղափարի համար. սակայն յետոյ կամենալով նոյն իսկ այդ գաղափարն արտայայտող ,,*մա*" բառը նկարուած տեսնել՝ աւելացրել են մի ,,մանգաղ" իբր վանկագիր ,,մա"-ի համար. ժամանակի ընթացքում գործածով ևս չբաւականանալով՝ եգիպտացիք աւե-

[13]) Տես. Tyler: Forschungen zur Urgeschichte der Menschheit. եջ 124:

ացնում են մի ձեռք՝ իբր ,,ա‘‘ ձայնաւոր, որով և ,,մանգաղ‘‘-ը միայն ,,մ‘‘-ի նշանակութիւն է ստանում։ [14]) Այս աստիճանաբար զարգացումն ուսուցանում է մեզ գրի պատմութիւնն, ինչպէս որ երկրի զարգացման պատմութիւնը պարզվում է երկրի տարբեր շերտերի և դրութեանց մէջ պարունակուող նիւթերից։—Չինական գիրը թէ և այդչափ կատարելագործուած չէ, սակայն ցոյց է տալիս նոյն զարգացման ուղին։—

Եգիպտական գիրը նոյն իսկ անուններով բաժանուած է երեք դասակարգի, որոնք ցոյց են տալիս նոյնպէս դորա աստիճանաբար զարգացման ընթացքը. ա. հիէրօգլիֆ, բ. ,,հիէրատական‘‘—որ նշանակում է ,,քրմական‘‘ գ. ,,դեմօտական‘‘—որ նշանակում է ժողովրդական. այս տեսակը կոչւում է նաև ,,նամակագրական‘‘—,,epistolographisch“: Ինչպէս արդէն տեսանք, առաջինը գործ էր դրւում բուրգերի պատերի ու յիշատակարանների ու դամբարանների վերայ. երկրորդը ծառայում է քահանայական կամ քրմական դասի գործածութեան համար։ Երկրորդը յարաբերում է առաջինին այնպէս, ինչպէս մեր սովորական ձեռագիրը յարաբերում է տպագրին. ինչպէս որ ուրաքանչիւր գիրք կարդացող չի կարող ամեն ձեռագիր կարդալ, այնպէս և ուրաքանչիւր եգիպտացի, որ ծանօթ էր հիէրօգլիֆի հետ, չէր կարող քրմական գիրը կարդալ։ Եգիպտական գրի այս երկու տեսակները գըտնւում են նոյն իսկ Գիզեհի բուրգերի մէջ, որ շինուած են 6000 տարի Քրիստոսից առաջ, և գոյութիւն ունէին նոյնպէս եգիպտական կրօնի անկման ժամանակ, որ տեղի ունեցաւ քրիստոնէութեան առաջին դարերում։ Գրի այդ երկու տեսակները տարբերւում են միմեանցից նաև նորանով, որ առաջինը փորագրւում կամ նկարւում է արուեստական մեծ հո-

---

[14]) Տե՛ս Steinthal: Gesammelte Sprachwissenschaftliche Abhandlungen եր 109.

գացողութեամբ. իսկ երկրորդն աւելի պարզ և հասարակ է։

Քրմական գրից աստիճանաբար յառաջացել է ժողովրդական գիրն, որ մօտենում է տառագրին. այս գիրը յերևան է գալիս արդէն ութերորդ դարում Քրիստոսից առաջ։

Գաղափարագիրն իւր արտաքին տեսքով այնչափ նման է նկարչութեան, որ դիւրութեամբ կարելի է սխալուել և պատկերագիրն իբր սոսկ նկար ընդունել, ուստի և կարևոր է դոցա ներքին տարբերութիւնը համառօտակի բացատրել։

Նկարչութիւնը կարող է միայն մի որ և է առարկայ ներկայացնել, իսկ գաղափարագիրը հաղորդում է մի որ և է միտք։ Արուեստն այնպիսի գաղափարներ է ներկայացնում, որոնց հասկացողութիւնն իբր ընդհանուրին մատչելի է ի նկատի առնում և նկարիչը կամենում է, որ այդ գաղափարներն, որ արդէն յայտնի են, իւր նկարի մէջ կրկին ճանաչուին. նա չէ ցանկանում նոր բան ուսուցանել, օրինակի համար թէ՝ «այս տեսքն էր ներկայացնում Արարատը ջրհեղեղից յետոյ» [15]). գիրն ընդհակառակը հաղորդում է մի որ և է անծանօթ դէպք կամ նորութիւն։ Սակայն տարբերութիւնը միայն նպատակի և ներգործութեան մէջ չէ, այլ և իրագործման եղանակի մէջ, որովհետև տարբեր նպատակները պահանջում են նաև տարբեր միջոցներ։ Նկարիչը նկարում է իւր առարկան անմիջապէս և դիտողի հաւանութեան ներկայացնում. նկարն անմիջական կապակցութիւն ունի թէ մեր և թէ նկարչի հայեացքի հետ։ Երբ նկարիչը վրձինի միջնորդութեամբ մարմնացնում է իւր հայեացքը, մենք աչքի միջնորդութեամբ ընդունում ենք այդ հայեացքը մեր գիտակցութեան մէջ. այսպիսով հայեացքը փոխում է իւր տեղը կամ իւր գոյութեան եղանակն. դա իւր սկիզբն առնելով ստեղծող երևակայութեան մէջ և մարմնանալով մի որ և է

15) Հայազգի նկարիչ Յ. Այվազովսկու «Ջրհեղեղից յետոյ» գեղեցիկ պատկերը գրաւած էր Բէրլինի պատկերահանդիսում։

-թի մէջ՝ տեղափոխւում է դէպի դիտողի երևակայութիւ-
Գաղափարագիրը ո՛չ թէ դիտւում, այլ կարդացւում է,
ինքն լեզուի միջնորդութեամբ դառնում է մտքի սեփ-
կանութիւն և որովհետև հաղորդւում է, այդ պատճա-
ու և միայն մի միջոց է. այն ինչ պատկերն անկախ է և
ր արժանաւորութիւնն իւր մէջ է պարունակում։ Եւ վեր-
պէս, որովհետև այդ երկուսից իւրաքանչիւրն այլ է, այլ
րպ է ներգործում, ուստի և երկուսի բովանդակութիւնն
այլ պէտք է լինի։ Նկարը ներկայացնում է մի իդէալա-
ն իր՝ նկարչի գաղափարն, այդ պատճառաւ և պատկանում
գեղեցկի շրջանին. իսկ պատկերագիրը ներկայացնում է
կական իր կամ անցք և կամենում է ցոյց տալ, որ այս
րուածն իսկապէս տեղի է ունեցել։ Իսկական պատկերա-
րը շատ անգամ ոչ այլ ինչ է, եթէ ոչ միայն յիշողու-
եան համար օժանդակիչ միջոց. դորան կարելի է գրի նա-
աշաւիղն անուանել։ Կարելի՞ է արդեօք գիր անուանել
օրինակի համար հիւսիսային ամերիկացին Սողոմոնի
ակաց գրքի 30 գլխի վերջին տողերն արտայայտելու հա-
ր նկարում է նոյնչափ կենդանեաց պատկերներ, որչափ
դոքա գտանւում են այդ տողերի մէջ—մրջիւն, ճագար,
իւծ, աքաղաղ և այլն և վերջը մի մարդ, որ իւր ձեռքե-
դէպ երկինք է տարածել [16]։
Պատկերագրի և լեզուի մէջ չկայ ոչինչ յարաբերութիւն.

---

16) Ահա՛ առակաց գրքի այդ հատուածը. ,,Մրջիւն՝ որոց ոչ
զօրութիւն և պատրաստ է յամարայնոյ զկերակուր իւր։ Եւ
գար ազգ անհզօր, որք արարին ի վէմս զդադարս իւրեանց։
անց թագաւորի է մարախ, և զօրաժողով լինի իբրև ի միոջէ հրա-
նէ օրինօք։ Եւ սարդ կռուեալ ձեռօք ի յորմս, որ դիւրին է
որսալ. բնակի ի յարկս թագաւորաց։ Երեք են՝ որք պարծ
ջին և չորրորդն գեղեցիկ սիմ է։ Կորիւն առիւծու հզօր է քան
նասունս...,,։ Տես Աստուածաշունչ. գիրք առակաց. գլ. Լ. տուն
—31. էջ 616 Պետերբուրգի հրատարակութեան (1817 թ.)։

դոյն խսկ մաքի ձեւն անկարելի է արտայայտել դորա միջնորդութեամբ. պատկերագիրն աւանդում է միայն նիւթը, շատ անգամ անորոշ թողնելով թէ արդեօք այն նիւթը ներկայացնում է անցեալում կամ ներկայում տեղի ունեցող մի դէպք, թէ միայն մի ցանկութիւն է և վերաբերում է ապագային [17]։

Գաղափարագրի մասին վերջացնում ենք մեր դիտողութիւնները հոգեբանական քանի մի ակնարկութիւններով։

Պատկերագիրը յառաջ բերելով իւրաքանչիւր առանձին առարկայի միմիայն զգայական նկատողութիւնը, ներկայացնում է գիտակցութեան անասնական աստիճանը։ Առանձին զգայական իրը կազմում է այդ նկատողութեան բովանդակութիւնն. այդչափ է տալիս միայն պատկերագիրը։ Պատկերագիրը նոյն տեղն է բռնում գրի տեսակների մէջ, ինչ տեղ որ բռնում է համր-խուլերի լեզուն խսկական լեզուների մէջ։ Սակայն նշանացի խօսակցութեան կենդանութիւնն և գիւրութիւնն առաւելութիւն է տալիս դորան. այդ պատճառով և դա գերազանցում է դժուար իրագործելի պատկերագրին։ Երկուսի մէջ ևս իրն և իւր յատկութիւնը բաժանուած չեն. սակայն ուր որ այդ դեռ ևս տեղի չէ ունեցել, այնտեղ անկարելի է մաքի ձեւի ըմբռնումն և արտայայտու-

---

[17]) Յառաջ ենք բերում եգիպտական պատկերագիր արձանագրութեան մի օրինակ (№ II), Կիլիկիայի „Ադանա“ քաղաքում 1881 թ. մի տուն շինելու ժամանակն է գտնուել այս եգիպտական արձանագրութիւն կրող. արձանը որ ներկայացնում է ծնկների վերայ չոքած մի եգիպտացի կին. արձանի գրկի մէջ երեք ուղղահայեաց տողերով գրուած է հետեւեալը. „ Մի զոհ, որ տալիս է արքան, զոհ հանգուցելոց, որ պարունակում է՝ հաց, իւղ, սագ, շոր և այլ յաւ բաներ Ամմէ Սատ-Սաֆրուի կա ի համար, արժանեաց տիրուհուն“։ Արձանագրութիւնից երեւում է, որ արձանը մի եգիպտական մահարձան է. թէ երբ և ի՞նչ հանգամանքներում այս արձանը Կիլիկիայ է բերուել, յայտնի չէ։ Տես. Dr. A. Erman: Eine ägyptische Statuette տպուած է Zeitschrift d. d. morg. Gesellschaft. հատ. 38. էջ 440։

(II.)





ԵԳԻՊՏԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԳԻՐ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ

թիւնն, ուրեմն և այդտեղ գոյութիւն չունի խսկական ձևաերպուած մտապատկեր, այլ միայն զգայական նկատուՈւթիւն։ Դա գոյութիւն ունի գիտակցութեան մէջ իբր ի զանգուած շատ անբաժան տարրերի. նա չէ պարունակում մինչև անգամ մի առանձին իր, այլ ամբողջ էպքեր անձանց և իրերի, ինչպէս որ սոքա իւրեանց արաքինով արտայայտում են։ Կարելի է նոյն իսկ պնդել, աում է «Նոայնիթալ», որ օրինակի համար. որսորդ, արջ, կներ պարունակող մի նկարի տեսքը վայրենու մէջ չէ ըրթնացնում այդ երեք իրերի առանձին մտապատկերներն, այլ միայն երկու գործողութեանց դէպքեր, այսինքն մի արի սպանելն որսորդի ձեռքով և ձկնորսութիւն։ Վայրենու ռեսակէտից կենդանիները գոյութիւն ունին ոչ թէ իւրեանց, այլ միայն իւր որսի համար, ուստի և միայն այդ յարաբեութեամբ է մտածում նոցա մասին։ Այդ պատճառաւ և կարած առարկաների յարաբերութեանց բազմատեսակ լինելը—որ մեզ արգելում է ճիշտ որոշել՝ թէ որն է իսկապէս էրողի գիտաւորութիւնը—բոլորովին գոյութիւն չունի վայենիների համար։ Մեր գիտակցութեան մէջ այդ նկարած առարկներից իւրաքանչիւրն առանձին է և ընդունակ այոց հետ կապակցուելու, այդ պատճառաւ և շատ անգամ այլ կերպ ենք կապակցում պատկերագրի նկարներն, որտեից և յառաջանում է պատկերագրի սխալ ընթերցումն։ Իսյական և պարզ պատկերագիրը կարող է միայն մի վայրենի ժողովրդի գիրը լինել, որի հոգեկանն և նոյն իսկ կրօնն ոչ այլ ինչ է, եթէ ոչ զգայական զգացումն. «դոքա միայն այն չափով ն մարդ, որչափ կարևոր է անասուն չլինելու համար» [18]։

---

[18]) Տես. Steinthal. նոյն էջ 66.

Թէև տառերի յերևան գալուց յետոյ ամենայն ուրեք անյայտանում է պատկերագիրը, սակայն այնուամենայնիւ այստեղ և այնտեղ միշտ կարելի է գտնել դորա հետքերը։ Նոյն իսկ մեր գործածած „հռովմէական" կոչուած թուերն ոչ այլ ինչ են, եթէ

Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ մարդկութ
հետզհետէ կատարելագործման ձգտելով՝ մի որոշ ժամ
կից յետոյ այլ ևս չէր կարող բաւականանալ պատկ
գրով. միւս կողմը թողնելով այլ արգելքները, բաւ
է յիշել միայն՝ թէ մի նախադասութիւն կամ մի որ
դէպք արձանագրելու համար ո՜րչափ ժամանակ էր հա
ւոր—և եթէ այն ևս ինկատի ունենանք, որ այդ արձ
գրութիւնները մասամբ ևս կարծր մարմինների վերայ
փորագրւում—կարող ենք երևակայել թէ ո՜րչափ դժ
էր այդ։ Ահա այս դժուարութիւններից հարկադրուած
գերը սկսում են նկարները կրճատել, այսինքն միայն
րագրերը գծել և հետզհետէ այդ ևս կրճատուելով մնու
միայն գլխաւոր գծերը։ Այս եղանակաւ պատկերագրի
յառաջ է գալիս բ. *Նշանագիրը*։

Սկզբում նշանագիրն արտայայտում է այն առարկա
գաղափարներն, որոնց գծագրից յառաջացել է ինքը, սա
սակաւ առ սակաւ մոռացւում է, որ այդ նշանագիրը
գել է որոշ պատկերագրից և դառնում է պայմանական
շան. դոքա հետզհետէ առաւել ընդարձակ նշանակութիւ
ստանում՝ ընդունելով տարբեր գծեր։ Այսպիսով իւրաք
չիւր բառ ստանում է իւր նշանագիրն և այդ նշանագրից հ
զհետէ կազմակերպւում է *Հնչիւնագիրը*։

Յառաջ քան հնչիւնագրի մասին խօսելը մի ակն
ձգենք այն խնդրի վերայ, թէ արդեօք Հայերն եւս ուն
են պատկերագիր եւ նշանագիր գործածելու սովորութի

---

ոչ պատկերագրի հետքեր։ I. II. III. և այլն ուղղակի տեսա
միութիւններ են. իսկ V և X-ի յառաջանալը բացատրու
այսպէս. մատներով կամ ձողերով թուելով մինչև 10 թիւը,
մար են դատել այստեղ մի նշան դնել և նորից սկսել. այդ ն
այն է եղել, որ մի մատը կամ ձողը թեք կերպիւ միւսի վ
են դրել. դորանից և յառաջացել է „X“ որի ուղիղ կէսը
կայացնում է „V“։ Տես Tyler. նոյն էջ 133.

Հայոց մէջ մարդկային գաղափարները յետագաներին հաղորդելու ձևի առաջին աստիճանի—պատկերագրի—գոյութեան մասին մեր պատմագիրներն ոչինչ չեն հաղորդել մեզ և մինչև այժմ յերևան եկած հնութիւններն ևս չեն ապացուցել, որ պատկերագրի գործածութիւնը յայտնի լինէր մեր նախնեաց գոնէ պատմական ժամանակներում։

Բազմաշխատ պրոֆ. Մ. Էմին իւր Հայոց գրի մասին գրուած յօդուածի [19]) մէջ ո՛չ թէ միայն ենթադրում է, որ մեր նախնիք գործ են դրել պատկերագիր, այլ և ձգտում է հաստատել, որ կռապաշտական ժամանակ ունեցել ենք մեր սեպհական ստեղծած պատկերագիրն, որ ոչինչ կապ չունէր մեր դրացի ժողովրդների հետ, քանի որ դոքա այդպիսի գիր չունէին։

Իւր տեսութիւնը հաստատելու համար յարգելի ուսուցչապետը հետևեալ փաստերն է առաջ բերում.

ա. Հայերէն գրուած շատ հին ձեռագրների մէջ գտնում ենք պատկերագրի հետքերն։

բ. Շատ բառեր մինչև այսօր ևս գրում ենք նշանագրով՝ թէ տպուած գրքերի և թէ ձեռագրների մէջ։

գ. Իբր ապացոյց այդ տեսութեան պրօֆ. Էմին հրատարակել է մի ցուցակ, որ ներկայացնում է ութսուն և չորս նշաններ։

Պրօֆ. Էմինի յառաջ բերած այս փաստերից պարզ երևում է, որ նա պատկերագիրն և նշանագիրը միմեանցից չէ զանազանում. եթէ «гіероглифическіе знаки» ասելով պէտք է հասկանալ «պատկերագիր»—Hieroglipħ—, այն ժամանակ այդ նշաններից շատերը պատկերագիր չեն. իսկ եթէ «նշանագիր» պէտք է հասկանալ, այն ժամանակ չի կարելի ասել թէ մեր դրա-

---

[19]) Объ армянскомъ алфавитѣ, որ հրատարակուած է իբրև չորրորդ յաւելուած Խորենացու պատմութեան ռուսերէն թարգմանութեան հետ։

ցիք չունէին այդ, քանի որ բացորոշ կերպիւ յայտնի է,
կային թէ ասորական և թէ պարսկական բառեր և վան
արտայայտող նշաններ։ Հաւանական է, որ պրօֆ. Էմին ն
եսկ իւր գործ դրած բառին հաւատարիմ մնալով՝ պատ
րագիրն աչքի առաջ ունի, վասն զի նորան քաջ յայտնի
ասորական և մեր գրացի այլ երկրների մէջ եղած նշան
գրերի գոյութիւնը։ Արդ նորա յառաջ բերած փաստերն ա
չափ հիմնաւոր են, որ կարելի լինէր Հայոց սեպհական
սիստեմատիկական պատկերագրի գոյութիւնն ապացուցու
համարել և հետևեալ եզրակացութեան գալ ‹... Այս
քանի մնացորդները ստիպում են մեզ մտածել, որ Հայս
տանում երբեմն իսկապէս գոյութիւն ունէր պատկերագի
որ վերին աստիճանի զարգացած էր և տարածուած ամենա
տեղ...› 20)։

Ո՛չ։ Պրօֆ. Էմինի յառաջ բերած ցանկի մէջ ուժսուն
չորս նշաններից հազիւ 7—8 պատկերագիր կարելի է հ
մարել. թէև պ. Էմին պատկերագրի շարքն է դասել ն
2-րդ, 15-րդ, 8-րդ և այլն նշաններն, սակայն անհասկան
լի է թէ 2-րդն ի՞նչ կապ ունի ‹անդաստան›ի, 15-րդը ‹մ
գարէ›ի հետ. 8-րդի մասին պ. Էմին ասում է. ‹այս նշա
կարելի է համարել երաժշտական ձայնանիշ› 21)։—Մի
մեր կուապաշտ նախնիք երաժշտութեան մէջ այդչափ յառ
ջադիմութիւն էին արել, որ ձայնանիշ գիր—նոտա—ևս
նէին. ընդհակառակն երաժշտութիւնը զարգացման ամեն

[20]) Տես. Эминъ: Исторія Арменіи Моисея Хоренск
եջ 378

Հայագէտ գիտնական Բրօսէն խօսելով պրօֆ. Էմինի այդ
գուածի մասին՝ անուանում է այդ յափշտակութիւն „enthousiasm
տես. Brosset: Analyse critique de la всеобщая Исторія de W
dan etc, տպուած է Memoires l'académie impériale des sci
ces de St. Petersbourg. VII-e serie, t. IV. № 9. եջ 15.

[21]) Տես. Эминъ: նոյնը եջ 380.

ստորին աստիճանի վերայ էր գտանւում Հին Հայաստանում, նոյն իսկ աւելի ուշ ժամանակներում։ Գերմանացի հեղինակներից մէկը, կարծում ենք, չէ սխալւել, ասելով որ երաժշտութիւնը—մուզիկան—երբէք Ասորոց և Հայերին չէ զբաղեցրել 22)։—Արդեօք կարելի՞ է միմիայն 7—8 հատ պատկերագրի նշանակութիւնն ունեցող նշաններից եզրակացնել, որ «պատկերագիրը գործածական էր Հայաստանում», «վերին աստիճանի զարգացած» և «տարածուած ամենայն տեղ»։ Ի՞նչ ապացոյց ունենք, որ այդ ցուցակի մէջ պարունակուած սակաւաթիւ պատկերագրերը մեր կռապաշտ նախնեաց սեպհականութիւնն են և ոչ թէ ծնունդ յետագայ ժամանակների։

Պրոֆ. Էմինի տեսութիւնն ոչ մի հաստատուն հիմք չունի և ոչինչ ապացոյց չունենք, որով կարելի լինէր ընդունել պատկերագրի գործածութիւնը Հին Հայաստանում իբրև սիստեմատիկական գիր։ Այդչափ պատկերագրի մասին։

Գալով Նշանագրին, պէտք է ասել, որ անկարելի է դորա գոյութիւնը մերժել, որովհետև մեր հին ձեռագրների մէջ գտանւում են բազմաթիւ նշանագրեր—Հայր Չամչեան գոյա թիւը երկու հարիւրից աւելի է համարում 23)։—

Լազարեան ճեմարանի մատենադարանում կայ մի բոլորագիր ձեռագիր (ընդ. համարաւ 141), որ սկիզբ չունի և պարունակում է տասը (10) տարբեր բովանդակութեամբ

---

22) Տես. Wahl: Allg. Geschichte der morg. Sprachen und Litteratur էջ 75.

Պատմութիւնից մեզ յայտնի են միայն Գողթան վիպասանների „բամբիռ“ները։

23) „. . . Ի վերայ այսր ամենայնի մարթ է ասել՝ թէ այն գիրք գուցէ չէին յատուկ տառք, այլ նշանագիրք ինչ, որք հնարեալ էին փոխանակ ամբողջ բառից, զի կան և այժմ ի հին ձեռագիրս այդպիսիք աւելի քան զերկու հարիւր, որոց ոմանք ցարդ իսկ գործածին“։ Տես. Չամչեան. պատմութիւն Հայոց. հատ. I. գիրք բ. էջ 761։

հատուածներ. ձեռագրի յիշատակարանից երեւում է, "որ
գրուած է հայոց 1069 թ. (1620-ին) Կ. Պօլսոյ Մելք
դէկ պատրիարքի օրով Յակոբ գրագրի ձեռքով։ Ահա այս
ռագրի մէջ կայ Հայոց նշանագրերի և համառօտագրերի
ժողովածու (էջ 60—63 և 134), որ անձամբ օրինակելով յա
ենք բերում այստեղ ամբողջապէս (№ III)։ Նշանագիրը և
մառօտագիրը խառն են դասաւորուած, միայն պահպանո
է այբուբենական շարայարութիւնը. էջ 60—63 կարգով
րուած են երեք-հարիւր հինգ (305) բառերի նշանները և
մառօտութիւնները. իսկ ձեռագրի վերջը 134-րդ թերթի
էջի վերայ օտար գրչով գրուած են տասնուվեց (16) նշանագ
առանց յիշատակարանի. իսկ 60—63 թերթերի լուսանցք
րում կան տասնումէկ (11) նշանագրեր. ընդամենն ու
305 + 16 + 11 = երեքհարիւր երեսուն և երկու (332) հ
Եթէ այս 332 նշանները զտենք, դոցանից հազիւ հար
(100) ունին իսկական նշանագրի նշանակութիւն։ Այս
զավածուից է ընտրել ալրօֆ. Էմինը մեր յառաջ բերած ն
նագրերի և պատկերագրերի ցանկը, որով նա կամենու
ապացուցել պատկերագրի գոյութիւնը կռապաշտ հ
մէջ։

Արդեօք գոնէ նշանագրերի համար կարող ենք ա
որ դոքա նախաքրիստոնէական ժամանակներից են մնա
կամ թէ եղե՞լ են դոքա մի որ և է ժամանակաշրջանի
հայոց միակ գործածական գիրը։ Նոյն իսկ մեր առաջը
րուած այդ ժողովածուի գոյութիւնը չի կարող համոզել
այդ հարցերին դրական պատասխան տալ. սակայն ինչ
բացատրել դոցա գոյութիւնը։ Շատ պարզ կերպիւ. դ
յառաջացել են սակաւ առ սակաւ ժամանակի ընթացք
ձեռագրների արտագրողներին մի փոքր դիւրութիւն մա
ցանելու համար։ Այդ նշանների մեծ մասն ոչ այլ ին
եթէ ոչ արհեստական համառօտագրութիւն. իսկ մնա
նշանագրերն ևս յառաջացել են Սբ. Մեսրոպից յետոյ

է աւելի լաւ է ասել՝ այն ժամանակաշրջաններում, երբ
ոյերի մէջ գործածական էր *տառագրութիւնը*. բաւական է
Հայեացք ձգել մեր յառաջ բերած ժողովածուի վերայ,
Համոզուենք վերջին կարծիքի ճշտութեան վերաբերու-
եամբ, որովհետեւ *ա*. Նշաններից մեծ մասը բառերի Համա-
ռօտութիւններ են *տառերով* գրուած. (ինչպէս օրինակ 3,
6, 10, 11, 20, 46, 62, 88, 122, 152, 186, 219, 244,
7, 303 և այլն և այլն)։

*բ*. Նշանագրերից շատերը ուղղակի մեսրոպեան այբու-
ենի *տառերն* են (ինչպէս օրինակ. 2, 8, 17, 23, 82, 83,
13, 132, 147, 148, 224, 251 263 և այլն և այլն) [24])։

*գ*. Այդ նշանագրերից շատերն արտայայտում են *քրիս-
տնէական* գաղափարներ (օրինակի Համար աւետարան (26),
եկեղեցի (104), սարկաւագ (266) և այլն)։

*դ*. Այդ նշանագրերից շատերն և վերցրած են մեր գրա-
ւ ազգերից (օրինակի Համար 188, 191, 245, 266-րդ և
յլն)։

Այս փաստերից յետոյ պէտք է ընդունել, որ *նշանագիրն*
է մի ժամանակ Հայոց *միակ գործածական գիրը չէ եղել*։
եր Հին մատենագրներից նոյնպէս ոչ ոք չէ յիշում նշա-
ագրի գոյութիւնը Հայաստանում, ուստի և այդ մասին ա-
ելիք չունենք [25])։

[24]) Այս փաստից կարելի է նաև այն եզրակացութիւնը
անել, որ Հայոց *տառերը յառաջացել են այդ նշանագրերից*.
յդ եզրակացութիւնը մենք ճիշտ կՀամարէինք—վասն զի այդ
գրի *զարգացման բնական ճանապարհը*—եթէ կարողանայինք
առերով ապացուցանել Հայոց *սիստեմատիկական նշանա-
րի* գոյութիւնը. բայց քանի որ այդ չենք կարող, պէտք է
նդունենք, որ այդ Համառօտ նշանագրերը յառաջացել են
առերի գոյութիւնից յետոյ։

[25]) Չենք մոռացել „*Ազաթանգեղոսի*"ի վկայութիւնը, սա-
յն այդ մասին փոքր ինչ յետոյ։

## № 141. ՁԵՌԱԳԻՐ ՄԱՍՆԱՒՈՐԱՑ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆՈՒՄ

Էջ 60—63

## ՆՇԱՆԱԳՐԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆԸ

1 *Աբրահամ*
2 *Աբիսողոմ*
3 *Ահարոն*
4 *Ամբակում*
5 *ամբարիշտ*
6 *Աղէքսանդր*
7 *աղբիւր*
8 *աղքատ*
9 *աղանդ*
10 *աղաւթք*
11 *աղաւնի*
12 *Անդրէ*
13 *Անդոն*
14 *Անտիոք*
15 *անձն*
16 *անդունդք*
17 *անասուն*
18 *անդաստան*
19 *Անզգամ*
20 *անդամք*
21 *անօթ*
22 *աշակերտ*
23 *աշտարակ*
24 *աշտանակ*
25 *աշխարհ*
26 *աւետարան*
27 *աւգնական*
28 *աւրհնութիւն*
29 *աւրինակ*
30 *այնուհետև*
31 *այսչափ*
32 *այնչափ*
33 *այսօր*
34 *այսօրիկ*
35 *այնօրիկ*
36 *առաջնորդ*
37 *առիւծ*
38 *առաջք*
39 *առաւօտ*
40 *առագաստ*
41 *արեգակն*
42 *արտեւան*
43 *արուեստ*
44 *արհամարհեալ*
45 *աստղ*
46 *Աստուածածին*
47 *աստիճան*
48 *ասպարէզ*
49 *ազգ*
50 *ազինք*
51 *ամաւթ*
52 *Բենիամին*
53 *բերան*
54 *Բաբելովն*
55 *Բարթողոմէոս*
56 *Բարսեղ*
57 *բամբասել*
58 *բազում*
59 *բարձր*
60 *բարերար*
61 *բազուկ*
62 *բարեբանեալ*
63 *բարբառ*
64 *բարի*
65 *բարեխնամ*
66 *բարբառել*
67 *Բիւզանդիոն*
68 *բորբոքել*
69 *Գալուստ*
70 *Գաբրիէլ*
71 *գարուն*
72 *գայթագղել*
73 *գեղեցիկ*
74 *Գէորգ*
75 *Գրիգոր*
76 *գիշեր*
77 *Գողգոդա*
78 *գործք*
79 *Դաւիթ*
80 *դատաւոր*
81 *Դանիէլ*
82 *դաստիարակ*
83 *դատաստան*
84 *դարձեալ*
85 *դահեկան*
86 *դրախտ*
87 *դրունք*
88 *դրամ*
89 *դուռն*
90 *դժոխք*
91 *դմա*
92 *եպիսկոպոս*
93 *Եփրեմ*
94 *Եղիազար*
95 *եղբայր*
96 *եղջիւր*
97 *եղիցի*
98 *երկինք*
99 *երկիր*

| | | |
|---|---|---|
| ամժիշտ | 137 լուսին | 174 հմուտ |
| րեմիա | 138 լուսաւոր | 175 հիւանդ |
| զեկիա | 139 լեզու | 176 հնազանդ |
| գիպտոս | 140 լանջ | 177 ձայն |
| կեղեցի | 141 լուաւ | 178 ձեւ |
| աքարիա | 142 խորհուրդ | 179 ձեռն |
| աւրաբաբէլ | 143 խոստովան | 180 ձեր |
| ուրութեամբ | 144 խոր | 181 ղամբար |
| ւրաւոր | 145 խորան | 182 Ղովտ |
| ննուոր | 146 խնամ | 183 Ղուկաս |
| ւարակ | 147 ծաղիկ | 184 ղեակ |
| ւարճ | 148 ծառայ | 185 ճանապարհ |
| որ-աւրինակ | 149 ծնունդ | 186 ճառագայթ |
| սայի | 150 կաթուղիկոս | 187 ճնճղուկ |
| մանուէլ | 151 կաթուղիկէ | 188 ճշմարիտ |
| զարմանք | 152 կարգ | 189 ճգնաւոր |
| նթերցուած | 153 Կոստանդիանոս | 190 մարգարէ |
| նտիր | 154 կոյս | 191 մարդ |
| ստ | 155 կենդանի | 192 Մանասէ |
| ագաւոր | 156 կամ | 193 Մատթէոս |
| էոդոս | 157 հաւասար | 194 մանաւանդ |
| եւ | 158 հանդերձ | 195 մարմին |
| եւաւոր | 159 հանճար | 196 մահապարտ |
| շնամի | 160 հայր | 197 Մարտիրոս |
| ռչուն | 161 հակառակ | 198 Մարիամ |
| ամանակ | 162 հանդուրժել | 199 Մովսէս |
| առանգաւոր | 163 համարձակ | 200 Մխիթար |
| առանգ | 164 հանգիստ | 201 Մելքիսեդէկ |
| ողովուրդ | 165 համբեր | 202 Մեսրովբ |
| ուժկալ | 166 հաստատ | 203 մեծամեծ |
| խան | 167 համբարձ | 204 մեղաւոր |
| րև | 168 հայհոյել | 205 միջնորդ |
| կզբանէ | 169 Հեթանոս | 206 մինչև |
| մաստութիւն | 170 հերձուած | 207 Յակովբ |
| րեանց | 171 հրեշտակ | 208 յաւժար |
| կ | 172 համեմատ | 209 յափշտակէ |
| առն | 173 հոգի | 210 յառաջագոյն |

211 յաւիտեան
212 յանդիման
213 յաղագս
214 Յուդա
215 Յովսէփ
216 Յովհաննէս
217 Յովնան
218 Յուստինոս
219 Յորդանան
220 յիշատակ
221 Նահապետ
222 Նաթան
223 նախանձ
224 Նաբուգոդոնոսոր
225 նահատակ
226 նոցա
227 նորա
228 նշխար
229 շաբաթ
230 շնորհ
231 որպէս
232 որովայն
233 որդի
234 որոգայթ
235 որդոց
236 ողորմեա
237 ողջակէզ
238 ողջոյն
239 ուրախ
240 ուխտաւոր
241 ութեանց (?)
242 չարաչար
243 չարախաւս
244 չափաւոր
245 Պաւղոս
246 պատարագ
247 պատմուճան
248 պայծառ
249 պատճառ
250 պատշաճ
251 պարգեւ
252 պանդուխտ
253 պարկեշտ
254 պատերազմ
255 Պետրոս
256 ջրհեղեղ
257 ջնջել
258 Ռըստակէս
259 սահման
260 Սահմուէլ
261 Սաւուղ
262 Սարգիս
263 սանդուխք
264 սատանայ
265 սանդարամէտ
266 սարկաւագ
267 Սաղմոս
268 Ստեփանոս
269 ստեղծ
270 սեղան
271 Սերովբէ
272 վարդապետ
273 Վարդան
274 վախճան
275 վասն որոյ
276 վասն զի
277 վասն այսորիկ
278 վիշակ (?)
279 վերուստ
280 Վրթանէս
281 տագնապ
282 տարապարտ
283 տատրակ
284 տաճար
285 Տրդատ
286 տրտում
287 տրտմեաց
288 տրտունջ
289 ցասումն
290 ցանգ
291 ցնծա
292 Փարաւոն
293 փառք
294 փայտ
295 Փէնէհէս
296 Փիլիպոս
297 փոխանակ
298 փոխ
299 քահանայ
300 քաջալերեաց
301 քաղաք
302 քարոզ
303 քանզի
304 քարկոծ
305 քաղցր

Նոյն ձեռագրի վերջը 134-րդ թերթի երկրորդ էջի վերայ օտար գրչով գրուած են միւս 16 նշանագրերի բացատրութիւնները, իսկ 60—63 թերթերի լուսանցքներում եղած 11 նշանագրերը բացատրութիւն չունին։

# ԳԼՈՒԽ Զ.

## ՀՆՉԻՒՆԱԳԻՐ

*Սեպագիր. դորա գիւտն եւ ընթերցումը. Փրդ. Գրոտեֆենդ. պարսկական եւ ասորա-բաբելական սեպագիր. հայկական սեպագիր. դր. Մորդտմանի ընթերցումն. այդ ընթերցման արժէքը. թէ ինչո՞ւ մենք այս սեպագիրը Հայոց գրի շարքն ենք դասում. հայոց սեպագիր արձանագրութեանց բովանդակութիւնը. „Նայիրի“ երկրի իշխանները. հատուածներ Մասպէրօից եւ Լընօրմանից. արձանագրութեան օրինակներ. սեպագրի հնութիւնը. սեպագրի ծագումը:*

---



Արդէն ասացինք, որ հնչիւնագիրը լինում է երկու տեսակ. ա. վանկագիր և բ. տառագիր: Վանկագրի կարգին է պատկանում նաև սեպագիրը կամ բևեռագիրը [1]: Թէև ամենայն ճշտութեամբ չի կարելի ասել, թէ որտեղից է յառաջ եկել սեպագիրը, սակայն այս հարցով զբաղուող գիտնականների մեծ մասն այն եզրա-

---

[1] „Keilschrift“ գերմաներէն և „cunéiforme“ ֆրանսերէն. այս անունը ստացել է այն պատճառաւ, որ բաւականին նմանութիւն ունի բևեռի կամ սեպի հետ:

կացութեան է գալիս, որ դա «Միջագետք»ում [2]) բն
ուող ազգերի արդիւնք պէտք է լինի։

Սեպաձև գրի ընթերցումը պատկանում է 19-րդ դա
նշանաւոր գիտերի կարգին։ Սեպագիր արձանագրութիւն
առաջին անգամ յերևան բերին այն ճանապարհորդն
որոնք Պերսեպօլսի և հին պարսկաստանի այլ քաղաքների
աւերակներն այցելեցին։ Եւ որովհետև յայտնի էր, որ
աւերակ շինութիւնները մասամբ Աքիմենեան արքանե
այսինքն Դարեհ Վշտասպեանի և իւր յաջորդների—ձե
կերտներն էին, ուստի և իրաւամբ ենթադրուեցաւ, որ
արձանագրութիւններն ևս պատկանում են այդ արքանե
Մի սեպագիր արձանագրութեան տողերի դասաւորութ
ձևը գուշակել տուեց, որ դա պէտք է երեք լեզուն
գրուած լինի, բայց որովհետև պարսից արքաների հպա
ները պատկանում էին տարբեր ազգութեանց, ուղղակի
կարելի ասել թէ ինչ լեզուներով էին խմբագրուած այդ
ձանագրութեանց բովանդակութիւնը։ Այդ արձանագրութե
գրի էութեան մասին նոյնպէս կարելի էր մի որ և է են
կացութեան գալ, որովհետև շատ բառեր իւրեանց մէջ ս
գին քանակութեամբ նշաններ էին պարունակում, ուստ
ակնյայտնի էր, որ այդ նշաններից իւրաքանչիւրը միմ
վանկ չէ արտայայտում, այլ նաև տառ։ Որ այդ արձա
գրութեանց գիրը սկսւում էր ձախից դէպի աջ—ինչպէս
գիրը—ապացուցանում էր այն հանգամանքն, որ տո
ձախ կողմից հաւասարապէս միմեանց տակից էին սկսւ
այն ինչ աջ ծայրերը հաւասար վերջաւորութիւն չունէի
քարի մի մասը մնում էր անգիր։

---

[2]) Եփրատ և Տիգրիս գետերի մէջ գտանուած այս ե
համար եւրոպացիք գործ են ածում „Մեսոպոտամեայ" յուն
բառն, իսկ սեմիտական լեզուով կոչւում է „Արամնահարա
Տես. Wuttke: Geschichte der Schrift und des Schriftth
հատ. I. եր 608.

Այս արձանագրութեանց ընթերցման բանալին գտաւ
րմանացի «Ֆրիդրիխ Գրոտեֆէնդ»ի (Friedrich Grotefend)
սմտութիւնը։ Նա նկատեց, որ արձանագրութիւնները
ււում են սովորաբար 3 կամ 4 բառով, որոնցից մէկը միշտ
խւում էր, իսկ մնացածները նոյնն էին մնում։ Այդտեղից
ոտեֆէնդ այն եզրակացութեան եկաւ, որ այդ փոփո-
ւող բառը պէտք է արքայի անունը լինի, իսկ միւս
փոփոխ բառերն՝ արքայի տիտղոսներն, որ ամեն արքայ
կրում է։ Այդ արքայ նշանակող բառերից մէկն աւե-
յաճախ էր կրկնւում արձանագրութեանց մէջ, քան
նպիսի այլ բառեր. և որովհետև այդ բառի մէջ պա-
ւնակուած նշանները բաւականաչափ չէին «Արտաքսեր-
էս» անունն արտայայտելու համար, իսկ միւս կողմից
ելի շատ, քան կարևոր էր «Կիւրոս» ասելու համար,
ստի մնում էր ընդունել, որ այդ բառը «Դարեհ» կամ
սերքսէս» պէտք է նշանակէր։ Եւ որովհետև այդ անու-
կրող արձանագրութիւնները գտնւում էին այնպիսի յի-
տակմրաններէ վերայ, որոնց շինութիւնը հին մատենա-
րները վերագրում էին Դարեհ արքային, ուստի և Գրո-
ֆէնդ այդ բառի մէջ պարունակուած նշաններին այն տա-
րի նշանակութիւնը տուեց, որոնք գտնւում են Դարեհ
արիուս) անուան պարսկական ամենահին ձևի մէջ։ Այդ-
սով արձանագրութեանց այդ բառի վեց նշաններն—իւրա-
նչիւր սեպագիր բաղկացած է մի քանի սեպաձև գծերից
ստացան վեց տառի նշանակութիւն։ Նոյն եղանակաւ Գրո-
ֆէնդ գտաւ «Քսերքսէս», «Արտաքսերքսէս» անունների և
րա միջնորդութեամբ կազմեց մի փոքրիկ այբուբեն, որ և
աւ այդ զարմանալի արձանագրութեանց ընթերցման բա-
լին [3]։

---

[3]) Այս տեղի ունեցաւ 1802 թուին. տես. Maspero:
schichte der morgenländischen Völker im Altertum. էջ 567.

Գրոտեֆէնդից յետոյ սեպագիր արձանագրութեանց ընթերցման ասպարիզում նշանաւոր հանդիսացան Bournouf, Lassen, Ravlinson և այլք, որ բոլորովին կատարելագործեցին այդ արուեստը։

Դարեհ Վշտասպեանի դամբարանի և Բեհիստանի ժայռերի վերայ գտանուող արձանագրութեանց գիւտը—որ Ռաւլինզօն ընդօրինակեց իւր Պարսկաստան եղած ժամանակ—պատճառ եղաւ վերոյիշեալ վերջին երկու գիտնականաց միևնոյն ժամանակ, սակայն միմեանցից բոլորովին անկախ, հին պարսկական այբուբենն ամբողջովին կազմակերպելու. երկուսի կազմած այբուբենները միմիայն մէկ սեպագրով էին տարբերւում միմեանցից [4])։

Ինչպէս արդէն յիշեցինք, արձանագրութեանց հին պարսկական բնագրի մօտ գտանւում էին նոյնպէս երկու տարբեր լեզուներով գրուած արձանագրութիւններ և ահա՛ դոցա թարգմանութեանց ընթերցումը նոյնպէս յաջողուեցաւ և երևեցաւ, որ դոքա գրուած են սեմիտական լեզուով։ Եւ երբ Ասորեստան և Բաբելոն երկրների մէջ գտանուած յիշատակարանների արձանագրութիւնները քննուեցան, բանից երևեցաւ, որ դոցա լեզուն համապատասխանում է պարսից յիշատակարանների երկրորդ կարգի արձանագրութեանց լեզուին. այս գիւտի պարզ եզրակացութիւնն եղաւ այն, որ վերջինները պէտք է ասորա-բաբելական լեզուով գրուած լինէին. Այդպիսով հին պարսից արձանագրութեանց թարգմանութեան բնագիրն եղաւ բանալի այն բոլոր ասորա-բաբելական յիշատակարանների արձանագրութեանց ընթերցման, որոնք հետզհետէ գտանուեցան այդ երկրներում։ Նինուէի գիւտն [5]) և

---

[4]) Տես. T. H. Sayce: Alte Denkmäler im Lichte neuer Forschungen. Էջ 1—8.

[5]) Որ տեղի ունեցաւ 1846 թ. Մօսուլի ֆրանսիական դեսպան „Բոտտա"ի հետազօտութեամբ։

Լայարդի հետազօտութիւնները—1849—1851—յերևան բե-րին ահագին քանակութեամբ յիշատակարաններ և գրակա-նական մնացորդներ այն հին ժողովրդների, որոնց գոյութիւնն արդէն մոռացութեան էր տրուել։

Սեպագիր արձանագրութեանց ընթերցման շնորհիւ յա-րութիւն առաւ գերեզմանից ամբողջ երեսուն դարու պատ-մութիւնը։ Նինուէի աւերակաց [6]) հետազօտութեան նշանա-ւոր հետևանքներից մէկն էր այդ հին մայրաքաղաքի արքայ-ական մատենադարանի մնացորդների գիւտը։ Այս *մատենա-դարանի* կաւից շինուած և կոտրտուած տախտակները գիտ-նականններին ոչ թէ միայն նոր նիւթ մատակարարեցին ասորա-բաբելական գրականութեան ուսումնասիրութեան հա-մար, այլ և ուղղակի օժանդակից միջոց եղան ասորական լե-զուի և գրի հետազօտութեան համար։ Ի միջի այլոց գըտ-նուեցան և այնպիսի այբուբեններ, որոնք բացատրում էին սեպագրի նշանակութիւնն և իւրաքանչիւրին համապատաս-խանող բառն ու տառը։

Յառաջ ենք բերում Դարեհ Վշտասպեանի սեպագիր արձանագրութեան մի հատուած թարգմանութեան հետ ի միասին։

«Ու  դա - րի - եա - ֆա - ու - իշ  դա  իր - ղա - իր - րա<br>
Ես  Դարեհ  արքայ  մեծ

«դա  իր - ղա - իր  ու  ի - նա - դա - ան  սին - իկ - կա<br>
արքայ  արքայից  ես  արքայ  պարսից

«դա  դա - ա - եա - ու - իշ - նա  նա  ու<br>
արքայ  գաւառների  ես

«ի - խս - դա - աշ  բա - ղա - ակ - րի  իր - ղա - մա<br>
Վշտասպի  որդի  Արղամայ

---

[6]) Որի տեղն այժմ գտանւում է „Կոյունջիկ“ գիւղը. տես. Sayce նոյնը. էջ 8.

«րու - ա - հու սա - րի - ակ - րի հա - կա - մա - նու - մի - եա.
թուն Աքիմենեան [7]։

Սեպագրի ընթերցման այս համառօտ պատմութեամբ բաւականանալով անցնենք «Հայոց» կամ «Վանայ» կոչուած սեպագիր արձանագրութեանց։

Թէև սեպագրի գործածութեան մասին մեր մատենագիրները ոչինչ չեն հաղորդում, սակայն այն բազմաթիւ արձանագրութիւններն, որոնք գրուած են սեպաձև գրով և գտնւում են Հայաստանի զանազան կողմերում, ակնյայտնի վկայում են, որ դա մի անգամ գործածական գիր է եղել Հայաստանում։ Այդ արձանագրութիւններից առաջին տեղը բռնում են Վանայ սեպագիր արձանագրութիւնները։

Մովսէս Խորենացին զարմանալի կերպիւ ճիշտ և կենդանի նկարագրելով Վանայ դիրքն և ամրոցի շինութիւնը Շամիրամին վերագրելով յիշում է նաև, որ նա քարերի վերայ գրել տուեց և մի և նոյն գրով յիշատակարաններ և արձաններ կանգնեցրեց և սահմաններ որոշեց. «...իսկ զընդդէմ արեգական կողմն անձաւին, որ և ոչ գիծ մի երկաթոյ այժմ վերագրել ոք կարէ, զայսպիսի կարծրութիւն նիւթոյ՝ պէս պէս տաճարս և սենեակս օթից և տունս գանձուց և վիհս երկարս, ոչ գիտէ ոք՝ թէ որպիսեաց իրաց պատրաստութիւն հրաշակերտեաց։ Իսկ զամենայն երեսս քարին իբր գրչաւ զմոմ հարթել, բազում գիրս ի նմա գրեաց, որոց հայեցուածն միայն զամենայն ոք ի զարմանս ածէ։ Եւ ոչ միայն այս, այլ և բազում տեղիս յաշխարհին Հայոց արձանս հաստատեալ, նովին գրով յիշատակ ինչ հրամայէ գրել. և բազում տեղիս սահմանս նովին գրով հաստատէր» [8]։

Հաւանականաբար Խորենացու այս կենդանի նկարագրու-

---

[7]) Տես. Faulmann: ,,Geschichte der Schrift" էջ 343.

[8]) Տես. Մ. Խորենացի. պատմութիւն Հայոց. գիրք Ա. գլխ. ԺԶ. էջ 58.

թիւնը պէտք է առիթ տար հայագէտ գիտնական «Սէն-Մարտէնին»—Saint-Martin—հասարակութեան ուշադրութիւնը դարձնել Վանայ հնութեանց վերայ, որ արձագանգ գտնելով Ֆրանսիական կառավարչական շրջաններում, ուսուցչապետ Շուլց—Schulz—ուղարկուեցաւ Հայաստան՝ այդ հնութիւնները հետազօտելու։ Պրօֆ. Շուլց 1828 թ. գալով Վան՝ ընդօրինակեց քաղաքում և նորա շրջականերում գտանուող քառասուն և երկու (42) սեպագիր արձանագրութիւններ և ուղարկեց Պարիզ [9]. սակայն դժբաղդաբար ինքը զոհ գնաց Քրդերի աւազակաբարոյ վարմանց։

Այս քառասուն և երկու արձանագրութիւններից երեքը պատկանում են Աքիմենեան «Քսերքսէս» արքային, իսկ մնացած 39 արձանագրութիւնները մի տեսակ հանելուկ էին ներկայացնում գիտնական աշխարհին, որովհետև յայտնի չէր թէ դոքա ո՛ր լեզուով են գրուած, թէև սեպագրերից շատերը ակնյայտնի նմանութիւն ունէին ասորա-բաբելական սեպագրերի հետ։ Դժուարութիւններից մէկն ևս այն էր, որ դոցանից ոչ մէկը չունէր իւր արձանագրած թարգմանութիւնն, ինչպէս բազմաթիւ ասորա-բաբելական արձանագրութիւններն ունին։

1848 թ. անգղիացի գիտնական Եդ. Հինկս—Hincks—հետազօտելով այդ արձանագրութիւններն՝ այն եզրակացութեան եկաւ, որ դոցա լեզուն արիական ծագումից է և Հայերէն։

Այս ենթադրութիւնն առիթ է տալիս արևելագէտ դր. Ա. Մորդմանին Կ. Պօլիս եղած ժամանակ ուսումնասիրելու Հայոց լեզուն։ Բացի դորանից նորան յաջողւում է եղբարք Ալիշեանների և այլոց միջնորդութեամբ ութը հատ այլ նոր սեպագիր արձանագրութեանց օրինակներ ձեռք բե-

[9]) Այդ արձանագրութիւնները հրատարակուեցան 1840 թ. „Journal Asiatique“-ի մէջ։ Տես. №. 52.

րել և 1872 թ. հրատարակել իւր հետազօտութեանց արդիւնքը «Վանայ և շրջակայից հայերէն սեպագիր արձանագրութեանց ընթերցումն և բացատրութիւնը» ընդարձակ յօդուածով [10]։ Այս յօդուածի մէջ Մորդման բացատրում է, որ իրեն յաջողուել է կարդալ այդ արձանագրութիւններն ասորա-բաբելական սեպագրի և հայոց լեզուի օժանդակութեամբ. և յառաջ է բերում բոլոր արձանագրութեանց բովանդակութիւնը։ Նորա ասելով այդ արձանագրութիւնները պատկանում են հինգ (5) արքաներին և այդ պատճառաւ դոցա հինգ մասի է բաժանում.

1) Արձանագրութիւններ «Բագրիդուր» [11] I-ի
2) » «Իսբուինիա» արքայի
3) » «Մինուասա» »
4) » «Արգիստիս» »
5) » «Բագրիդուր» II,

որոնցից առաջինին նա համեմատում է Խորենացու [12] «Պարոյր»ի [13], երկրորդին «Հրաչեայ»ի [14] և երրորդին «Փառնուաս»ի հետ։ Արգիստիս Մինուասի որդին է, իսկ Բագրիդուր II Արգիստիսի։

Թէև մենք գնահատում ենք դր. Մորդմանի քրտնաջան աշխատութիւնը, սակայն այնուամենայնիւ այդ չէ ար-

---

[10]) Dr. A. D. Mordtmann: Entzifferung und Erklärung der armenischen Keilschriften von Van und der Umgegend. տես. Zeitschrift der deutschen morgenländischen Gesellschaft. Հրատարակութեան 26-րդ հատորը. էջ 465.

[11]) Վերջին և նորագոյն ընթերցումներն այս անունը կարդում են «Սարդուրիս». տես. F. Lenormant: Histoire ancienne de l'Orient. հատ. IV. էջ 245.

[12]) Տես. Մ. Խորենացի. պատմ. Հայոց. գիրք Ա. գլխ. իբ. էջ 71.

[13]) Տես. Mordtmann նոյնը. էջ 486.

[14]) Տես. Mordtmann: նոյն էջ 521.

գելում մեզ ասել, որ նա ոչ թէ իսկապէս կարդում, այլ մեծ մասամբ ենթադրութիւններ է յառաջ բերում [15]. որպէս զի մեր ասածն անհիմն չը թուայ, յառաջ բերենք մի քանի օրինակներ։

Վանայ արձանագրութիւններից Համարեան իւրաքանչիւրի մէջ գտնւում է սեպագրի մի որոշ խումբ, որի առաջին մասը աստուածութեան նշանացոյցն է, երկրորդն ասորական սեպագրի մէջ նշանակում է «քալ». երրորդը «դի», ուրեմն աստուածութեան անունը պէտք է լինի «Քալդի» — և այդպէս ևս կարդում են *Օպէրտ* (Oppert) և *Ռաուլինզօն* (Rawlinson) արևելագէտներն։ Սակայն Մօրդման չէ կամենում այդպէս կարդալ, որովհետև, ասում է նա, եթէ Հայոց նշանաւոր աստուածութիւնն այդ անունը կրէր, անպատճառ յայտնի կը լինէր այդ յունաց և պարսից գրականութեան մէջ և Հայոց մէջ ևս մի յիշատակութիւն թողած կը լինէր. վասն զի անկարելի է, որ ժողովրդի պաշտաման գլխաւոր առարկան անյայտութեան մէջ մնար։ Միւս կողմից Մօրդմանին յայտնի է, որ Հայոց գլխաւոր չաստուածը կոչւում էր *Անահիտ* ուստի և դժուար չէ այդ անունն արձանագրութեանց մէջ ևս մտցնել և ահա նա «Քալդին» կարդում է «Անաիդի» կամ Անաիդ—Անահիտ. և այդպիսով նա Համարեա իւրաքանչիւր արձանագրութեան սկիզբը թարգմանում է. «Ողորմութեամբն Անահտա» — Անայիդի — ։ Մեր

Որովհետև „Հրաչեայ" անունը գոնէ մօտաւորապէս չէ համապատասխանում „խուրուխնխա"ին, Մօրդման այն սրամիտ բացատրութիւնն է տալիս, որ Խորենացուն անյայտ է եղել իսկապէս Պարոյրի որդու անունն, ուստի և միայն „Հրաչեայ" է կոչում նորան՝ կարմիր աչքեր ունենալու համար (!!).

[15]) Հին արձանագրութիւնները բացատրելու համար՝ բաւական չէ գրի արուեստի գիտութիւնն, այլ պահանջւում է նաև արձանագրութեան լեզուի հմտութիւն, որոշ աստիճանի ճշտութիւն, առողջ դատողութիւն և լայնածաւալ հայեացք. միայն այս կամ այն բառի կամ խօսքի պոչից բռնելով՝ անկարելի է յաջողութիւն ունենալ։

նպատակից դուրս կը լինէր այստեղ ընդօրինակել այդ արձանագրութեանց ամբողջ բովանդակութիւնը. սակայն իբր օրինակ յառաջ ենք բերում մի քանի հատուածներ.

I. «Թող Անահիտն ողորմած լինի Մինուասին, Իսպուինիսի որդուն. Հզօր արքային, ողորմած արքային. Բիանայի և լուսապայծառ Տօսպ քաղաքի արքային».

II. Բագրիդուր, Լուտիպրիսի որդին, մեծ արքան, հզօր արքան, զօրախմբի արքան, մեդացոց արքան ասում է. ես կանգնեցի (այս շինութիւնը).

III. «Արգիստիս Մինուասի որդին ասում է. (կամ խօսում է) Անահիտը թոյլ տուեց, Անահիտի օգնութիւնը թոյլ տուեց. ողորմութեամբն Անահտայ դուրս եկայ ես զօրքով Բուսպարուից և պաշարմամբ տիրեցի Ասկայա, Սատիրաուն, Բարցուն և Ուգիուտի երկրներն և ապա զէնքի ուժով Ալանաց, Ուզիացւոց և Բակացւոց երկրներն.... Ես տիրեցի քաղաքների ամրութիւններն ու բոլոր արանց և կանանց։ 1863 զինուորներ մասամբ սպանել տուի, մասամբ գերեցի... 20 ձի, 130 բեռնակիր ձիեր, 500...» [16])։

---

Որպէս զի կարողանանք ըմբռնել թէ ինչպէս է Մորդման կարդացած բառերի նշանակութիւնը հասկանում, անհրաժեշտ է մի քանի օրինակներ յառաջ բերել նորա բացատրութիւններից։

1) „աղաէ" խօսքը նա թարգմանում է „er spricht" —նա ասում է կամ խօսում է, և դուրս է բերում հայերէն „ասէ"ից (էջ 469)։

2) „Տուկան" բառը նորա ասելով պէտք է նշանակէ ոք, քան։

3) „քուր"—նշանակում է „հուր" (էջ 518)։

---

16) Տես. Mordtmaun նոյն էջ 587.

4) ,,տխտունի‘‘ բառը պէտք է հայերէն ,,գնել‘‘ բա-
ց լինի։

5) ,,վաղինի‘‘ համեմատում է ,,Աւետիք‘‘ բառի հետ
118)։

6) ,,արմանիղատ‘‘ — նշանակում է ,,հրաման տալ‘‘
522)։

7) ,,ինցի‘‘—նշանակում է ,,ես‘‘ (էջ 525)։

8) ,,սաինուկան‘‘—նշանակում է ,,սենեակ‘‘ (էջ 528)։

9) ,,բարսուղիքիղունի‘‘ բառը նա այսպէս է բացատ-
մ. ,,սա մի բաղադրեալ բառ է, վերջին մասը ,,դունի‘‘
գում է ,,դուն‘‘ բառից. իսկ առաջինն է ,,բարխբ‘‘,
արխբադել‘‘ ,,բարսբադուն‘‘ (!!). բայց որովհետև այդ
ձանագրութեան շրջակայքում այդպիսի բան չկայ, ենթա-
ում է, որ ,,Բարսուդիքի դունի‘‘ առաւել մօտ պէտք է
ի ,,բաճուճաբադան‘‘ (!!) բառին, որ նշանակում է մի
սակ հասարակ շինութիւն՝ արձաններն իւր մէջ պարունա-
յու համար [17]) (էջ 535)։

10) ,,արկեցի‘‘ նշանակում է արքայ (էջ 537)։

11) ,,մասինի‘‘ համապատասխանում է ,,մեծ‘‘ին (էջ
0)։

12) ,,ակար‘‘—նշանակում է ,,ազարակ‘‘ (էջ 541)։

13) ,,սիղա‘‘—նշանակում է ,,շատ‘‘ (էջ 541)։

14) ,,արուբի‘‘—նշանակում է ,,առնուլ‘‘ (էջ 551)։

15) ,,հուցի‘‘ բառը համանիշ է համարում հայերէն
տոյ‘‘, ,,ոչխար‘‘ և ,,ղուզի‘‘ [18]) բառերի հետ (էջ 563)։

---

[17]) Այս հատուածից պարզ երևում է, որ դր. Մորդման փո-
նակ մեր հին, կլասիկական, լեզուն սովորելու, սովորել է տաճ-
հայոց բարբառը. այդ է պատճառը, որ նա ,,դուն‘‘, ,,բարխբ‘‘,
սճուճաբատան‘‘ է ասում՝ փոխանակ ,,տ‘‘ուն, ,,պ‘‘արխ,,պ‘‘, ,,պ‘‘ա-
ճա,,պ‘‘ատան և այլն։

[18]) Զարմանալի է, որ Մորդման այս օտար բառը ,,հայ-
ռովրդական‘‘—„vulgär—armenisch“ բառ է անուանում։

Արծիւ բառը. . . սակայն բաւական է այսչափ։ Այսպ
սի կամայական բացատրութիւններ իւրաքանչիւր ոք կար
է տալ—սակայն դոքա գիտնական արժէք չեն կարող ուն
նալ։

Դր. Մօրդման չէ բաւականանում բառերի նշանակո
թեան այդ ենթադրութիւններով, այլ և յայտնում է ա
կարծիքն, որ այդ սեպագիր արձանագրութեանց լեզուն պէ
է Հայոց ամենահին գործածական լեզուն լինէր. Նա Հա
բէնը բաժանում է երեք շրջանի. I սեպագիր արձանագր
թեանց լեզուն—այսինքն իւր հնարածը—II գրաբարը և
այժմեան աշխարհաբարը [19]։ Սակայն իւր յառաջ բերած
բնակներից և բացատրութիւններից կարելի է նաև եզր
կացնել, որ գրաբար լեզուն գոյութիւն չի ունեցել, ա
տաճկահայոց բարբառը ծագել է այդ արձանագրութեա
լեզուից կամ ընդհակառակը։

Թէ ինչ գիտնական արժէք ունի Մօրդմանի թարգմ
նութիւնն և բացատրութիւնը—ճշտութեան կողմից—կար
լի է եզրակացնել նաև հետևեալ փաստից։ Նա իւր առաջ
աշխատութեան—որի մասին ցայժմ խօսում էինք—լոյս տե
նելուց հինգ տարի յետոյ՝ հրատարակեց դարձեալ մի աշխ
տութիւն. «Հայոց սեպագիր արձանագրութեանց մասին» [20]
և պաշտպանելով իւր առաջուայ բացատրութիւններն, ու
ղում է մի քանի (?!) սխալները։ Յառաջ բերենք այդ «փոք
(?) սխալներից միայն մէկը.

Առաջին յօդուածի մէջ Մօրդման համարեա իւրաքա
չիւր արձանագրութեան սկիզբը կարդում էր—«ողորմութեամ
Անահտայ», այժմ, երկրորդ յօդուածի մէջ ասում է, որ ա
սխալ է և պէտք է կարդալ «ոսկէ Անահտայ համար», որ

[19]) Տես. Mordtmann նոյն էջ 687.

[20]) Mordtmann: „Ueber die Keilinschriften von Arm
nien". տես. Zeitschrift d. d. morgenl. Gesellschaft. հատ.
էջ 406.

հետև արձանագրութեանց մէջ եղած «ուսգինի» բառը նա փոխել էր «ուսվասինի», այժմ ասում է, որ պէտք է «ուսգինի» թողնել. և այդ բառն «ոսկի» գոյականի ածականն է։ Սակայն ո՛րտեղից յառաջացաւ այդպիսի մի բոլորովին միմեանց հետ առնչութիւն չունեցող բառերի փոփոխութիւն—«ողորմութեամբ» և «ոսկէ»—դժուար չէ բացատրել։ Մորդմանին յայտնում են 21), որ մեր հին գրականութեան մէջ Անահիտը կոչւում է «ոսկեծին», «ոսկեմայր», «ոսկեհատ». իսկ արձանագրութեան մէջ եղած «ուսգինին» նմանութիւն ունի «ոսկի» բառի հետ, ուրեմն պէտք է կարդալ փոխանակ ողորմութեամբն Անահտայ, «ոսկէ Անահտայ համար» 22)։

Դր. Մորդմանի յառաջ բերած այս փաստերը գոհացուցիչ չը լինելով՝ հարկաւ նորա տեսութիւնն էլ չ՚ընդունուեցաւ գիտնական աշխարհում. 23) և ոմանք ո՛չ թէ միայն մերժեցին այդ արձանագրութեանց լեզուն հայերէնին մօտեցնելու թէօրիան, այլ և կասկած յայտնեցին՝ թէ արդեօք

21) Մորդման իւր յօդուածի մէջ շնորհակալութիւն յայտնելով Խ ո ր է ն Ն ա ր-Բ է յ սրբազանին, յայտնում է, որ նորա հետ միատեղ է կարդացել բոլոր արձանագրութիւնները։

22) Ասացինք, որ դր. Մորդման „Անահիտ" բառը հանել է „քալդի"—„քաղդի" բառից, ուստի և եթէ մէկը նորան ասէր, որ մեր գրականութեան մէջ յաճախ յիշւում են „քաղդէացիք", գուցէ նա թողնելով „Անահիտ"ը „քաղդէացի" կարդար և „ուսգինին" էլ „Ոսկան". այդպիսով փոխանակ „ողորմութեամբն Անահտայ" կամ „ոսկէ Անահտայ համար" ասելու, կարող էր թարգմանել „Քաղդէացի Ոսկանի համար"։

23) Հ ա յ ր Գ ա ր ե գ ի ն Զ ա ր բ հ ա ն ա լ ե ա ն իւր „Հայկական հին դպրութեան պատմութիւն" աշխատութեան մէջ խօսելով Մորդմանի մասին՝ ասում է. „իր կարծիք եւ գրութիւն ուական հռչակ եւ ընդունելութիւն գտաւ" (?). սակայն ինքն զգալով այդ տողերի չափազանցութիւնը՝ մեղմացնում է իւր ածն աւելացնելով. „գէթ առջի բերան". տես. հատ. I. էջ 16։ Երկրորդ տպագրութիւն)։

արձանագրութեանց լեզուն պատկանում է հնդկա-գերմանական ճիւղին։ Վերջին ժամանակներում այս խնդրով զբաղուող հետազօտողներից մէկը—Sayce—այն եզրակացութեան եկաւ, որ Վանայ և շրջակայից արձանագրութեանց լեզուն չէ պատկանում հնդկա-գերմանական ճիւղին և առաւել ազգակից է *վրաց* լեզուին, սակայն այս ևս ենթադրութիւն է, որովհետև հիմնական փաստերը պակասում են։—Ֆր. Լը Նօրման առաջինն եղաւ, որ ցոյց տուեց Վանայ սեպագիր արձանագրութեանց լեզուի ազգակցութիւնը վրաց լեզուի հետ՝ համեմատելով այդ երկու լեզուների հոլովումները. նա ասում է նոյնպէս, որ այդ արձանագրութեանց «իդէօմները»—նշանացոյցները—ամենևին նմանութիւն չունեն այժմեան հայերէնի հետ։

Թէև դեռ ևս վճռական կերպիւ չէ որոշուել Վանայ կամ Հայոց սեպագիր արձանագրութեանց լեզուն, սակայն այնու ամենայնիւ այդ սեպագիրը մենք դասեցինք Հայոց գրի զարգացման ընթացքի մէջ, վասն զի

ա. Այդ արձանագրութիւնները գտնուում են Հայաստանի զանազան կողմերում, ուրեմն բաւականին տարածուած են։—Յայտնի է, որ բացի Վանայ սեպագիր արձանագրութիւններից Հայաստանի այլ կողմերում ևս գտնուել են այդպիսիք. 1840 թ. պրուսական հարիւրապետ ֆօն Միւլբախը—Mühlbach—«Իզօղլու» գիւղի—Եփրատի վրայ—մօտ, ոչ հեռու Մալաթիայից, գտաւ մի ընդարձակ սեպագիր արձանագրութիւն՝ նման Վանայ արձանագրութեանց, որ հրատարակուած է Monatsberichten... für Erdkunde zu Berlin ամսաթերթի մէջ (առաջին տարի, 1840)։ Իսկ Մեսրոպ եպիսկոպոս Սմբատեանի Արմաւիր և Յօլակերտում գտած սեպագիր արձանագրութիւնները հրատարակուած են «Արարատ» ամսագրի մէջ [24])։

---

[24]) Տես. „Արարատ" 1869 թ. հոկտեմբեր և նոյեմբեր 1870 թ. փետրուար №. №. այս արձանագրութիւնները հրատա-

բ. Առաջին փաստից ակնյայտնի երևում է, որ սեպագի-
Հայաստանում բնակուող ժողովրդի սեպհական գիրն էր։

գ. Թէև նման, բայց այնու-ամենայնիւ տարբերութիւն
նի ասորա-բաբելական և պարսկական սեպագրերից։

դ. Ո՛չ միայն սեպագրով զբաղուողներն, այլ և եւրո-
ական բոլոր արևելագէտ պատմաբաններն այդ արձանա-
ութեանց պարունակութիւնն ընդունում են իբրև Հայոց
ատմութիւն։

Էդուարդ Մայէր իւր «Հնագարեան պատմութեան»
eschichte des Alterthums) առաջին հատորի մէջ յառաջ բերած
անայ արքաների պատմութիւնները [25]) շարահիւսել է՝ հիմ-
ւելով Sayce-ի եզրակացութեանց վերայ։

Վանայ բոլոր սեպագիր արձանագրութիւնները, բացի
րսից—որոնք Ուրցանայի և Մուսասիրի կնիքն են կրում—
ատկանում են մի և նոյն շրջանին և յառաջ են բերում
ն հինգ (5) արքաների անունները, որ թագաւորում են
նում [26])։ Սոցա պաշտօնական տիտղոսը նոյնն է, ինչ որ
իաինա»-ի արքաներինը—«Բիաինա» անուան մէջ դիւրու-
եամբ կարելի է գտնել «Մաննա» կամ Վան։—Սոքա թա-
ւորում են ժառանգաբար (90) իննըսուն տարի—835-ից
5 թ. Քրիստոսից առաջ։ Այս հինգ արքաների անուննե-
հետևեալներն են. 1) Սարիդուրիս I. [27])

---

կեց նաև Փ ր դ. Մ ի ւ լ լ է ր. տես. Sitzungsberichte etc. Wien.
ա. 65. էջ 595.

[25]) Այդ մասը մենք ամբողջապէս հրատարակել ենք „Ար-
գանք" շաբաթաթերթի 1884 թ. 37 №։

[26]) „Նայիրի" դաշնակցութեան մէջ ամենանշանաւորը համ-
ւանում է „Մաննա" կամ „Վաննա"—„Վանայ"—թագաւորու-
ւնը. այս անունը ս. գրքի մէջ յիշւում է „Միննի", իսկ յու-
յ մի քանի հեղինակներն անուանում են „Մինուա"։ Տես.
normant: Histoire Anc. de l'Orient հատ. IV. էջ 245։

[27]) „Սարիդուրի", „Սիրդուրի" կամ „Սարդուրի" պատերազ-
մ է 833 թ. „Սալմանասար" II-ի հետ. սա համարւում է Վան

2) Իսպուինիս
3) Մինուաս
4) Արգիստիս [28])
5) Սարիդուրիս II.

Ամենից հետաքրքիր իրողութիւնն այն է, որ այս արձանագրութիւններից *միայն երկուսն*, որ պատկանում են առաջին արքայ «Սարիդուրիս» I-ին՝ խմբագրուած են *ասորական լեզուով*. այս երկու արձանագրութեանց մէջ ինքը, իշխանը կոչւում է «*արքայ Նայիրի աշխարհի*»։ Այստեղից կարելի է եզրակացնել, ասում է իրաւամբ համբաւաւորն Լընորման, որ «Սարիդուրիս» մեծ ցանկութիւն ունենալով իւր ժողովրդեան ծանօթացնելու՝ *գրի* և ասորա-քաղդէական քաղաքակրթութեան հետ, կանչել տուեց ասորական գրողներ այդ արձանագրութիւնները կազմելու համար և անշուշտ այս արքան է, որ *իւր ազգի լեզուն* գործ դրեց սեպագիր արձանագրութեան համար, որովհետև իւր որդի «Իսպուինիսի» արձանագրութիւններն և սորա յաջորդներինը *առանց բացառութեան* կազմուած են տեղական լեզուով։

«Սարիդուրիս» II-ին յաջորդող իշխանների պատմութիւ-

---

քաղաքի հիմնադիրը։ Տես. Mayer: Geschichte des Alterthums. հատ. I. էջ 412։

[28]) Լայարդ կարդացել է Վանայ մօտ գտնուած ս. *Սահակ եկեղեցու* մէջ գտնուած այս արքայի երկու արձանագրութիւնները—սոցա ընդօրինակութիւնը գտնւում է Լոնդոնում—որոնցից մէկը պարունակում է 40, իսկ միւսը 26 տող. բոլորն էլ պատկանում են Արգիստիսի թագաւորութեան ժամանակին. այդ արձանագրութիւններից մէկը թւում է արքայի պատերազմներն, ուր նա 453 քաղաքներ է տիրապետել. 105 տաճարներ և պալատներ այրել, 25,170 գերի տարել. նոյնպէս 2,734 սպա, չափազանց բազմաթիւ կանայք և երեխայք գերել. 73,700 ոչխար և բազմաթիւ եզն և այլ կենդանիներ քշել։ Տես. Lenormant, նոյնն, հատ. IV. էջ 292։

շատ մութն է. դոցա մասին համարեա ոչինչ չ՛գիտենք,
ոցի դոցա անուններից, որոնք գրուած են մի բրօնզեա
Տանի վերայ, որ Rassam 1876 Թ. գտաւ Վանում։ Այդ
ունները հետևեալներն են.

1) Ուրսա
2) Արգիստիս II.
3) Էրիմենոս
4 Ռուզա
5) Սարիդուրիս III.
6) Ահսերի
7) Ուալլիս։

Դոցանից առաջինն ապրում էր «Սարգօն»ի ժամանակ,
կ վերջինը ժամանակակից էր «Ասուրբանիպալ»ի։ Երբ Տրգ-
Թպալասար II-ի ձեռքով առորակեան հզօր իշխանութիւնը
կին վերականգնեցաւ, Բիաինալի արքաներն ընկճուեցան և
ցա իշխանութիւնը վերջացաւ։

Ինչպէս արդէն յիշեցինք, հայոց սեպագիր արձանագրու-
եանց պատմական բովանդակութիւնը բաւական ընդարձակ
րպիւ յառաջ է բերել Mayerը իւր պատմութեան մէջ
որովհետև այդ հատուածն ամբողջապէս հրատարակուած
(տես. ծԹ. 25) հայերէն, աւելորդ չենք համարում այստեղ
առաջ բերել նաև Մասպերօ—M a s p e r o—ֆրանսիացի հըռ-
կաւոր արևելագէտի աշխատութիւնից մի հատուած [29]։

. . . . Երբ Եգիպտոսն ընկճուեցաւ, կարգը հասաւ
ւրարտի»ին։ Այն ժամանակ այն լեռնոտ երկրում, ուր Տիգ-
ս ու Եփրատ գետերն են բղխում, բնակւում էր ոչ այժ-
ան հայկական ցեղն, այլ վրաց և կովկասեան մի քանի այլ
ղքերի հետ ազգակցութիւն ունեցող մի ցեղ։ «Ուրարտին»
ժանւում էր բազմաթիւ փոքրիկ պետութիւնների, որոնց
ունները թէև յայտնի են, սակայն քարտէզի վերայ դոցա

[29]) Մեր ձեռքն է այդ աշխատութեան գերմաներէն հմտա-
յն Թարգմանութիւնը. „M a s p e r o: Geschichte der morgen-
ndischen Völker im Alterthum“ übersetzt von R. P i e t-
h m a n n.

մի որոշ տեղ տալը դիւրին չէ. այդ պետութիւններն են «*Նայիրի*»՝ ուր գտանւում են Տիգրիսի և Եփրատի ակունքները. «Մաննա»—Վան—Վանայ ծովից դէպի հարաւ-արևելք և «*Մուսասիր*»—Արփխա—դէպի հիւսիս. «*Միլիդուեզի*»ի—այժմեան Արզրումի նահանգը—և «*Միլիդ*»ի—Մելիտինէ—իշխանութիւններն և վերջապէս «*Ուրարտի*» կամ «*Արարտի*»—Արարատեան—որին յաջողուել էր դրացի ցեղերից մի դաշնադրութիւն կազմել։

Տուկլատ-Հաբալ-ասար I յարձակուեցաւ «Նայիրի» երկրի վերայ. իւր յաջորդները մեծ մասամբ տիրեցին այդ երկրին, այնպէս որ իններորդ դարում—Քրիստոսից առաջ—համարեա վերին Տիգրիսի ամբողջ երկիրը հպատակում էր կամ հարկատու էր Ասորեստանցիներին։ Ասուր-Նազիր-Հաբալ ընկճեց «Մաննա»ն. Սալմանասար III յարձակուեցաւ «Ուրարտի»ի վերայ։ Նա յաղթեց 841 թ. «Արամէ» արքային. 832 թ. նորա յաջորդ «Սադուրի»ին և 830 թ. «Մաննա»ի թագաւորի զօրքերին. մի տարուց յետոյ «Ուրարտի»ի զօրքերին. սակայն այս ամենն առանց հետևանքի էր մնում, վասնզի թշնամիներն ընկճուելուց անմիջապէս յետոյ՝ կրկին ապստամբում էին։ Բին-Նիրարի III 813—804 թ. երկու պատերազմական արշաւանք արեց «Մաննա»ի դէմ և Սալմանասար IV ձեռնարկեց չորս պատերազմական արշաւանք—787—784, ընդդէմ «*Ուրարտի*»ի և դորանից յետոյ կրկին երկու—782—780։ *Ուրարտին* Ասորեստանցոց հետ յարաբերութեան մէջ մտնելով՝ քաղաքակրթուեցաւ և ընդօրինակեց իւր թշնամիների արուեստներն և մինչև անգամ գիրը—գրելու արուեստը։ Այդ երկրի արքաներից մէկը «Բիլիդդուըրիս» I «Լուտիբրի»ի որդին, Նինուէից բերել տուեց գրողներ, որոնք իւրեանց լեզուով նորա համար պաշտօնական արձանագրութիւններ գրեցին և տարական թագաւորների տիտղոսները շռայլաբար նորան նուիրեցին. Նինուէական *իդէոմը*, նշանացոյցը, տարիների ընթացքում «Ուրարտի»ի գիտնականների լեզուն էր,

ր յետոյ՝ «Բիլիդդուրիս»ի որդի «Իսբուինիս» I-ի իշխանութեան ժամանակ այդ գիրը մի քանի փոփոխութիւններով գործադրուեցաւ տեղական լեզուով գրելու համար» 30)։

Սակայն աւելի հետաքրքիր է Լ ե ն ո ր մ ա ն ի Հայոց սեպագիր արձանագրութեանց ուսումնասիրութեան եզրակացութիւնն, որ ամփոփուած է հետեւեալ հատուածի մէջ. «Հայկական սեպագիր արձանագրութեանց ընթերցման ամենաչքի ընկնող հետեւանքն այն է, որ «Նայիրի»ի ժողովուրդները կամ ազգերը—les peuples—ունեցել են միեւնոյն կրօնն, ինչպէս որ բոլորն եւս մի ցեղ են կազմում։ Պաշտուած աստուածներն ամենայն տեղ միեւնոյնն են, ինչպէս որ ցոյց են տալիս Արզրումի, Վանայ եւ Պալուի շրջականներում գտնուած յիշատակարանները։ Թէպէտ Հայաստանը բաժանուած էր բազմաթիւ քաղաքական իշխանութեանց, սակայն երկրի ցեղագրական, լեզուի եւ կրօնի միութիւնը կապակցում էր այդ ժողովրդների զանազան մասերը միմեանց հետ։ Դոցա կրօնի մէջ իշխում է գլխաւորապէս մի գերագոյն երրորդութիւն. առաջին աստուածը կոչւում է «Հալդիս»—Քաղդի—իսկ երկու կից աստուածներն են՝ «Տայսբաս», օդի աստուածը եւ «Արդինիս», արեւի աստուածը։ Երկրորդական աստուածներն, որ կրում են «Հալդիսի որդիք» մականունը թուով 46 են. դոցանից շատերն ընդունուած էին դրացի երկրներում...» 31)։

Բաւականանալով Հայոց սեպագիր արձանագրութեանց այս համառօտ պատմութեամբ, յառաջ ենք բերում երկու այդպիսի արձանագրութեանց օրինակներ.

I. Արձանագրութեան (տես. № III) բնագիրը գտնւում է Վանայ մօտ եղած Նի եկեղեցւոյ մէջ եւ բաղկացած է երեք տողից՝ փորագրուած մի սիւնի շուրջը։ Արձանագրու-

30) Տես. Maspero: նոյն էջ 394—395.

31) Տես. Lenormant. նոյնը հատ. IV էջ 246։

թեան երկարութիւնն երկու մետր է, իսկ սիւնի գրուած տ
րածութեան բարձրութիւնն է 13—14 հարիւրամետր (սան
մետր)․ այդ երեք տողն ևս միևնոյնն է, այսինքն բովա
դակութիւնը կրկնուած է երեք անգամ։ Բովանդակութիւ
հետևեալն է. «Մի-նու-ա-զի. Իս-բու-ու-ի-նի-գան-զի-ա-
հու-ու-սի-(ե-գա)-դու-ու-նի», որ ըստ Մորդմանի ընթերցմ
նշանակում է. «Մինուաս, Իսբուինիսի որդին, կառուցեց
տաճարը» [32]։

II. Արձանագրութիւնը փորագրուած է եղել մի մա
մարեայ տախտակի վերայ, որ գտանուել է Վան քաղաք
ոչ հեռու։ Այս արձանագրութիւնը սկիզբն և վերջ չու
բովանդակութիւնն է. «Ես տիրեցի… պալատի մէջ… ո
2651… արծաթ 2… որ ես դարձրի…» [33])։

Անցնենք սեպագրի *էութեան և ծագման* խնդրին։

Երբ բևեռագրի ընթերցումը յաջողուեցաւ, յայտնի եղ
ւաց որ դորա գործածութիւնը յայտնի է եղել Բաբելացին
րին, Նինուէացիներին, Պարսիկներին և Հայերին. բայց
ո՛ր ժողովուրդն էր այդ գրի իսկական սկզբնաւորութե
պատճառն և ստեղծողը՝ դժուար էր որոշել, մինչև որ վ
ջին ժամանակների գիւտերը ապացուցեցին, որ վերոյիշե
ազգերից և ոչ մէկը չէ եղել դորա սկզբնապատճառն,
դոքա փոխ են առել մի ուրիշ ազգից, որի գոյութիւնը վ
ղուց արդէն անյայտացել էր պատմութեան միջից։ Այդ ե
ղութիւնն ապացուցեցին գլխաւորապէս Նինուէի գրադար
նի աւերակների մէջ գտանուած գրականական մնացորդներ
որոնք ցոյց տուին, որ բևեռագիրը *սեմիտների*, տօրա-բա
լացիների գիւտը չէ, այլ այն ժողովրդի, որ դոցանից առ
բնակւում էր Միջագետքի դաշտավայրում, և որի լեզուն սե

[32]) Տես. Mordtmann: „Ueber die Keilinschriften von A
menien". Zeitschrift d. d. morg. Gesellschaft. Հատ. 31. էջ 4
[33]) Տես. Mordtmann, նոյն էջ 438.

տական ընտանիքին չէր պատկանում։ Այս ժողովրդին կոչում են *Ակկադներ*, Ակկադացիներ, կամ *Սումերներ*, Սումերացիներ։ Ակկադները թողնում են իւրեանց հարուստ *գրականութիւնը* սեմիտական ասորա-բաբելացիներին, որոնք նոյնպէս մեծ նշանակութիւն են տալիս դորան։ Նինուէի գրադարանի աւերակների մէջ գտնուած ահագին քանակութեամբ կաւէ տախտակները գրուած են *Ակկադների* լեզուով. իսկ այդ բնագրի իւրաքանչիւր տողի տակը գրուած է ասորական թարգմանութիւնը [34]։

Ինչպէս որ իւրաքանչիւր գրի զարգացումը տեղի է ունենում աստիճանաբար, նոյնպէս և սեպագրի ծագումը պէտք է իւր զարգացման աստիճաններն ունենար, ուստի և ինքն ըստ ինքեան յառաջ է գալիս այն հարցմունքը՝ թէ ի՞նչպէս են կազմակերպուել դոքա։ Գիտնականներից ոմանք ենթադրում էին, որ դոքա պէտք է եգիպտական պատկերագրից յառաջացած լինեն, իսկ այլք՝ թէ դոքա իւրեանց առանձին ծագումն և զարգացումն ունեն և բոլորովին կապ չունեն եգիպտական գրի հետ։ Վերջին ժամանակներում գտնուած *«Համատական»* [35] պատկերագիր արձանագրութիւնները հաստատեցին վերջին կարծիքը։ Եւ որովհետև այդ պատկերագրի գիւտն Լս համարում է *Ակկադների* գործ [36], բնական է եզրակացնել, որ սեպագիրն իւր ծագումը պարտական է այդ «Համատական» կոչուած պատկերագրին։ Ակկադների

---

34) Տես. Sayce: „Alte Denkmäler etc.“ էջ 9։

35) *Այդ արձանագրութիւնները «Համատական» են կոչւում, որովհետև ամենից առաջ այդ քաղաքում յայտնագործուեցան։* „Hamath“ im Orontesthale, an der Furt des Euphrat etc. տես. Maspero նոյն. էջ 232.

36) *«Ակկադացիներն են այն պատկերագրի սկզբնապատճառն, որից կազմակերպուեցաւ սեպագիրն։ Այդ Ակկադացիները հիմնեցին Քաղդէայի մեծամեծ քաղաքներն և հասան քաղաքակրթութեան մի նշանաւոր աստիճանի»։* Տես. Sayce, նոյն էջ 17։

գիրը սկզբումը նման էր եգիպտականին. իւրաքանչիւր նշանը նոյն իսկ առարկայի պատկերն էր ներկայացնում, կամ այնպիսի առարկաների պատկերներ, որոնք արտայայտելու վերացական գաղափարի հետ մի որ և է կապակցութիւն ունէին —օրինակի համար թագաւոր արտայայտելու համար նկարել էին «մեղու»—: Պատկերագիրը հետզհետէ—թէ գրողի կամ փորագրողի անհոգութեան պատճառաւ և թէ այն հանգամանքից, որ գրելու համար իբր ամենալաւ միջոց ընդունուեցաւ կաւը—փոխուեցաւ գծագրի և վերջն այդ գծերից յառաջացած բառերը կորցրին իւրեանց առաջուայ պատկերը։ Իսկ գծագիրը հետզհետէ պարզ ձև ընդունելով կազմակերպուեցաւ այսօրուայ սեպագիրը [37]։

Սեպագրի ամբողջ այբուբենը բաղկացած է մի սեպաձև նշանի հորիզոնական, ուղղահայեաց կամ ծռուած դիրքերի բարդութիւններից։ Գրի սիստեման նման է եգիպտական գրին. մի քանիսն իսկական գաղափարներ են արտայայտում, իսկ հասարակ նշաններն ըստ մեծի մասին միակ հնչիւններ կամ ձայնաւոր ու բաղաձայն տառերից կազմուած վանկեր։

Ինչպէս եգիպտական գիրը, սեպագիրն ևս պատկառելի հնութիւն ունի. գտանուած ասորա-բաբելական սեպագիր արձանագրութիւնները ցոյց են տալիս, որ այդ գիրը գործածական էր դեռ ևս 1500—2000 տարի Քրիստոսից առաջ։ Պարսից բևեռագիր արձանագրութիւնները սկսւում են Դարեհ I-ի (522–485 թ.) ժամանակից. իսկ ցայժմ գտանուած ամենանոր ժամանակի սեպագիր արձանագրութիւնը կրում է պարթևաց Պակորոս անունն, որ իշխեց 77—111 թ. Քրիստոսից յետոյ։

37) Լընորման խօսելով մի ասորական արձանագրութեան մասին, որ գրուած է սեպագրով և պատկերագրով և գտանւում է բրիտանական թանգարանում, ասում է. „Caracteres cunéiformes avec les traces hiéroglyphiques dont ils derivent“. տես. Lenormant, նոյնը հատ. I. մասն 2. էջ 420.

Սեպագիր արձանագրութիւնները գտանւում են ժայռերի և աղիւսների վերայ. Հին ժամանակներից սկսած արդէն արևելեան թագաւորները փափագում էին իւրեանց փառքը յաջորդ սերունդներին յայտնի կացուցանել՝ դոցա յաջորդող իշխանները նոյնպէս պէտք է տեղեկութիւն ունենային դոցա արած քաջագործութիւններից։ Ասորեստանցի արքաներն իւրեանց այս ցանկութիւնն ի կատար ածելու համար նկարագրել էին տալիս իւրեանց քաջագործութիւններն, արշաւանքներն և իւրեանց պատկերի հետ ի միասին փորագրում մարմարեայ տախտակների, աղիւսների, քարեայ սիւների և առաւել սիրով այնպիսի բարձրաբերձ ժայռերի վերայ, որ տեսանելի էին բազմաթիւ անցորդներին։ Նոյն իսկ Հայաստանում գտանուած Վանայ սեպագիր արձանագրութիւններն, որ փորագրուած են քաղաքի մակերևոյթից 50—60 [38]) ոտք բարձրութիւն ունեցող ժայռերի վերայ, ապացուցանում են այդ իրողութիւնը։

---

38) Տես. Wuttke, „Geschichte der Schrift und des Schriftthums“ Հատ. I. էջ 644.

# ԳԼՈՒԽ Է.

## Տ Ա Ռ Ա Գ Ի Ր

„ „Entwicklung“ heist von jetzt an „das Zauberwort, durch das wir alle uns „umgebenden Bäthsel lösen oder wenigstens „auf den weg ihrer Lösung gelangen kön- „nen“.

Prof. Häckel

« «Աստիճանաբար զարգացումն» է կոչւում այժմեանից այն կախարդական խօսքը, որի միջոցով կարող ենք լուծել մեզ շրջապատող բոլոր հանելուկները կամ թէ առ սակաւն կարող ենք գոցա լուծելու ճանապարհը գտնել»։

Պրօֆ. Հէքէլ։

---

*Խպտական գիր. սեմիտական այբուբեն. փիւնիկեան այբուբեն. տառագրի ծագումը. տարբեր տեսութիւններ. Փառոլմանի տեսութիւնը. ուղղագրութիւն. հայոց այբուբեն:*

---



Երբ արդէն վանկագիր նշանները յայտնի էին, մնում էր դարձեալ մի աստիճանի կատարելագործութիւն ևս և պատրաստ պէտք է լինէր գրի ամենայարմար և մարդկային յառաջդիմութեան նպատակներին մեծապէս ծառայող տեսակը — տառը։ Տառագրի շնորհիւ միայն մարդս կարողանում է իւր ձայնի գործարանի ամենայն տեսակ կանոնաւոր հնչիւններն արտայայտել գրով և գրերի կապակցութեամբ դիւրին կերպիւ իւր գաղափարներն այլոց հասկանալի կացուցանել։

Առաջին հատուածի մէջ հետեւելով եգիպտական գրի
զացման ընթացքին, տեսանք թէ ինչպէս են յառաջա-
մ այնտեղ տառագիր նշանները. նոյն իսկ այդ եգիպտա-
ն գիրն է, որ պարզապէս ապացուցանում է գրի աստիճա-
բար զարգացումը։

Այժմեան քրիստոնեայ խպտիներն, որ հին եգիպտացւոց
ունդներն են, դեռ ևս իւրեանց եկեղեցւոյ մէջ պահպա-
են իւրեանց՝ ուղղակի հին եգիպտականից ծագող լեզուն։
Արդէն եօթը (7) դար Քրիստոսից առաջ—Պսամետիխի
գաւորութեան ժամանակ—Եգիպտոսը սկսեց յարաբերու-
ւն ունենալ Յունաստանի հետ և յունական լեզուն ու
լորութիւններն Եգիպտոս մտան։ Պտղոմէից իշխանութեան
մանակ—ու տեւեց Քրիստոսից առաջ վերջին երեք դարու
թացքում—յունական լեզուն դարձաւ Եգիպտոսի պալա-
կան—արքունի—լեզուն և Ալէքսանդրեան յունական իմաս-
ւթեան—փիլիսոփայութեան—գլխաւոր կենդրոնը։ Այդ ժա-
նակից մնացել և գտանուել են արձանագրութիւններ,
ոնք գրուած են երկու լեզուով՝ յունարէն և եգիպտական
ղովրդական կոչուած գրով։ Հռովմէական կայսրները նոյն-
ս պաշտպանեցին եգիպտական կրօնն և դոցա անուններն
գտանւում են եգիպտական գրով գրուած։ Սակայն երբ
ստանդին մեծը քրիստոնէութիւնն իբր կայսրութեան մէջ
աշտօնապէս ճանաչուած և տիրող կրօն հրատարակեց և
ւեւեան կայսրները տիրեցին եգիպտոսը, քրիստոնէութիւ-
հալածեց եգիպտական կրօնն և իւր հետ ի միասին մըտ-
եց երկրի մէջ յունական լեզուն և գիրն, որ այնուհետև
րող հանդիսացաւ Եգիպտոսում։ Երրորդ դարում սբ. գիր-
թարգմանուեցաւ եգիպտական—որ այնուհետև կոչուե-
ւ «խպտական»—լեզուով, որի համար և նոր այբուբեն
ոգմուեցաւ, որ բաղկացած էր յունական և վեց՝ եգիպտական
ից առնուած տառերից։ Խպտական եկեղեցւոյ բաժանումը
ւնականից, որ տեղի ունեցաւ վեցերորդ դարում, եղաւ գըլ-

խաւոր պատճառն, որ խպտական այբուբենը ցայժմ կարողացաւ պահել իւր առանձնայատկութիւնը։ Եօթերորդ դարում արաբացիք տիրելով Եգիպտոսը, տարածեցին իւրեանց լեզուն և գիրն երկրի մէջ։ Խպտական լեզուն և գիրը կարողացան պահել միայն ցայժմ քրիստոնեայ մնացած խպտիներն՝ իւրեանց եկեղեցական գրուածների մէջ։

Եգիպտական գրից յետոյ՝ թէ իւրեանց պատկառելի հընութեամբ և թէ նշանակութեամբ տառագրի մէջ առաջին տեղն են բռնում սեմիտական այբուբենները։—Սեմիտական այբուբենով ծաղկեցան յունաց և հռովմայեցւոց գրականութիւնները, այդ այբուբենի տառերով գրուեցան՝ սբ. գիրքը, զէնդավեստան և ղուրանն. այդ այբուբենի հետ է կապուած մարդկային քաղաքակրթութեան յառաջադիմութիւնն և յաբատեւութիւնը։ Սեմիտական այբուբենի դասակարգին են պատկանում՝ փիւնիկեան, եբրայական, ասորա-բաբելական, յունական, հռովմէական, գոթական, արաբական և այլ այբուբենները։ Ասորական այբուբենի ընտանիքին են պատկանում՝ զէնդի, պարսկական, հնդկական, աղուանական և այլ այբուբենները. իսկ այժմեան եւրոպական բոլոր ազգերի այբուբենները պատկանում են յունական ընտանիքին—հռովմէականի միջնորդութեամբ։

Այն բնական հարցմունքը՝ թէ արդեօք այս այբուբեններն ինչ յարաբերութեան մէջ են գտնւում միմեանց հետ կամ թէ որն է գոյանից սկզբնականն, երկար ժամանակ գիւտերի պատմութեանց մի խառնուրդ — քաօս — էր ներկայացնում. իւրաքանչիւր ազգ ներկայանում էր իբր ստեղծող իւր այբուբենի. իսկ միւս կողմից կային մարդիկ, որոնք դեռ ևս դարուս սկզբում պնդում էին՝ թէ Ադամ՝ նոյն իսկ իւր ստեղծուած օրն ընդունեց խօսելու և գրելու կարողութիւնն—այն ևս տառերով գրելու—։ Սակայն հետզհետէ յերևան եկող հնութիւններն և արձանագրութիւնները նորանոր նիւթեր մատակարարելով գրի զարգաց-

(IV.)





ՊԱՏԿԵՐԱԳՐԻՑ ՏԱՌԱԳԻՐ ԿԱԶՄՈՒԵԼԸ։

ման պատմութեան համար, խնդիրը լուսաբանել ձգտողների կարծիքներն ևս փոխուեցան և եգիպտացութիւնն եղաւ այն, որ փիւնիկեան գիրն ընդհանրապէս ընդունուեցաւ իբր առաջին տառագիր այբուբեն։

Սակայն մի այլ «գորդեան հանգոյց» էր կազմում այն խնդիրը՝ թէ արդեօք ինչպէս է յառաջացել փիւնիկեան այբուբենը։ Այս հանգոյցը լուծեց եգիպտական գրի ուսումնասիրութիւնը։ Երբ եգիպտական պատկերագրի ընթերցումը յաջողուեցաւ հնագէտներին, տիրող հանդիսացաւ այն կարծիքն, որ մարդս առաջին անգամ կոպիտ պատկերներ նկարելով՝ դոցա օգնութեամբ ստեղծում է բառագիրն. այդ տեղից ծագում է վանկագիրն, որից և յառաջանում է վերջապէս տառը։

Փիւնիկեան այբուբենն, որից անմիջապէս ծագում են՝ եբրայական, ասորական և յունական տառերը, յառաջացել է եգիպտական գրից. ինչպէս արդէն ասացինք, և ինչպէս որ ցոյց են տալիս արձանագրութիւններն, եգիպտական պատկերագիրն արտայայտում է ոչ միայն ամբողջ գաղափարներ՝ բառեր և վանկեր, այլ նաև տառեր։ Նոյն իսկ եգիպտական I հարստութեան ժամանակ յայտնի էր նոցա այբուբենը. անի որ նոքա լեզուի քսան և մէկ պարզ հնչիւնների համար առանձին պատկերագրեր ունէին։ Այս պատկերագիրը գործ էր գրւում հասարակական շինութեանց և արձանների վերայ, ակ նամակագրութեան, գրքերի և առևտրականութեան մէջ ործ էր գրւում մի աւելի պարզ ձևակերպութիւն ունեցող շաններից բաղկացած այբուբեն, որ կոչւում է քրմական։ Եւ հա այդ քրմական այբուբենից է իւր ծագումն առնում փիւնիկեան գիրը։ Մեր յառաջ բերած փոքրիկ ցանկը ցոյց է տալիս՝ թէ ինչպէս են յառաջացել քրմական այբուբենի տառերը պատկերագրերից (տես. № IV)։

Նեղոս գետի դելտայի ափերն այնչափ խիտ Փիւնիկեան—ազգական—բնակութիւն ունէին, որ կոչուեցան «մեծ Փիւ-

*Ալիֆնայ»*. այս գաղթական Փիւնիկեցիներն առաջին անգամ գործ էին դնում Եգիպտական պատկերագիրը, որ անհրաժեշտ պէտք է լինէր նոցա համար՝ իւրեանց գրացի ժողովրդի հետ յարաբերութիւն սկսելու առթիւ։ Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ Փիւնիկեցւոց նման մի գործնական ժողովուրդ, որ իւր առեւտրական ընդունակութեան պատճառաւ տարածուել էր ամբողջ հին աշխարհում, պէտք է աշխատէր յարաբերութեան միջոցները դիւրացնել. այդ նպատակին մեծապէս նպաստում էր գիրն, ուստի և նոքա Եգիպտական գիրը հետզհետէ պարզելով և պատկերները հեռացնելով՝ կազմեցին այն հասարակ ձեւերից, լեզուի հնչիւններն արտայայտող այբուբենն, որ յետոյ կոչուեցաւ *Փիւնիկեան*։ Այդ նոր այբուբենը Նեղոսի ափերից տեղափոխուելով Փիւնիկեցւոց մայր երկիրն, այնտեղ նորից կազմակերպուեցաւ և իւրաքանչիւր տառ ստացաւ իւր անունը մի որև է նման առարկայից, կամ որի անունը ըսկըսւում էր այն ձայնով, ինչ ձայն որ ներկայացնում էր տառը

Փիւնիկեան տառերն իւրեանց անուններով անմիջապէս յունաց անցնելով՝ նոցանից ևս անցնում են հռովմայեցւոց և սոցանից եւրոպական ազգերին. դորա ապացոյցը կարելի է համարել «այբուբեն» բառն, որ համարեա ամենայն տեղ «Ալֆաբետ» է կոչւում և յունաց այբուբենի առաջին երկու տառերի անուանց միութիւն է կազմում—«ալֆա» և «բետա» ինչպէս որ հայերէն «այբուբեն» անունը մեր այբուբենի առաջին երկու տառերի՝ «այբ», «բեն» միութիւն է—իսկ «ալֆա» և «բետա» տառերը Փիւնիկեան «*ալէփ*» և «*բէթ*» անուններն են։

Այդպէս յառաջացաւ *տառագիր* այբուբենը և շուտով յաղթական կերպիւ մուտք գործեց այն բոլոր երկրներում, ուր քաղաքակրթութիւնն արդէն առաջուց ոտք էր դրել։ Տառագիր այբուբենը տարածեցին նոյն իսկ փիւնիկեցիք՝ ուղղակի թէ անուղղակի կերպիւ. այդ գիրն ամենից առաջ տարածուեցաւ բնականաբար արեւելքում՝ Փիւնիկեան և ասորիքի ծովեզ-

այ երկրներում և այլ արամայեցիների միջնորդութեամբ
ւոք գործեց Եփրատի ու Տիգրիսի հովիտն և երկար պա-
րազմելով յաղթող հանդիսացաւ արդէն դարերով գոյու-
ւն ունեցող սեպագրի դէմ։

Թէև գրի զարգացման վերաբերութեամբ մեր ընտրած
նապարհը ցայժմ ամենահաւանականն է ճանաչուած գիտ-
կան աշխարհում, սակայն այնուամենայնիւ կան և հեղի-
ակներ, որ բոլորովին մերժում են գրի զարգացման վերոյի-
ալ ընթացքը. սակայն դոցա փաստաբանածն ևս այնչափ
արգ չէ, որ ընդհանուր ընդունելութիւն գտնէր։ Դոցա կար-
ով գրի զարգացումն այնպէս սիստեմատիկական կերպիւ—
ատկերագրից մինչև տառը—չէր կարող յառաջ ընթանալ,
չպէս որ մենք ներկայացրինք, այլ առաւել բարդ կազմա-
րպութիւն ունի և դեռ ևս քողարկուած է մնում. «Իսկապէս,
ում է օրինակի համար Ֆաուլմանն, երբէք վանկագրից տա-
ագիր չէ յառաջացել և եգիպտական պատկերագրի առաւել
շտ ճանաչողութիւնն ուսուցանում է մեզ, որ հնչիւն ար-
այայտող նշանները կամ տառերը նոյնչափ հին են, որչափ
յն իսկ պատկերագիրը։ Նոյն իսկ Մեքսիկացիների—որոնք
կապէս նկարում էին անցքերն և ոչ թէ գրում—նկարնե-
մէջ գտնում ենք հնչիւն արտայայտող նշաններ անուանց
ամար.»։ [1]) Այն հարցմանը՝ թէ ինչպէ՞ս են այսօրուայ ընդ-
անուր եւրոպական տառերը—լատինական—յառաջացել, նոյն
աուլմանը պատասխանում է հետևեալ կերպիւ. «Այս խըն-
իրը ցայժմ բոլորովին լուծած չէ. ապահով է միայն, որ լա-
ինական տառերը փոխ են առել հռովմայեցիներից, իսկ ինչ
րաբերում է հռովմէական գրի յունարէնից ծագելուն, յու-
արէն այբուբենի Փիւնիկեան գրից յառաջանալուն ու նոյն
կ Փիւնիկեան այբուբենի կազմակերպութեան, ցայժմ ու-
նք միայն աւանդութիւններ, որոնց մթութիւնը շատ խըն-

[1]) Տես. Faulmann: „Geschichte der chrift" էջ 2—3։

գիրներ անլուծանելի է թողնում։ Միթէ հաւանական է, որ յոնները գիր չ'ունենային մինչև Փիւնիկեցւոց հետ յարաբերութիւն ունենալը, քանի որ վայրենի «ֆինները» (Finnen), սիբիրեայի թափառականները, հիւսիսային Ամերիկայի հնդի- ցեղերը գիր ունէին»։[2])

Սակայն այս առարկութիւնները ծանուակշիռ. հիմք չունին մեր յառաջ բերած համակարգութեան — սիստեմայի դէմ. միթէ տարօրինակ մի երևոյթ է, որ հռովմայեցին իւր տառերը յունական այբուբենից փոխ առնելով՝ մի քանի տառերի անունները կամ ձևերը փոխէ. և եթէ նոյնն անում է յոյնը Փիւնիկեան տառերը վերցնելիս և վրացին՝ Հայոց տառերն օրինակելիս, դարձեալ զարմանալի չէ և մեր կարծիքով նոյն իսկ բնական է։ Իւրաքանչիւր ազգ նոյն իսկ տասնեակ դարեր առաջ ունեցել է և ունի ինքնաճանաչութիւն և մինչև իսկ եսականութեան զգացումն, որ յաճախ յերևան է գալիս այս և այն դէպքում, ուստի և հասկանալի է, որ հռովմայեցին յունաց տառերը վերցնելով՝ իւր արժանապատւութեան զգացումը բաւականացնելու համար՝ մի քանի փոփոխութիւններ է մտցնում նորա մէջ։ Յայտնի է, որ ռուսաց այժմեան այբուբենն այլ ևս «Կիրիլեան» գիրը չէ — Կիրիլ 855 թ. կազմակերպեց սլաւօնական այբուբենը քսանու չորս (24) յունական տառերի վրայ աւելացնելով տասնուչորս (14) հին սլաւօնական տառեր — և Մեծն Պետրոսի ժամանակից մօտեցրած է լատինականին, բայց միթէ մի քանի տառերի գո-ութիւնն — որոնք ո՛չ յունականին և ոչ ևս լատինականին են նման — իրաւունք կը տայ մեզ ասել՝ թէ ռուսաց այբուբենը յունականից չէ վերցրած կամ թէ լատինականին չէ նմանեցրած։ Այսպիսի օրինակներ շատ կարելի է յառաջ բերել, սակայն խնդիրը պարզ է։

Ֆաուլմանի երկրորդ առարկութիւնը թէ՝ անկարելի է

---

[2]) *Տես.* Faulmann նոյն էջ 7։

յոնները գիր չ'ունենային, ամենևին չէ ոչնչացնում այն
ողութիւնը, որ յոյներն իւրեանց այբուբենը փիւնիկեցիներից
վերցրել. կարող էր պատահել որ յոյներն արդէն գիր ու-
ին, բայց դոքա այնչափ յարմար չէին, որչափ իւրեանց ծա-
թ փիւնիկեանն, ուստի նոյնը փոխ առան զանազան փո-
խութիւներով և յաւելուածներով։ Սակայն ցայժմ ոչ մի
ձանագրութիւն չէ գտանուել յունարէն լեզուով, որ գրուած
նէր այլ տառերով, քան փիւնիկեան։

Հետաքրքիր է և ուսումնասիրութեան արժանի նոյնպէս
ն խնդիրը՝ թէ արդեօք տառի հնչիւնը, ձևը և անունն ի՞նչ
րաբերութեան մէջ են միմեանց հետ։ Թառլման գրի զար-
ցման սիստեմը հիմնում է այդ յարաբերութեանց վերայ.
կայն այդ ուղղութիւնը դեռ ևս մշակուած չէ և շատ դը-
ւարութիւններ է յառաջացնում, նա մանաւանդ որ տա-
րի անունները բառարանների և լեզուի միջից անյայտա-
 են։ 3)

Ցայժմ տիրող ու մեր հետևած համակարգութիւնը—սխ-
ման—հիմնւում է տառերի ձևերի նմանութեանց վերայ. այս
տեմայով առաջ կերթանք նաև հայոց այբուբենի մասին
սելիս։

Փիւնիկեցի՞ք գտան տառերով գրելու եղանակը թէ այլք,
դեցին դոքա պատկերագրից թէ ինքնուրոյն յառաջացան.
նոյն է. տառը մի աշխարհական զօրութիւն և ոյժ ստա-
 և գրաւեց մտաւոր աշխարհը։ Փառաւոր և պատկերա-
ոդ տաճարներն, որ մի անգամ խօսում էին մարդոց հետ,
հասկանալի հանելուկներ դարձան երկար ժամանակ. այն
արտ և բարձրաբերձ լեռանց վերայ գտանուող արձանա-

3) Եբրայական լեզուն թէև ունի «ալափ», «էլէփ», «ալուփ»
ղափարները, սակայն «ալէփ» գաղափարն անյայտացել է կեն-
նի լեզուից և մնացել իբր «Ա» տառի անուն։ Տես. Faul-
mann նոյն եջ 124.

գրութիւնները հմայութեանց տեղ էին ընդունում. այն ինչ այբուբենի միջնորդութեամբ պահպանուեցաւ այն ամենն, ինչ որ մարդկային հանճարը՝ բարձր, վեհ և պահպանելու արժանի գաղափարներ էր յղացել։ Ամբողջ Արևմուտքի զարգացած մարդկութեան համար տառը դարցել է մտքի մի ձևը, մի զօրութիւն, այո՛ ամենամեծ զօրութիւնն աշխարհում։

Եւրոպայում զանազան փորձեր են եղել և լինում են, բացի այդ պատմական տառերից՝ նոր տեսակ տառեր ստեղծել, մեքենայական գործիքներին յարմարեցնելու համար—ինչպէս օրինակի համար հեռագրական նշանները—և կամ թէ գրչին այնպիսի յատկութիւն տալու համար, որ շտապով արտասանուած խօսքերն արագութեամբ գրէ և ետ չը մնայ խօսողից. այս վերջին ձևը կոչւում է *սղագրութիւն*— „Stenographie“, և բաւականին տարածուած է այժմ Եւրոպայում։ Թէև իւրաքանչիւր լեզու ունի իւր առանձին սղագրութիւնն, ինչպէս որ իւր առանձին տառերը, սակայն միևնոյն լեզուի սղագրութիւնն ունի շատ և միմեանցից տարբեր սիստեմաներ, այնպէս որ մէկ սիստեմայի հետևողը չի կարող կարդալ—կամ թէ մեծ դժուարութեամբ կը կարդայ—մի այլ սիստեմայով գրուած սղագրութիւն։ Եւ սղագրութեան սիստեմաներն այնչափ շատ են, որ համարեա՛ թէ գերազանցում են պատմական այբուբենների տեսակների թուին—աւելի քան 260—։ Թէև այդ սիստեմաները մեծ մասամբ միմեանց հետևողութեամբ են յառաջացել, սակայն դոցա տարբերութիւնն ոգեկան աշխատանքի արդիւնք է և յառաջանում է գրի էութեան այլ տեսակէտով ըմբռնելուց։

Գրի լեզուն հետզհետէ մօտենում է մի *միջազգային ընդհանրութեան գրի* իդէալին. որովհետև նա այլ ևս մաքուր հնչիւնագիր չէ։ Մենք կարող ենք՝ թուանշաններն և առհասարակ ալգէբրայական, մաթեմատիկական և քիմիական նշանները, երաժշտական ձայնագրերն և այլն իբր այդպիսի ընդհանրական գրի մասերը նկատել. սոքա մասամբ արդէն փ

ցական բնաւորութիւն ունին և համարեմ թէ միջազգա-
ն են։

Մարդկային մտաւոր ու հոգեկան աշխատանքն այլ և
շղթայւում տառերի հնայած ձևերով. դիւրութեամբ՝—
չպէս ելեքտրական կայծը հեռագրական գծերի միջով, ա-
գութեամբ—ինչպէս երկաթուղին մարդկային ձեռքի ար-
ւնքը հեռու երկիրներ է տեղափոխում—պէտք է գրուի մեր
ածման արդիւնքը թղթի վերայ եւ մարդկային զարգաց-
ն յառաջադիմութիւնը հսկայական քայլերով յառաջ
րէ։

Թէ երբ դադարեց Հայաստանում սեպագրի գործածու-
իւնն և երբ սկսեցին հայերը գրելու ժամանակ փոխանակ
եռագրի տառագիր գործ դնել—նոյնպէս անյայտ է մեր
ն մատենագրներից. սակայն այնուամենայնիւ մեր պատ-
րաններ մութ ակնարկութիւններից և վկայութիւններից
րզ երևում է, որ քրիստոնէութիւնից շատ առաջ մեր
խնիք արդէն գիտէին տառերով գրելու արուեստը։ Եւ
ս իրողութիւնը շատ բնական է թւում մեզ, որովհետև
ր դրացի ազգերը վաղուց արդէն գիտէին տառերով գրե-
եղանակը։ Այժմ խնդիրն այն է, թէ արդեօք հայերն
րեանց սեպհական այբուբենն ունէին, թէ գործ էին դը-
ւմ այլոց գիրը. այս հարցման պատասխանը թողնելով յա-
րդ հատուածներին, ասենք այժմ, որ քրիստոնէութիւնն
դունելուց յետոյ մեր նախնիք այլ ևս սեպհական գիր չու-
ին կամ թէ աւելի լաւ է ասել՝ իւրեանց սեպհական գրով
ին գրում։ Սակայն քանի որ հայ ազգն՝ ընդունելով քրիս-
նէութիւնը՝ մեծ զարկ էր ստացել նոր ուղղութեամբ յա-
ջ դիմելու և մտաւորապէս զարգանալու, ինքն ըստ ին-
ան հասկանալի է, որ օտար տառերի գործածութիւնը չէր
րող տեւողական լինել, մանաւանդ եթէ աչքի առաջ ու-
նանք և այն հանգամանքն, որ այդ տառերով կարդալու
գրելու արուեստը շատ քչերին էր մատչելի։

Չորրորդ դարու վերջին մասի հայ սերունդն արդէն զգում է սեպհական ազգային գրի կարեւորութիւնը՝ թէ կրօնական եւ թէ քաղաքական տեսակէտից։

Այս իրողութիւնն այնչափ մեծ նշանակութիւն ունեցաւ հայ ազգի ապագայի համար, որ անհրաժեշտ է մանրամասն նկարագրել։



# ԳԼՈՒԽ Ը.

## ՆԵՐՄՈՒԾՈՒՄՆ

*...րի ծագումը. զանազան ազգերի աւանդութիւններն այդ մասին եւ ...ցա նշանակութիւնը. հայոց գիրը. ասորոց եւ յունաց գիրը Հայաս...տանում. Ս. Սահակ եւ Մեսրոպ. Ս. Մեսրոպ իբրեւ քարոզիչ ...քրիստոնէական գաղափարի, Ս. Մեսրոպի դեսպանութեան յաջողու...թիւնը. հայոց լեզուի եւ գրականութեան ծաղկելը. համեմատութիւն ...-րդ դարու հայոց ուսումնասիրութեան եւ եւրոպական դասական ...-շրջութեան. Ս. գիրքն իբրեւ գլխաւոր շարժառիթ հայոց լեզուի եւ գրականութեան զարգացման:*



Մարդկային գաղափարների արտայայտութիւնը ձայների միջնորդութեամբ՝ Հոգեկան բարձրագոյն ընդունակութիւններից մէկն է. սակայն մարդկութիւնն իւր զարգացման աստիճանների վերայ չբաւականանալով այդ ընդունակութեամբ, աշխատել է իւր գաղափարների արտայայտութիւնը շօշափելի կացուցանել նաև իւր տեսանելեաց զգայարանին, աչքին։ ...Հա այդ ձգտումից և յառաջացել են հետզհետէ գրի զա...ազան տեսակները՝ ըստ յառաջադիմութեան ազգերի զար...գացման։

Սակայն գոյա սկզբնաւորութիւնը կապակցուելով ա
րի զարգացման ստորին աստիճանների հետ, մեծ մաս
անյայտ է մնացել ժամանակիս մանրակրկիտ հետազօ
թիւնից և դժուար է մինչև անգամ որոշ ասել՝ թէ ո
սկզբնաւորութեան պատճառն անհատներ, թէ ամբողջ
րունդներ են եղել։

Ազգերի պատմութեան մէջ գրի սկզբնաւորութիւնը
վորաբար վերագրում են աստուածներին կամ մարմն
անձնաւորութեանց, որոնք յարաբերութիւն ունէին աստ
ների հետ, որովհետև ըստ հնաւանդ հայեցողութեան՝
այգպիսի զարմանահրաշ ստեղծագործութիւն միմիայն
տուածներից կարելի էր սպասել։ Այսպէս օրինակ. Եգիպ
կան աւանդութիւնը գրի սկզբնաւորութիւնը վերագրու
«Տաութ»-ին [1]), որ միևնոյն ժամանակ լեզուի և խօսքի
տուածն էր, զարգացրեց աստեղագիտութեան, երաժշ
թեան արուեստները և գտաւ ձիթենին։ Բաբելական ա
դութիւնը գրի ստեղծագործութիւնն ընծայում է «Օաննէս
որ մի էակ էր՝ կէսը մարդ, կէսը ձուկ։ Ըստ չինակա
ւանդութեան՝ նոցա գիրը գտաւ «Փօհի»-ն. Մեքսիկացի
իւրեանց գրի գիւտը նուիրում են «Կետղալկօատլ» աս
ծուն։ Իրանական աւանդութիւնը գրի սկզբնաւորութ
վերագրում է «Տահմուրաթ» [2]) արքային, որ թէև գրի ս
ծողը չէ, սակայն այն անձնաւորութիւնն է ներկայացն
որին յաջողուեցաւ գիրը դևերի ձեռքից կորզել, որովհ
ըստ աւանդութեան՝ թէև բարի ոգիներն արդէն վա
գտել էին գիրը, սակայն դևերի ձեռքն ընկնելով գա
էր մնացել մինչև «Տահմուրաթ»-ի ժամանակը։ Յունաց

---

[1]) Tööt, կամ Töt, Toyt. յոյները գրում են Թօ
Տաուտ։ Տես. W. Wuttke: Geschichte der Schrift etc. հա
էջ 484։

[2]) «Տահմուրաթ» նշանակում է «մեծ աղուէս» տես. F
mann: Geschichte der Schrift. էջ 28։

գտնողը հանդիսանում է «Կադմ» կամ «Կադմոս» անունով մի անձն, որ Փիւնիկեայից է գալիս: Գոթական գրի գիւտը գերմանական աւանդութիւնը վերագրում է «Ուլֆիլաս»-ին [3], թէև յայտնի է, որ Ուլֆիլաս ո՛չ թէ նոր գտաւ գոթական տառերը, այլ հին գերմանական «Րունէ» [4]) կոչուած նշանները կատարելագործեց՝ պակասը լրացնելով և յունական այբուբենին մօտեցնելով:

Եթէ նոյն իսկ այս աւանդութիւններն ուշի ուշով դիտենք, կ'տեսնենք որ գրի ստեղծագործութիւնն անկարելի է մի որ և է անձնաւորութեան վերագրել. իսկ միւս կողմից՝ գրի անմիջապէս կատարելագործուած տեսքով յերևան գալն անկարելի է մինչև իսկ ենթադրել: Մարդկութիւնը պէտք է անցնէր իւր զարգացման աստիճանների մի ամբողջ շարք, մինչև որ նորան յաջողուէր մի հասարակ միջոց գտնել՝ իւր գաղափարները հետևեալ սերունդներին հաղորդելու: Եւ անդադար դէպի յառաջադիմութիւն ձգտող մարդկութիւնը շատ փորձերից յետոյ միայն կարողացաւ ձեռք բերել այն, ինչ որ այսօր մեզ համար սովորական և գործնական է: Մենք ճանաչում ենք գիրն իբր արդէն կատա-

[3]) Ուլֆիլասը ծնուեց 318 թ. 348-ին նա արդէն քրիստոնէական եկեղեցւոյ բարձր պաշտօնեայ էր: Արիոսի հետևողներից լինելով մասնակցեց 388 թ. Բիւզանդիոնի մեծ ժողովին և վախճանուեցաւ նոյն իսկ տարին: Նորա կենաց նպատակն ես սբ. Մեսրոպի նման քրիստոնէական վարդապետութեան քարոզելն էր. նորա գլխաւոր գործն եղաւ սբ. գրքի թարգմանութիւնը գոթական լեզուով: Ցայժմ որոշ յայտնի չէ, թէ նա արդեօք ամբո՞ղջ սբ. գիրքը, թէ միմիայն մի մասը թարգմանեց, որովհետև այդ թարգմանութիւնից մի քանի հատուածներ են մնացել միայն:

[4]) Հին գերմանական նշանագրերը կոչւում էին «Runen» 'րունա' նշանակում է գաղտնիք. այս գիրը յայտնի էր միայն եկեղեցական դասին և գործ էր դրւում առաւելապէս գուշակութիւնների համար, ուստի և հաւանականաբար ծագել է այդ անունը—գաղտնիք:

րեալ արուեստ, մեծ մասամբ անտեղեակ լինելով գործ զարգացման աստիճաններին։

Գրի սկզբնաւորութեան մասին մեր յառաջ բերած աւանդութիւնները թէև արտաքուստ միայն առասպել են ներկայացնում, սակայն եթէ մի փոքր խորը թափանցենք, կանգնենք որ այդ առասպելը ճշմարտութեան կ'վերածուի։ Վերցնենք օրինակ եգիպտացւոց և յունաց աւանդութիւնները։ Թէև մեզ առասպել է թւում, որ ըստ եգիպտական աւանդութեան՝ Տաւութ անունով մէկը գտնում է եգիպտական գիրը, լեզուն, աստեղագիտութիւնը, երաժշտութիւնը, մշակում է ձիթենին և այլն, սակայն այդ առասպելը կարող է պատահած իրողութեան ձևակերպուիլ, եթէ ընդունենք, որ «Տաւութ» անուան տակ ծածկուած է եգիպտական քրմական դասը։ Անկասկած է նոյնպէս, որ փիւնիկեցւոց գիրը Յունաստան փոխադրող «Կադմոսը» — որ նշանակում է «մարդ արևելքից», նոյնպէս և «Փիւնիկեցի» — ոչ այլ ինչ էր, եթէ ոչ մի նոր կրօն, որ Փիւնիկեայից Յունաստան տարածուեց, իւր հետ ի միասին տարածելով նոյնպէս փիւնիկեցւոց գիրը[5]։

Մասնաւորելով մեր խօսքը Հայոց գրի մասին, պէտք է ասենք, որ միևնոյն երևոյթը կրկնւում է և այստեղ։ Մեր պատմութեան մէջ անթափանցելի քողով է ծածկուած Հայոց գրի զարգացման ընթացքը. մեզ անյայտ է թէ՝ երբ սկսեցին հայերը սեպհական գիր գործածել և երբ դադարեցին նոյնը գործ դնելուց։ Միայն այնչափ յայտնի է մեզ, որ ունեցել ենք սեպհական ազգային նշանագիր և տառագիր, սակայն սոքա արդէն չորրորդ դարու վերջերին գործածութեան մէջ չ՛լինելով՝ բոլորովին մոռացուել էին։ Քրիստոնէութիւնը մուտ գոր-

5) Յունական Արշիպելագոսի կղզիների հետազօտութիւններից վերջին ժամանակներս ապացուցուած է, որ ամենահին ժամանակներում՝ յունաց և փիւնիկեցւոց մէջ յաճախակի յարաբերութիւն է տեղի ունեցել։ Կադմոսի մասին տես. Francois Lenormant: „Les premières Civilisation etc. Paris. 1874. հատ. II. մաս IV. „La Légende de Cadmus" էջ 313—437.

ելով Հայաստան իւր հետ ի միասին ներմուծեց նաև յունա-
ան և ասորական գիրը և հալածեց հայոց ազգային գիրը, որ
մուր կապերով շղթայուած էր կռապաշտութեան հետ։ Այլ
երպ ևս չէր կարող լինել, որովհետև համարեա մի պատմա-
ան օրէնք է դարձել, որ իւրաքանչիւր նոր կրօնի հետ ազ-
երն ընդունում են նաև նոր գիր. Փիւնիկեցւոց այբուբենը
արածուեց Յունաստանում Փիւնիկեայից բերուած մի կրօնի
ետ, իսլամութիւնը տարածեց իւր հետ ամենայն տեղ արա-
ական «Նեսխի» կոչուած գիրը, հռովմէական գիրը տարա-
ուեց արեւմտեան Եւրոպայում սբ. գրքի հետ ի միասին, ինչ-
էս նաև «դեւանագարի»[6]) և «պալի» կոչուած գրերը Հնդկաս-
անում։

Սակայն յունաց և ասորոց գրերի տիրապետութիւնն եր-
ար չէր կարող տևել Հայաստանում, որովհետև քրիստոնեայ
կեղեցւոյ եռանդուն պաշտօնեաները չ'բաւականանալով ազ-
ային գրի ոչնչացմամբ, ձգտում էին նաև ազգային լեզուն
ախտել՝ եկեղեցւոյ պաշտամունքը յունարէն և ասորերէն լե-
ուով կատարելով։[7]) Ազգն ըմբռնեց այդ դրութեան վտան-
աւոր լինելը և դորա առաջն առնելն իւր կենսական խըն-
իրը դարձնելով՝ ամեն ջանք թափեց վերականգնել իւր գի-

---

6) «Դեւանագարի» նշանակում է «աստուածների գիր» տես.
. Lenormant: Histoire Ancienne de l'Orient». Հատ. I. մասն բ.
ջ 384.

7) «Եւ ի վարդապետել երանելոյն Մեսրոպայ՝ ոչ փոքր կրէր
աանգս, քանզի ինքն էր ընթերցող և թարգմանիչ. և եթէ
յլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր, զանխուլ ի ժողո-
ւրդոցն լինէր՝ յաղագս ոչ լինելոյ թարգմանչի». տես. Մ. Խո-
րենացի. գիրք III գլխ. խէ. էջ 356։

«Քանզի պաշտօն եկեղեցւոյ եւ կարդացմունք գրոց ա-
որի ուսմամբ վարէին ի վանորայս և յեկեղեցիս Հայաստան
ողովրդոցս, յորմէ ոչինչ էին կարող լսել և օգտել ժողովուրդ-
ըն այսպիսի մեծ աշխարհի, յանկրութենէ լեզուին ասորոց»
ես. Ղազար Փարպեցի. էջ 36։

րը, լեզուն և գրականութիւնը։ Այս գաղափարով տոգորուած Հայ սերնդի մեծ ներկայացուցիչներն էին մեծ Պարթև Սահակը և հանճարեղ ու տաղանդաւոր Մեսրոպը։

Մի ժողովրդի կամ ազգի անհատների մէջ գտնւում են յաճախ այնպիսի իդէալական անձինք, որոնք իւրեանց անձնաւորութեամբ ներկայացնում են ամբողջ ազգը։ Եւ այսպիսի անհատներն իւրեանց ազգի յատկանիշ բնաւորութիւնը ներկայացնելով՝ մի որոշ ժամանակի յառաջադիմութեան և մտաւոր զարգացման իրականացնողներն են հանդիսանում։ Միւս կողմից ևս առանձին անհատների զարգացումը կախուած է այն ժողովրդի կամ ազգի զարգացման աստիճանից, որի մէջ նոքա ապրում են. այդ պատճառով իսկ սբ. Սահակի և Մեսրոպի մասին խօսելիս, երբէք չ'պէտք է մոռանալ ժամանակակից սերունդը։

Կարծես նախախնամութեան կարգադրութեամբ է լինում, որ չորրորդ դարու վերջին մասն ունենում է ոչ թէ մէկ, այլ երկու մեծ Հայ ներկայացուցիչներ, որոնք իւրեանց բարձր հանճարով և միահամուռ ուժով ի կատար ածեցին այն մեծ գործն, որ ժամանակակից սերնդի իդէալն էր։ Այդ հանճարները վերականգնելով և վերանորոգելով Հայոց մոռացուած գիրն և դորա միջնորդութեամբ տարածելով ամբողջ Հայ աշխարհում ազգային եկեղեցւոյ և դպրութեան հաւատարիմ մըշակներ, այնպիսի ծառայութիւն մատուցին Հայ ազգին այդ տագնապալից շրջանում, որ անզուգական է մեր պատմութեան մէջ։ Չպէտք է մոռանալ նոյնպէս, որ քրիստոնէական ուսման տարածման և ժողովրդականացման գաղափարը Հայոց գրի վերանորոգման ամենամեծ շարժառիթներից մէկն էր։ Սբ. Մեսրոպը թողնելով արքունի պալատը [8]), շրջում է Հայաստանի

---

[8]) Խորենացու՝ Մեծն Տրդատին նուիրած հետևեալ գեղեցիկ խօսքերն ամենայն իրաւամբ կարող ենք ասել նաև սբ. Մեսրոպի վերաբերութեամբ. «Ընկեցեալ զերկրաւոր սպասկս զհետ ըն-

բոլոր անկիւնները և քառասուն ու հինգ տարի շարունակ քա-րոզում և աւանդում է քրիստոնէութեան հետ ի միասին նաև ազգային գաղափարը. ազգային եկեղեցւոյ հետ հաստատում է ազգային ներքին կապը, բանում է ամեն տեղ դպրոցներ, կարճ ժամանակամիջոցում պատրաստում է աշակերտներ և նոցա յանձ-նում իւր սկսած մեծ գործի շարունակութիւնը։

Թէև հայ աշխարհը դեռ ևս չորս դար առաջ էր ըն-դունել իւր անդրանիկ քրիստոնեայ Առաքեալներին և մի դար առաջ ընդունել խսկապէս քրիստոնէական վարդապետութիւնը, սակայն սբ. Մեսրոպը հանդիսանում է ոչ թէ միայն իբրև մի որ Առաքեալ քրիստոնէական եկեղեցւոյ, այլ նաև իբրև հա-ւազատ զաւակ Հայաստանի։ Նորան յաջողուեց վերականգնել ազգայնութեան գաղափարը, որ ճնշուել էր քրիստոնէական վարդապետութեան ազդեցութիւնից. Նա կարողացաւ քրիս-տոնէական գաղափարը կապակցել մայրենի գրի և լեզուի հետ, րախուսուելով իւր մայրենի երկրի՝ թէ աշխարհական և թէ եկեղեցական պետերից—կաթողիկոսից և թագաւորից։ Մայ-րենի գրի և լեզուի ամբողջ Հայաստանում տարածուելուն մե-ծապէս նպաստեց սբ. Մեսրոպի և Վարդանի դեսպանութեան յաջողութիւնը Բիւզանդիոնում։ Այդ յաջողութիւնը պէտք է կատուի իբրև մեր պատմութեան ամենանշանաւոր դէպքե-րից մէկը. Եթէ սբ. Մեսրոպին արգիլուէր յունաց բաժնի Հայ-աստանում ևս տարածելու հայկական դպրութիւնը, հասկա-նալի է թէ այդպիսով առաջացած մեծ պակասումը որչափ նասակար պէտք է լինէր նոր սկսուած գործի համար։ Այդ դէպքում շատ կասկածելի կլինէր ազգային եկեղեցւոյ և դպր-ութեան միութեան վերականգնելը։ Սակայն սբ. Մեսրոպ իւր արձր հանճարով ոչ թէ միայն յաջողեց իւր դեսպանութեան պատակին հասնել, այլև բիւզանդիոնի կայսեր ներկայանա-

---

անայր երկնաւորին». տես. Մ. Խորենացի գիրք II. գլխ. ջը-ը 272.

լով, իւր սպասածից էլ աւելի առաջ։ [9])

Հայ ազգը սկզբում ընդունելով Քրիստոնէութիւնը, ոչ թէ կորցրեց միայն իւր հին կրօնը, այլ նաև նորա ազգայնութեան զարգացման ուղին խանգարուեց. ազգային բանաստեղծութիւնն և ամհասարակ գրականութիւնը սերտ կերպով շղթայուած էին կրօնի հետ և ահա այդ իսկ պատճառով նոր եկեղեցւոյ պաշտօնեաններն ամեն ճիգ թափեցին դոցա հետքը ջնջելու, սատանայական ներկայացնելու և տարածուելն արգելելու։ Եւ որպէս զի այդ խիստ զգալի չ'լինի ժողովրդի համար, նոքա հների տեղ նոր և քրիստոնէական գաղափարներ պարունակող երգեր տարածեցին ժողովրդի մէջ։ Այս շատ շուտ յաջողուեց և հինը, ազգայինը անյայտացաւ, որովհետև մեր եկեղեցական նոր պաշտօնեանները մեծ մասամբ օտարներ լինելով ոչինչ զգացումն չէին կարող ունենալ հայոց ազգայնութեան գաղափարի համար, ուստի և անխնայ ոչնչացրին այն ամեն ազգային հարստութիւնն, որ կապուած էր հայոց հին կրօնի հետ։ Այդ օտար պաշտօնեանները վանքեր և դպրոցներ հիմնելով Հայաստանում, թէև ազգի յառաջադիմութեան նպաստեցին, սակայն այդ ևս եղաւ ի վնաս ազգայնութեան գաղափարի, որովհետև այդ հիմնարկութիւններն օտար լինելով՝ դոցա տուած դաստիարակութիւնն ևս օտար էր և օտար լեզուն ևս ոչ թէ ժողովրդի մայրենի լեզուն էր, այլ յունարէն և ասորերէն։ [10])

Ահա այդ միջոցին սբ. Մեսրոպի վերանորոգած և կա-

---

[9]) «Յանդիման եղեալ մեծի Թագաւորին, առին (սբ. Մեսրոպ և Վարդան) զոր յունայինն եւ զոր ոչն յունայինն» տես Մ. Խորենացի. գիրք III, գլխ. ծէ. էջ 381.

[10]) Միևնոյն երևոյթը կրկնւում է նաև օտար ազգերի մօտ. այսպէս օրինակ գերմանական ցեղերն ընդունելով քրիստոնէութիւնը նոյնպէս օտար պաշտօնեաներից՝ կորցրին այն բոլորը, ինչ որ իւրեանց ազգայնութեան յատկանիշն էր։ Դոցա վանքերում և դպրոցներում ևս փոխանակ ազգային մայրենի լեզուի երկար դարեր շարունակ տիրում էր լատինականը։

արելագործած Հայոց գիրը պատճառ է լինում, որ Հայոց տաւոր զարգացումն ու յառաջադիմութիւնը կրկին ուղիղ ուղով ընթանայ և այդ շաւիղը շուտով առաջ է բերում Հայ րականութեան ոսկէ դարը։ Այն ազգը, որ մռայութեան ալով իւր սեպհական հին գիրը՝ մուրացկանութեամբ սովո-ում և գործ էր դնում յունաց, պարսից և ասորոց տառերը, արճ ժամանակից յետոյ տէր եղաւ մարդկային մտքի ամենա-շանաւոր արտադրութեան, սբ. գրքի գեղեցիկ և նշանաւոր թարգմանութեան, որ շատ Եւրոպացի գիտնականների[11]) ասե-ով ամենաճիշտն է։ Թէ որչափ ընդունելութիւն գտաւ սբ. Մեսրոպի գործը Հայ ժողովրդի մէջ, կարելի է պարզ տեսնել յործին մօտիկ ծանօթ Հայ պատմագիրների խօսքերից։ «Ամե-այն անձն, ասում է Ղազար Փարպեցին, յորդորեալ փափա-քէր յուսումն հայերէն գիտութեան, որպէս ի խաւարէ՝ յասորի տանջանացն զերծեալք ի լոյս խնդային»։[12]) Ամբողջ ազգը ոգևորուած էր և երջանիկ էր զգում իւրեան՝ լսելով եկեղեց-ւոյ բեմից և դասից իւր մայրենի բարբառի հնչիւնները. Յայնմ ժամանակի, ասում է Կորիւն Սքանչելին երանելի և անձկալի աշխարհս Հայոց անպայման սքանչելի լինէր. յո-ում անկարծ ուրեմն օրէնսուսոյց Մովսէս՝ մարգարէական գա-ուն, և յառաջադէմն Պօղոս բովանդակ առաքելական գըն-դովն, Հանդերձ աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի իանգամայն եկեալ հասեալ ի ձեռն երկուց հաւասարելոցն՝ այաբարբառք հայերէնախօսք գտան։ Անդ էր այնուհետև սըր-տալիր ուրախութիւն և ակնավայել տեսիլ հայելւոյն»։[13])

---

[11]) Լակրոզ, Վիստոնեան եղբայրները, Կլաւդիոս Բուքանան և այլք։ Լակրոզ սբ. գրքի հայերէն թարգմանութիւնն անուանում է «թագուհի թարգմանութեանց» և ասում, որ այս թարգմանութեամբ կարելի է շատ տեղերում վերականգնել եօթանասնից բնագիրը։

[12]) Տես. Ղ. Փարպեցի. եջ 42—43.

[13]) Տես. Կորիւն Սքանչելի. եջ 12—13.

Հայոց լեզուի և դպրութեան հաստատման ժամանակին նուիրուած մեր «Սքանչելի» Կորիւնի այս գեղեցիկ խօսքերը ճշտիւ համապատասխանում են «Հուտտէնի» 14)—գերմանական կրօնական մեծ յեղափոխութեան ժամանակակցի և գործակցի—բացագանչութեան հետ. «Ո՜վ դար, ուսմունքը ծաղկում են, ոգիքն արթնանում, ապրելը զուարճութիւն է» 15)։

Ղ. Փարպեցին հրճուելով նկարագրում է. «. . . . Կարգեցան վաղվաղակի յանմհետէ դպրոցք հօտին ուսմանց, բազմացան դասք գրչաց ելևելս առնելով զմիմիամբք. զարդարեցան պաշտամունք սբ. եկեղեցւոյ... պայծառացան եկեղեցիք, շուք արին վկայարանք սրբոց, միշտ ծաղկելով ի նոսա ուխտ կտակարանաց ընծայիւք. հանապազաբուխ հոսէին վտակք յասողացն մեկնութեանց... լցաւ երկիրս ամենայն Հայոց գիտութեամբ տեառն... իբրև զջուրս բազումս որ ծածկեն զծովս» 16)։

Այն ազգը, որ Աստուծոյ տաճարում եկեղեցւոյ պաշտօնեաներից պէտք է լսէր յունարէն կամ ասորի լեզուով արտասանած «Հայր-մերը», այժմ իւր ձեռքն ունէր յունական ամենաերևելի փիլիսոփաների հեղինակութեանց թարգմանութիւնը. ամեն ոք աշխատում էր մայրենի լեզուն ուսանել և ապա յունական իմաստութեան արդիւնքը հայերէնի վերածել. բազմաթիւ երիտասարդներ դիմում էին Յունաստան, Եգիպտոս և գիտութեան այլ կենդրոններ՝ իւրեանց ուսման ծարաւը յագեցնելու և հայրենեաց յառաջադիմութեան նպաստամացոյց լինելու։

---

14) Ուլրիխ ֆօն Հուտտէն ծնուեց 1488 թ. և մեռաւ 1523-ին։ Այս շնորհալի գերմանական բանաստեղծը 1517 թ. Աուգսբուրգ քաղաքում դափնեայ պսակ ընդունեց Մաքսիմիլեան կայսեր ձեռքից։

15) Տես. Leopold V. Ranke: „deutsche Geschichte im Zeitalter der reformation". հատ. I. եջ 284.

16) Տես. Ղ. Փարպեցի. եջ 47—48։

Հինգերորդ դարու հայ սերնդի ձգտումը՝ կատարելապէս ստանել յունաց և ասորոց լեզուներն ու գրականութիւնը, որպէս զի դոցա օգնութեամբ ծաղկեցնեն մայրենի լեզուն ու գրականութիւնը, կարելի է համեմատել այն շարժողութեան հետ, որ տեղի ունեցաւ *Իտալիայում* XIV-րդ և *Գերմանիայում* XV-րդ դարերում։ XIV-րդ դարում Իտալիայում ուսուցման գլխաւոր նպատակը համարւում էր դասական զարգացումը. յունական և լատինական դասական գրուածները միակ ուսումնասիրութեան աղբիւրներն էին։ Միջին դարերում գերմանական և ռոմանական ազգերը, չնայելով իւրաքանչիւրին յատուկ առանձնայատկութեանց , ունէին մի ընդհանուր եւրոպական բնաւորութիւն. դոքա բոլորը միատեղ կազմում էին մի աշխարհա-եկեղեցական (պապական) պետութիւն։ Եկեղեցւոյ կապը միացրել էր բոլորին, ուստի և թէ պապը և թէ կայսրն ու այլ արքաները *լատինական* լեզուն համարում էին իբրև մի ընդհանուր-եւրոպական, պետական և եկեղեցական լեզու։ Ամեն տեղ հոգևորականները խօսում և գրում էին այդ լեզուով. ամեն տեղ եկեղեցական պաշտամունքը կատարւում էր լատինական լեզուով։ Տասնևչորսերորդ դարուց սկսւում է *յունաց* դասական գրուածների ուսումնասիրութիւնը և դորա հետ ի միասին մայրենի լեզուով գրելու ձգտումը։ Ինչպէս արդէն յիշեցինք, առաջին փորձերը լինում են Իտալիայում, ուր ուսումնասիրելով դասական գրուածներն աշխատում են ամենայն կերպ նոցա նըմանուիլ։ *Դանտէ* [17]), *Բօկաչիօ* [18]), *Պետրարկայ* [19]), Հարթեցին այդ շաւիղը. սոցա մէջ արթնացաւ առաջին անգամ

---

[17]) Դանտէ 1265—1321. որի «Աստուածային կատակերգութեան» մէջ ամփոփուած է միջին դարերի ամբողջ գիտութեանց պաշարը։

[18]) Բօկաչիօ 1313—1375.

[19]) Պետրարկայ 1304—1374։

ոգևորուած սէր դէպի հնութիւնը և դասական գեղեցկութիւնը. այդ երեք հանճարները զարգացրին մի գեղեցիկ բանաստեղծական ու վիպական նոր մայրենի լեզու և գրականութիւն։ Իտալիայի բռնած այս դասական ուղղութիւնը մեծ ազդեցութիւն ունեցաւ 15 և 16-րդ դարու Գերմանիայի զարգացման յառաջադիմութեան վերայ. սակայն դասականի ուսումնասիրութիւնը Գերմանիայում յառաջ ընթացաւ բոլորովին այլ հոգւով ներշնչուած, նա մանաւանդ 16-րդ դարում։ Իտալիայի գեղարուեստ խնկարկող սերունդը սքանչանում էր դասական մատենագիրների գեղեցկութեամբ և դոցա հետևել ճգնում. յունական դիւցաբանութիւնն աւելի էր հիացնում նորանց, քան քրիստոնէական վարդապետութիւնը։ Գերմանիան հետևելով դասական ուղղութեան, ուսումնասիրում է յունարէնն և առաւել հետևում քրիստոնէական վարդապետութեան։ Սբ. գրոց գերմաներէն թարգմանութիւնն այդ ուղղութեան նշանաւոր արգասիքներից մէկն է։ Սբ. գրոց թարգմանութիւնն է, որ առիթ է լինում գերմանացւոց մայրենի լեզուի հետզհետէ մշակման և գրականութեան ծագման։

Հինգերորդ դարու հայ սերնդի բռնած ուղղութիւնը ճշտիւ համապատասխանում է Գերմանիայի դասական ուղղութեան. հայերէն դպրութիւնն ուսանում էին սբ. գիրքն և եկեղեցական պաշտամունքը հասկանալու համար. յունարէն դպրութիւնն ուսանում էին հայերէն ճիշտ թարգմանութեանց համար։ Հայերէն դպրութիւնն այն հսկայաքայլ յառաջադիմութիւնը չէր անի հինգերորդ դարում, եթէ անմիջապէս սբ. գիրքը չը թարգմանուէր և դպրութեան նպատակը գլխաւորապէս եկեղեցական հեղինակութեանց ծանօթութիւնը չ՚լինէր։ Խօսք չկայ, որ այդ նպատակին հասնելուց յետոյ՝ հայ դպրութիւնը կանգ չառաւ և սահմաններն առաւել ընդարձակելով իւր մէջ առաւ նաև պատմական, փիլիսոփայական և գիտութեանց այլ ճիւղերը։

Սբ. Մեսրոպի վերանորոգած այբուբենի շնորհիւ կարճ ժամանակամիջոցում ծաղկեց մի գրականական լեզու, որ իւր արուեստական կատարելագործութեամբ, հնչմամբ, ուժով և առաձգականութեամբ գերազանցում է օտար բազմաթիւ մըշակուած լեզուներին։ Յաջողութեան մեծ մասը հիմնւում է այն հանգամանքի վերայ, որ մեր թարգմանիչները ձեռնարկեցին մշակել ո՛չ թէ մի որև է հասարակ գաւառական բարբառ, այլ արարատեան ընդարձակ երկրի բարբառը, որ վաղուց արդէն ընդունուել էր իբրև պալատական և իշխանական շրջանների մէջ գործադրուող լեզու։ Այս պատճառով անկասկած այդ արքունի կամ ոստանիկ լեզուն ժողովրդականութիւն ու յարգանք պէտք է ունենար։ Բացի այդ նպաստաւոր հանգամանքից, ոստանիկ լեզուն պէտք է եղած լինէր և հայոց կռապաշտական ժամանակի գրական լեզուն. և այս շատ բնական է, որովհետև դժուար է ենթադրել, որ արքունիքն և հոգևորականութիւնը, որ այնպիսի սերտ կապերով շղթայուած էին միմեանց հետ, տարբեր լեզու գործադրէին իւրեանց բանաւոր և գրաւոր յարաբերութեանց մէջ։

Քրիստոնէութիւնը մուտ գործելով Հայաստան՝ իւր գոյութեան կռուի մէջ ոչնչացրեց մեր կռապաշտական գիրն ու գրականութիւնը և մոցրեց ասորէն ու յունարէն լեզուն։ Այստեղից առաջացաւ այն անբնական դրութիւնը, որի դէմ մաքառեց չորրորդ դարու վերջին և հինգերորդ դարու առաջին մասի հայ սերունդը և յաջողութիւն ունեցաւ։ Անկարելի է մինչ իսկ ենթադրել, որ մի այնպիսի կարճ ժամանակամիջոցում մի՛ բոլորովին նոր գրականական լեզու ստեղծուէր և կատարելութեան այդ աստիճանին հասնէր. ո՛չ մի օտար ազգի գրականութեան մէջ ևս չկայ այդպիսի օրինակ։

Հինգերորդ դարու հայոց ազգային-կրօնական և գրականական այս մեծ լեզուափոխութիւնը զարմանալի զուգադիպութեամբ համապատասխանում է գերմանական-կրօնական մեծ լեզուափոխութեան ժամանակի դէպքերին։ Ինչպէս որ մեր վե-

բանորոգիչներն ազգային նոր գրականութեան յառաջացման համար ընտրում են արքունի լեզուն, այդ լեզուով թարգմանում սբ. գիրքը և այդ լեզուն աւանդում նոր դպրոցներում, այնպէս և գերմանական մեծ յեղափոխիչ դոկտոր Մարտինը սբ. գրքի թարգմանութեան համար ընտրում է սաքսոնական արքունի լեզուն, որ ընդունուած էր գերմանական բոլոր իշխանական պալատներում, և դպրոցներում այդ լեզուով էին ուսուցանում։ Մարտին Լուտէրի գործակից *Մելանխտոնը* կոչւում է «*Ուսուցանող գերմանիայի*» —„Praeceptor germaniae" և սբ. Մեսրոպը նոյնպէս իւր ժամանակակիցներից կոչւում է «*Ուսուցանող Հայաստանի*»։

---

Հայոց այբուբենի վերանորոգման հետևանքներն այսպէս համառօտ նկարագրելուց յետոյ, անցնենք նոյն իսկ այդ այբուբենի ծագման և կատարելագործման խնդրին։ Սոյն խնդիրն ուսումնասիրելու համար մենք ունինք երեք նշանաւոր աղբիւր նոյն իսկ հինգերորդ դարուց. ա. *Կորիւն Սքանչելու* գրած սբ. Մեսրոպի վարքագրութիւնը. բ. *Խորենացու* Հայոց պատմութիւնը և գ. *Ղազար Փարպեցու* Հայոց պատմութիւնը։ Կորիւն Սքանչելին սբ. Մեսրոպի աշակերտն ու գործակիցն էր և նկարագրում է իւր աչքով տեսածը և ականջով լսածը։ [20]) Հայկական Հէրոդոտ'ը, [21]) Խորենացին, նոյնպէս ժա-

---

[20]) . . . Ոչ եթէ ի հին համբաւուց (զրուցաց) տեղեկացեալ և ժամանագրեալ զայս (զսա) կարգեցաք, այլ որոց մեր (միզէն) իսկ ականատես եղեալ կերպարանացն և առընթերակաց հոգևորական գործոց (որբոցն) և լսող(ք) շնորհապատում վարդապետութեանն, և նոցին (սրբոց վարդապետաց) արբանեակ ըստ (նոցին) աւետարանական հրամանացն։ Տես. Կորիւն էջ 28.

[21]) Այս անունը տուել է Խորենացուն Վ. Լանգլուան. տես. V. Langlois: Collection des Historient. etc. հատ. I էջ XV.

նակակից է սբ. Մեսրոպի գործողութեանց և իւրեան նորա
ակերտն է անուանում, սակայն արտասահմանից վերադառ-
լով այլ ևս կենդանի չէ գտնում նորան։ Մի փոքր յետոյ է
ում Ղ. Փարպեցին իւր «պատմութիւնը», սակայն նա ևս
. Մեսրոպի անմիջական աշակերտ Աղանի մօտ էր ուսել և
ւսուում է Մեսրոպի կրտսեր աշակերտների շարքը։

Այս ժամանակագրական կարգով ևս յառաջ ենք բերում
է Երեք մատենագիրների վկայութիւնները։



## ԳԼՈՒԽ Թ.

### ԿՈՐԻՒՆ [1]) ՍՔԱՆՉԵԼՈՒ ՊԱՏՄԱԾԻ «ԳՐԻ ԳԻՒՏ»-Ի ՄԱՍԻՆ



Տարօն գաւառի Հացեկաց գիւղից էր Մաշտոցը՝ Վարդան անունով մի մարդու որդին. մանկութեան հասակում սովորելով յունարէն լեզուն, գալիս է Արշակունեաց պալատը և յանձն է առնում մի պաշտօն արքունի դիւանում. այդ ժամանակ Հայոց աշխարհի հազարապետն էր Առաւանը։ Մաշտոցը տեղեկանալով և հմտանալով աշխարհական կար-

1) Կորիւն Վարդապետը, որ վերջը ձեռնադրուեց եպիսկոպոս և վրաց առաջնորդն էր, գրեց իւր «պատմութիւն վարուց և մահուան սրբոյն Մեսրոպայ» աշխատութիւնը Յովսէփ կաթողիկոսի և իւր այլ ընկերակիցների առաջարկութեամբ՝ ինչպէս որ գրում է ինքն իւր յառաջաբանի մէջ «Նա մինչ դեռ անդէն ի խորհրդանոցի մտացն, վասն յուշ արկանելոյ միաբանագործ հոգացոյ. եկեալ հասանէր առ իս հրաման առն միոյ պատուականի Յովսէփ կոչեցելոյ աշակերտի առն այնորիկ (Մեսրոպի). և ընդ նմին այլոց ևս քաջալերութիւն աշակերտակցաց մերոյն վարդապետութեան։ Ուստի և իմ մասնաւոր աշակերտութեամբ վիճակ առեալ թէպէտ և էի կրտսերագոյն և առաւելքան զկար մեր. գրաւեալ

ներին, իւր զինուորական արուեստով սիրելի է դառնում զօրավարներին. սակայն միևնոյն ժամանակ նա զբաղւում է կրօնական գրքերի ընթերցանութեամբ և շուտով բոլորովին նուիրուելով Աստուծոյ խօսքին, թողնում է արքունի ծառայութիւնը [2]:

---

անաչառ հրամանին հասելոց, փութանակի և առանց յապաղելոյ զառաջի եդեալն մատենագրել: Տես Կորիւն էջ 1—2:

Ցաւալի է, որ Կորիւնի այս նշանաւոր աշխատութիւնը ցայժմ չէ հրատարակուած համեմատական մեթոդով. Վենետիկցոց 2 հրատարակութիւնները տարբեր են միմեանցից. առաջինը հրատարակուած է 1833 թ. Մամբրէի և Դաւիթ Անյաղթի հետ ի միասին, այս հրատարակութիւնը տեղի է ունեցել երկու նօտրգիր և անթուական ձեռագիրներից: Երկրորդը հրատարակուած է «Սոփերք Հայկականք»-ի շարքում 1854 թուին: Վերջին հրատարակութիւնը շատ համառօտ պատմութիւն է, համեմատելով առաջինի հետ: Մեզ անյայտ լինելով այդ ձեռագիրների հնութիւնը և որակութիւնը, չենք կարող ասել՝ թէ ո՞րն է դոցանից վաւերականը և իսկականը, սակայն առաւելութիւնը բնականաբար ընդարձակին ենք տալիս, համառօտածը եղծուած համարելով՝ թէև համառօտի լեզուն և ոճը աւելի ընտիր է, քան ընդարձակինը: Կորիւնի այս աշխատութիւնը հայերէնից—գերմաներէն թարգմանել է և ծանօթութիւններով հրատարակել աստուածաբանութեան պրոֆ. դր. Վելտէ 1841 թուին. „Goriun's Lebensbeschreibung des hl. Mesrop, aus dem armenischen etc. übersetzt . . von dr. Welte. իսկ պրոֆ. Էմինի ֆրանսերէն թարգմանութիւնը լոյս տեսաւ Լանգլուայի „Collection“-ի մէջ. հատ. II.

Կորիւնը իւր ընտիր ոճի և թարգմանութեանց համար արդէն մեր հին մատենագիրներից կոչուել է «Սքանչելի», իսկ նոր եւրոպացի մատենագիրներից մէկը—Նոյմանը—Կորիւնին անուանում է հայկական գրականութեան Քսենոփոն. տես. Neumann: Memoire sur la vie et les ouvragee de David etc. տպուած է N. Journal Asiatique t. III. (1829) p. 55.

[2]) «Առն զոր ի նախակարգ բանիս նշանակեմք, վասն որոյ և փոյթ արարեալ մեր պատմելոյ, էր Մաշթոց անուն ի տարօնական գաւառէն, ի Հացեկաց գեղջէ, որդի առն երանելոյ Վար-

Այնուհետև նա միայնակեաց կեանք է վարում և իւր մարմինը ենթարկում զանազան տեսակ չարչարանքի [3]. յետոյ վերցնելով իւր աշակերտներին գնում է Գողթան և քարոզում սբ. աւետարանի խօսքը՝ երկրի իշխանի օժանդակութեամբ [4]: Սակայն այս յաջողութիւնը բաւականութիւն չէ

դան կոչեցելոյ: Ի մանկութեան տիոց վարժեալ հելլենական դպրութեամբն, եկեալ հասեալ ի գաւառն արշակունեաց թագաւորաց Հայոց մեծաց, կացեալ յարքունական դիւանին, լինել սպասաւոր արքայատուր հրամանին առ հազարապետութեամբն աշխարհիս Հայոց Առաւանայ ուրումն: Տեղեկացեալ և հմուտ եղեալ աշխարհակաց կարգաց, ցանկալի եղեալ զինուորական առուեստիւն իւրոց զօրականացն, և անդէն ուշ եդեալ փութով ընթերցուածոց աստուածեղէն գրոց. որով առ ժամայն լուսաւորեալ և թեւամուխ միջամուխ յաստուածատուր հրամանացն հանգամանս, և ամենայն պատրաստութեամբ զանձն զարդարեալ, հարկանէր զիշխանացն սպասաւորութիւնսն»: Տես. Մատենագրութիւնք Նախնեաց. Կորիւն, Մամբրէ, Դաւիթ. Վենետիկ 1833 թ. էջ 6—7:

[3]) «Եւ յետ այնորիկ ըստ աւետարանական չափուցն՝ ի ծառայութեան Աստուծոյ մարդասիրին դարձեալ, մերկանայր այնուհետև զիշխանակիր ցանկութիւնսն. և առեալ զխաչն պարծանաց, ելանէր զկնի ամենակեցոյց խաչելոյն: Եւ հաճեալ հրամանացն ի խաչակիր գունդն Քրիստոսի խառնէր, և անդէն վաղվաղակի ի միայնակեցական կարգ մտանէր. բազում և ազգի ազգի վշտակեցութիւն ըստ աւետարանին կրէր ամենայն իրաց: Ամենայն կրթութեամբ հոգևորացն զանձն տուեալ միաւորութեամբ, լեռնակեցութեան, քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակութեանց, արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց: Եւ բազում անգամ զհեշտական հանգիստ գիշերոյն և զհարկ քնոյ յոտնաւոր տքնութեան ի թօթափել ական վճարէր: Եւ զայս ամենայն առնէր ոչ սակաւ ժամանակս, և գտեալ ևս զօմանս յինքն յարեցուցանէր աշակերտեալ նմին սովորական աւետարանութեան. և այնպէս ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց՝ կամայական քաջութեամբ տարեալ և պայծառացեալ, ծանօթական և հաճոյ լինէր Աստուծոյ և մարդկանն»: Տես. Կորիւն, էջ 7:

[4]) «Առեալ այնուհետև երանելւոյն զհաւատացեալս (զաշա-

աչխս նորան, նա տխուր հոգում միշտ մտածմանց մէջ է նում, որովհետև հայերէն գրի պակասութեան պատճառով, ատ անգամ դժուարանում է Աստուծոյ խօսքն աւանդել ւր աշակերտներին. վերջապէս նա գնում է սբ. Սահակ կաթողիկոսի մօտ և յայտնում նորան իւրեան զբաղեցնող խնդիրը [5]։ Ս. Սահակը յայտնում է, որ ինքն էլ մտածում է

---

երտեալն) իւր, գիմեալ իջանէր յանկարգ և յանդարձան տեղիս Գողթան։ Այլ և ընդ առաջ ելանէր նմա իշխանն Գողթան (Շամ-ւիթ) այր երկիւղած և աստուածասէր, ըստ աշակերտաց հաւատոցն Քրիստոսի։ Իսկ երանելոյն վաղվաղակի զաւետարանական արուեստն (զվարդապետական շնորհսն) ի մէջ առեալ, ձեռն արկանէր զգաւառովն (ուսուցանէր զընակիչս քաղաքին և գաւառին) հանդերձ միամիտ սատարութեամբ իշխանին. գերեալ զամենեսեան ի հայրենեաց աւանդելոց, և ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէն՝ ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր։ (Զի էր ինչ ի նոսա ի հեթանոսական սովորութեանցն, զորս դարձուցանէր ի գիտութիւն ճշմարտութեան, և զամենեսեան լուսաւորէր շնորհաց բանիւն»։ Տես. Կորիւն էջ 7։

[5]) «Եւ այնպէս տրտմական հոգովք պաշարեալ և թակարթապատեալ և անկեալ ի ծուփս խորհրդոց, եթէ որպիսի արդեօք ելս իրացն գտանիցէ։ Եւ իբրև աւուրս բազումս անդէն ի նմին գեգերէր, յարուցեալ այնուհետև հասանէր առ սուրբ կաթողիկոսն Հայոց մեծաց, որոյ անունն ճանաչէր Սահակ, զոր պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանեալ»։ Տես. Կորիւն էջ 8։

Ընդարձակ Կորիւնի այս հատուածը պարզ ցոյց է տալիս, որ բնագրից դուրս է թողուած այս տողերի նախընթաց կտորը. որովհետև հասկանալի չէ «եթէ որպիսի արդեօք ելս իրացն գտանիցէ»։ Համառօտ Կորիւնի այդ հատուածն աւելի որոշ է. «բայց զի ոչ էր գիր հայերէն լեզուիս՝ բազում պակասութիւն լինէր ճշմարտութեան աւանդիցն առ աշակերտեալսն. իսկ երանելի վարդապետն տարակուսեալ ի խորհուրդս իւր առ Աստուած ապաւինէր, որ կարողն է յամենայնի, ցուցանել զգիր հայ լեզուիս, որով նուազութիւն յառաւելութիւն գայցէ գրով։ Եւ յարուցեալ այնուհետև հասանէր առ սուրբն Սահակ հայրապետն Հայոց՝ յաղագս գրոց նշանագրաց. եգիտ զնա առաւել ևս փափագող այնմ»։

այդ խնդրի մասին և նոքա երկուսն ևս այնուհետև մտածում են Հայոց գիրը գտնելու միջոցների մասին [6]:

Երբ սոքա Վռամշապուհ Թագաւորին ևս իմաց են տալիս, որ զբաղուած են Հայոց այբուբենի խնդրով, արքան պատմում է, որ Դանիէլ անունով մի ասորի եպիսկոպոսի մօտ գտնուել է Հայոց լեզուի այբուբենի տառերը. սբ. Սահակ և Մեսրոպ լսելով այդ՝ խնդրում են Թագաւորին անմիջապէս մարդ ուղարկել Դանիէլի մօտ և բերել տալ այդ այբուբենը: Թագաւորն ուղարկում է Վահրիճ անունով մէկին—հրովարտակով—Հաբէլ քահանայի մօտ, որ Դանիէլ ասորի եպիսկոպոսի մերձաւորն էր [7]: Հաբէլը շտապում է

---

[6] «Եւ միանգամայն յօժարութեամբ գումարեալ հանդերձ աղօթիւք մեծովք առ Աստուած կանխէին, վասն ամենայն ազգաց Քրիստոսաբեր փրկութեան հասանելոյ. զայն առնէին աւուրս բազումս: Ապա ելանէր նոցա պարգևական յամենաբարին Աստուծոյ, ժողովել զաշխարհահոգ խորհուրդն երանելի միաբանելոցն, և զգիրս նշանագրոյ Հայաստան ազգին, հասանել բազում հարց փորձի և քննութեան զանձինս պարապեցուցեալ, և բազում աշխատութեանց համբերեալ, ազդ առնէին ապա և զկանխագոյն խնդրելին իւրեանց Թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ» Կորիւն էջ 8.

[7] «Յանյժամ պատմէր նոցա արքայն, վասն առն ուրումն ասորւոյ եպիսկոպոսի ազնուականի Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի: Եւ իբրև պատմեցաւ նոցա յարքայէ վասն գրելոյն ի Դանիէլէ, յօժարեցին զարքայ՝ փոյթ առնել վասն պիտոյիցն այնոցիկ: Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն հրովարտակօք առ այր մի երէց, որոյ անուն Հաբէլ կոչէին. որ էր մերձաւոր Դանիէլի ասորւոյ եպիսկոպոսի»: Տես. Կորիւն էջ 8:

Համառօտ Կորիւնի մէջ այս հատուածը բոլորովին այլ տեսակ է պատմուած, ուր Վռամշապուհը չէ տեղեկութիւն տալիս Դանիէլի մասին, այլ Մեսրոպը ինքն է պատահում նորան. «Եւ յետ այնորիկ ծանուցեալ լինէր ի Թագաւորէն Վռամշապհոյ, որ և նա այսմ նախանձայոյզ եղեալ, առաքէն զՄեսրոպ աշակերտօքն հանդերձ ի Միջագետս Ասորւոց: Եւ երթեալ նորա խուզէր ուր

նիէլի մօտ՝ նախ ինքն է սովորում նորանից նոր այբու-
նը և ապա ուղարկում է Հայոց Թագաւորին, Վռամշա-
ւՀի Թագաւորութեան հինգերորդ տարին։ Թագաւորը սբ.
Հակի և Մեսրոպի հետ ի միասին ստանալով Հաբէլից այ-
ւբենը ուրախանում են. այնուհետև սբ. Սահակը և Մես-
պը խնդրում են արքային, որ մանուկներ տայ իրանց՝ նոր
բուբենով ուսուցանելու և երբ շատերը սովորում են,
ւամշապուհը հրամայում է, որ ամեն տեղ այդ այբուբե-
վ ուսուցանեն։ Սբ. Մեսրոպը երկու տարի շարունակ սո-
րեցնում է այդ նորագիւտ այբուբենով և ստանում է վար-
պետի կոչումն [8])

Բայց տեսնում են, որ այդ տառերը բաւական չեն
յոց լեզուի վանկերն ու կապերն արտայայտելու համար,
մանաւանդ որ գոքա ուրիշ գրերից թաղուած և նորից
նուած էին [9])։

---

ւեք իմաստասիրաց համբաւէր գիտութիւն։ Եւ հանդիպեալ Դա-
էլի ումեմն եպիսկոպոսի Ասորւոց առաքինւոյ, որ ասաց նմա
ւցանել զնշանագիրս՝ որում ցանկայրն։ Եւ յետ բազում աշ-
տութեանց և քննութեանց և ուսմանց՝ անշահ մնացեալ. զի
բերէր զբառս և զբանս ալփաբետացն ըստ հայերէն լեզուին»։

8) «Իսկ Հաբէլին զայն լուեալ, փութանակի հասանէր առ
անիէլ», և նախ ինքն տեղեկանայր ի Դանիէլէ նշանագրոյն, և
պա առեալ ի նմանէ առաքէր առ արքայն յերկիրն Հայոց. ի
նգերորդի ամի թագաւորութեան նորա ի նա հասուցանէր։ Իսկ
րքային հանդերձ միաբան սրբովն Սահակաւ և Մաշթոցիւ՝ ըն-
ալեալ զնշանագիրսն ի Հաբելէն, ուրախ լինէին։ Ապա առեալ
անելի հոգաբարձուացն զյանկարծագիւտն, խնդրէին հայցէին
" յարքայէ մանկունս մատաղս, որով զնշանագիրսն մարթասցեն։
յորժամ բազումք ի նոցանէ տեղեկանային. ապա հրաման տայր
մենայն ուրեք նովին կրթել. որով և յաստիճան իսկ վարդապե-
ութեան գեղեցիկ երանելին հասանէր. և իբրև ամս երկու կար-
եալ զվարդապետութիւն իւր. և նովին նշանագրովք տանէր»։
ես. Կորիւն. էջ 9։

9) «Իսկ իբրև ի վերայ հասեալ թէ չեն բաւական նշանա-

Այնուհետև նոքա կրկին հոգացողութեամբ աշխատ
են մի ելք գտնել և վճռում են, որ նորից որոնեն.
Մեսրոպը մի խումբ աշակերտների հետ գնում է Աս
Եդեսիայ և Ամիդ քաղաքները, Վռամշապուհի հինգերորդ
տարին։ Սբ. Մեսրոպին սիրով ընդունում են Բաբիլա
Ակակիոս եպիսկոպոսները քաղաքի կղերի և իշխանների
ի միասին [11])։

---

գիրքն՝ ողջ ածել զսիւղոբայս և զկապս հայերէն լեզւոյն,
նաւանդ զի և նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թաղե
և յարուցեալք դիպեցան *)»։ Տես. Կորիւն. էջ 9.

[10]) Այս «հինգերորդ» տարին ակնյայտնի հակասում է
րիւնի մի փոքր առաջ պատմածի բովանդակութեանը. նա յիշ
է որ Դանիէլի այբուբենը Հայաստան բերին Վռամշապուհի
գաւորութեան «հինգերորդ» տարին, այնուհետև նոյն այբուբեն
«երկու» տարի սովորեցրին և ապա թէ գտան, որ անյարմա
և Մեսրոպ ճանապարհ ընկաւ դէպի Եդեսիայ, Վռամշապ
թագաւորութեան «հինգերորդ» տարին. պատմածի բովանդակ
թեան նայելով վերջին հինգերորդը պէտք է լինէր «եօթներո
Սակայն ցայժմ ամենքն էլ վերջին «ի հինգերորդ» ամին ու
են «ի տասն եւ հինգերորդ», առարկելով որ բառի առ
մասը թողուած է արտագրողների շնորհիւ։ Այս բացատրութ
գուցէ անհաւանական չ՚լինէր, եթէ Կորիւնի յաջորդ էջի վե
Մեսրոպի ձեռքով տառի գիւտի ժամանակը նշանակուած չ՚լ
«ի վեցերորդ» ամի Վռամշապհոյ։ Պատահական սխալ չենք
րող ընդունել նոյնպէս «ի վեցերորդը»։ Մեզ աւելի հաւան
է թւում արտագրողների արած մի այլ սխալ, որ եթէ ուղղ
այդ տարիները ճիշտ դուրս կգան. փոխանակ կարդալու «և
րև ամս երկու», պէտք է կարդալ «իբրև ամիս երկու»։

[11]) «Յետ այնորիկ դարձեալ կրկին անգամ ի նոյն հ

---

*) „Մանաւանդ զի և նշանագիրքն իսկ յայլոց դպրութե
թաղեալք եւ յարուցեալք դիպեցան“ խօսքերը պրօֆ. Վ
սխալ հերպով թարգմանել է այսպէս. „zumal da auch Buch
ben aus fremden frühern und spätern Schriften hinzugenom
waren“—մանաւանդ որ աւելացել էին հին և նոր օտար գ
ի տառեր“։

Այդտեղ սբ. Մեսրոպը հետը տարած հայ աշակերտներին երկու մասի է բաժանում. մէկ մասին պատուիրում է ուսանել ասորոց լեզուն և գրութիւնը, միւս մասին յունաց լեզուն և գրութիւնը [12]), Յետոյ ինքը գնում է Սամոսատ քաղաքը և նուիրուելով իւր սովորական աղօթքին ու ճգնութեան, երկար ժամանակ և համբերութեամբ աշխատում է իւր նպատակին հասնելու, այսինքն հայոց համար այբուբեն գտնելու և Աստուած պարգևում է նորան այդ: *Նա իւր սուրբ աջով մի նոր եւ սքանչելի ծնունդ է առաջ բերում՝* և այդ ծնունդն էր հայոց լեզուի այբուբենը։ Սբ. Մեսրոպը տեղն ու տեղը ձևակերպում է տառերը, նրանց անունները և դասաւորութիւնն ու վանկեր է կազմում [13])։

---

դառնային, և նմին ելս խնդրէին ժամանակս ինչ: Վասն որոյ առեալ երանելոյն Մաշթոցի դաս մի մանկտւոյ հրամանաւ արքային, և միաբանութեամբ սրբոյն Սահակայ և հրաժարեալք ի միմեանց համբուրիւ սրբութեան՝ խաղայր գնայր ի հինգերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց, և երթեալ հասանէր ի կողմանս Արամի՝ ի քաղաքս երկուց Ասորոց. որոց առաջինն Եդեսիա կոչի, և երկրորդն Ամիդ անուն։ Ընդդէմ լինէր սբ. եպիսկոպոսացն. որոց առաջնոյն Բաբիլաս անուն և երկրորդին Ակակիոս. հանդերձ կղերականօքն և իշխանօքն քաղաքին պատահեալ, և բազում մեծարանս ցուցեալ հասելոցն, ընդունէին հոգաբարձութեամբ, ըստ Քրիստոսի անուանելոցն կարգի» Տես. Կորիւն. էջ 9.

12) «Իսկ աշակերտասէրն վարդապետին՝ զտարեալսն ընդ իւր յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութեանն կարգէր, և զոմանս յունական դպրութիւնն»: Տես Կորիւն. էջ 9.

13) „Անդ ի սամուսատական քաղաքն գումարէր, և նորա իւրովք հաւասարօք զսովորականն առանձի եդեալ զաղօթս և զտքնութիւնս և զպաղատանս արտասուալից, զխստամբերութիւնս, զհոգս զաշխարհահեծս, յիշելով զասացեալսն մարգարէին, եթէ „Յորժամ հեծեծեսցես, յայնժամ կեցցես“: Եւ այնպէս բազում աշխատութեանց համբերեալ վասն իւրոյ ազգին բարեաց ինչ օձան գտանելոյ։ Որում պարգևէր իսկ վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ. հայրական չափու ծնեալ ծնունդս նորոգ և սքանչելի

Յետոյ հրաժարական տալով սբ. եպիսկոպոսներին, իւր օգնականների հետ գնում է Սամոստացիների քաղաքը ուր և մեծ պատուով ընդունւում է տեղական եպիսկոպոսից: Այդտեղ սբ. Մեսրոպը գտնում է Հռոփանոս անունով մէկ մարդ, որ շատ լաւ գրում էր յունարէն և յանձնում է դորան իւր նոր այբուբենը, որպէս զի տառերին վայելուչ ձև տայ, որոշէ նոցա երկարութիւնն ու հաստութիւնը: Այնուհետև սուրբ Մեսրոպը իւր Յովհան և Յովսէփ աշակերտների հետ ձեռնարկում է Սողոմոնի առակաց գրքի թարգմանութեան. այս առաջին թարգմանութիւնը նոր տառերով գրում է նոյն ինքը Հռոփանոսը և միևնոյն ժամանակ այդ նոր գրութեան արուեստը ուսուցանում է սբ. Մեսրոպի աշակերտներին [14]: Ապա վերադառնալով Ասորիք՝ իւր աշակերտների մօտ, սբ. Մեսրոպը մեծ ընդունելութիւն է գտնում ասորոց եպիսկոպոսներից և ուղևորուելով դէպի Հայաստան՝ գալիս է Արարատեան գաւառի Նոր քաղաքը՝ Վռամ-

---

րբ. աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին: Եւ անդ վաղվաղակի նշանակեալ, անուանեալ և կարգեալ, յօրինէր սիղոբայիւք և կապօք": Տես. Կորիւն. էջ 9—10:

14) „Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն սրբոց, հանդերձ օգնականօք իւրովք իջանէր ի քաղաքն սամոստացւոց, յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն և յեկեղեցւոյն մեծարեալ լինէր: Եւ անդէն ի նմին քաղաքի գրիչ ոմն հելլենական դպրութեան Հռոփանոս անուն գտեալ, որով զամենայն ընտրութիւն նշանագրոյն զնրբագոյնն, զկարճն և զերկայնն, զառանձինն և զկրկնաւորն, միանգամայն յօրինեալ և յանկուցեալ, ի թարգմանութիւն դառնային հանդերձ արամբք երկուք, աշակերտօքն իւրովք. որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին, յեկեղեաց գաւառէն, և երկրորդին Յովսէփ անուն՝ ի պաղանական տանէն: Եւ եդեալ սկիզբն նախ յառակացն Սողոմոնի, որ ի սկզբանն իսկ ծանօթս իմաստութեան ընծայեցուցանէ լինել, ասելով եթէ „ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ": Որ և գրեցաւ ձեռամբն այնորիկ գրչի. հանդերձ ուսուցանելով մանկունս գրիչս նմին դպրութեան": Տես. Կորիւն. էջ 10.

ապուհի Թագաւորութեան վեցերորդ տարին։ Սբ. Սահակը Թագաւորը յնձութեամբ դիմաւորում են նորան Ոահ գե-ի մօտ և մեծ պատուով ընդունելով՝ տօնախմբութիւններ ն կազմում այդ առիթով[15]։

Այնուհետև սբ. Մեսրոպը նորից սկսում է իւր նախկին պաշտօնը, այսինքն գաւառից-գաւառ գնալով՝ քարոզում է ատուծոյ կենդանի խօսքը. նախ գնում է Մարաց կողմերը և յետոյ Գողթան. այդտեղից Սիւնեաց աշխարհը։ Նա քարոզում է և միևնոյն ժամանակ մանուկներ ժողովելով՝ ուսուցանում է նոր գրով։

Մի փոքր ժամանակ անցնելուց յետոյ սբ. Մեսրոպը մտածում է նաև վրաց բարբարոս ժողովրդի մասին. յօրինում է նոցա համար ևս մի նոր այբուբեն և ընտիր աշակերտներից մի քանիսի հետ գնում է վրաց աշխարհը, ներկայանում է նոցա Բակուր Թագաւորին և պատւով ընդունւում։ Յետոյ Ջաղայ անունով մէկ Թարգմանի հետ քարոզում է, դպրոցներ է հիմնարկում և իրեն փոխանորդ նշանակելով՝ վերադառնում է Հայաստան, սբ. Սահակի մօտ[16]։

---

15) « . . . Եկեալ հասանէր (սբ. Մեսրոպ) ի Հայաստան աշխարհն, ի կողմանս այրարատեան գաւառին, առ սահմանօք նոր քաղաքին ի վեցերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց մեծաց...։ Եւ արդ եկեալ յիշէին մերձ ի Թագաւորական քաղաքն, ազդ լինէր Թագաւորին և սրբոյ եպիսկոպոսին։ Որոց առեալ զամենայն նախարարագունդ աւագանւոյն ամբոխ, ի քաղաքէն ելեալ՝ դիպահէին երանելւոյն զափամբ Ռահ գետոյն։ Եւ զցանկալի ողջոյնն միմեանց տուեալ, ուստի և բարբառօք ցընծութեամբ և երգօք հոգևորօք, և բարձրագոյն օրհնութեամբք ի քաղաքն դառնային և զաւուրս տօնական ուրախութեամբ անցուցանէին»։ Տես. Կորիւն էջ 11։

16) «Դարձեալ յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ, հոգ ի մտի արկանէր սիրելին Քրիստոսի և վասն բարբարոսական հաւամանն. և առնոյր կարգեալ նշանագիրս վրացերէն լեզուին, ըստ շնորհեցելոյ նմա ի տեառնէ։ Գրէր կարգէր և օրինօք յարդարէր»

Նորից բաժանուելով սբ. Սահակից՝ այցելութեան է գնում այն գաւառները, ուր արդէն քարոզել էր, որպէս զի «զուարթացնէ», «նորոգէ» և «հաստատէ»։ Այսպիսով նոր գիրն ու դպրութիւնը տարածելով Հայաստանի պարսից բաժնում, սբ. Մեսրոպը նոյնը ձեռնարկում է նաև յունաց բաժնի Հայաստանում, ուր արդէն առաջուց լսած լինելով նորա համբաւը պատուով ընդունում են նորան։ Երկրի գլխաւորը սբ. Մեսրոպի գործունէութեան մասին տեղեկութիւն է տալիս Թէոդոս կայսեր, որ և հրամայում է սբ. Մեսրոպին *ակումիտ* տիտղոսը տալ [17]։ Այնուհետև սբ. Մեսրոպն իւր աշակերտներին տանում է Մելիտինէ քաղաքը, յանձնում է նոցա Ակակիոս եպիսկոպոսին, իսկ ինքը գնում է Կոստանդնուպոլիս, ներկայանում է տիեզերական պատրիարքին և կայսրին. սոքա պատուով ընդունում են նորան և Զատկի տօնից յետոյ սբ. Մեսրոպը վերադառնում է Հայաստան կայսեր հրովարտակներով։ Կայսրը թոյլ էր տալիս սբ. Մեսրոպին՝ յունաց բաժ-

---

*և առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակերտաց իւրոց, յարուցեալ գնայր իջանել ի կողմանս վրաց. և երթեալ յանդիման լինէր թագաւորին՝ որում անուն էր Բակուր, և եպիսկոպոսի աշխարհին՝ Մովսէս։ Եւ առաւելագոյն հնազանդեալ նմա ըստ օրինացն Աստուծոյ՝ թագաւորին և զօրացն, հանդերձ ամենայն գաւառօքն։*

*Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ՝ խրատէր յորդորելով. յորում և յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել։ Եւ գտեալ զայր մի թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ և ճշմարտահաւատ. հրաման տայր այնուհետև արքայն վրաց՝ ի կողմանց կողմանց, և ի խառնիճաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ՝ ժողովել մանկունս՝ տալ ի ձեռն վարդապետին»։ Տես Կորիւն էջ 15.*

[17]) *«. . . Խորհուրդ առնոյր (սբ. Մեսրոպ) այնուհետև վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ թագաւորին Հոռոմոց։ Եւ փութացեալ գնայր հանդերձ աշակերտօք բազմօք անցանել ի կողմանս Յունաց. և վասն առաւելագոյն բարե-*

ի Հայաստանում ևս ուսուցանել Հայոց նորագիւտ դպրութիւնը և կռուել Բարբարիանոս աղանդի դէմ [18])։

Այն միջոցին, երբ սբ. Մեսրոպը զբաղուած էր յունաց բաժնի Հայաստանում, Հանդիպում է նորան մի աղուան երէց՝ Բենիամին անունով, որից սուրբը սովորում է աղուա-

…ւործ Համբաւուց՝ յառաջագոյն զնմանէ անդ ի Հիւսիսական կողմանց Հաչակելոց, առաւել միամտութեամբ ընտանեբար յեպիսկոպոսաց աշխարհին, և յիշխանաց և ի գաւառականացն պատուեալ. մանաւանդ ի սպայապետէն աշխարհին, որ անուանեալ կոչէր Անատոլիս ի մուտ ճանապարհին. որ զերս առաջի եդեալ գրով ցուցանէր կայսերն, որում անուն Թէոդոս կոչէին, որդի Արկադու կայսեր. ուստի և հրաման ելանէր, վայելուչ մեծարանօք զսուրբն Ակումիտ անուն կոչելոյ»: Տես. Կորիւն էջ 16:

[18]) «... Եւ մտեալ առաջի պատուական աթոռոյն յանդիման լինէր Աստուածակարգ Թագաւորացն և Հայրապետին սրբոյ Կաթուղիկոսին աշխարհամուտ դրանն, որում Ատտիկոս կոչէին. յորոց և գտեալ շնորհս՝ հրամայեալ լինէր ժամանակս ինչ անդէն ի տիեզերական քաղաքին մեծարեալ դարմանօք կարգելովք, յեկեղեցւոյն և յարքունեաց և պատուական իշխանաց քաղաքին։

Եւ ապա յետ Պասեքին կատարելոյ՝ ցուցեալ կայսերն զպիտոյից զհանգամանս, և առեալ զանընդդիմակաց հրամանն հանդերձ սակերօք կայսերագիր նշանակելովք՝ վասն մանկտոյն յաշակերտութիւն, առ ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ, և վասն ժանտագործ ազգին բարբարոսաց, և եկեղեցեաց հաստատութեան, և մեծամեծ պարգևօք պատուել: Վասն որոյ հաւանեցուցեալ ճըշմարտին զարքունիսն, անընկալ թողոյր. և երկրպագեալ ծիրանաւոր օգոստականացն, և սրբոյ կաթուղիկոսին, և ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն և յերևելի իշխանացն քաղաքին, և ամենայն իւրայովքն յաջողեալք՝ ելանէին ի դեսպակս ի կառս արքունատուրս: Եւ մեծաւ շքով և բազում վայելչութեամբ ունէին զճանապարհս արքունականս, և ամենայն քաղաքացն պատահելով, ի քաղաքին պայծառագոյն երևէին. և մեծամեծ պարգևս գտեալ, գային հասանէին ի ժամադիր կողմանս. և անդէն վաղվաղակի պատահեալ սպարապետին Հայոց, հանդերձ սակերօք կայսեր յանդիման լինէին: Եւ նորա առեալ սակերս կայսերական նշանօք,

նից լեզուն և ստեղծում է աղուանից լեզուի համար մի այբուբեն [19]։

Յետոյ սբ. Մեսրոպը վերադառնում է Մեծ Հայաստան, ներկայանում է սբ. Սահակ Պարթևին ու Արտաշէս արքային և նորից ուղևորւում է դէպի Աղուանից աշխարհը, համոզում է նոցա եպիսկոպոս Երեմիային և Արսվաղ թագաւորին դպրոցներ բանալ և նոր դպրութիւն ուսուցանել նոր սերունդին։ Այնուհետև սբ. Մեսրոպը երկար ճանապարհորդութիւններ անելով՝ կրկին վերադառնում է սբ. Սահակի մօտ և երկուսը միատեղ աշխատում են, որ նոր դպրութիւնը ազգին սիրելի և յարգելի դարձնեն. Սահակ կաթողիկոսը, ըստ իւր սովորութեան, շարունակում է թարգմանել և գրել։ Նոյն նպատակի համար իւրեանց աշակերտներից երկուսին՝ Յովսէփին և Եզնիկին ուղարկում են Եդեսիա, որպէս զի սբ. Հօրց գրուածները ասորերէնից թարգմանեն Հայերէն [20]։ Սոքա այդ յանձնարարութիւնը կատարելուց յետոյ ուղևորւում են Բիւզանդիոն, այնտեղ սոցա հետ միանում են նաև Ղևոնդն ու Կորիւնը և չորսը միատեղ ուսումնա-

---

փութայր վաղվաղակի զհրամանն կատարել. և հրեշտակս արձակեալ այնուհետև ի գաւառս կէս ազգին Հայոց՝ յիշխանութեան կայսեր, բազմութիւն մանկտւոյ ժողովել, և նոցին ուծիկս կարգել ի պատեհագոյն տեղիս, յոր և երանելին զվարդապետութիւն իւր ի գործ արկեալ, և ժողովելոցն քաղցրացուցանէր»։ Տես Կորիւն էջ 17։

[19]) «Յայնմ ժամանակի եկեալ դիպէր նմա այր մի երէց աղուան ազգաւ, Բենիամէն անուն և նորա հարցեալ և քննեալ զբարբարոս զբանս աղուաներէն լեզուին, առնէր ապա նշանագիրս, ըստ վերնապարգև կորովի սովորութեան իւրում. և յաջողութեամբ Քրիստոսի շնորհացն, կարգեալ և հաստատեալ կըշռէր»։ Տես. Կորիւն էջ 18.

[20]) «Յետ այնորիկ ուշ եդեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զդպրութիւն առաւել յարդել և զիւրացուցանել, ձեռն ի գործ արկանէր ի թարգմանել և ի գրել Մեծն Խահակ

երելով յունաց լեզուն, պարապում են թարգմանութեամբ. ապա վերադառնալով Հայաստան, նոյնը շարունակում են սբ. Սահակի հետ ի միասին [21])։

Այնուհետև Կորիւնը համառօտ կերպիւ պատմում է սբ. Սահակ Պարթև կաթողիկոսի մահը, որ տեղի ունեցաւ «յառաջնումն ամի Յազկերտի որդւոյ Վռամայ՝ թագաւորի կացելոյ ի պարսից աշխարհին, ի Բագրաւանդ գաւառի՝ ի գիւղ Բլրոցաց, ի կատարել ամսեանն Նաւասարդի, որպէս և զօր ծննդեան երանելոյն յիշէին. յերկրորդ ժամու աւուրն, ի պաշտաման անուշահոտ իւղոյն, հանդերձ Աստուածահաճոյ ա-

---

ըստ յառաջագոյն սովորութեան։ Որոց դարձեալ դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն՝ յուղարկել ի կողմանս Ասորոց ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ, զոր ի վերոյն յիշեցաք, և երկրորդն Եզնիկ անուն՝ յայրարատեան գաւառէն ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն՝ զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս, հայերէն գրելս դարձուցենն։ Տես. Կորիւն էջ 20.

21) «Եւ այնպէս զամենայն ժամանակս իւրեանց՝ յընթերցուածս գրոց ծախէին հարքն՝ զտիւ և զգիշեր, և նովիմբ ծաղկեալք և շահաւէտեալք՝ օրինակ բարեաց ուսումնասէր առընթերակայից լինէին...»։

«Եւ այնպէս զամենայն կողմանս Հայոց, Վրաց և Աղուանից, զամենայն ժամանակս կենաց իւրոց, զամառն և զձմեռն, զտիւ և զգիշեր՝ անվեհեր և առանց յապաղելոյ իսկ, իւրով աւետարանական և ողջապատում գնացիւքն առաջի թագաւորաց և իշխանաց, և ամենայն հեթանոսաց և անընդդիմակաց ի հակառակորդաց՝ զամենափրկչին Յիսուսի անուն կրեաց յանձին։ Եւ զամենայն ոգի քրիստոսազգեստ և հոգեղէն վառեաց, և բազում բանդականաց և կալանաւորաց և տագնապելոց ի բռնաւորաց թողութիւն արարեալ՝ կորզեալ զնոսա ահաւոր զօրութեամբն Քրիստոսի։ Եւ բազում մուրհակս անիրաւութեան պատառեաց, և բազում սգաւորաց և կարճամտելոց՝ մխիթարական վարդապետութեամբն զակնկալ յուսոյն ըստ յայտնութեան փառաց մեծին Աստուծոյ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի նօթձնաց. և զամենայն միանգամայն յաստուածպաշտութեան պայման անդ փոխեաց...»։ Տես. Կորիւն էջ 21—22։

զօ՜թիւք՝ ծերունւոյն ի Քրիստոս աւանդեալ» [22]։ Սբ. Սահակի աճիւնը տարւում է Տարօն և ամփոփւում Աշտիշատ գիւղում։

Սբ. Մեսրոպը իւր մեծ գուգակցի մահից յետոյ վարում է կաթողիկոսի տեղապահի պաշտօնը և վեց ամիս անցնելուց յետոյ նոյնպէս փոխւում է դէպի յաւիտենականը.

«Եւ մինչդեռ այնպէս մերձաւորացն առ իւրև զհոգեւոր եռանդն ածէր, և բազում թուղթս խրատագիրս և զգացուցիչս ընդ ամենայն գաւառս առաքէր, անդէն ի նմին ամի՝ յետ ամսոց վեցից անցելոց վախճանի երանելոյն Սահակայ, լինէր հանդերձ սրբով վարդապետով բանակն Հայոց յայրարատեան ի Նոր քաղաք, և նովին հոգեկրօն վարուք հասանէր սրբոյն Քրիստոսակոչ կատարումն, հետ սակաւ ինչ աւուրց հիւանդութեանն, յերեքտասաներորդում ամսեանն մեհեկանի։ Եւ յորժամ որոշեալ ի միջոյ ձեռնասուն աշակերտաց և խառնեալ ի գունդն Քրիստոսի հասանէր, թեթեւացեալ և սթափեալ ի ցաւոցն՝ կանգնեալ նստաւ ի ժողովոյն միջի, և համբարձեալ զձեռսն հանապազատարած յերկինս՝ զամէն մնացեալսն յանձն առնէր շնորհացն Աստուծոյ. վասն նոցա օգնականութիւն հայցէր։ . . . . Եւ մինչդեռ ձեռք սրբոյն ընդ երկինս կարկառեալ էին, տեսիլ սքանչելի խաչանման լուսաւոր շողաւոր ձև երևէր ի վերայ տպարանիցն, յորում երանելին վախճանէր. զոր ամենայն ուրուք ինքնատես եղեալ, և ոչ առ յընկերէ պատմեալ։ Եւ սորա սրբոցն զսէր և զմիաբանութիւն աւանդեալ, զմերձաւորս և զհեռաւորս օրհնութեամբ պսակէր, և զհաճոյական ազօթս հասուցեալ ի Քրիստոս հանգեաւ։ Զոր առեալ Վահանայ և Համայեկի կազմութեամբ վախճանելոյ, հանդերձ աշխարհական ամբոխիւ, սաղմոսիւք և օրհնութեամբ, և

---

22) Տես. Կորիւն էջ 25։

հոգևոր ցնծութեամբք, կանթեղօք վառելովք և ջահիւք բորբոքելովք, և ամենայն լուսաճաճանչ գնդիւն, և այնու խաչանշան լուսաւոր առաջախաղաց նշանաւն, յՕշականն ելանէին, և անդ ի մարտիրոսարանն մատուցեալ, զօրհնաւոր յիշատակն կատարեալ, ապա նշանն աներևոյթ լինէր, և նոքա իւրաքանչիւր դառնային։ Իսկ յետ երից ամաց անցելոց, յաջողեցան Վահանայ ամատունւոյ, Քրիստոսասէր փութով խորան օքանչելի կանգնել, տաշածոյ վիմօք քանդակելով, և ի ներքսագոյն խորանին զսրբոյն Հանգիստն յօրինեալ, որոյ պասս վայելուչս գունագոյնս պայծառատեսիլս ոսկով և արծաթով և ակամբք պատուականօք՝ ի յիշատակարան սեղանոյն կենդանարար մարմնոյ և արեանն Քրիստոսի պատրաստեաց, և ամենայն սրբովք ի միասին գումարելովք խաչակրօն վկայիցն քրիստոսի, Հանգերձ երանելեաւն Մաշթոցիւ, ի Հանգիստ խորանին փոխէ»։ Տես. Կորիւն էջ 26—27։



## ԳԼՈՒԽ Ժ.

## Մ. ԽՈՐԵՆԱՑՈՒ [1]) ՊԱՏՄԱԾԸ ԳՐԻ „ԳԻՒՏ"-Ի ՄԱՍԻՆ



ուրբ Մեսրոպը Տարօնի „Հացեկաց" գիւղիցն էր և Մեծին Ներսէսի մօտ սնուած ու կըրթուած. Նորա մահից յետոյ կարգուեցաւ արքունի քարտուղար, սակայն թողնելով այդ պաշտօնը միայնակեաց կեանք վարեց՝ առանձնանալով Գողթան գաւառը։ Նոյն գաւառում դեռ ևս հեթանոսական պաշտամունքը անյայտացած չէր և Մեսրոպ երկրի իշխան „Շամբիթ"-ի օժանդակութեամբ կարողացաւ վերջ դնել այդ բա-

---

1) «Հայ Հերոդոտն—այս անունը տալիս է մեր պատմաբանին հայագէտ Լ ա ն գ լ ո ւ ա ն—և բերթողահայր Մովսէս թէ իւր պատմութեան առաջին գրքում—տես. գլուխ. Ա. էջ 1.—և թէ մեր այլ պատմագրներից կոչւում է Խ ո ր ե ն ա ց ի, թէև նորա ծննդեան տեղն ոչ ոք չէ յիշում. ուստի և ճիշտ յայտնի չէ թէ «Խորենացի» բառն ի՞նչ ձևից է յառաջացել։ Եթէ ի նկատի ունենանք, որ մի այլ Մովսէս կոչւում է «Խորձենացի»—տես. Մ. Խորենացի պատմութիւն հայոց. գիրք III. գլխ. ծգ. էջ 372—որի ծննդավայրն է «Խորձէն», պէտք է եզրակացնել, որ Խորե-

նին՝ քարոզելով քրիստոնէական վարդապետութիւնը։ Նոյնն անում է նա Սիւնեաց աշխարհում „Վաղինակ“ իշխանի օգնութեամբ։

---

նացու ծննդավայրը պէտք է կոչուէր «Խորէն». այդպէս եւ բացատրում է Սէն-Մարտէն 1). սակայն այդ ձեւը մեր պատմաբաններից եւ աշխարհագիրներից ոչ ոք չէ յիշում եւ այժմ եւս չկայ 2)։ Եթէ ի նկատի ունենանք «Աթենացի» ձեւն, որ իւր ծագումն առնում է «Աթէնք»ից, այն ժամանակ «Խորենացի» բառի սկզբնական ձեւը պէտք է լինէր «Խորէնք». սակայն այս ձեւն եւս անյայտ է։ Հայր Ալիշանեանն իւր Մեծ Հայաստանի տեղագրութեան մէջ յիշում է, որ Մուշի մոտակայքում գտնւում են երկու վայրեր, որոնցից մէկը կոչւում է «Խորնի» իսկ միւսը «Խորօնք»։ Այս վերջին տեղը համարւում է քերթողահօր ծննդատեղին։ Ըստ Ներսէս Սարգսեանի մեծ եւ փոքր Հայաստանի նկարագրութեան՝ «Խորօնք»ից ոչ հեռու գտնուող վանքի մէջ ցոյց է տրւում Մովսէս Խորենացու եւ իւր եղբօր Մամբրէի գերեզմանաքարերը։ Այստեղից յառաջանում է եւ այն հանգամանքն, որ Մխիթարեանները տեղ-տեղ Մովսէսին կոչում են «Խորօնեցի»

---

1) Տես. Saint-Martin „Memoires Historiques et Géographiques sur l'Arménie“ հատ. I. էջ 102։

2) Պրոֆ. Կոխ իւր արեւելեան ճանապարհորդութեան նկարագրութեան մէջ յիշում է Մ. Խորենացու ծննդավայրն՝ ասելով որ ինքն այցելել է այդ վայրն, որ կոչւում էր «Խորուն» (?) կամ «Խորունք» (?) —Chorun oder Chorunkh— եւ որ գտնւում է Մուրադ գետի միւս կողմը մի քանի ժամ Ջիարէթից հեռու։ 1843—1844 թ. այդ գիւղն ունեցել է միայն մի հայ ընտանիք. Կոխը հետեւեալ կերպիւ է նկարագրում. «Մենք ձիով անցանք «Արխօն» գիւղի միջով եւ վերջապէս հասանք Խորուն, հին Խորնի (Խորենէ)։ Այդ գիւղը գտնւում է «Կոսմու-դաղ»ի ստորոտում եւ մի քանի ժամանակից արդէն թողնուած է իւր բնակիչներից։ Միմիայն մի հայ ընտանիք գտանք այստեղ, այն ինչ միւսները մասամբ բռնել էին քրդերը իւրեանց ձմեռուայ բնակութեան համար։ Հինգերորդ դարում Խորնին ունէր 1900 (?) տուն, 700 այրուձի եւ 1800 (?) մարդ զինուոր (այս թուերը ստոյգ չեն)։ Տես. Prof. Dr. Koch: Wanderungen im Oriente 1843—1844“ (Վայմար. 1846) հատ. II. էջ 396.

Այս շրջագայութեանց ժամանակ նա տեսնում է, որ ժողովուրդն ոչինչ չէ հասկանում եկեղեցւոյ պաշտօնեաների կարգացածից և ինքը ստիպուած է լինում կարգացածը թարգ-

---

կամ «Խորոնեցի»: Եթէ ընդունենք որ այժմեան «Խորօնք»ն է Մովսիսի ծննդավայրն, այն ժամանակ պէտք է ենթադրել, որ այդ տեղը հինգերորդ դարում կոչւում էր «Խորէնք» կամ «Խորէն»: Այժմեան «Խորնի»ն չի կարելի «Խորենացի» բառի սկզբնաձեւն ընդունել, վասն զի «Խորնի»ից պէտք է կազմուէր «Խորնեցի»,—ինչպէս որ «Անի»ից—«Անեցի»—և ոչ «Խորենացի» [3]:

Լանգլուան Խորենացու ծննդեան տեղը կոչում է „ le bourg de Khorni ou Khoréne"—տես. նոյն I. էջ 385—մի այլ տեղ. „bourg asser considerable" de canton Daron"—տես. նոյնը հատ. II. էջ 47—որովհետև ըստ Զենոբ Գլակ ժամանագրի՝ երբ սբ. Գրիգոր Լուսաւորիչը զէնքի ուժով յաղթում է երկու յայտնի քրմապետներին, աւերած քրմատան տեղ եկեղեցի է կառուցանում ու վերակացու կարգելով Եպիփանին, տալիս է նորան 43 աբեղաներ և տասներկու գիւղեր՝ եկեղեցու պիտոյքը հոգալու համար: Այդ 12 գիւղերի թւում է ըստ Զենոբ Գլակի նաև «Խոռնի»ն, որ ունէր 1306 տուն բնակիչ 700 այրուձի և 1007 հետևակ զօրք [4]:

Հայր Զարբանալեանը նոյնպէս ասում է «Տարօնոյ «Խորնի» կամ «Խորօնք» գեղը ծնած է Մովսէս» [5]: Բրօսէն ասում է. „Movsès... né... au village de „Khoren" district de Taron..." [6]:

Ճիշտ յայտնի չէ նոյնպէս՝ թէ երբ ծնուեցաւ Խորենացին. ենթադրում են, որ նա պէտք է 370 թ. ծնուած լինի—տես. Brosset նոյն էջ 3. նոյնպէս „Mémoires l'académie impériale des sciences de st. Petersbourg" VII-e série, tome XIII. № 5. էջ 67—նորա մանկութեան մասին ոչինչ յայտնի չէ մեզ.

---

3) Տես. Baumgartner: „Über das Buch „die Chrie". էջ 1.:

4) Տես. Զենոբ Գլակի ֆրանսերէն թարգմանութիւնը—Langlois նոյնը. հատ. I. էջ 350:

5) Տես. Զարբանալեան. «Հայկական հին դպրութեան պատմութիւն» հատ. I. էջ 329:

6) Տես. Brosset: „Deux Historiens Arméniens—Kirakos de Gantzac..., Ouktanès D'ourha etc.. էջ 3.

անել. իսկ առՀասարակ եկեղեցւոյ պաշտօնեաները թարգմանել չ'կարողանալով աւետարանի խօսքն իսկապէս գաղտնիք էր մնում ժողովրդին և աՀա այս դժուարութեանց վերջ

---

իւր Հայոց պատմութիւնից տեղեկանում ենք իւր մասին, երբ արդէն Հասակ առած երիտասարդ էր և իւր վերայ էր դարձրել սբ. ՍաՀակի և Մեսրոպի ուշադրութիւնն, որ և շուտով ուղարկւում է արտասաՀման՝ լեզուաբանութիւն և աստուածաբանութիւն ուսանելու: Դառնում է Հայաստան 440 թուից յետոյ և այլ ևս իւր Հոգևոր Հայրերին տեսնելու բաղդը չունենալով՝ ողբում է. «Աւա՜ղ զրկանացս, աւա՜ղ թշուառական պատմութեանս. ո՞րպէս զախտս Հանդուրժեցից բերել, զի՞րդ զմիտս իմ և զլեզուս պնդեցից, և Հատուցից զբանս Հարցն՝ փոխանակ ծննդեանն եւ սննդեանն: Քանզի ծնան զիս իւրեանց վարդապետութեամբն եւ սնուցին, առ այլս առաքելով ածեցուցանել: Եւ մինչ նոքա զմերս յուսային դարձ, և պատուասիրել խնով ամէնիմաստ արուեստիւ եւ կատարելագոյն յարմարութեամբս, Համայն և մեք փութապէս դիմեալք ի Բիւզանդիոյ, յուսայաք Հարսանեաց պարել՝ անվեհեր երագութեամբ կրթեալք և առագաստի ասել երգս, արդ փոխանակ խրախճանութեանն ի վերայ գերեզմանի ողբս ասելով՝ ողորմելի Հառաչեմ. ուր եւ ոչ տեսութեանն ժամանեցի աչաց նոցա կափուցմանց եւ լսել զվերջին բարբառն եւ զօրՀնութիւն» 7):

Խորենացին ՍաՀակ Բագրատունու յանձնարարութեամբ գրեց Հայոց պատմութիւնը. յետոյ եղնիկ Կողբացու տեղ նշանակուեցաւ եպիսկոպոս և առաջնորդ Բագրևանդի և Արշարունեաց երկրի և մեռաւ Հալածուած տգէտ եկեղեցականների ձեռքից, որոնք այդ մեծ մարդու ոսկրներին անգամ Հանգստութիւն չը տուին:

Թէ ո՞ր թուին վախճանուեցաւ մեր Հայրենասէր քերթողաՀայրը, նոյնպէս անյայտ է. ոմանք ենթադրում են, որ նա վախճանուեցաւ 491 թ. 120 տարեկան Հասակում 8): Լանգլուան

---

7) Տես. Մ. Խորենացի պատմութիւն Հայոց գիրք III. գլխ. կը. էջ 412.

8) Տես. Brosset. նոյնն էջ 3. և Memoires etc. VII. s. XIII. t., 5. էջ 67.

գնելու համար Մեսրոպի մէջ ծագում է հայոց տառեր
ձնելու միտքն և երկար զբաղւում է զանազան փորձերով
Երբ Սահակ Պարթևը կաթուղիկոս ընտրուեցաւ,
րոպը շտապեց գալ նոր կաթուղիկոսի մօտ և յայտնեց
րան իւր մտադրութիւնը տառերի վերաբերմամբ։ Սբ.
Հակը յայտնեց նորան, որ ինքն ևս վաղուց փափագու

---

ենթադրում է որ նորա մահուան տարեթիւը պէտք է լինի
թուականը [9])։ Ռիխտէրը նոյնպէս 451 թուից առաջ է հա
րում Խորենացու մահը՝ ասելով. «որ նա մեռաւ Եփեսոսի ժ
վի (431 թ.) և քաղկեդոնեան ժողովի (451 թ.) մէջ եղած
մանակամիջոցում, որովհետև առաջինը յիշւում է նորա հայոց պ
մութեան մէջ, իսկ երկրորդը—ոչ… [10])

Սակայն այս ենթադրութիւնը հաստատ հիմք չունի, ո
հետև Մովսէսը կարող էր իւր պատմութիւնը վերջացնե
շատ տարիներ յետոյ մեռնել։

Լայպցիգի քաղաքային գրադարանում գտնուած Խորե
ցու պատմութեան մի ձեռագիր օրինակի մէջ—«ընդօրինակե
Լէօպօլիս Ռուսաց յամի Տեառն ՌՃԽԵ=1696—գրուած
տող յիշատակարանի մէջ ասուած է. «որ շուրջ զքառերիւր
մաւ Տեառն ծաղկեցաւ (Մովսէս) և երկարակեաց եղև, մ
ցամն հինգհարիւր (?) եօթանասուն [11]) շուրջանակի…»։
ձեռագրի երկրորդ երեսի մէջ. «… Մովսէս… երկարակեաց
եբր ամս հարիւր տասն և հինգ վախճանի ի խորին ծերութե
[2]) «Վասն որոյ եդ ի մտի հնարել գտանել նշանագիրս
ոց լեզուիս և արկեալ զանձն ի ջանս պէս պէս փորձիւք
ժանէր»։ Տես. Մ. Խորենացի պատմութիւն Հայոց. գիրք III.
խէ. էջ 355—356։

---

[9]) Տես. Langlois: „Etude sur les sources de l'Hist
d'Arménie de Moise de Khoren", տպուած է Bulletin de l'
démie imperiale des Sciences de St. Petersbourg. հատ.
էջ 537.

[10]) Տես. Richter: Historisch—kritischer versuch über
Arsaciden—und Sassaniden—Dynastie etc." էջ 208

[11]) Թուցէ պէտք է լինի չորսհարիւր եօթանասուն (47

է և այդ օրից սկսեցին երկուսն Եւս միատեղ աշխատել, սա-
յն ոչինչ չ'կարողանալով՝ բաժանուեցան միմեանցից՝ ապա-
նելով Աստուծոյ օգնութեան։ 3)

Այդ միջոցին Հայոց «Վռամշապուհ» թագաւորը պարսից
ռամ» արքայի հրամանով գնաց միջագետք յունաց և պար-
ց զօրքերի մէջ ծագած խռովութիւնը խաղաղացնելու։ Այս
ջնորդութեան ժամանակ, որովհետև արքունի քարտուղար
եսրոպը հեռացել էր, Վռամշապուհը մեծ նեղութիւններ է
ում մի կատարեալ թարգմանի պակասութեան պատճառով
ան զի Հայոց արքունիքի պաշտօնական գրագրութիւնը տե-
էր ունենում պարսից գրով։ Այս դժուարութեանց առի-
ով «Հաբէլ» անունով մէկ քահանայ յայտնում է թագաւո-
ն, որ իւր ազգական «Դանիէլ» եպիսկոպոսն ունի Հայոց լե-
ւին յարմարեցրած տառեր 4). սակայն Վռամշապուհը մի ա-

3) Տես. Մ. Խորենացի. նոյնը գիրք III. գլխ. խթ. էջ 361.

4) «.... Վասն որոյ մատուցեալ առ արքայն քահանայի որումն
աբէլ անուն կոչեցեալ, խոստանայր հայկականացս լեզուաց
ունել նշանագիր, յարմարեալ ի Դանիէլէ եպիսկոպոսէ՝ յիւր-
մերձաւորէ»։ Տես. Մ. Խորենացի. նոյնը. գիրք. III. գլխ. ծբ.
է 368։

Մեր ձեռքի տպագրուած Խորենացու պատմութեան (Տփի-
իս 1881) մէջ ասուած է. «վասն որոյ մատուցեալ առ արքայն
ահանայի որումն՝ Հաբէլ անուն կոչեցեալ». իսկ Ենայի հա-
ալսարանի գրադարանում գտանուող մի ձեռագիր Խորենացու
էջ չկայ «քահանայ» բառը. «վասնորոյ մատուցեալ ումն առ
րքայն Հաբէլ անուն կոչեցեալ...»։ Տես. այդ ձեռագրի 163-րդ
երթ. երկրորդ էջ. երկրորդ սիւն. տող 19—20։

Այս ձեռագիր Խորենացին բաղկացած է 180 բառածալ
երթերից. չունի յիշատակարան. նոյն իսկ առաջին (?) երեսից
խուում է բովանդակութեան ցանկը. վերջից պակասում է III
րքի «կը» գլուխը—ողբը—ամբողջովին և «կէ» գլխի վերջին
ատուածը—վերջին երեսի վերջին տողն է. «... զի գոյր տես-
ամբ հրեշտակական, մօրք ծննդականս»։ Ձեռագիրը գրուած

ռանձին ուշադրութիւն չդարձնելով այդ բանի վերայ, վերադառնում է Հայաստան։ Իսկ այդ ժամանակ սուրբ Սահակ և Մեսրոպ կրկին միանալով ժողովել էին Հայոց բոլոր եպիսկոպոսներին և խորհրդակցում էին Հայոց այբուբենի «գիւտ»-ի մասին. այս բանը լսելով՝ թագաւորը պատմում է Միջագետքում պատահած դէպքն և ժողովը խնդրում է Վռամշապուհին մէկին ուղարկել Միջագետք այդ քահանայի մօտ՝ հաստատ տեղեկութիւն ստանալու համար։ Վռամշապուհը լսելով դոցա խնդիրը՝ Միջագետք է ուղարկում իւր հաւատարիմ «Վահրիճ»-ին—որ էր *«յոյժ փափագող նորին գործոյ»*—Հաբէլի մօտ։ Այդ երկուսը միասին գնում են Դանիէլ եպիսկոպոսի մօտ և «քաջ հմտացեալ ի Դանիէլ—է, *կարգեալ ըստ ձեւոյ օրինակի յունականին զվաղնջուց գտեալ նշանագիրսն, եկեալ ետուն ցմեծն Սահակ եւ Մեսրոպ»*։[5]) Սուրբ

---

*է բոլորագիր տառերով և սև թանաքով հաստ մագաղաթի վերայ. գլուխներն ու սկզբի տառերը գրուած են կարմիր թանաքով։ Ձեռագիրը լաւ է պահպանուած—բացի առաջի 2—3 թերթերից, որոնք կեղտոտ են, սակայն կարդացւում են. ունի տախտակից շինած կաշեպատ կարմիր կազմ։ Ձեռագիրը յիշատակարան չունենալով՝ յայտնի չէ թէ ո՞վ և ե՞րբ է օրինակել. սակայն բազմաթիւ տառասխալները ցոյց են տալիս, որ անհմուտ ձեռքի գործ է։ Ձեռագիրը Ենայի համալսարանին նուիրել է պրօֆ. Կ ո խ, որ ինչպէս երեւում է ձեռք է բերել Հայաստանում ճանապարհորդելիս։—Լայպցիգի քաղաքային գրադարանի մէջ պահուած Խորենացու պատմութեան ձեռագիրն աւելի գեղեցիկ և հոգացողութեամբ է գրուած, սակայն աւելի նոր է քան այս ձեռագիրը։*

[5]) *Տես. Մ. Խ ո ր ե ն ա ց ի. գիրք* III. *գլխ. ծբ. էջ* 369. *Այս հատուածը պրօֆ. Էմին հետեւեալ կերպիւ է թարգմանել.* „Вахричъ въ сопровожденіи послѣдняго—*Հաբէլի*—отправился къ Даніилу, у котораго познакомился онъ въ подробности съ писменами, изобрѣтенными въ древнѣйшія времена: расположилъ ихъ по порядку греческаго алфавита и по возвращеніи

Սահակ և Մեսրոպ ընդունելով այդ տառերը մի քանի տարի—«զամս սակաւս»—փորձում են սովորեցնել աշակերտներին, սակայն. «տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար՝ մուրացածոյին[6]) այնուիկ գծագրութեամբ»:

Այս անյաջողութիւնը տեսնելով՝ Մեսրոպը անձամբ մի քանի աշակերտների հետ գնում է Միջագետք Դանիէլի մօտ, սակայն նոր բան չ՚գտնելով գնում է Եդեսիայ Հեթանոս ճարտասան Պղատոնից խորհուրդ հարցնելու: Պղատոնն[7]) ուրախութեամբ ընդունում է նորան, սակայն ինքն ևս չ՚կարողանալով օգնել՝ խորհուրդ է տալիս Մեսրոպին գտնել «Եպի-

---

представилъ ихъ Сааку...“ Տե՛ս. Исторія Арменіи, Моисея Хоренскаго. Эминъ.

Մեր ստորագծած տողերը չեն համապատասխանում բնագրին. պրոֆ. Էմին այնպէս է ըմբռնել, որ իբր թէ Վ ա հ ր ի ճ ն է Դանիէլի մօտ գտանուած տառերն ըստ յունաց այբուբենի դասաւորել. այն ինչ՝ ըստ մեր հասկացողութեան Խորենացին այդ բանը վերագրում է Դ ա ն ի է լ ի ն. վերջինս առաւել համապատասխանում է հանգամանքներին: Երկրորդ. Խորենացին ասում է «եկեալ ետուն», այսինքն Վահրիճ և Հաբէլ. Էմինի թարգմանութիւնից այդ պարզ չէ երևում: Այդ հատուածը սխալ է թարգմանուած նոյնպէս Խորենացու պատմութեան գերմաներէն թարգմանութեան (գիրք երրորդ) մէջ, որ արել է Լ ա ո ւ է ր:

[6]) Այս հատուածը նոյնպէս սխալ է թարգմանել Լաուէրը. տես. Lauer էջ 213:

«Մուրացածոյին» բառը պրոֆ. Էմին թարգմանել է. „скуднаго и бѣднаго алфавита“, որ նոյնպէս ճիշտ չէ թւում մեզ: Խորենացին «Դանիէլեան նշանագիրն» օտար համարելով անուանում է նորան «մուրացածոյ»—այսինքն՝ մուրացած, օտարից առնուած:

[7]) Պղատոնի անունը յիշում է միայն Խորենացին և նորա հետևողները. օտար գրականութեան մէջ անյայտ է այս անձը:

փանոս» [8]) անունով մէկին, որ առաջ իւր ուսուցիչն էր
ասելով որ նա կարող է օգնել—«զոր խնդրեալ գտցես
ցանել զփափաքդ քո»—Մեսրոպ «Բաբեղոս» [9]) եպիսկոպոս
նութեամբ գնում է Փիւնիկէ և այն տեղից «Սամոս»
հետև «Եպիփանոս» արդէն վախճանուել էր՝ թողնելով,
կերտ մի անուանեալ «Հռոփանոս» հրաշալի արուեստի
լէն գրչութեամբ, որ ի Սամոս էր միայնացեալ»։ Սակայ
եւս ոչնչով չէ կարողանում օգնել Մեսրոպին, որև ճար
տեալ «... յաղօթս ապաւինի. և տեսանէ ոչ ի քուն երա
ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի եր
թացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով ի վ
վիմի զի որպէս ի ձեան վերջք գծին կուտեալ ունէր ք
Եւ ոչ միայն երևութացաւ, այլ և հանգամանք ամենայ
որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ։ Եւ յարու
յաղօթիցն, Եստեղծ զնշանագիրս մեր հանդերձ Հռոփա

---

[8]) Հայր Չամչեանը ենթադրում է, որ այդ Եպիփանոսը
է լինի «սուրբն Եպիփան եպիսկոպոս Սաղամինայ»։ Տես. Չ
չեան. նոյնը հատ. I. էջ 492.

[9]) «... Յայնժամ առեալ սրբոյն Մեսրոպայ թուղթ յ
նախարարական ի Նմանէ, և յԻրաբուսէ կամ ի Բաբելոսէ եպ
պոսի տեղւոյն». տես. Չամչեան նոյնը. հատ. I. գիրք ր. գլ
էջ 492։

Սէն-Մարտէնը պատմելով Խորենացու ասածը՝ ծանօթու
մէջ գրում է «Բաբեղոսի» մասին. «Հայոց մատենագիրներն
եպիսկոպոսին «Բաբեղոս» անունն են տալիս. սակայն ասորոց
տենագիրներն, որ ճանաչում են այդ ժամանակամիջոցի Եդե
ւի բոլոր առաջնորդներին, չեն յիշում մի այդպիսի անուն։
ւանական է, որ այդ անձը լինի «Ռաբուլա»ն, որ եպիսկ
եղաւ Սելևկեան 723 թ. որ է 412 թ. Քրիստոսի։ Տես. Sa
Martin, նոյնը հատ. V. էջ 322. ծթ. 2։ Սակայն այս ան
ւորութիւնը չի կարող Խորենացու յիշած «Բաբեղոս»ը լինե
րովհետև «գրի գիւտը» տեղի ունեցաւ 412 թուից ութ
առաջ—404 թ.։

կերպաձեւեալ զգիրն Մեսրոպայ առ ձեռն պատրաստ. փոխադրելով զհայերէն աթուխթայն ըստ անսայթաքութեան սիւղաբայից հելլենացւոց»: Ապա Մեսրոպ իսկոյն ձեռնարկում է Առակաց գրքի և Նոր կտակարանի [10]) թարգմանութեան՝ և իւր աշակերտների օգնութեամբ միևնոյն ժամանակ «զարուեստ գրչութեան տալով իւրոց մանկագոյն աշակերտացն»: [11])

Սուրբ Մեսրոպ վերադառնալով Հայաստան՝ թագաւորի և կաթողիկոսի հրամանով գաւառներում դպրոցներ է բանում և ուսուցանում Հայոց լեզուով ու գրով. այս տեղի է ունենում միայն պարսից բաժնի Հայաստանում. իսկ յունաց բաժնում դեռ ևս սովորում էին յունարէն գրով: [12]) Այնուհետև Մեսրոպ գնալով Վրաստան՝ «Ջաղա» թարգմանի աջակցութեամբ

---

[10]) «Արդ՝ ի կատարել փափաքանաց երանելւոյն Մեսրոպայ, թէպէտ և կամէր նա դառնալ իսկոյն առ սուրբն Սահակ, բայց առ խնդութեան սրտին անդէն վաղվաղակի ձեռն էարկ ի թարգմանութիւն. մանաւանդ զի եւ ժամանակն ծմեռ էր եւ անյաջող ի ճանապարհորդել»: Տես. Չ ա մ չ ե ա ն. նոյնը. հատ. I. էջ 493: Մեզ անյայտ մնաց այն հանգամանքը, թէ Չամչեանն ինչ հիման վերայ է ենթադրում, որ այդ ժամանակ ձմեռն էր. ոչ Խորենացին, ոչ Կորիւն և ոչ ևս Փարպեցին այդպիսի ակնարկութիւն իսկ չունեն:

[11]) Տես. Խ ո ր ե ն ա ց ի. նոյնը. գիրք III. գլխ. ծգ. էջ 369—371:

[12]) «... և ուսոյց զբնաւ կողմանս բաժնոյն պարսից՝ բայց ի Յունաց մասէն, որք ընդ ձեռնադրութեան տուգանեցան՝ վիճակաւ յաթոռն Կեսարու, վարել յունական դպրութեամբ և ոչ ասորւով»: Այս հատուածը պրոֆ. Էմին թարգմանել է հետևեալ կերպիւ. „... гдѣ подчиненные кесарійскому престолу обязаны были употреблять греческія и сирійскія письмена“, որ նոյնպէս սխալ է. յունաց բաժնի Հայերը պարտաւորուած չէին ասորոց գիրը գործ գնել այլ միայն յունաց. ասորոց գիրը և լեզուն երգւում և կարդացւում էր պարսից բաժնի Հայաստանում, ուր մինչև անգամ յունարէնն արգելուած էր պարսից պետութիւնից:

և օժանդակութեամբ յօրինում է նաև *վրացերէն տառեր*․ Մեսրոպի այս ձեռնարկութեան աջակցում են վրաց թագաւոր „Բակուր“ն և Մովսէս եպիսկոպոսը։ Ապա աշակերտներ ժողովելով բաժանում է նոցա երկու դասակարգի և ուսուցիչ կարգում իւր աշակերտներից երկուսին „*Տէր խորձենացուն*“ և „*Մուշէ Տարօնեցուն*“։ Այնուհետև Մեսրոպ գնում է „*Աղուանք*“ [13]) և նոցա թագաւոր „Արսվաղէն“ի և „եպիսկոպոսապետ Երեմիայի“ օժանդակութեամբ ժողովում է աշակերտներ և ուսուցանում։ Այստեղ Մեսրոպին յաջողւում է „Բենիամին“ հմուտ թարգմանի ձեռնտուութեամբ աղուանից կոկորդախօս, կոշտ, բարբարոսական և կոտրտուած լեզուի համար („որովք ստեղծ զնշանագիրս կոկորդախօս աղխագուր խժական խեցբեկագունին այնորիկ գարգարացւոց լեզուին“) և տառեր ձևակերպել և իւր Յովնաթան աշակերտին թողնելով այնտեղ՝ ինքը դառնում է Հայաստան սկսած գործը շարունակելու համար։ Եւ „գտանէ զմեծն Սահակ *թարգմանութեան պարապեալ յասորոյն* յոչ լինելոյ յունի։ Քանզի նախ ի Մերուժանայ *այրեալ լինէին* ընդհանուր աշխարհիս *յոյն գիրք*․ դարձեալ ի բաժանել դաշխարհս Հայոց՝ չտային պարսիկ վերակացուքն յոյն ուսա-

---

[13]) «.... *և աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա կոչեցան Աղուանք, զի աղու ճայնէին զնա*»։ Տես. Խորենացի. նոյնը. գիրք II. գլխ. ը. էջ 113։ Նոյնը կրկնում է Մովսէս Կաղանկատուացին. տես. „Исторія Агванъ“ М. Каганкатваци. պրոֆ. Պատկանեանի թարգմանութիւնը. գլխ. 4. էջ 5։ Պրոֆ. Պատկանեան ծանօթութեան մէջ գրում է. «Կարապետ Շահնազարեանց իւր՝ կաղանկատուացու պատմութեան հրատարակութեան յառաջաբանում այն եզրակացութեան է գալիս, որ այդ Աղուանք անունը յառաջ է գալիս այն պատճառաւ, որ այդ ժողովուրդը «գոշ» աչքեր և մազեր ունէր կամ թէ լեռնոտ երկրում կենդանաբուծութեամբ էր պարապում։ Լատիներէն „albus“, քելտերէն „alb“, գերմաներէն „Alp“ նշանակում են լեռնոտ. տես. Ист. Агванъ. նոյնը. յաւելուած I մասի ծթ, էջ 285։

նել դպրութիւն ումեք յիւրեանց մասինն, այլ միայն ասորի“։ [14])

Երբ Սահակ Պարթև կաթուղիկոսը թողնելով պարսից քաժինը գնում է յունաց բաժնիՀայաստան ու արժանավայել ընդունելութիւն չէ գտնում այնտեղ, ուղարկում է Սուրբ Մեսրոպին և իւր թոռը Վարդանին Բիւզանդիոն երեք նամակով։ Այդ նամակներից մէկն ուղղուած էր Թէոդոս կայսեր [15]), որի մէջ կաթողիկոսը գանգատւում է. „... ոչ հանդիպեցայ ընդունելութեան յիմում վիճակիս ի հրամանէ վերակացուացս սոցա. այնչափ առեցեալ զմեզ, մինչեւ զնշանագիրս անգամ ոչ ընկալան, զորս երեր նոյն այր՝ զոր առաքեցի առ ձեր բարերարութիւնդ, բազում անգամ ճգնեալ դորա յԱսորւոց աշխարհին“, և ապա խնդրում է. „... հրամայել ընդունել զմեզ և զվարդապետութիւնս մեր“։

Երկրորդ նամակն ուղղուած էր Բիւզանդիոնի եպիսկոպոս „Ատտիկոսին“ [16]), որի մէջ սուրբ Սահակը Մեսրոպին տալիս է հետևեալ նշանաւոր և նորա մեծ նշանակութիւնը ճանաչող տիտղոսը. „...առաքեցի զուսուցող մերոյ աշխարհիս Մեսրոպ“։

Երրորդ նամակն ուղղուած էր „Անատոլիոս“ [17]) զօրա-

---

[14]) Տես. Մ. Խորենացի. նոյնը գիրք III. գլխ. ծդ. էջ 371.

[15]) Պ. Կոստանեանցը խօսելով այս դեսպանութեան մասին ասում է. «ինչպէս գիտենք Վարդանը 404—406 թուականին սուրբ Մեսրոպի հետ դեսպան գնաց Բիւզանդիոն»։ Տես. Կոստանեանց «Հիւսուածք» հատ. III. էջ 100.

404—406 թ. սխալ լինելը կարևոր չէ այլ ապացոյցների, ըստ զի Թէոդոս բ. կայսրն, որին Սահակ պարթև նամակ է ուղարկում, թագաւորեց 408 թուին։

[16]) «որ էր բնիկ ի հայոց ազգէ և ի քաղաքէն Սեբաստիոյ —ըստ Սոկրատայ և ըստ այլոց»։ Տես. Չամչեան. նոյնը. հատ. I. էջ 503.

[17]) «...Անատոլիոս զօրավարը, ըստ Լանգլուայի, մեծ յար-

վարին, որի մէջ և սուրբ Մեսրոպ կոչւում է „մեր ուսուցանող“.

Անատոլիոսը պատւով ընդունում է Մեսրոպին, որովհետև „գլուր առաքինութեան Մեսրոպայ յիշեալ, որ յառաջագոյն հնչեցեալ էր զնմանէ“. և ուղարկում է Բիւզանդիոն։ Դեսպանութիւնը կայսեր կողմից պատւով ընդունւում է— „յանդիման եղեալ մեծի թագաւորին, առին զոր յուսային և զոր ոչն յուսային“—և դառնում Հայաստան կայսեր և Ատտիկոս եպիսկոպոսի նամակներով։

Թէոդոս II. կայսրը Սահակ Պարթևին գրած պատասխանի մէջ յանդիմանում է կաթուղիկոսին. „զի ամենայն սրտիւ միտեցար զհետ հեթանոս թագաւորի, և մեզ և ոչ թղթով բաւականացար ծանօթանալ։ Եւ առաւել յայսմ մեղադիր եմք, զի արհամարհեալ զճարտարօքս, որ ի մերում քաղաքիս, յԱսորեաց ոմանց խնդրէիր զիմաստից գիւտ։ Վասն որոյ հաճեալ էաք ընդ մերոյ ծառայից արհամարհել զայսպիսի ուսմունս. բայց զի յետոյ պատմեաց մեզ Մեսրոպ, թէ կատարումն արուեստիդ ի շնորհաց վերնոյն եղև, գրեցաք՝ զի ամենայն փութով ուսցին և զքեզ պատւով

---

գանք էր վայելում Թէոդոս փոքրի թագաւորութեան ժամանակ. տես. Langlois: Collection etc. հատ. II. էջ 165 ծթ. 1.

«Անատոլեայ զօրավարի ընկալեալ զհրաման արքունի, եկեալ յաշխարհս մեր և շրջեալ ընդ բաղում կողմանս մեր, հաճի ի գաւառին Կարնոյ իբրև ի միջոցի շինել զքաղաքն արգաւանդահող... և անուանեաց Թէոդուպօլիս, զի յիշատակաւ քաղաքին անմահ լիցի անունն»—Տես. Մ. Խորենացի գիրք III. գլխ. ծթ. էջ 385—387.

Վարդան պատմագիրն իւր „աշխարհացոյց ամենայն տիեզերաց՝ աշխատութեան մէջ ասում է. „Կարնոյ քաղաքն՝ Արզրում է, որ կոչի Թէոդուպոլիս, զոր պարսպեաց թագաւորն փոքր Թէոդոս. և էին վերակացուք գործոյն Մովսէս քերթողն եւ Դաւիթ Անյաղթ փիլիսոփայն“։ Տես. „Ռսկեփորիկ“։ գլխ

ընկալցին...։ Եւ հրամայեցաք քաղաք [18]) շինել յաշխարհիդ Հայոց՝ յապաւինութիւն ձեզ և մերոց զօրաց։ Եւ վասն քո արարաք ստրատելատ [19]) զՎարդան զորդի որդիացելոյ քո, և յառաջին վարդապետսն գրեցաք զՄեսրոպ։

Առաքելոս եպիսկոպոսն ևս իւր կողմից յանդիմանում է Սահակին, որ նա տառերի «գիւտի համար փոխանակ Բիւզանդիան դիմելու և «Յովհաննէս Ոսկեբերանից» խորհուրդ հարցնելու, կամենում է. «ի սահմանական Ջրոց զփափագ ծարաւոյն յագեցուցանել»—ակնարկում է ասորական գիւտութիւնը—սակայն նոյնպէս ուրախութիւն է յայտնում, որ «ամենակալին տեսեալ զնորա աշխատութիւնն, ըղխեաց ի ծեզ զշնորհս Հոգւոյն...» և վերջը յայտնում է, որ «Հրամանաւ ինքնակալին Աւգոստոսի տուեալ լիցի քեզ իշխանութիւն վարդապետել զկողմնդ մեր. և աղանդոյդ բորբորիտոնաց՝ կամ

---

ըթ. տպուած է „Բազմավէպ"ի խե. հատորի մէջ (1887) էջ 138։ Տես. նոյնպէս Saint-Martin. „Memoires sur l'Arménie" II. հատ. էջ 426. նոյնպէս. Dulaurier: Extrait de la chronique de Michel le Syrien" տպուած է Journal Asiatique հատ. XIII. էջ 349. Կարին քաղաքի շինութիւնը զանազան պատմագիրներ զանազան թուականներին են վերագրում. Մխիթար Այրիվանեցին ընդունում է 452 թ. Սամուէլ Անեցին 444 թ. Բիւզանդական պատմագիրներից շատերը 416 թ. իսկ Սէն-Մարտէնը 415 թ.— Տես. Bulletin de l'acad. etc. հատ. VIII. էջ 407։

18) Կարնոյ նահանգը հնումը կոչւում էր նոյնպէս „Կարանիտիս"—տես. S.-Martin: Hist. du Bas-Emp. etc. հատ. 5. էջ 446. նոյնպէս և Mémoires etc. հատ. I. էջ 44.—Կարինն ևս պատմական անուն դառնալով՝ այդ քաղաքն այժմ կոչւում է պաշտօնապէս „Արզրում", որ ըստ Սէն-Մարտէնի ծագում է „Արծն" անունից „...Arzenerroum, ou par contraction Arzroum, c'est-à-dire Arzen des Romains": տես. S-Martin Hist. etc. հատ. V էջ 448. նոյնպէս Mémoires etc. հատ. I. էջ 68։ Լանգլուան այդ բացատրութիւնը հաւանական է գտնում տես. Langlois: Collection etc. II. էջ 167.

19) Ստրատելատոս կոչւում էին բիւզանդական զօրքի զօրավարները։

հաւանել, և կամ հալածել ի քումմէ վիճակէդ։ Եւ զառաքեալս ի քէն զՄեսրոպ ձեռնադրեցաք լինել եկղեսիաստիկոս» [20])։

Սբ. Մեսրոպը վերադառնալով Յունա-Հայաստան՝ անմիջապէս սկսում է հայոց դպրութեան ուսուցումն. «զոր անյապաղաբար սկսեալ ուսուցանել երագապէս փութապետեցին զկողմն արևմտեան, որպէս զարևելից»։—Այսպիսով ամբողջ Հայաստանում՝ տարածւում է հայերէն տառերի հետ նաև հայկական դպրութեան և բուն ազգային ոգին։—Սուրբ Սահակը քաղաքական պատճառներով անցնելով Պարսկա-Հայաստան, Մեսրոպին թողնում է յունաց բաժնում շարունակելու իւր գործն և «բորբորիտոն» [21]) աղանդաւորների դէմ մարտնչելու։

Մեսրոպ «Ծաղգոմքն» անուանած տեղում վերջացնելով հայ դպրութեան ուսուցման ընթացքն իւր առաջին աշակերտների հետ «քանզի ոչ որպէս արուեստ ուսուցանէր, այլ իբրև զհոգի առաքելաբար աշակերտելոցն տայր», կարգում է նոցա տեսուչներ. «զՂևոնդ և զԵնովք ի Սպեր, իսկ ի Դերջան՝ զնոյին եպիսկոպոսն զԳնիթ և յեկեղեաց՝ [22]) զԴանան,

[20]) Մեր նպատակից դուրս է քննել Խորենացու յառաջ բերած այս նամակների ճշտութիւնը. միայն այնչափ կասենք, որ սոցա բովանդակութիւնն և ձևը չի կարող համապատասխանել բնագիր նամակներին, եթէ դոքա գոյութիւն ունէին, որ անհաւանական չէ։

[21]) Բորբորիտոնները գնոստիկական հերետիկոսների ամենատեղի աղանդաւորներն էին։

[22]) „Սպեր“, „Դերջան“ և „Եկեղեաց“ գաւառները գտանւում են „Բարձր Հայք“ում։

„მჭლეცით“ անունը յիշուած է վրաց Վախտանգ V-րդ արքայի „Վրաց պատմութեան“ մէջ. Փառնաւազը պատերազմելով Ազոնի հետ, յաղթում է նորան և յունաց երկրի սահմանները, „Անձիանձորի“ —„ანძანძორი“ և „էքլէցիթ“—„მჭლეცით“ երկիրները կողոպտում. տես. Iul. Klaproth: Reise in den Kaukasus und nach Georgien հատ. II. էջ 97։

ինքն «եկեալ յԱյրարատ, անցանէ յառաջնոյ բնակութեան
ւառն գաղթն», վասն զի հեթանոսութեան սերմերը մնա-
լ այնտեղ, վերջին ժամանակներն, երբ Հայաստանը քա-
քականապէս ընկել էր, մեծ յառաջադիմութիւն էր անում։
եսրոպին յաջողւում է գաւառի իշխանի օժանդակութեամբ
րականգնել քրիստոնէական վարդապետութիւնն և իւր յա-
րդ նշանակելով «Մուշէն եպիսկոպոսին, ինքն դառնայ
արգմանայ ձորայն», ուրեղ բուն էին դրել աշանդաւոր-
րն. այստեղ ևս յաջողւում է նորան դարձմանաց իշխան
ուրսին և իւր ժողովրդին քրիստոնէութեան ուղիղ շա-
ղի վերայ դնել։ Սորանից յետոյ Մեսրոպ գուգարաց իշխան
շուշայի [23]) հրաւէրով գնում է «Տաշրաց» գաւառը քրիս-
նէութիւնը վարդապետելու և հայ դպրութիւնն ուսուցա-
լու։

Միւս կողմից յառաջ էր գնում թարգմանութեան գոր-
ը. Յովսէփ և Եզնիկ Կողբացի աշակերտներն ուղարկւում են
իջագետքի Եդեսիայ քաղաքն, որպէս զի սուրբ հարց գը-
ւածքները թարգմանեն հայերէն և բերեն. սակայն սոքա
մակներ ստանալով, որ էբրև թէ Սահակ և Մեսրոպ այ-
ց պէտք է Բիւզանդիոն ուղարկեն նոյն նպատակի համար,
նմիջապէս թողնում են Եդեսիան և ուղևորւում Կ. Պոլիս
նախանձաւոր բարեաց եղեալ ուսմանց. եւ քաջ վարժեալ
եղէն դպրութեամբ, ձեռնարկեցին ի թարգմանել եւ ի գրել»։
Մեսրոպի աշակերտներից «Ղևոնդ» և «Կորիւն» բարի նա-

[23]) Այս ինքնակալը յայտնի է Պարիզի կայսերական շքա-
րաններ կաբինետում պահուած մի խիստ հետաքրքրական յիշա-
ակարանի շնորհիւ։ Նորա պրօֆիլ կիսարձանը փորագրուած է
իքս քարի վերայ, շուրջը կարդացւում է այս աւանդութիւնը
վասա պիտիաքսես իբ(?)երօն կարկեդօն—Օվսաս բառը ոչ
ըլ ինչ է, բայց եթէ Աշուշայ անունը, որ անճանաչելի է
արձել փորագրողի շնորհիւ։ Տես. Langlois: Collection etc.
ու. II. էջ 167. ծթ. 2։

խանձով լցուած դէպի իւրեանց ընկերներն, իբանք ևս շտապում են գնալ Բիւզանդիոն նոցա մօտ. նոյնն անում են և «Յովհան» և «Արձան» աշակերտներն, որոնք վաղուց ուղարկուած, սակայն ճանապարհին ուշացել էին Ղեւոնդեայ մնալով։ Սահակի և Մեսրոպի աշակերտներն սիրով ընդունւում են Բիւզանդիոնում Մաքսիմիանոս [24]) եպիսկոպոսից։

Եփեսոսի ժողովից յետոյ, երբ մեր թարգմանիչները վերադառնում են Բիւզանդիոնից [25]), իւրեանց ուսուցիչներին՝ Սահակին և Մեսրոպին գտնում են Տարօնի Աշտիշատում և դոցա ներկայացնում այդ ժողովի կանոններն և սուրբ գրոց ստոյգ օրինակներն. «զոր առեալ մեծին Սահակայ և Մեսրոպայ, դարձեալ թարգմանեցին զմի անգամ թարգմանեալն, փութանակի հանդերձ նոքօք վերստին յօրինել նորոգմամբ։ Բայց քանզի անգէտք էին մերում արուեստի, ի բազում մասանց թերացեալ գործն գտանէր. վասն որոյ առեալ մեծին Սահակայ և Մեսրոպայ զմեզ առաքեցին յԱղեքսանդրիայ՝

[24]) Տես. Մ. Խորենացի, նոյնը գիրք III. գլխ. կ. էջ 387—389. „Որոց ընդունելութիւն արար Մաքսիմիանոս եպիսկոպոսն Բիւզանդացւոց“։ Այստեղ նկատում է Լանգլուան. „Սիսինոս, Ատտիկոսի յաջորդը 426 թուին և Նեստորիոսի և Մաքսիմիանի նախորդը, սիրալիր ընդունելութիւն արաւ Սահակի և Մեսրոպի ուղարկուածներին, բայց Մովսէսը խօսում է միայն Մաքսիմիանի մասին առանց բացատրելու Սիսինիոսի վերաբերութեամբ լռելու պատճառը. Մաքսիմիանը յաջորդել է Նեստորիոսին 431“. տես. Langlois նոյնը հատ. II. էջ 168 ծթ. 1։

[25]) „Եւ վասն զի ոչ հանդիպեցան յայնմ ժողովի (Եփեսոսի ժողովին ընդդէմ Նեստորի, որ տեղի ունեցաւ 431 թ. տես. Langlois հատ. II. էջ 168. նոյնպէս Brosset: „Collection d'Historiens Arménien“ հատ. II. էջ 380. ծթ. 6) Մեծն Սահակ և Մեսրոպ, գրեն առ նոսա „Կիւրեղ“ աղեքսանդրացի և „Պրոկղոս“ Կոստանդնուպօլսի և „Ակակ“ Մելիտինոյ եպիսկոպոսք։ Պրոկղոսի նամակները յունարէն լեզուով, գտանւում են նանի ժողովի հաւաքածուի մէջ. հատ. V. էջ 422.

ի լեզու պանծալի, ի սորին յօգանալ ճեմարանին վերաբերութեան» [26])։

Այս Խորենացին գեղեցիկ բանաստեղծական ոճով նկարագրում է համառօտ կերպիւ իւր ճանապարհորդութիւնը դէպ *Եդեսիայ* [27]), *Պաղեստինայ, Եգիպտոս, Աղեքսանդրիայ*, այդտեղից կամենալով Յունաստան գնալ՝ հողմի բռնութեամբ ընկնում է *Իտալիայ* և այցելում *Հռոմ*. ապա թէ գնալով *Յունաստան*՝ այցելում է Ատտիկէ, մի փոքր ժամանակ մնում *Աթէնք* [28]) և նաւում Բիւզանդիայ [29])։

---

[26]) Տես Մ. Խորենացի գիրք III. գլխ. կա. էջ 391.
Հին կտակարանի հայերէն թարգմանութեան բնագիրն եղել է „*եօթանասնից*' կոչուածը։ Եօթանասնից թարգմանութիւնը տեղի ունեցաւ Աղեքսանդրիայում" եբրայերէնից-յունարէնի. այս թարգմանութեան տարբեր գրքերը թարգմանել են տարբեր անձինք՝ զանազան ժամանակներում։ Թարգմանութիւնը վերջացել է հաւանականաբար *երկրորդ* դարու երկրորդ կիսում։

[27]) Եդեսիոյ դպրոցն արևելեան ուսումնասիրութեան կենդրոնն էր յունաց և պարսից հպատակների համար. պարսից հպատակ քրիստոնեայ երիտասարդները այցելում էին այդ դպրոցը։ Եւ երբ այդ դպրոցն եկեղեցական երկպառակութեանց շնորհիւ կործանուեցաւ, պարսից հպատակ քրիստոնեաները չէին կամենում զրկուել դորանից—Եդեսիոյ դպրոցը փակուեցաւ 489 թ. Զէնօ կայսեր հրամանաւ—ուստի Մծբին քաղաքում, ուր առաջուց գոյութիւն ունէր դորա նման մի դպրոց, վերականգնեցին Եդեսիոյ դպրոցը։

„Այս դպրոցին էն պարտական, ասում է Ռանքէն, Սասանեան պետութեան քրիստոնեայ հպատակներն իւրեանց քաղաքակրթութիւնը։ Այս դպրոցը հանդիսանում է պաշտպան քրիստոնէական գաղափարների՝ ընդդէմ յառաջ մղուող կռապաշտութեան"։ Տես. Ranke: Weltgeschichte հատ. V. մասն. 1. էջ 14։

[28]) Աթէնքի դպրոցը, որ ծաղկեց չորրորդ դարում Յուլիանոսի, Պրօյերեսիոսի—հռետոր Պարոյր Հայկազն—Հիմերիոսի և այլոց ժամանակ, չորրորդ դարու վերջերին արդէն իւր անկման վերայ էր. մինչ Աղեքսանդրիայի դպրոցը մի փոքր առաւել երկարատև եղաւ։

[29]) Տես. Խորենացի գիրք III. գլխ. կբ. էջ 392—394։

Սակայն երբ Խորենացին վերադառնալով Հայաստան՝ յուսայաք հարսանեաց պարել՝ անվեհեր երագութեամբ կըր-թեալք, և առագաստի առնել երգս, արդ փոխանակ խրախճա-նութեանն՝ ի վերայ գերեզմանի ողբս ասելով ողորմելի հա-ռաչեմ. ուր և ոչ տեսութեանն ժամանեցի աչաց նոցա կա-փուցմանց, և լսել զվերջին բարբառն և զօրհնութիւն։

---

Թէոդոս II կայսրն, որ միշտ պաշտպան էր հանդիսանում գիտութեանց և արուեստի, հիմնեց Կ. Պօլսի ճեմարանը 425 թ. որ ունէր 20 ամբիոն քերականութեան համար. 10 յունաց և նոյնչափ լատինական լեզուի համար, 8 հռետորութեան, 1 փի-լիսոփայութեան և 2 իրաւաբանութեան համար։—Խորենացին իւր ճանապարհորդութիւնը նկարագրելիս չէ յիշում իսկապէս թէ ե՞րբ է եղել այն ինչ տեղն և ո՞րչափ ժամանակ մնացել՝ ամեն անգամ ասելով. „ոչ բազում կացեալ“, „սակաւ ինչ մնա-ցեալ“, „թեթևակի ընդ խորս գիտանին նաւեալ“, „մնալ վայր-կեանս“ և այլն. որ կարող է մի երկու շաբաթ և միևնոյն ժա-մանակ մի երկու տարի նշանակել։ Սէն-Մարտէնի հաշուով Խորենացին եօթը տարի պէտք է ուսած լինի Աղեքսանդ-րիայում. „Il habita sept ans en Egypte“ տես. S.-M. Hist. etc. հատ. VI. էջ 45։

Այս թիւը կամայական է և ոչինչ հաստատ հիմք չկայ այդ ըն-դունելու համար։ Բաումգարտները համաձայնելով „Գէ-տէր“ի հետ, ենթադրում է, որ ամբողջ ճանապարհորդութիւնը պէտք է տևած լինի տասը տարի։ Տես. Baumgartner Über das Buch „die Chrie“ էջ 497.—Թէև այս թիւն էլ հաստատ հիմք չունի, բայց աւելի հաւանական ենթադրութիւն է. սահմաններն են Աշտիշատի ժողովն և սուրբ Սահակայ և Մեսրոպայ մահը։ Թէև կայ մի այլ լիակատար նկարագրութիւն Խորենացու և Դաւիթ Անյաղթի ճանապարհորդութեան, սակայն այդ աղբիւրի ճշտութիւնը շատ կասկածելի է, ուստի և չենք հետևում դորան. այդ աղբիւրը հրատարակել է գեր. Սրուանձ-տեան եպիսկոպոսն իւր „Հնոց-Նորոց“ աշխատութեան մէջ, որի պակասը լրացնում է Պարիզում գտանուած մի այլ ձեռագիր Սրուանձտեանի հրատարակութիւնը կրում է „Հարցմունք Քաղ-կեդոնականաց եւ պատասխանք ի Մովսիսէ եւ Դաւթայ“։

Մեծն Սահակը յիսուն եւ մէկ տարի կաթուղիկո-
սկան ծանր պաշտօնը վարելուց յետոյ վախճանւում է «յելս
մայն Նաւասարդի, յաւուր իւրոյ ծննդեանն»։ «Որ մահկա-
ւցու ծնեալ, անմահ զիւրն յիշատակ եթող. պատուեաց
կարկերն, պատկառեաց ի կուշնականէն, փոխանորդեաց
եանսն. և այսքան կենցաղավարեաց՝ իբր զի ոչ պակասու-
թիւն իրիք մասն ի ծերութենէն եղանիլ, և ոչ յախտից
ընդունելու։ Այս մեծ մարդու մարմինը թաղւում է Տարօ-
Աշտիշատ գիւղում, որ իւր սեպհական կալուածն էր։
Հայաստանի այդ լուսաւորիչ աստղի ընկնելուց յետոյ
ւցնում է միայն վեց ամիս, և ահա փոխւում է երկրորդ
յծառ լուսատուն՝ «Հայ աշխարհի ուսուցանող» սուրբ Մես-
ապը՝ Վաղարշապատում. «գերազանցեալ քան զամենայն, որք
յնու ժամանակու էին առաքինիք։ Քանզի ամբարտաւա-
ւթիւն և մարդահաճութիւն ի նորա վարս տեղի գտանել
րէք ոչ կարացին. այլ հեզ և լաւակամ և բարեխորհուրդ
լով, և երկնայնոցն զարդարեալ սովորութեամբք զինքն բո-
րից ցուցանէր։ Վասն զի գոյր տեսլեամբ հրեշտակական,
ոք ծննդական, բանիւք պայծառ, գործովք ժուժկալ, մարմ-
ով արտափայլեալ, սարասիւք անճառ, խորհրդակցութեամբ
եծ, հաւատով ուղիղ, յուսով համբերող, սիրով անկեղծա-
որ, ուսուցանելով անձանձրոյթ»։ Այս սուրբ մարդու մահը
տեւեալ կերպիւ է նկարագրում Խորենացին. «Որպէս լու-
լ ի բազմաց և ի հաւատարիմ արանց, եթէ եկաց լոյս շո-
պէս ընդ աղօտ նշան խաչի ի վերայ տանն, ուր երանե-
ն զհոգին աւանդեաց. ոչ փոյթ ընդ փոյթ լեալ՝ էանց՝ ծա-
ումն, կամ սակաւուց տեսանելի, այլ ամենայն բազմութեանն,
ինչ յոլովից մկրտել յանհաւատից։ Ցայնժամ լեալ աղմուկ
ոթի յամբոխութեանն, բաժանեալ յերիս գունդս, վասն
նդուցանելոյ զպարկեշտն զայն մարմին և նախ քան զմա-
ն կրթեալ ի մեռելութիւն։ Կէսքն առէին տանել ի բնա-
ւան իւր ՛ի Տարօն, և ոմանք ի նախ աշակերտեալն

Գողթն, և այլքն անդէն ի Վաղարշապատ քաղաքի ի սըրբոցն գիրս։ Բայց յաղթեալ քաջն Վահան Ամատունի, զի էր զօրաւոր հաւատովք և ճոխութեամբ մարմնաւորաւ. վասն զի ի ժամանակին յայնմիկ ի նա էր հաւատացեալ պարուց զհազարապետութիւն Հայոց աշխարհիս. որոյ բարձեալ տարաւ զնա արժանի յուղարկմամբ յիւր գիւղն *Օշական*. և նոյն տեսիլ լուսեղէն խաչին ի վերայ երթեալ գագաղացն՝ յանդիման ամենայն ժողովրդեանն, մինչև ի հանդիստ զնա փոխեցին Վահան և Թաթիկ նորին արբանեակք. և ապա նշանն աներևոյթ լինէր։ Իսկ զաթոռ եպիսկոպոսապետութեանն տեղապահութեամբ յաջորդեաց հրամանաւ երանելոյն Մեսրոպայ նորին աշակերտ Յովսէփ քահանայ ի Վայոց ձորոյ, ի Խողոցիմ գեղջէ» [30])։

Թէ ինչ հետևանք ունեցաւ այս երկու մեծ մարդկանց մահն, ոչ ոք այնպէս գեղեցիկ և սրտառուչ կերպիւ չի կարող նկարագրել, ինչպէս Մ. Խորենացին իւր *ողբի* մէջ. «Ող-

---

[31]) Տես. Խ ո ր ե ն ա ց ի գիրք III. գլխ. կէ. էջ 406—409։

*Օշական* գիւղը, ուր ամփոփուեցաւ սուրբ Մեսրոպի մարմինը, գտնւում է սուրբ Էջմիածնից դէպի հիւսիս, մօտ երկու ժամ հեռաւորութեամբ Վաղարշապատից. այժմ այդ գիւղը Մայր-Աթոռի սեպհական հինգ կալուածական գիւղերից մէկն է և մօտ 300 տուն բնակիչ ունի։ Սուրբ Մեսրոպի գերեզմանի վերայ արդէն Վահան Ամատունին մի հոյակապ եկեղեցի էր կառուցել, որ 1639 թ. նորոգեց Փիլիպպոս կաթուղիկոսը։ Իսկ այժմեան փառահեղ սրբատաշ քարից շինած տաճարը կառուցեց երջանկայիշատակ Գէորգ Դ. կաթուղիկոսը. տաճարի դրան վերայ գրուած է. «Ողորմածութեամբ Աստուծոյ սրբազնակատար հայրապետ ամենայն հայոց տ. տ. Գէորգ Դ. կաթողիկոս վերակառոյց ի հիմանց զայս եկեղեցի Օշական գեղջս, եւ զդամբարան սրբոյն Մեսրոպայ թարգմանչի մերոյ որ ի սմա, տրօք հայոց Ռուսաստանի. յամի 1879 եւ հայոց ՌՅԻԸ»։ Եկեղեցւոյ սեղանի վէմ քարի տակ գտնուող այրի մէջ ամփոփուած է սուրբ Մեսրոպի գերեզմանը։

բամ զքեզ, Հայոց աշխարհ, ողբամ զքեզ, հանուրց հիւսիսականաց վեհագոյն. զի բարձաւ թագաւոր և քահանայ, խորհրդական եւ ուսուցող. վրդովեցաւ խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն. գրդուեցաւ ուղղափառութիւն, կալկալեցաւ տգիտութեամբ չարափառութիւն։ Ողորմիմ քեզ, եկեղեցի Հայաստանեայց, խրթնացեալ ի բարեզարդութենէ բեմբին, ի քաջէն զրկեալ հովուէ եւ հովուակցէ։ Ոչ ևս տեսանեմ զբանաւոր քո հօտ ի վայրի դալարուոջ և առ ջուրս հանգստեան տածեալս, և ոչ ի փարախ հաւաքեալ՝ զգուշանալով ի գայլոց, այլ ցրուեալս անապատաց և գահաւիժութեանց։ Երանի առաջնոյ եւ երկրորդի փոփոխմանն. զի էր ինչ ժամանակ հեռանալոյ փեսային և փեսաւէրին, և հարսնդ համբերեցեր՝ ողջախոհութեամբ զամուսնութիւն պահելով, որպէս ոմն նախ քան զմեզ իմաստասիրեաց...։

Ընդ Քրիստոսի լաւ է Նոցա բնակել, և յաբրահամեանն հանգչել գոգս, և զհրեշտակացն տեսանել պարաւորութիւնըս։ Բայց անհոգող դու այրութեամբդ, և եղկելիք մեք՝ որ զրկեցաք ի հայրենի վերակացութենէն։ Զի ոչ որպէս ի հընումն ժողովուրդն այն, այլ առաւել մեր է թշուառութիւն...։ Այժմ մարտք ի ներքուստ և արհաւիրք արտաքուստ, արհաւիրք ի հեթանոսաց և մարտք ի հերձուածողաց, և խորհրդականն չէ ի միջի՝ որ խրատէր և յարմարէր ի պատերազմ։ Աւա՜ղ զրկանացս, աւա՜ղ թշուառական պատմութեանս. ո՞րպէս զախտս հանդուրժեցից բերել, զիա՞րդ զմիտս իմ՝ եւ զլեզուս պնդեցից... Այսպիսեաւ անձկաւ հեղձամղձուկ եղեալ՝ վտանգիմ կարօտութեամբ մերոյ հօրն։ Ո՞ւր է քաղցր աչացն հանդարտութիւն առ ուղիղս և ահաւորութիւն առ թիւրս, ո՞ւր զուարթ շրթանցն ժպտումն առ բարի աշակերտացն հանդիպումն, ո՞ւր խնդամիտ սիրտն ընդունող արբանեկաց, ո՞ւր երկայն ճանապարհաց յոյս հեշտացուցիչ, աշխատութեանցն հանգուցող։ Կորեաւ ժողովողն, թագեաւ նաւահանգիստն, ելիք օգնականն, լռեաց ձայնն յոր-

ողբոցուցիչ։ Ո՞վ այսուհետեւ զմերս յարգեսցէ զուարճումն, ո՞վ ուրախասցի ընդ առաջադիմութիւն աշակերտաց, ո՞վ զհայրականն բարբառեսցի զուարճութիւն, մասամբ ինչ յաղթահարեալ յորդւոյս։ Ո՞վ կարկեսցէ զյանդգնութիւնն ընդդէմ առողջ վարդապետութեանն հակառակ յարուցելոցն . . . Զմտաւ զայսոսիկ ածելով, յառաչումն յիս ի ներքս ընթանայ եւ արտօսր, և կամեցուցանէ բարբառել բան ողբական և սգաւոր։ Եւ ոչ գիտեմ, եթէ զի՞որդ յարմարեցից զողբերգութիւնս, կամ զո՞վ արտասուեցից։ Զհէքն իմ մանուկ և թագաւոր, զխորհրդակցութեամբ վատթար՝ ազգաւ ի բաց ընկեցին, և նախ քան զմահ մեռելութիւն անփառութեամբ՝ յաթոռոյն ի վայր կործանեալ, եթէ զիս ինքն, զի վերացաւ ի գլխոյս փարթամացուցիչ պսակն գեղեցիկ և կենցաղօգուտ։ Զհա՞յրն իմ եւ զքահանայապետ, զմիտս վսեմացեալս՝ որ երթայր տանէր կատարեալ բան, որով վարէրն և յարմարէր, և զերաստանակս ի բուռն առեալ՝ ուղղէր զդէմսն, և սանձահարէր զլեզուս օտարաձայնս, եթէ զիս թափուր ի հօգւոյն մնացեալս խանդից և ցականեալ։ Զծնո՞ղն իմ աղբիւր վարդապետական, զարգարութիւնն առոգող, և հեղեղաւ զամբարշտութիւն արտասահմանելով, եթէ զիս եբաշտացեալ և թարշամեալ պասքութեամբ արբուցմանց խրատու։ Զաշխարհէս եկեալ աղէտս, եթէ զապագայիցն ակնկալութիւն» 32)։

Ահա այսչափ է մեր մեծ պատմաբանի տուած տեղեկութիւնները «տառերի գիւտ»ի հանգամանքների և հետեւանքների մասին։

32) Տես. Մ. Խ ո ր ե ն ա ց ի, գիրք III. գլխ. կը. և վերջին էջ 409—414։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑՈՒ *) ՊԱՏՄԱԾԸ „ԳՐԻ ԳԻՐՑ"-Ի ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ղ. Փարպեցին պատմելով Վռամշապուհի հայոց թագաւոր կալւգուելը, յարակցում է, որ աՀա այդ թագաւորի

---

*) Ղազար Փարպեցին իւր մանկութեան տարիներն անցուցել է Վրաստանում, ՎաՀան Մամիկոնեանի և եղբարց Հետ՝ Աշուշայ Բդեշխի տանը. «Դարձեալ—գրում է Փարպեցին իւր՝ ՎաՀան Մամիկոնեանին ուղղուած թղթի մէջ—երանելի մայրն քո ...րժամ առ բդեշխն ած զձեզ, յորում դրան և զմեզ ուսուցա...ին, սակայն թէպէտ և ըստ տիոց աւագագոյնք քան զձեզ էաք, ...լ սննդակիցք էաք ձեզ և խաղակիցք, կրելով ի խաղու զարկա...լիս ձեր զկնի ձեր, մնուցանէ մայրն ձեր օրՀնեալ և Անուշ—...ամ ըստ իւրեանց Հոգեսիրութեանն և զմեզ ընդ ձեզ՝ որպէս ...եզ: Այլ ըստ այնմ ամենայնի քեզ Տեառն անկ էի: Իսկ ըստ ...աւելեալ շնորՀիս, զոր ետ ինձ Քրիստոս, եթէ արժանաւորի ...մ անարժանի, զայն տուիչն քաջ գիտաց: Ապա արդարև քեզ ...կ և արժանի»:—Տես. Ղ. Փարպեցի էջ 572:

Մեր պատմագիրներից և բանասէրներից ոմանք Ղ. Փարպե...ուն Համարում են աշակերտ սուրբ ՍաՀակի և Մեսրոպի. օրի...ակ Չամչեանն ասում է. «Ղ. Փարպեցի պատմագիր և ճարտասան ...չեցեալ, ի մանկութեան աշակերտեալ սրբոյն ՍաՀակայ եւ Մեսրոպայ, և ապա երանելոյն Աղանայ Արծրունւոյ»: Տես. Չամչեան, պատմութիւն Հայոց. Հատ. I. էջ 14. դարձեալ թէ. «Ղ.

*ժամանակ հոգացողութեան շնորհը տրուեցաւ ամենախնամ Աստուծուց՝ Մաշթոց անունով մի ճշմարիտ մարդուն, որ Տարօն գաւառի Հացեկաց գիւղից էր և Վարդան անունով մի*

---

*Փարպեցի թէպէտ և չէր յատուկ աշակերտ սրբոյն Սահակայ և Մեսրոպայ, բայց տեսեալ էր զնոսա, և ի տղայութեան ուսեալ էր ինչ ինչ ի դպրատան նոցա. և յետ մահու նոցին աշակերտեալ եղև երանելոյն Աղանայ»։ Տես. Չամչեան, Նոյնը. հատ. I. գիրք բ. գլխ. Կը. էջ 540։*

*Այս ենթադրութիւնը յառաջացել է երևի այն հանգամանքից, որ նոյն իսկ ինքը, Փարպեցին, ասում է իւր թղթի մէջ. «Զկեալ զիմ ի տղայութեանն՝ զայն Տէր ինք ինքնին քաջ գիտէ։ Տարեալ զիս ըստ Վարդապետաց իմոց հրամանի ի Հոռոմս, ժամանակեցի անդ. և եկեալ անտի կեցի առ կամսարականօք՝ յամենայն ամբոխմն, մինչև յամս նուաճման ձերոյ»։ Տես. Փարպեցի. էջ 570.*

*Սակայն ժամանակագրութիւնն ի նկատի առնելով, անկարելի է, որ Փարպեցու յիշած «վարդապետները» լինեն Սուրբ Սահակ և Մեսրոպ, որովհետև Փարպեցու երիտասարդութեան ժամանակ (երբ նա Յունաստան է գնում ուսման մէջ կատարելագործուելու) այդ երկու հանճարներն արդէն վաղուց վախճանուած էին։ Պատմական փաստերը ցոյց են տալիս, որ Ղ. Փարպեցին պէտք է ծնուած լինի 440—443 թ. (տես. Գ. Խալաթեան. Ղ. Փարպեցի և գործք նորին. էջ 7). իսկ սուրբ Սահակ և Մեսրոպ ի Տէր հանգեան 440—441 թ.։ Պարզ է ուրեմն, որ Փարպեցին չէր կարող Սահակ-Մեսրոպի աշակերտ լինել և նոցա հրամանով Յունաստան գնալ. այդպիսով և Փարպեցու յիշած «վարդապետներն» ուրիշները պէտք է լինին։ Հայր Զարբանալեանն իւր «Հայկական հին դպրութեան պատմութիւն» աշխատութեան մէջ խօսելով Փարպեցու մասին, ծանօթութեան մէջ յառաջ է բերում Գ. Խալաթեանի վերոյիշեալ վկայութիւնը՝ հեղինակին կոչելով «ազգային հըմուտ բանասէր» և ոչինչ չէ ընդիմաբանում (տես. Զարբանալեան, Նոյնը երկ. տիպ. էջ 371), սակայն յաջորդ էջի վերայ կրկին շարունակում է. «Աղանայ քով աշակերտեցաւ Ղազար, և երկար ատեն ուսմանց պարապելէն ետքը, իւր վարդապետացը՝ Սահակայ եւ Մեսրովպայ հրամանաւը Յունաստան գնաց»։ էջ 372.*

մարդու որդին. մանկական հասակում նա սովորելով յունաց դպրութիւնը՝ Հայոց Խոսրով արքայի պալատում զինուորական պաշտօն է վարում և ապա կարգւում է արքունի մա-

---

Ցունաստանից վերադառնալով՝ Փարպեցին գնում է Կամսարականների մօտ, երբ Հայաստանը քաղաքական խառնաշփոթ դրութեան մէջ էր. այս հանգամանքից ստիպուած նա գնում է Սիւնեաց երկիրը և ճգնաւորի կեանք վարում" ձմեռը մի քարայրի մէջ, հռչակուած կրօնաւոր Մովսէսի մօտ, իսկ ամառը Մուշէ կաթողիկոսի հետ—«Եւ զհետ այնորիկ որպէս թէ ձանձրացեալ յաշխարհութենէ շփոթից՝ կամեցայ պարապիլ աղօթից և հանգչել։ Եւ երթեալ ի Սիւնիս՝ կեցի անդ ամս երկուս. ձմեան ի քարայրի առ առն միում հռչակելոյ ի բնակչաց գաւառին յամենայն կրօնաւորութիւնս, որում անուն էր Մովսէս, և տեղին՝ Անձուկ. և զամառն յաղագս տօթոյ տեղւոյն՝ քահանայապետ աշխարհին՝ տէր Մուշէ, տանէր զիս առ ինքն, ուր և լինէր ի հովուս». տես, նոյնը էջ 570—571.

Ահա այդ ժամանակները Վահան Մամիկոնեանը Սիւնիք գալով վերցնում է իւր մօտ Փարպեցուն, որ արդէն «պարեգօտաւոր» էր.—«Արդ՝ զառաջինն կոչեալն իմոյ զվարս՝ տէր Ներսեհ և Հրահատ կամսարական՝ գիտեն. զՍիւնեացն՝ յառաջագրեալ եպիսկոպոսն աշխարհին։ Եւ դու յայց ելեալ խնդրել զիս, և գտեալ յաշխարհին յայնմ" ածեր ի տուն. ոչ իբրև զաղքատ զոք ի կաղմածէն և ի մանկտւոյն, և ոչ իբրև օտար զոք ի քէն և կամ զծառայ ուրուք. քանզի պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս։ Իսկ որ զառայցն զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս և ազատութեան եդև մեզ առիթ՝ Տէր Աղան՝ քո Տեառն քեռի էր։ Ըստ այդմ մասին ի Հայս քեզ Տեառն անկ էիր». Տես. նոյնը. էջ 571—572։

Փարպեցին իւր ժամանակի ամենանշանաւոր եկեղեցականներից մէկն էր և յետագայում աւելի հռչակուեցաւ իւր շարադրած պատմութեամբը. ահա թէ ինչ է ասում ինքն իրեն համար. «Եւ եմ ես այն Ղազար՝ ըստ առ ի քէն (Վահան Մամիկոնեանի) և այլոց բազմաց սատացածի, որում ոչ ոք գոյ փոխանակ։ Իսկ այժմ առ նախանձու աղէտի՝ բաղումք նկրտէին լինել իմ փոխանակ. բայց եթէ իցեն։» Նոյնը. էջ 573։

Ղազարը Փարպեցի է կոչւում իւր ծննդավայր „Փարպի"

տենագիր դպիրների շարքում [1], որովհետև այն ժամանակ Հայոց թագաւորի գործերը՝ վճիռները և Հրովարտակները ասորի և յոյն լեզուով էին գրւում։ Մի քանի տարի շարունակ այդ պաշտօնը անբիծ վարելով, թողնում է աշխարհիկ կեանքը և վանական դառնում. իբրև կրօնաւոր նա խիստ և զրկանքներով լի կեանք է վարում մինչև Խոսրովի եղբայր Վռամշապուհի թագաւորութեան հինգերորդ տարին։ Այսչափը պատմելով՝ Փարպեցին շարունակում է. եթէ մէկը հաւաստի կերպով և ճիշտ կամենում է Մաշթոցի և նորա գիւտի մասին տեղեկանալ՝ թող կարդայ Կորիւնի պատմութիւնը, որ ճշմարիտ պատմութիւն է և ինքը շատ անգամ կարդացել և հաւաստի տեղեկացել է [2]։

Այնուհետև Փարպեցին պատմում է, որ երանելի Մեսրոպը միշտ տրտմում էր, տեսնելով որ հայ երիտասարդները մեծ աշխատանքով և ահագին նիւթական կորուստներով իւրեանց կեանքը մաշում էին հայրենիքից դուրս՝ ասորոց դպրոցներում, որովհետև Հայոց եկեղեցւոյ ծիսակատարութիւնը տեղի էր ունենում ասորոց լեզուով, որ ժողովրդին

---

գիւղի անունով. այս գիւղն այժմ էլ գոյութիւն ունի և գտնւում է Աշտարակի մօտ։ Փարպի գիւղի մօտ է „Ղազրէվանք" (երևի Ղազարայ վանք) կոչուած աւերակը։

1) „.... Ի տիս մանկութեան իւրոյ ուսեալ դպրութիւն զյոյն, զինուորեալ ի դուռն Հայոց արքային Խոսրովայ, կարգեալ յերամ ատենագիր արքունի դպրացն". տես. Ղ. Փարպեցւոյ պատմութիւն Հայոց. էջ 33—34։

2) „.... Իսկ զայս թէ կամիցի ոք գիտել հաւաստեաւ՝ ի պատմութենէ գրոց առն ցանկալի Կորեան՝ աշակերտի նորին երանելւոյն Մաշթոցի, կարդացեալ տեղեկասցի զվարս կենաց նորա. և զիւր հայերէն նշանագրացն, թէ երբ կամ ուր, և կամ յոյր ուրուք ձեռն գտանէ, թագաւորին Հայոց Վռամշապուհոյ ջերմեռանդն խնդրելով. զոր կարգեաց գրելով ճշմարտապէս յառաջագրեալ այրն հոգևոր Կորիւն. ուստի և մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ հաւաստեաւ": Ղ: Փարպեցի էջ 35.

լորովին անհասկանալի էր [3]։ Սուրբ Մեսրոպն երկար ժա-
նակ մտածելով այդ մասին, փղձկում էր, մանաւանդ որ
յին հայերէն նշանագրեր, որոնցով կարելի էր սեպհական
ով և լեզուով ժողովրդի սիրտը շահել։ Նա զօրանալով
ւրբ Հոգու շնորհիւ, գնում է Սահակ Պարթև կաթուղի-
սի մօտ և յայտնում է նորան իւր բազմաժամանակեայ մը-
տանջութեան խնդիրը. սուրբ Սահակը քաջալերում է նո-
ն և ասում. վերցրու քեզ հետ և ուրիշ օգնական քահա-
աներ, որոց ես կ'նշանակեմ, և միասին աշխատեցէք. ուր
գժուարանաք վանկերը կարգելիս, բերէք ինձ մօտ և ես
ւղղեմ, որովհետև շատ հեշտ է քո ցանկացածը գտնել։
սկայն մենք առաջ պէտք է Թագաւորին իմաց տանք այս-
իսի մեծ և կարևոր գործի պէտքը. ոչ շատ ժամանակ ա-
աջ՝ եկեղեցում այդ խնդրի կարևորութեան մասին խօսելիս
էկն ասել է Թագաւորին, թէ մի գիւղում՝ մի եպիսկոպոսի
տ տեսել եմ հայերէն նշանագրեր. Թագաւորն լսում էր
դ խօսքերը և պատմեց ինձ [4]։

[3]) „.... Քանզի հոգացեալ յարաժամ՝ տրտմէր երանելի այրն
աշթոց՝ տեսանելով զմեծաջան ծախս մանկանցն Հայաստան աշ-
արհիս. որք բազում թոշակօք և հեռագնաց ճանապարհօք և
ազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի
պրոցս ասորի գիտութեան։ Քանզի պաշտօն եկեղեցւոյ և կար-
ացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին ի վանորայս և յեկե-
ցիս Հայաստան ժողովրդոց. յորմէ ոչինչ էին կարող լսել և
ւտել ժողովուրդքն այսպիսի մեծ աշխարհի, յանյօրութենէ լե-
ւին ասորոյ"։ Տես. Ղ. Փարպեցի էջ 35—36.
[4]) „Զայս ի բազում ժամանակս զմտաւ՝ ածեալ երանելին
ն Մաշթոցի, և փղձկացեալ յանձն իւր, մանաւանդ թէ գոն
անագիրք հայերէն լեզուայս, որով հնար է ինքեան ձայնիւ, և
մուրացածոյ բարբառով, շահել զոգիս արանց և կանանց առ-
ստարակ յամենայն եկեղեցիս բազմութեանն, զօրացեալ ի սուրբ
գւոյն յորդորմամբ, և եկեալ առ սուրբ կաթուղիկոսն Հայոց
ահակ՝ զեկուցանէր նմա զիւրոյ բազմաժամանակեայ մտածու-

Այդ խօսակցութիւնից յետոյ սուրբ Սահակը և Մեսրոպը մտնում են Թագաւորի մօտ. Վռամշապուհը լսելով այն վանականի ասածները, նորից պատմում է դոցա։ Սուրբ Սահակը և Մեսրոպը լսելով այդ պատմութիւնը՝ շտապեցնում են նորան զբաղուել այդ խնդրով, ասելով որ Հայոց աշխարհի համար այդ գիւտը մեծ նշանակութիւն ունի և իրեն արքայէն աւելի մեծ պատիւ կբերէ ապագայում, քան թէ նորա աշխարհական իշխանութիւնը. այս խօսքերը Թագաւորին մեծ բաւականութիւն է պատճառում և նա փառաբանում է Աստուծուն, որ իւր թագաւորութեան ժամանակ այդպիսի մի մեծ իրողութիւն պէտք է տեղի ունենայ [5]։ Առանց յապաղելու Վռամշապուհը Վահրիճ անունով մէկին հրովարտակով ուղարկում է Հաբէլ քահանայի մօտ, որ առաջ յայտնել էր Հայոց այբուբենի գոյութիւնը Դանիէլ բարեպաշտ եպիսկոպոսի մօտ։ Հաբէլ քահանան ստանալով արքայական հրովարտակը՝ շտապում է Դանիէլի մօտ և անձամբ նորանից ս-

---

թեան զխնդիրն, և ընկալեալ ի Նմանէ քաջալերութեան աւետիս՝ թէ՝ զօրացեալ պինդ կաց, առեալ ընդ քեզ և այլ արս օգնականս ի քահանայից՝ զոր ես պատուիրեմ. և ուր տկարանայք ի կարգել զհեգենայսն՝ բերեալ առ իս ուղղեմ զայն. քանզի յոյժ դիւրին է գիւտ իրացդ զոր հայցես։ Բայց նախ արժան է մեզ զգացուցանել Թագաւորին զպէտս այսպիսի մեծ և կարևոր խնդրոյ. վասն որոյ և քան զաւուրս ինչ յառաջ ոչ բազումս՝ առեալ բանք յեկեղեցւոջ յաղագս կարօտութեան այդպիսի պիտոյից, ասացեալ է ուրումն ցարքայ, թէ տեսի նշանագիրս հայերէն առ ումեմն եպիսկոպոսի ի գեօղ միում. և Թագաւորն յիշէր զասացեալսն, քանզի և ինձ նա պատմեաց։ Տես. Ղ. Փարպեցի էջ 36—37.

5) „Եւ մտեալ սրբոյ կաթուղիկոսին Հայոց Սահակայ հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ առ Թագաւորն Վռամշապուհ, և իմացուցեալ Նմա զպէտս իրացն, յիշեաց և ինքն Թագաւորն զխօսեցեալսն վանականին վասն Նորին իրացն ընդ Նմա, զոր և Նորա պատմեալ ուրախացոյց։ Եւ Նոցա լուեալ զայս ի Թագաւորէն,

րերլով այդ այբուբենը, վերցնում տանում է սուրբ Սա-
ակի, Մեսրոպի և Վռամշապուհի մօտ [6]։

Այնուհետև Փարպեցին տառերի «գիւտ»ի դէպքը պատ-
ում է ո՛չ միայն նման Խորենացու պատմածին, այլ կրկնում
միևնոյնը բառ առ բառ, ամբողջ յիսուն և մէկ տող [7]։
որենացու այս անփոփոխ հատուածից յետոյ Փարպեցին շա-
ունակում է, որ տառերի գիւտի խրախուսութիւնից յետոյ սուրբ
եսրոպը սկսում է աշխատել այդ տառերը կարգի բերելու
- վանկերն ուղիղ արտասանութեան յարմարեցնելու. այս
ործում նորան առաջնորդում է սուրբ Սահակը՝ տալով նո-

---

ութացուցանէին զնա ասելով, թէ ճեպեա յաղագս մեծ և օգ-
տակար աշխարհիս Հայոց գիւտից այսորիկ՝ ի ժամանակս քո, որ
ատ աւելի առ յապայսն բերէ քեզ շահ յիշատակ անմոռաց և
գուտ երկնաւոր վայելից, քան զիշխանութիւն թագաւորութեանդ
քո, և կամ որպէս յառաջ քան զքեզ նախնիքն քո էին յազգէն
Արշակունեաց։ Եւ թագաւորին լսեալ զայս և խնդալից եղեալ՝
ետ փառս Աստուծոյ, որ ի ժամանակս թագաւորութեան նորա
յայտնի հոգևոր կենաց փափագ ժառանգեաց յաշխարհիս Հայոց»։
Տես. Փարպեցի, էջ 37—38։

[6]) «Վաղվաղակի սախպով առաքեալ դեսպան զՎահրիճ ոմն
անուն կոչեցեալ ի ծնողաց իւրոց՝ հանդերձ հրովարտակաւ, առ
այր մի երէց Հաբէլ անուն, որդ ասացեալ էր յառաջագոյն ցար-
քայ, որ և մերձաւոր էր առն բարեպաշտի Դանիէլի եպիսկոպոսի,
առ որում՝ նշանագիրքն հայերէն կային. և երանելոյն Հաբէլի
ընկալեալ զհրովարտակն ի Վահրիճէ և լսեալ զիրսն՝ փութա-
ակի հասանէր առ սքանչելի եպիսկոպոսն Դանիէլ։ Եւ նախ անդէն ի
միւն Դանիէլէ ինքն տեղեկանայր զկարգ նշանագրացն, և առեալ
նմանէ առ թագաւորն և առ սուրբ հայրապետն Հայոց Սահակ և առ
երանելին Մաշթոց հասանէր։ Իսկ արքային Հայոց սուրբ կաթողիկո-
սաւն Սահակաւ և երանելեաւն Մաշթոցիւ ընկալեալ զնշանագիրսն
ի Հաբէլէ՝ ուրախ լինէին։ Տես. Ղ. Փարպեցի. էջ 38—39։

[7]) «Բայց տեղեկացեալ գիտացին»...... մինչև «ըստ անսայ-
թաքութեան սիղոբայիցն ի հելլենացւոյն»։ Տես. Փարպեցի. էջ
39—41, Խորենացի. էջ 369—371.

բան բանիմաց և յունարէն իմացող օգնական քահանաներ, որոնց անունները հետևեալներն են. *Յովհան*, Եկեղեաց գաւառից. *Յովսէփ*, Պաղանական տանից, *Տէր*, Խորձենից, *Մուշէ*, Տարօնից [8]։

Այդ չորս յունագէտ քահանաների օգնութեամբ սուրբ Մեսրոպն աշխատում է Հայոց նորագիւտ այբուբենը դասաւորել յունարէն այբուբենի կարգով՝ դժուար դէպքերում դիմելով սուրբ Սահակի աջակցութեանը, որովհետև Մեծն Պարթևը քաջ հմուտ էր յունաց լեզուին և փիլիսոփայական արուեստին [9]։ Այդպէս կարգի բերելով Հայոց այբուբենը ցանկանում էին դպրոցներ բանալ և ուսուցանել բազմաթիւ աշակերտներին, որովհետև ամեն մարդ ցանկանում էր Հայոց լեզուն սովորել և ասորոց լեզուն սովորելու տանջանքից ա-

---

8) «Եւ այսպէս դիպեալ գիւտի նշանագրացն՝ ձեռն ի գործ արկանէր երանելին Մաշթոց, յերիւրելով զնա սուրբ հայրապետին Հայոց Սահակայ, դիւրահնար ճանապարհ ցուցանելով կարգադրութեան գրենայս և հեգենային ուղղաձայնութեան, տալով նմա օգնականս և այլ արս բանիբունս և մտացիս ի քահանայիցն Հայոց, որք էին սակաւ մի և նոքա որպէս երանելին Մաշթոց մերձաւորեալք ի յունարէն հեգենայսն. որում առաջնոյն անուն էր Յոհան՝ ի գաւառէն Եկեղեաց, և երկրորդին Յովսէփ ի Պաղանական տանէն, և երրորդին Տէր՝ ի Խորձենոյ, և չորրորդին Մուշէ՝ ի Տարօնոյ»։ Տես. Փարպեցի. էջ 41.

9) «Որոց օգնելով զօրէր երանելին Մաշթոց. հանդիպեցուցանէր զհայերէն աթութային ըստ կարգման սիլովբայիցն Յունաց, առէպ հարցմամբ և ուսանելով ի սուրբ կաթուղիկոսէն Իսահակայ զաթութայիցն գաղափար, ըստ անսայթաքութեան յունին։ Վասն զի ոչ լինէին բաւական ի վճարել անխափան ուղղակի առանց առաջնորդելոյ նոցա սրբոյ հայրապետին Սահակայ, որ յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զբազում գիտնովք Յունաց. եղեալ կատարելապէս հմուտ երգողական տառիցն և հռետորական յորդասաց յայտնաբանութեան. և առաւել տեղեկացեալ փիլիսոփայական արուեստիցն ցուցանիւր»։ Տես. Փարպեցի. էջ 41—42.

զատուել. բայց դեռ ևս դժուարութիւն էին կրում, որովհետև սուրբ գրքի մասերը թարգմանուած չէին հայերէնի։ Սուրբ Մեսրոպն իւր օգնական քահանաներով չէին վստահանում Աստուածաշունչ գիրքը յունարէնից թարգմանել հայերէնի, որովհետև այնչափ հմուտ չէին յունարէն լեզուին [10]։

Այս դժուար դրութիւնից դուրս գալու համար՝ ժողովւում են Հայոց աշխարհի բոլոր աւագ քահանաները, նախարարները, տանուտէրների և սուրբ Մեսրոպի առաջնորդութեամբ գնում են Վռամշապուհ թագաւորի մօտ և այդտեղ բոլորն ի միասին աղաչում սուրբ Սահակ կաթողիկոսին, որ նա յանձն առնէ Աստուածաշունչ գրքի յունարէնից— հայերէն թարգմանելու ծանր աշխատանքը։ Աւագ քահանաներն ասում են սուրբ հայրապետին. սուրբ Մեսրոպը կարգի է բերել արդէն վաղուց գրուած հայերէն տառերը, որի գործադրութեան համար ոչ ոք չէր հոգացել և իզուր և անօգուտ աշխատանք էին թափել ասորոց լեզուն սովորելու. ժողովրդի մեծամասնութիւնը եկեղեցուց դուրս էր գալիս առանց բան հասկանալու, իսկ ուսուցիչները յոգնոց հանելով և հառաչելով զղջում էին իւրեանց զուր աշխատանքի մասին, որովհետև տեսնում էին, որ ժողովրդից ոչ

10) «Վարգեալ այնուհետև Փրկչին առաջնորդութեամբ զգիր գրենոյն հայերէնի, և հելլենացին ուղղեալ յօրինուածս, ցանկային կարգել դպրոցս և ուսուցանել բազմութիւն մանկտոյ. քանզի ամենայն անձն յորդորեալ փափաքէր յուսումն հայերէն գիտութեան, որպէս ի խաւարէ՝ յասորի տանջանացն զերծեալք ի լոյս՝ ինքնայինն։ Բայց տարակուսեալք կասէին յանչքութենէ գրոց սրբոց. քանզի ոչ գոյին դեռ ևս հայերէն լսողութեամբ սուրբ կտակարանք եկեղեցւոյ։ Եւ երանելին Մաշթոց և որ ընդ նմա պատուական քահանայք էին՝ ոչ զօրէին համարձակել յայսպիսի սաստիկ և կարևոր գործ, թարգմանել գիրս ի յոյն լեզուէն ի հայ բարբառ. վասն զի ոչ ինչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յոյնարէն ուսմանց։ Տես. Փարպեցի էջ 42—43։

ոք օգուտ չէր քաղում իւրեանց հոգևոր խրատներից. այսպէս տևեց մինչև որ գտնուեց գիրը։ Ա՛րդ, ինչպէս որ սուրբ Գրիգոր Լուսաւորիչը մեր երկիրը լուսաւորեց քրիստոնէական լուսով, քեզ է վերապահուած, իբրև նորա շառաւիղին, լրացնել քո նախնւոյ թողած պակասը, Աստուծոյ խօսքը հասկանալի դարձնելով ժողովրդեան համար. դու պէտք է թարգմանես սուրբ գիրքը հայոց լեզուով, որովհետև այդ բանը, բացի քեզանից ոչ ոք չի կարող անել Հայաստանում [11]։

Սուրբ Սահակը լսելով թագաւորի, սուրբ Մեսրոպի, հոգևորական և աշխարհական մեծամեծների խնդիրը, հոգւով ուրախանում է և խոստանում կատարել այդ գործը. այնուհետև նա գիշեր ու ցերեկ զբաղուելով թարգմանում է հին և նոր կտակարանները ու մարգարէից գրքերը։

Այս մեծ գործը գլուխ բերելով, կարգադրութիւն է ա-

11) «Ապա ժողովեալ ամենայն ուագ քահանայք աշխարհին Հայոց, հանդերձ երանելեաւ Մաշթոցիւ և ամենայն Նախարարօք աշխարհիս Հայոց և մեծամեծ տանուտերօք՝ առ թագաւորն Հայոց Վռամշապուհ, և հանդերձ թագաւորաւն սկսան աղաչել զսուրբ կաթողիկոսն Սահակ՝ արկանել զանձն յաշխատութիւն հոգևոր, և թարգմանել զաստուածաշունչ կտակարանս ի յոյն լեզուոյ ի հայ բարբառս։ Եւ դարձ ուագ քահանայիցն ասէին ցսուրբ քահանայապետն, թէ Մեք որ կամքս առաջի քո, հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ, զոր զարթոյց աստուածային շնորհ ի ցանկութիւնս յայս՝ կարգել զվաղնջուցն գրեալ շարագիրս տառիցն, զորս ոչ ուրուք էր հոգացեալ արկանել ի կիր. այլ առօրի մեծաջան և անօգուտ ուսմամբքն աշխատեալք յոխորտ. յորոց բազմութիւնք ժողովրդոց ունայնք և թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցեացն. և ուսուցիչքն հանելով յոգւոց և հառաչելով զգլխանային զմնոտի ջանն իւրեանց, յորում ոչ զոք յուսումնասէր ժողովելոցն տեսանէին օգտեալս ի վարդապետութենէ հոգևոր խրատուցն, որ է կերակուր և պարարումն իմաստնախնդիր անձանց, մինչև գտաւ գիր, և յաջողելով Քրիստոսի եկեալ յաձումն տակաւին զօրանայ։ Համայն և զայս վաստակոյս կարգումն, և բոլին առաքինութեանդ գիտութեամբ եղիցի, և կատարեա։

ում բազմացնել դպրոցների թիւը և հայոց լեզուով աւանդել և ուսուցանել Աստուծոյ կենդանի խօսքը։ Ժողովուրդն սկսում է մեծ բազմութեամբ եկեղեցի յաճախել՝ հայերէն լսելու սուրբ պաշտամունքը և գիտակցաբար ըմբռնելու սուրբ արարողութիւնները։ Եկեղեցիքը պայծառանում են, սրբերի վկայարանները լցւում են աղօթողներով. շատանում է քարոզիչների թիւը, որոնք մեկնաբանում են սուրբ գրքի մութ երևացող կէտերը և հոգևոր մխիթարութիւն տալիս ժողովրդին [12]։

---

Արդ՝ որպէս և սուրբ նահատակն Քրիստոսի Գրիգորիոս պահեալ ի խոշտանգանս անչափս աջով հզօրին ի լուսաւորութիւն գիտութեան աշխարհիս Հայոց տուաւ, պահեալ շնորհեցաւ և քեզ նորին շառաւիղի՝ վիճակ ժառանգութեան պայծառութեան պաշտամանս այսորիկ. սկիզբն առնել գործոյ մշակութեանս այսմիկ, և լինել նմանօղ սուրբ նախնոյն քում, որ յանդիմանութենէ ի ճշմարիտ աստուածգիտութիւն առաջնորդեաց աշխարհիս Հայոց։ Արդ և դու յանօգուտ մոլորաբանութենէն ի սոյդ հոգեշահ և եկեղեցազարդ բանաւորութիւնս առաջնորդեա բազում ժողովրդոց աշխարհիս մեծի, լնուլ զպակասութիւնս զայս մնացեալ ի սուրբ նախնեացն քոց, զոր պահեաց քեզ Աստուած, զոր ոչ ումեք այլում ի Հայաստան աշխարհիս մարդկան դոյ հնար ձեռն արկանել յայդպիսի գործ մեծ։ Վասն զի և ոչ կարացաք հմուտ լինել և տեղեկանալ այդչափ արուեստաւոր ուսմանցդ, որպէս և քեզ տուաւ զօրութիւն ճարտարութեան ի վերին օգնականութենէն, յաղագս քո առաքինասէր և պարկեշտ հոգւոյդ, որ նմանեալ ճշգրտապէս օրինակեցեր ի քեզ զվարս երանելոյ հօր քո Ներսէսի»։ Տես. Փարպեցի էջ 43—46։

12) «Եւ լուեալ զայս ամենայն բարեպաշտ կաթուղիկոսն Հայոց սուրբն Սահակ՝ ի թագաւորէն Հայոց Վռամշապհոյ և յերանելոյն Մաշթոցէ և յամենայն ուխտէ քահանայից, ևս առաւել յաւագ տանուտերացն և յամենայն նախարարացն Հայոց, զուարճացաւ յոգի իւր փառաւորելով զփրկիչն ամենեցուն զտէր Յիսուս Քրիստոս։ Եւ կամաւոր յօժարութեամբ ետ զանձն ի գործ՝ պանծացեալ յԱստուծոյ գործակցութիւնն, որ ետ նմա

Այս բոլոր դէպքերը կատարւում են Վռամշապուհ թագաւորի ժամանակ, որ գարձեալ թագաւորում է քսան և մէկ տարի և վախճանւում խորին ծերութեան հասակում [13]։ Այնուհետև Փարպեցին իւր պատմութիւնը շարունակելով հա-

---

զայնպիսի շնորհս առաքելական գիտութեան. և անվրէպ ջանալով զցայգ և զցերեկ՝ թարգմանեաց զկտակարանս ամենայն զխօսեցեալս ճշմարիտ մարգարէիւք ի սուրբ Հոգւոյն. և հաստատեալ կնքեաց երջանիկ առաքելովքն զնորոց կտակարանացն զլուսաւոր և զկենսատու քարոզութիւնս նովին Հոգւով։ Եւ տարեալ ի գլուխ սուրբ հայրապետին Հայոց Սահակայ զգործ մեծ հոգևոր վաստակոյն, կարգեցան վաղվաղակի յայնմհետէ դպրոցք հօտին ուսմանց, բազմացան դասք գրչաց եկեղեցիս առնելով զմիմեամբք. զարդարեցան պաշտամունք սուրբ եկեղեցւոյ, յորդորեցան բազմութիւնք արանց և կանանց ժողովրդոց ի տօնս փրկչին և ի ժողովս մարտիրոսաց։ Որ շահեալք լի հոգևոր օգտիւ, ընթանային խնդալիցք ի հաղորդմանէ մեծի խորհրդոյն, արձակեալք խրախճանիւք ի տունս մեծամեծք և ողայք, սաղմոսելով և կցորդ ասելով ընդ ամենայն տեղիս ի հրապարակս և ի փողոցս, և առանին։ Պայծառացան եկեղեցիք, շուք առին վկայարանք սրբոց, միշտ ծաղկելով ի նոսա ուխտ կտակարանաց ընծայիւք. հանապազաբուղխ հոսէին վտակք յառողացն մեկնութեանց, որք զծածուկս մարգարէից բերելով ի յայտնութիւն՝ սեղանս ամենալիցս հոգևոր խորտկօք դնէին առաջի ամենայն ժողովրդեան. յորոց ճաշակեալ իմաստախնդիր մարդոց՝ քաղցրանայ ի քիմս նոցա ըստ բանի սաղմոսերգին բանք վարդապետութեան քան զխորիսխ մեղու։ Եւ զի միանգամայն իսկ ասացից ըստ բանի սուրբ մարգարէին Եսայեայ, թէ լցաւ երկիրս ամենայն Հայոց՝ գիտութեամբ տեառն ի հոգևոր վտակաց սուրբ հայրապետին Սահակայ, իբրև զջուրս բազումս որ ծածկեն զծովս։ Տես. Փ ա ր պ ե ց ի. էջ 46—48։

[13]) «Եւ շնորհիւ ամենախնամ փրկչին Քրիստոսի կատարեալ այս ամենայն ի ժամանակս Վռամշապհոյ, ըստ յառաջագոյն գրեցելոց, և լուսաւորեալ աշխարհս Հայոց։ Եկաց յետ այսորիկ թագաւորն Վռամշապուհ ամս քսան և մի, և հասեալ

առօտ կերպիւ նկարագրում է նաև սուրբ Սահակի և սուրբ Մեսրոպի մահը 14):



— յերկար ծերութիւն՝ վախճանեցաւ յանկողնի իւրում խաղաղական հանգիստս յաշխարհիս Հայոց»: Տես. Փ ա ր պ ե ց ի. էջ 8—49:

14) «. . . Եւ յայնմհետէ ամփոփեալ զինքն առաքինւոյն յամենայն աշխարհածուփ զբօսանաց, աղօթից միայն պարապէր և վարդապետութեան. վասն զի բազումք յեպիսկոպոսաց և յայլոց ի պատուական քահանայից ոչ երբէք ժուժէին տեսել և մեկուսանալ ի մշտաբուղխ աղբերէ վարդապետութեան սրբոյն, ուր ուրեք և դիպէր, ի յոստանի և կամ ի հովս: Եւ կացեալ ամս ազումս, և հասեալ ի յերկար ծերութիւն՝ վախճանեցաւ խաղաղական հանգստիւ ի գաւառին Բագրեւանդայ, ի գիւղն որ անուանեալ կոչի բլուր, ի սկզբան ամին երկրորդի Յազկերտի որդւոյ Վռամայ Թագաւորին Պարսից, յամսեանն Նաւասարդի, որ օր երեսուն էր ամսոյն, յերրորդ ժամու աւուրն. որ և զօր ծննդեան սրբոյն ի սոյգ գիտողաց և ի պատմութենէ երանելոյն առն Կորեան՝ հաստատեալ գրեցաք լինել և նոյն օր ծննդեան սրբոյն, ի նմին ամսեան»: Տես. Փարպեցի. էջ 102—103:

«Եւ յետ վեց ամսոյ կատարման նորին տարւոյ հանգստեան սրբոյն Սահակայ՝ վախճանեցաւ երանելին Մաշթոց ի Վաղարշապատ քաղաքի, զոր և Նոր-քաղաք անուանեն, յերեքտասաներորդի աւուր ամսոյն մեհեկանի. զոր առեալ իշխանին Ամատունեաց Վահանայ՝ զմարմին առաքինւոյն՝ տարաւ յիւր ի գեօղն, որ անուանեալ կոչի Օշական: Եւ յայժ մեծարանօք զդիր երանելւոյն կազմեալ, տօն յիշատակի առնեն ամենափոյթ պատուով ամենայն բազմութիւնք ժողովրդոցն Այրարատոյ»: Տես. Փ ա ր պ ե ց ի. էջ 105—106:

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### ԿՈՐԻՒՆԻ, ԽՈՐԵՆԱՑՈՒ ԵՒ ՓԱՐՊԵՑՈՒ ՄԻՄԵԱՆՑ ՀԵՏ ՈՒՆԵ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆԸ

*Խորենացու հեղինակութիւնը. Թէ ինչու Փարպեցին տարբեր կեր ի պատմում քան Խորենացին եւ Կորիւն. Գ. Խալաթեանցի աշ տութիւնը. Փարպեցու վկայութեանց նշանակութիւնը. Սբ. Սահ եւ Մեսրոպի գործունէութեան տարբերութիւնը. Թէ ինչու Խո նացին տարբեր է պատմում քան Կորիւն։*

---



Այս երեք պատմագիրներից թէպէտ եր սը—Կորիւնը և Խորենացին—Սբ. Սահ և Մեսրոպի անմիջական աշակերտներն սակայն միայն Կորիւն Սքանչելին եղաւ ն պէս և դոցա գործակիցը: Խորենացին կր աշակերտներից էր և երբ արտասահմ վերադարձաւ, Սահակն ու Մեսրոպն արդէն վախճան էին. իսկ Փարպեցին Աղան Արծրունու մօտ էր աշակերտ մօտ մէկ դար գրի գիւտից յետոյ գրեց իւր պատմութիւն

¹) « . . . Ուստի պարտ է ընդունել, թէ զպատմութիւն

Սբ. Մեսրոպի գործակից և վարքագիր Կորիւնի պատմածները—Սբ. Մեսրոպի գործունէութեան և Հայոց այբուբենի վերանորոգման մասին—առաջին տեղը պէտք է բռնէին Հայկական մատենագրութեան մէջ. սակայն այդպէս չէ։ Մովսէս Խորենացու հռչակուած հեղինակութիւնը ստուերի մէջ է ձգել սբ. Մեսրոպի գործակից Կորիւնին. բացի Փարպեցուց, որ հետևում է Կորիւնին և նորա պատմածներն իբրև ճշմարիտ իրողութիւն ընդունում, մեր բոլոր յետագայ պատմագիրներն, հինգերորդ դարուց սկսած մինչև նորագոյն ժամանակներս, Հայոց այբուբենի մասին խօսելիս կրկնում են Մ. Խորենացու ասածները։ Նոյն իսկ այսօր Հայոց պատմութեան կամ գրականութեան ինչ ձեռնարկ ևս որ վերցնենք, Հայոց այբուբենի մասին կը կարդանք Խորենացու ասածները։ Նոյն իսկ Փարպեցու համար ցայժմ աշխատել են ապացուցել, որ նա ևս օգուտ է քաղում Խորենացուց, թէև նորա անունը չէ յիշում և ՚ուղղակի ասում է, որ Կորիւնից է վերցնում—այս ընդհանուր կարծիքի սխալ լինելը, գոնէ Հայոց այբուբենի խնդրի վերաբերութեամբ, ստորև կ'ապացուցանենք—։

Խորենացու այսպիսի մեծ հնղինակութեան հետևանքն այն է եղել, որ այն, ինչ որ պատմում են այլ պատմագիրները և չկայ Խորենացու պատմութեան մէջ, մերժուել է իբր անճիշտ տեղեկութիւն. այսպէս ևս գրերի վերանորոգութեան խնդրում աշխատել են մերժել Փարպեցու պատմած

---

շարագրեաց Ղազար (Փարպեցի) զկնի հօգաբարձութեան իւրոյ—այսինքն է միջի ամաց 490 և 509. մինչ ցամն 509 գնեմք և ոչ անագան, վասն զի ի յաջորդ իսկ ամին վախճանեցաւ Վահան, որ ի գրելն պատմութեան տակաւին կենդանի էր անտարակոյս։ Հաւանութեան թուի, թէ Ղազար «չորրորդ պատմութիւն Հայոց» գրեաց սակաւ ինչ ամօք զկնի վերադարձին իւրոյ յԱմթայ՝ ի վերջին ամս ե. դարու եւ հազիւ թէ անագան քան զայս»։ Տես. Գ. Խալաթեան. Ղ. Փարպեցի և գործք նորին. էջ 113։

այն հատուածները, որ տարբերւում են Խորենացու պատմածներից։

Ի վնաս Փարպեցու հեղինակութեան ծառայել է նաև այն հանգամանքը, որ չնայելով որ նա յիշում է Կորիւնին և ասում, որ նորանից է օգուտ քաղում, նորա պատմութեան մէջ գտնում ենք գրի գիւտի մասին մի խոշոր հատուած՝ Խորենացուց առնուած. այս կէտից ես մենք ուզում ենք վերականգնել Փարպեցու հեղինակութիւնը։

Մենք չենք ուզում մերժել Խորենացու հեղինակութիւնը, սակայն մի և նոյն ժամանակ Հայոց այբուբենի վերանորոգութեան խնդրի վերաբերութեամբ առաջնութիւնը խլում ենք Խորենացուց. Կորիւն Սքանչելին համարում՝ ենք ճշտագոյն աղբիւր։

Ղ. Փարպեցու պատմութեան մէջ, առանց յիշելու Խորենացու անունը, յառաջ է բերուած մի ամբողջ հատուած Խորենացուց, ո՛չ թէ միայն միևնոյն բովանդակութեամբ, այլ նաև մի և նոյն նախադասութիւններով և միևնոյն բառերով [2]։ Արդ յայտնի է, որ Փարպեցին ժամանակագրական կարգով Խորենացուց յետոյ է գալիս և այդ պատճառով խի մի մեծ զարմանք չէ, որ նա օգուտ քաղէ Խորենացուց, իբրև ժամանակակից պատմագրից. սակայն թէ ինչո՞ւ նորա անունը չէ յիշում և բառացի կերպիւ է վերցնում, այդ է խնդիրը։ Զարմանալի է, որ պ. Գ. Խալաթեանցը Փարպեցու մասին գրած և մեր արդէն յիշած աշխատութեան մէջ—որպէս զի ցոյց տայ, որ Փարպեցին աչքի առաջ է ունեցել Խորենացու պատմութիւնը—յառաջ է բերում փոքրիկ հատուածներ Խորենացուց և Փարպեցուց, որոնք նախադասութեամբ կամ բառերով նման են միմեանց, սակայն աչքից թողնում է մեր յառաջ բերած օրինակն, որ Փարպեցու մէջ երկու էջ

---

[2]) Տես. Մ. Խորենացի էջ 369—370 և Ղ. Փարպեցի էջ 39—41։

բռնում—51 տող—։ Արդեօք ինչ պատճառով պ. Խալա-
եանցն անուշադիր է թողնում այդ հատուածը. գուցէ նո-
ւ համար, որ թէ Խորենացին և թէ Փարպեցին աչքի ա-
ռջ են ունեցել Կորիւնի գրուածը.—թէև Խորենացին չէ
յում Կորիւնի աշխատութիւնը—սակայն այս ենթադրու-
իւնը ճիշտ չէր լինի, վասն զի այդ հատուածը բոլորովին
արբերւում է Կորիւնի պատմածից—Կորիւն ոչ Եպիփանո-
ւն է յիշում և ոչ Պլատոնին, իսկ Հռուփանոսին յիշում է
առերի «գիւտից» յետոյ։ Իսկ եթէ ասէինք, որ պ. Խալա-
եանը հիմնուելով պատմական մի վկայութեան վերայ՝ են-
ադրում է, որ այդ հատուածն երկուսն էլ—Խորենացին և
արպեցին—կարող էին դիւանական արձանագրութիւններից
անել [3]), այն ժամանակ յարգելի հեղինակի ամբողջ շինու-
եան հիմնաքարը հանած կլինէինք, որով և շէնքը կ՚խախ-
ուէր, որովհետև եթէ այդ դիւանական արձանագրութեանց
ոյութիւնն ընդունէինք—ինչպէս որ անում է հայր Զար-

3) „Ոչ եթէ ՚ի հին համբաւուց տեղեկացեալ և մատենա-
րեալ զայս կարգեցաք, այլ որոց մեր իսկ ականատես եղեալ
երպարանացն՝ և առընթերակայ հոգևորական գործոց, և լսող
երհապատում վարդապետութեան, և նոցին արբանեակ ըստ
ւետարանական հրամանացն։ Ոչ սուտապատում ճարտարախօս
ղեալ առ ՚ի մերոց բանից զհօրէն խոյս կարգեցաք, այլ զյա-
ախագոյնն թողեալ, և ՚ի նշանագիմակացն քաղելով զհամա-
ուրսն կարգեցաք, որք ոչ միայն մեզ, այլեւ որ զատեանսն
նթեռնուն յայտնի է։ Քանզի չէաք իսկ հանդուրժօղք՝ զամե-
այն արարեալսն կտակաւ գիւրաքանչիւրսն. այլ ՚ի դիւրագոյն և
հեշտագոյնս, յառաքելական անգր զանձինս պատսպարեցաք. ո-
ղ անցեալ զըազմախուռն արգասեօք սրբոցն, առ ՚ի մանրակտիտ
ռնելոյ զկարևորագոյնս պատմելոյ՝ զհանգամանս՝ ասացաք։ Ոչ
պատիւ ինչ սրբոցն աստուծոյ, որք ամենապարծ և կենդանա-
ուր խաչիւն ծանուցեալք յարգեցան, այլ յօրինակ քաջալերիչ
ղևոր ծննդոց իւրեանց, և որք նոքօք աշակերտելոց իցեն
ազգս ազգաց“։ Տես. Կորիւն. էջ 28.

բանալեանը [4])—, այն ժամանակ ոչ մի կերպ չէր կարելի ապացուցանել, որ Փարպեցին ծանօթ էր Խորենացու և Եղիշէի պատմութեանց հետ։ Եթէ գիւանական արձանագրութիւնները գոյութիւն ունենային և պահուէին, հարկաւ գոքա չէին վերաբերի միայն «նշանագրերի գիւտին», այլ և քաղաքական-պատմական դէպքերին, որով և ինքն ըստ ինքեան լուծուած կլինէր այն խնդիրը, թէ ինչու որոշ հատուածներ մի և նոյն բովանդակութեամբ և բառերով գտնում ենք Խորենացու, Կորիւնի, Փարպեցու և Եղիշէի պատմութեանց մէջ։ Այս հատուածի մասին մեր առելիքը կ'շարունակենք մի փոքր յետոյ. այժմ տեսնենք թէ ինչ դիրք ունին բռնած միմեանց դէմ Փարպեցին և Կորիւն։

Ինչպէս արդէն յիշեցինք, Փարպեցին հայոց «գրի գիւտի մասին պատմելիս ընթերցողին ուղարկում է Կորիւնի մօտ ասելով որ ինքը շատ անգամ կարդացել է այդ գիրքը և հաւաստի տեղեկացել. սակայն չ'նայելով այդ հանգամանքին, Փարպեցու մէջ գտնում ենք այնպիսի տողեր, ուր խօսուլթիւնները բոլորովին տարբեր և հակառակ կերպիւ են պատմւում և այդ հատուածներն ըստ Գ. Խալաթեանի—նոյնը. գլխ. բ. էջ 68—նպատակ ունին նսեմացնել *Հայ երկրի ուսուցանողի* և Աստուածային շնորհիւ օժանդակուած «Հայ նշանագրեր գտնողի» վսեմ նշանակութիւնն ու փառքը յօգուտ Սահակ Մեծն կաթուղիկոսի, որի անձնաւորութիւնն, առանց Մեսրոպին նսեմացնելն ևս, հայ պատմութեան մէջ իւր արժանաւոր տեղն ունի բռնած։ Խնդիրն աւելի պարզելու նպատակով համառօտակի յիշենք այստեղ յարգելի Խալաթեանի ակնարկած տարբերութիւնները.

*ա.* Յայտնի է թէ Մեսրոպ ինչ մեծ ջանքով և դժուարութեամբ կարողացաւ գլուխ բերել նոր այբուբենի վերանորոգութիւնը. չնայելով որ Փարպեցուն յայտնի էր այդ, այնու-

[4]) Տես. Հայկական հին դպրութեան պատմութիւն. էջ 22։

ենայնիւ նա գրում է հետեւեալ տողերը. երբ Մեսրոպը մելով Սահակին յայտնում է նորան իւր միտքը, նա քաջերելով ասում է. զօրացի՛ր, առ. քեզ հետ նաև այլ օգկան քահանաներ, որոնց ես կ՚պատուիրեմ և որտեղ որ ուարանաք կամ չկարողանաք վանկերը կարգի դնել, բեք ինձ մօտ և ես կուղղեմ՛, որովհետև շատ դիւրին է քո ննկացածը գտնել [5]։

Արդ, եթէ այդպէս դիւրին էր Մեսրոպի ցանկացածը նել և Սահակը կարող էր այդ անել, այլ և. ինչ հարկ ր որ «Հայ երկրի ուսուցանողն» [6]) այնչափ տառապանք էր և օտար երկիրներ և օտար անձանց օգնութեան դիմէր։

բ. Թէև Փարպեցին մի տեղ յիշում է որ Մեսրոպ «եսեղծ գնշանագիրս մեր... փոխատրելով զհայերէն աթուլթայսն տ անսայլթաքութեան սիղոբայիցն ի հելլենացւոյն» [7]), սայն իսկոյն շարունակում է. «Եւ այսպէս դիպեալ գիւտի անագրացն՝ ձեռն ի գործ արկանէր երանելին Մաշթոց, րիւրելով զնա սուրբ Հայրապետին Հայոց Սահակայ, դիւմնար ճանապարհ ցուցանելով կարգաղրութեան գրենոյս հեզենային ուղղածայնութեան». և թէ. «ոչ լինէին բաւան ի վճարել անախալ, ուղղակի առանց Սահակայ» և յն [8])։

գ. Ինչպէս տեսանք՝ Խորենացին և Կորիւն ասում են, Մեսրոպը տառերի գիւտից յետոյ անմիջապէս սկսեց թարգ-

---

[5]) „. . . Զօրացեալ պինդ կաց, առեալ ընդ քեզ և այլ ս օգնականս ի քահանայից՝ զոր ես պատուիրեմ. և ուր տկանայք ի կարգել զհեգենայսն՝ բերեալ առ իս ուղղեմ զայն. նզի յայժ դիւրին է գիւտ իրացդ զոր հայցես“։ Տես. Փարեցի. Նոյնը. էջ 36—37։

[6]) Այս տիտղոսը, որ Խորենացին Սահակի բերանով տաս է սբ. Մեսրոպին, սիրելի է մեզ գործ դնել։

[7]) Տես Փարպեցի. էջ 41։

[8]) Տես. Փարպեցի. էջ 42։

մանել. իսկ Փարպեցին ասում է. Եւ երանելին Մաշթոց
որ ընդ նմա պատուական քահանայք էին՝ «ոչ զօրէին
մարձակել յայսպիսի սաստիկ և կարևոր գործ, թարգմա
գիրս ի յոյն լեզուոյն ի Հայ բարբառ. վասն զի ոչ ինչ է
այնպէս տեղեակ գիտնապէս Հրաշանգի յունարէն ուսման»
Այսչափը բաւական է Հարցնելու՝ թէ արդեօք որտե
է քաղում Փարպեցին այս տեղեկութիւնները, քանի որ
ձեռքին ունեցած Կորիւնի մէջ չկան: Միւս կողմից կար
է Հարցնել՝ թէ Փարպեցին ինչու պէտք է նսեմացնէր Մե
րոպի աշխատանքը և ինչու նա այդպիսի տարբեր իրեր պա
մելով ասում է, որ ինքն օգուտ է քաղել Կորիւնի աշխ
տութիւնից, այդ գրուածքը Համարելով ճշմարիտ աղբի
Այս Հարցումներին պ. Խալաթեանը պատասխանում է
այդ տարբեր Հատուածները Փարպեցու գրչին չեն պատկ
նում և յետագայ ժամանակների յաւելուածներ են. մաս
ես եղծուած և աղճատուած են Փարպեցու թշնամիներից[10]
Թէև պ. Խալաթեանը Փարպեցու պատմութեան այլ մաս
րում՝ աղճատումներ և օտար ձեռքի ներմուծումներ է
ռաջ բերում, սակայն այնուամենայնիւ վերոյիշեալ կէտ
վերաբերութեամբ մենք այլ տեսակէտ ունենք:
Արդէն ասացինք, որ Փարպեցին ականատես չեղաւ
Մեսրոպի գործունէութեան և գրերի գերանորոգութիւ
Համարեա մէկ դար յետոյ գրեց իւր պատմութիւնը.
պատճառով և Կորիւնի ու Խորենացու վկայութեանցն ա
ջին տեղը տուինք: Սակայն միւս կողմից պէտք է ի նկա
ունենալ նաև այն Հանգամանքը, որ Կորիւնի և Խորենաց
սուրբ անձանց աշակերտելը եւ դոցա դէպ իւրեանց
վարդապետներն ունեցած երախտագիտական զգացումն
բնական առիթ են լինում՝ զանազան չափազանցութեանց

[9]) Տես. Փարպեցի. էջ 43.
[10]) Տես. Գ. Խալաթեանց. նոյնը. էջ 71:

Բնական առիթ ենք ասում, վասն զի ճշմարի՛տ որ այդ մեծ վարդապետների և ուսուցանողների գործունէութիւնն այնչափ արդիւնաւոր և օրհնաբեր եղաւ Հայ ազգի համար, որ դոցա անմիջական աշակերտները բնականաբար պէտք է ոգևորուէին և գովաբանական ճառերով էջեր լցնէին, փոխանակ դոցա գործունէութեան մանրամասն նկարագիրն անելու։ Իսկ այն գործը, որ սառն դատողութեամբ և քննադատական հայեացքով չէ գրւում, այլ ոգևորուած եռանդի և երախտագիտական զգացմանց ազդեցութեամբ է առաջնորդւում, միշտ *զերծ չի լինի* չափազանցութիւններից։ Ահա այս տեսակէտից մենք մեծ նշանակութիւն ենք տալիս Փարպեցու վկայութիւններին։

Փարպեցին ազատ լինելով սբ. Սահակի և Մեսրոպի գործունէութեան անմիջական ազդեցութիւնից, գրելու ժամանակ առաւել սառն պէտք է դատէր և իւր լսածն ևս համեմատէր Կորիւնի պատմածի հետ և առաւել քննադատական հայեացքով գրէր, քան իւր նախորդը։ Փարպեցին ընդհանրապէս այդպէս է վարւում. և ահա այն հատուածներն, որտեղ յերևան է գալիս Փարպեցու քննական հայեացքը, բնականաբար տարբերւում են իւր նախորդ պատմագիրների ասածներից։ Պ. Խալաթեանի կարծիքով այդ տարբեր հատուածները Փարպեցուն չեն պատկանում և *օտար ներմուծումներ են:* Սակայն ի՞նչ փաստ ունենք այդպէս ենթադրելու. պ. Խալաթեանցը պատասխանում է. վասն զի այդ հատուածները կամ *չկան Կորիւնի եւ Խորենացու մէջ*, կամ թէ *հակասում են դոցա տուած տեղեկութիւններին* և ճշմարիտ իրողութիւններ չլինելով՝ շատ անգամ *հակասում են միմեանց*։

Առաջին փաստը բոլորովին հիմն չունի. մի՞թէ պատմաբանը *պարտաւոր* է իւր նախորդների բոլոր ասածները կրկնել և նոցա տուած բոլոր տեղեկութիւնները ճիշտ համարել, քանի որ նոյն իսկ ինքը միջոց ունի դոցա հաղոր-

դածները քննելու և համեմատելու: Փարպեցին թէև այդ անցքերին ականատես չեղաւ, սակայն իւր երիտասարդ հասակում պէտք է շփուէր այնպիսի անձանց հետ, որոնք ականատես էին և աշակերտ ս. Մեսրոպի: Այդպիսի մի մեծ *իրողութիւն*, որպիսին էր Հայոց քրիստոնեայ եկեղեցւոյ ազգային հաստատութիւն դառնալը և ազգային գրի վերանորոգութիւնը, դիւրութեամբ չէր մոռացուիլ ժամանակակիցներից և նոցա անմիջական սերնդից: Իսկ եթէ Փարպեցին պէտք է ամբողջովին իւր նախորդների աւանդները բառացի յառաջ բերէր իւր պատմութեան մէջ, այլ ևս ինչ հարկ կար գրելու. աղբիւրը մատնացոյց կանէր և այդչափ բաւական կլինէր:

Անցնենք պ. Խալաթեանցի երկրորդ առարկութեան՝ թէ Փարպեցու պատմութեան մէջ այն հատուածներն, որոնք տարբերւում են իւր նախորդների աւանդներից, ճշմարտապատում չեն, ուստի և անկարելի է, որ Ղազարի գրչի արդիւնք լինին, վասն զի. «Սակաւ ինչ կանուխ քան զգիւտ Նշանագրաց և զԹարգմանութեան սրբազան տաւից՝ Ղազար յիշատակէ մի բատ միջէ *զամենայն նշանս թերութեանց եւ կատարելութեանց պատմագրին* առ Հասարակ. «... *չառնել մարդահաճութեան բանից յաւելուածս* [11]....., *չյաւելուլ զանցեալսն՝ յընդունայն անմտնս բանից. չնուազեցուցանել զեղեալսն եւ կարճակտուր պատմել՝ բանիւք անփութութեամբ. այլ զբնաւն* ողջախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն» [12]:
Այսպիսի իմն «երկիւղագին պատրաստութեամբ» բուռն հարկանէ Ղազար զպատմութենէ՝ ընդ սմին ինքնին աղօթս առնելով և զայլոցն հայցելով խնդրուածս առ Աստուած «որովք *արդարապատումն ճշգրտաբանեալ* զեղեալ ի վեր քան զիս գործոյս հարկաւորութիւն, ընդ յորձանս մեծապատումն

---

[11]) Տես. Փարպեցի. էջ 9:
[12]) Տես. Փարպեցի. էջ 17:

*ծաւալացս նուեալ մտաւոր ստուգաբանութեամբ, հասից բարեխօսութեամբ սրբոց՝ յանալէկոծ և յապահով նաւահանգիստն» [13])։*

*Նոյն իսկ մեր ընդգծած տողերը ցոյց են տալիս Փարպեցու քննադատական ոգին և կարծում ենք որ չափազանցութիւն չի լինի, եթէ ասենք, թէ այդ տողերը լուրջ կերպով վերաբերում են Փարպեցու նախորդ հայ պատմաբաններին։ Արդ. քննենք Փարպեցու այն հատուածներից մի քանիսը, որոնց «արդարադատումն ճշգրտաբանեալ» չէ համարում պ. Խալաթեանցը։*

*ա. Երբ Մեսրոպը դիմում է Սահակ կաթուղիկոսին և հայկական այբուբենի վերանորոգման մասին իւր մէջ յղացած միտքը յայտնում նորան, վերջինս պատասխանում է. «ուր ոկարանայք ի կարգել զհեգենայսն, բերեալ առ ի սպղեմ զայն. քանզի յոյժ դիւրին է գիւտ իրացդ զոր հայցես»։ Եթէ ի նկատի ունենանք այն հանգամանքը, որ ըստ Փարպեցու՝ Սահակ կաթողիկոսն արդէն տեղեկութիւն ունէր «Դանիէլեան նշանագրերի» մասին, երբ Մեսրոպը դիմեց իրեն, այն ժամանակ այս նախադասութեան վերայ բոլորովին զարմանալու տեղիք չկայ. Մեսրոպը Սահակից խորհուրդ և օժանդակութիւն է հայցում՝ Հայոց սեպհական գիր ունենալու համար, Սահակը նոյնն է ցանկանում և արդէն լսել է, որ մի այլ անձնաւորութեան մօտ արդէն գտանւում են հայերէն տառեր, ուստի ի՞նչ մի արտասովոր բան կը լինէր, որ նա ասէր թէ. «յոյժ դիւրին է գիւտ իրացդ զոր հայցես». հօ չպէտք է ենթադրել, որ նա կարող էր մարգարէանալ՝ թէ այդ «դանիէլեան նշանագրերը» չպէտք է այլ ևս յարմարուէին Հայոց լեզուին և կարիք պիտի լինէր վերանորոգման։*

*բ. Այն ինչ Կորիւնի և Խորենացու պատմելով սբ. Մեսրոպը տառերի գիւտից անմիջապէս յետոյ նոյն իսկ օտար*

---

[13]) *Տես. Փարպեցի. էջ* 18.

քաղաքում, Հայաստանից դուրս, թարգմանում է առակաց գիրքը և կտակարաններից մէկը [14]), Փարպեցին ասում է. «իսկ երանելին Մաշթոց և որ ընդ նմա պատուական քահանայք էին, ոչ զօրէին համարձակել յայսպիսի սաստիկ և կարեւոր գործ, վասն զի ոչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յունարէն ուսման»: Գ. Խալաթեանցը Փարպեցու այս խօսքերին յարակցում է. «բայց անհիմն թուին բանքդ» [15]). սակայն ինչո՞ւ. վասն զի Կորիւն և Խորենացին այլ տեսակ են պատմում. բայց միթէ այդ բաւականացուցիչ փաստ է Ղազարի խօսքերը ստելու. ամենևին: Ընդհակառակը Փարպեցու ասածը աւելի ճիշտ և բնական է թւում, քան Խորենացու հաղորդածը. միթէ կարելի էր, որ սուրբ. Մեսրոպը մի բոլորովին նոր այբուբեն ստեղծելուց յետոյ—ըստ Խորենացու—անմիջապէս, այն ևս օտար երկրում, ուղղակի մի այնպիսի ծանրակշիռ գործի ձեռնարկէր, ինչպիսին որ սբ. գրքի թարգմանութիւնն էր. և միթէ բնական չէ Փարպեցու ասածը. «թէ ո՛չ զօրէին համարձակել յայսպիսի սաստիկ և կարևոր գործ». արդեօք մի այդպիսի մեծ քայլ անելու համար անհրաժեշտ չէր եկեղեցւոյ պետի, կաթուղիկոսի հրամանն ու աջակցութիւնը: Եւ միթէ զարմանալու և Փարպեցին ստելու տեղիք կայ, երբ նա շարունակում է. «վասն զի ոչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յունարէն ուսման», քանի որ բաւականին ժամանակ անցնելուց յետոյ—երբ արդէն մի խումբ երիտասարդներ ուղարկուել էին Բիւզանդիոն՝ յատկապէս յունարէն ուսանելու և թարգմանու-

---

[14]) Կորիւն ասում է „հին կտակարանս“ իսկ Խորենացին „զնոր կտակս“. Հակառակ պ. Խալաթեանի կարծեաց,—որ ասում է „Զ'ինդրի աստ՝ զհին, եթէ զնոր կտակարանս իցէ թարգմանեալ“. Նոյն. էջ 71—, կարծում ենք, որ այս տարբերութիւնն իսկ կասկածելի է կացուցանում իրողութիւնը:

[15]) Տես. Գ. Խալաթեանց. Նոյնը. էջ 70:

ամբ պարապելու—սբ. գրքի կրկին թարգմանութեան վե-
րբերմամբ՝ կարդում ենք Խորենացու հետեւեալ խօսքերը.
որ առեալ Մեծին Սահակայ և Մեսրոպայ, դարձեալ թարգ-
մնեցին զմի անգամ թարգմանեալն, փութանակի հանդերձ
քօք վերստին յօրինեալ նորոգմամբ։ Բայց քանզի անգէտք
ն մերում արուեստի, ի բազում մասանց թերացեալ գործն
ունէր. վասն որոյ առեալ մեծին Սահակայ և Մեսրոպայ
եզ առաքեցին յԱղէքսանդրիայ՝ ի լեզու պանծալի, ի ստոյգ
գանալ ճեմարանին վերաբանութեան» 16)։

գ. Փարպեցին պատմելով թէ՝ Մեսրոպ «եստեղծ գնշա-
ագիր մեր հանդերձ հռուփանոսիւ, կերպաձևեալ զգիրն»...
րունակում է. «և այսպէս դիպեալ գիւտի նշանագրացն՝
եւն ի գործ արկանէր երանելին Մաշթոց, յերիւրելով գնա
. հայրապետին հայոց Սահակայ, դիւրահնար ճանապարհս
ուցանելով կարգադրութեան գրենոյս և հեգենային ուղղա-
յնութեան» 17)։ Պ. Խալաթեանցն այս տողերը համարում
«աղաւաղումն», «բռնի եղծումն» և «հակառակ տրամաբա-
ութեան» 18). սակայն ինչո՞ւ։

Սոյն տողերը մեզ բոլորովին տրամաբանութեան հակա-
ակ չեն երևում. եթէ նոյն իսկ ենթադրենք, որ «եստեղծ
շանագիրս մեր հանդերձ հռուփանոսիւ և այլն» խօսքերը
պատկանում են Փարպեցուն, այն ժամանակ կարելի է ասել,
ր «եստեղծ»ը վերաբերում է աւելի տառերի նոր ձևերին,
նչպէս պարզ ցոյց են տալիս «կերպաձեւեալ զգիրն» յաջոր-

---

16) Տես. Մ. Խորենացի. նոյնը. գլխ. կա. էջ 391։

17) Տես. Փարպեցի. նոյնն. էջ 41։

18) „Պարտ է դիտել, զի այն մասն Ղազարայ պատմութեան,
րում զնշանագրացն պատմի գիւտէ և ըստ ոճոյն կրէ նշմա-
նս ինչ աղաւաղման կամ բռնի եղծման։ Կարէր արդեօք
ազար զայնպիսիս առնել սխալանս, որ հակառակ են անեն պարզ
ն տրամաբանութեան"։ Տես. Գ. Խալաթեանց. նոյնը. էջ 73։

դող խօսքերը. իսկ «յերիւրելով զնա. Սահակայ, դիւրահնար
ճանապարհս ցուցանելով» վերաբերում է այբուբենի շարա-
յարութեան և տառերի հնչման, ինչպէս որ ապացուցանում են
«ցուցանելով կարգադրութեան գրենոյս եւ հեգենային ա-
ղաձայնութեան» յաջորդող խօսքերը: Սակայն եթէ նոյն իսկ
ընդունենք, որ այդ երկու հատուածներն ես միևնոյն միտք
են պարունակում, դարձեալ տրամաբանութեան հակառակ
չէ կարող լինել. արդեօք մի անգամ սբ. Մեսրոպի ձեռքով
«ստեղծածը փոփոխութեան չէր կարող ենթարկուել՝ խորհր-
դակցութեամբ կաթուղիկոսի և այլ հասկացող քահանաների,
ինչպէս ասում է Փարպեցին. «տալով նմա օգնական և այլ
արս բանիբունս եւ մտացիս ի քահանայիցն Հայոց, որք էին
սակաւ մի և նոքա որպէս երանելին Մաշթոց մերձաւորեալք
ի յունարէն հեգենայսն»: Փարպեցու այն բոլոր հատուած-
ներն, որոնք տարբերւում են Խորենացու և Կորիւնի հա-
ղորդածներից, պ. Խալաթեանցն անուանում է «բանի եղ-
ծումն» գլխաւորապէս այն պատճառով, որ իբրև թէ այդ հա-
տուածների նպատակն է սբ. Մեսրոպի անձը նուաստացնել,
իսկ Ղազարից անսպասելի է այդ [19]:

Եթէ այդ հատուածները սբ. Սահակի գործակցութիւնը
—Մեսրոպեան այբուբենի կազմակերպութեան գործում—ա-
ռաւել պարզ և որոշ են ներկայացնում, քան մեր միւս եր-
կու աղբիւրներն, այդ չէ նշանակում, որ դոցա նպատակն
է սբ. Մեսրոպի անձը նուաստացնել. ընդհակառակը մեզ
թւում է, որ այդ հատուածներն առաւել մօտ են ճշմար-
տութեան: Սովորական երևոյթ է, որ մի որ և է նշանաւոր

---

19) «Թուի մեզ...» հաղիւ թէ կարէր Ղազար այնքան տար-
բեր իմն կացուցանել յանդիման զանձնաւորութիւն Մեծին Մես-
րոպայ, զորոյ զվաստակոցն արգասիս նա ինքն առաւել քան զայլ
ոք ի ժամանակակցացն պարտ էր ճանաչել արժանապէս»: Տես.
Խալաթեանց. նոյնը. էջ 72:

ղութիւն տեղի ունենալիս՝ սկզբնապատճառն և յաջող
մ դժբաղդ ելքի բոլոր առիթները ժամանակակիցները վե-
գրում են և կենդրոնացնում մի անձնաւորութեան վերայ.
ն ինչ գործի ժամանակ այդ անձնաւորութիւնը միշտ ու-
ենում է իւր գործակիցներն ու խորհրդակիցները։ Այսպէս
մեր ազգային դպրութեան հաստատման նշանաւոր իրո-
ութիւնը մեր երկու պատմագիրները կենդրոնացնում են
խաւորապէս սբ. Մեսրոպի անձնաւորութեան վերայ։ Ըն-
ունում ենք, որ սբ. Մեսրոպը հանճարեղ, քանքարաւոր,
արձր գաղափարների ձգտող և ձիրք ունեցող անձն էր, սա-
ոյն մի և նոյն ժամանակ չենք կարող չխոստովանել, որ
տարուած պատմական նշանաւոր իրողութիւնը մի անձի
ժից վեր գործ էր։

Ինչո՞ւ պ. Խալաթեանցը մերժում է Փարպեցու հաղոր-
ած տեղեկութիւնները սբ. Սահակի մասին. մի՞թէ զարմա-
ալի է, որ սբ. Մեսրոպը Փարպեցու ասելով՝ միշտ դիմում
սբ. Սահակի օժանդակութեան. ո՛չ, և ահա թէ ինչու.

Սուրբ Սահակը կաթուղիկոս էր և հայ եկեղեցւոյ պե-
։ իսկ սբ. Մեսրոպը պարզ, սակայն արժանաւոր եկեղեցա-
ն, որ բարձր աստիճան չունենալով հանդերձ՝ ստորադրեալն
եկեղեցւոյ պետի և առանց նորա հրամանի չէր կարող
րծել։

Սբ. Սահակը կարող էր գործակից լինել Մեսրոպին հայ
ռերի և դպրութեան վերականգման գործում և գուցէ
ն իսկ «*առաջնորդ*», «*ուսուցանող*» նորա, որովհետև սբ.
հակն անկարող և անուս կաթուղիկոս չէր և առաւել գե-
ղանց կրթութիւն էր ստացել քան սբ. Մեսրոպը։ Սբ.
սրոպն ուսել էր Հայաստանում—ի բաց առեալ իւր ճա-
պարհորդութիւնները—Ներսէս Մեծին աշակերտելով. իսկ
. Սահակն իւր կրթութիւնը ստացել էր Բիւզանդիոնում,
ն ժամանակուայ գիտութեանց գլխաւոր կենդրոններից մէ-
ւմ, և ինչպէս Փարպեցին ասում է. «. . . յոյժ առլցեալ

անցուցանէր վարժիւք զբազում գիտնովք Յունաց. եղեալ կատարելապէս հմուտ երգողական տառիցն և հռետորական յորդասաց յայտնաբանութեան. ևս առաւել տեղեկացեալ փիլիսոփայական արուեստիցն ցուցանիւր»։ Ուստի և սբ. Մեսրոպի նուաստացումը չէ Փարպեցու միտքը—որովհետև այդ հատուածները մենք «բունի եղծում» չենք համարում, այլ Փարպեցու հարազատ խօսքերը—, երբ ասում է. «առանց Սահակայ բուական չէին ի վճարել անսխալ ուղղակի... յերիւրելով գնա... Սահակայ, դիւրահնար ճանապարհ ցուցանելով կարգադրութեան գրենոյն» և այլն [20])։

Եթէ ուշադրութեամբ և քննադատական հայեացքով կարդանք մեր վերոյիշեալ երեք պատմաբանների տուած տեղեկութիւնները սբ. Սահակի և Մեսրոպի մասին, կ'տեսնենք որ թէև այդ երկու մեծ անձինք միասին են գործում և միմեանց աջակցում, այնուամենայնիւ սբ. Սահակի գործողութիւնը հանդիսանում է առաւելապէս գրականութեան և թարգմանութեան պարապմանց մէջ—հարկաւ բացի քաղաքական հոգսերից—իսկ սբ. Մեսրոպը հանդիսանում է իբր «ուսուցիչ հայոց աշխարհի», մեծ քարոզիչ քրիստոնէական հաւատի և ազգային գաղափարի։ Սբ. Մեսրոպը հանդիսանում է իբրև մի մեծ գործնական անձնաւորութիւն. նա երկար ժամանակ չէ մնում մի տեղ, այլ շրջում է իւր ամբողջ կենաց ընթացքում Հայաստանի և սահմանակից դրացի երկրների նահանգները, քարոզում և տարածում է քրիստոնէական լուսոյ ճառագայթները դեռ ևս խաւար մնացած

[20]) Պէտք է ասած, որ նոյն իսկ պ. Խալաթեանցը խոստովանում է, որ իւր յառաջ բերած փաստերը բաւականացուցիչ ապացոյցներ չեն, վասն զի իւր քննադատութեանն անմիջապէս կցում է հետևեալ խօսքերը. „Մեք ինքնին ճանաչեմք, եթէ չեն այնպէս ակներև մերս ցուցմունք, մինչև գլխովին լուծանել կամ գոնեա պարզաբանել զկնճիռս կարևոր խնդրոց“։ Տես. Խալաթեանց. նոյն. էջ 73։

նկիւններում. մի և նոյն ժամանակ ուսուցանելով կարդալ րելու արուեստը՝ ոչ միայն Հասարակ ժողովրդին և ազ-ուականներին, այլ և թագաւորներին և եպիսկոպոսական աՀի վերայ բազմող եկեղեցականներին։

Ո՛չ միայն Փարպեցին, այլ և Խորենացին ու Կորիւն թարգմանութեանց վերաբերմամբ ճառելիս միշտ ՍաՀակին ն առաւելութիւն տալիս. Աքանչելին պատմելով սբ. Մես-ոպի վերադարձը Վրաստանից և սբ. ՍաՀակին ընկերանալը՝ արունակում է. «Յետ այնորիկ ուշ եդեալ երկոցունց երա-ելեացն՝ գիւրեանց ազգին զդպրութիւն առաւել յարգել և իւրացուցանել, *ձեռն ի գործ արկանէր ի թարգմանել եւ գրել Մեծն Իսահակ՝ ըստ յառաջագոյն սովորութեանն»։* ՛ի փոքր լետոյ. «սակայն սբ. ՍաՀակը թարգմանեց յունա-էնից—Հայերէն բազմաթիւ եկեղեցական գրուածքներ, որ... եառյ ձեռնարկեց Եզնիկի Հետ առաջուց շտապով թարգմա-ուածներն ուղղել՝ նոր բերուած ճիշտ օրինակներից և թարգ-անեց դարձեալ սբ. գրոց բազմաթիւ բացատրութիւններ։ որենացին պատմելով Վրաց և Աղուանից «նշանագրերի գիւ-ը», շարունակում է։ Եւ վերակացու թողեալ աշակերտ իւր Յովնաթան, միանգամայն և քաՀանայս կացուցեալ դրանն րքունի, ինքն դառնայ ի Հայս և գտանէ զմեծն ՍաՀակ *թարգմանութեան պարապեալ յասորոյն՝ յոչ լինելոյ յունին»։*

Վերոյիշեալ փաստերի Հիման վերայ մենք այն եզրակա-ութեան ենք գալիս, որ Փարպեցին առաւել քննադատական այեացքով է պատմում Հայոց Հին այբուբենի վերանորո-ումը, քան իւր նախորդները։

Որ Փարպեցու պատմութիւնը կարող է տեղ-տեղ եղ-ուած լինել, չենք մերժում, սակայն այնպիսի «աղաւաղումն» րպէս պ. Խալաթեանցն է ենթադրում, տեղի ունեցած չենք ամարում. իսկ Խորենացու այն երկար Հատուածը, որ զե-եղուած է Փարպեցու պատմութեան մէջ բառ առ բառ և աղկացած է ամբողջ յիսուն և մէկ տողից, *Փարպեցուն չէ*

պատկանում և ներմուծուած է Փարպեցու ձեռագիրն արտագրողներից [21]։

ա. Փարպեցին մի այդպիսի երկար հատուած չէր արտագրի Խորենացուց, առանց նորա անունը յիշելու, իսկ եթէ այդպէս վարուէր՝ բառ առ բառ չէր արտագրի։

բ. Գ. Խալաթեանի յառաջ բերած միւս բոլոր հատուածներից իւրաքանչիւրը—որ Փարպեցին առել է Խորենացուց— հազիւ թէ այն հատուածի մի տասերորդի չափ լինի և որ գլխաւորն է, բոլորովին բառացի չէ [22]։

---

[21]) Գժբաղդաբար Փարպեցու ձեռագիր օրինակներից միայն երկու հատ են յայտնուել ցայժմ. այս հանգամանքը զրկում է մեզ համեմատութեան մեթոդի օգուտներից։ Փարպեցու պատմութեան ձեռագիրների սակաւութիւնն էս պ. Խալաթեանցը բացատրում է յօգուտ իւր տեսութեան, այսինքն՝ Փարպեցու թշնամիները չ'բաւականանալով նորա պատմութիւնը եղծելով, ձգտել են նաև բոլորովին ոչնչացնել այդ։—Տես. Խալաթեանց. Նոյնը. էջ 53.—։ Գ. Խալաթեանի այս ենթադրութեան դէմ ոչինչ չունինք ասելու, սակայն եթէ այդ տեսութեան հետևենք, այն ժամանակ Մ. Խորենացու պատմութիւնից մի հատուած անգամ մեր ձեռքը չ'պէտք է հասնէր. որովհետև սա էր, որ իւր ողբի մէջ անխնայ կերպիւ հարուածեց իւր ժամանակակից հասարակութեան համարեա թէ բոլոր դասակարգերը—„վարդապետք տխմարք..., կրօնաւորք կեղծաւորք..., վիճակաւորք հպարտք..., աշակերտք հեղգ..., ժողովրդականք վէսք..., զօրականք անիրաւք..., իշխանք ապստամբք..., դատաւորք տմարդիք, սուտք, խաբողք, կաշառառուք" և այլն—և սորա սբ. ոսկրներն էին, որ գերեզմանի մէջ անգամ հանգստութիւն չունեցան։

[22]) Պ. Խալաթեանցի յառաջ բերած համեմատութիւնները հետևեալներն են. ա. Խորենացին ասում է. „եւ ոչ անօրինաց մատնել ի ծաղր եւ յայպանումն... (և տասը տողից յետոյ շարունակում) քանզի դրօշմեալ է (Արտաշիր) աւազանաւն, թէպէտ եւ անառակ է"—տես. Խորենացի, Նոյնը. գիրք III. գլխ. կգ. էջ 395—396—։ Փարպեցին ասում է. „եւ ոչ անօրինաց մատնելով ի ծաղր եւ յայպանումն տալ զատրք

գ. Նմէ այդ հատուածն ամբողջապէս հանենք Փար-
ցու գործից՝ պատմութեան ընթացքն ու կապը չի խան-
րուի.—սոյն հատուածի նախընթաց նախադասութիւնն է.
ոկ արքային Հայոց սբ. կաթուղիկոսուն Սահակաւ և երա-
ւլեաւն Մաշթոցիւ ընկալեալ գնշանագիրսն ի Հաբէլէ՝ ու-
ւխ լինէին»։ Ապա Խորենացու վերոյիշեալ հատուածից ան-
ջապէս յետոյ շարունակում է. «Եւ այսպէս գիպեալ գիւ-
ի նշանագրացն՝ ձեռն ի գործ արկանէր երանելին Մաշ-
ոց, յերիւրելով գնա սբ. հայրապետին Հայոց Սահակայ,
ւրահնար ճանապարհ ցուցանելով»... և այլն։

դ. Փարպեցին իւր պատմութեան մէջ սբ. Մեսրոպին
զբից մինչև վերջը անուանում է Մաշթոց—այս անունը
կնուած է տասնևեօթն անգամ—իսկ այն հատուածի մէջ,
արտագրողները Խորենացուց վերցրել և մտցրել են Փար-
եցու պատմութեան մէջ, մնացել է և Մեսրովբ անունը—
կրկնուած է չորս անգամ—. միմիայն այս իրողութիւնը
ւական է, որպէս զի համոզուենք՝ թէ Փարպեցին ինքը
ր կարող լինել այդ հատուածի արտագրողը։

---

րհուրդ հաւատոյս մերոյ... (և երեսունուինը տողից յետոյ
րունակում է) զի թէպէտ եւ մեղաւոր է, այլ ղրոշմեալ է
աւազանին ծննդեամբ՛—տես. Ղ. Փարպեցի, նոյնն. էջ
—59—։ Այս օրինակն պ. Խալաթեանցի յառաջ բերած հա-
մատութիւններից ամենամեծ նմանութիւն ունեցողն է. ահա և
այլ օրինակ. Խորենացին ասում է. „վասն զի ոչ համակա-
ցար մեզ՝ չթագաւորել նմա, արդ եւ մեք կամեցուք եւ
զ չքահանայանալ մեզ"—տես. Խորենացի նոյնը, գիրք III.
ւ. կգ. էջ 396—։ Փարպեցին ասում է. „... թէ փոխանակ
ոչ լուար բանից մերոց, եւ ի միաբանութենէ մերմէ զանձն
ի բաց մերժեցեր, գիտասջիր զի որպէս եղեալ է ի մտի
ագաւորել սմա եւ այլ եւս ի վերայ խոստանամք՝ չքա-
նայանալ եւ ոչ քեզ առ յերկարս ի վերայ աշխարհիս
րում". տես. Փարպեցի. նոյնն, էջ 62։

ե. Այդ հատուածը վերցնելուց յետոյ [23]) կաներևոյթանան այն ամեն ըստ երևոյթին հակասութիւններն, որ պ. Խալաթեանցը համարում է «բանի եղծմունք», «սխալանք, որ հակառակ ելանեն պարզ իմն տրամաբանութեան» և այլն։ Եթէ ի բաց թողնելով այդ հատուածը, կարդանք Փարպեցու տուած տեղեկութիւնները հայոց հին այբուբենի վերականգման և կատարելագործութեան մասին—որ ընդամենը տասնևերեք փոքրիկ էջ կլինի—, կտեսնենք որ ճշմարիտ Փարպեցին հաւատարիմ է մնացել իւր յայտնած սկզբունքներին. «չ'առնել մարդահաճութեան բանից յաւելուածս, չ'յաւելուլ զանեղեալսն, չնուազեցուցանել զեղեալսն... այլ ընաւն ողջախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն»։

Այսպիսով թէև Փարպեցին մեզ յայտնած չի լինի մի քանի երկրորդական տեղեկութիւններ—ինչպէս օրինակ սբ. Մեսրոպի Եդեսիայ և Սամոսատ գնալը—, սակայն եղելութեան բուն էութիւնը պարզ և համառօտ պատմած. այսինքն թէ սբ. Մեսրոպը հայոց հին այբուբենը ստանալուց յետոյ սբ. Սահակի և գլուխն ու հասկացող քահանաների օժանդակութեամբ վերանորոգում և կատարելագործում է

---

[23]) Մեր հին ձեռագիրների ուսումնասիրողների համար մի նոր երևոյթ չէ, որ շատ գրչագիրների մէջ մտցրած են զանազան հատուածներ արտագրողների կողմից. այն արտագրողներն, որոնք հասկացող լինելով՝ ըմբռնել են իւրեանց արածի նշանակութիւնը, իւրեանց կողմից աւելացրած հատուածներին միջատակարանի ձև են տուել և այդպիսով մի օգտակար գործ կատարել. իսկ այն արտագրողները, որոնք լուրջ ուշադրութիւն չեն դարձրել իւրեանց գործի վերայ, մտցրել են գրչագիրների մէջ—ո՛չ թէ զեղծելու, այլ լրացնելու նպատակով—այլ և այլ հատուածներ և այդպիսով պատմութեան ընթացքը շատ անգամ խանգարել։ Այսօր մենք մասամբ այդ իմաստակ արտագրողներին ենք պարտական, որ մեր ամենաընտիր մատենագիրները չեն դիմանում եւրոպական խիստ քննադատութեան և այդ պատճառով սխալմամբ կեղծ համարւում։

յոց նոր այբուբենը։ Այս տեսակէտից աՀա Փարպեցու պատ-
ւթիւնը ճշտագոյն աղբիւրը պէտք է լինի մեր այբուբենի
րականգման պատմութիւնն ուսումնասիրողների Համար։
րպեցին ամենայն կերպ Հաւատարիմ մնալով իւր սկզբուն-
ն, ամենապարզ կերպիւ ներկայացնում է մեզ մեր նոր
բուբենի կազմակերպութեան եղելութիւնը՝ բոլորովին կա-
տութիւն չզգալով Հրաշքների դիմելու։

Իսկ ինչ վերաբերում է Մ. Խորենացու և Կորիւնի մէջ
ած յարաբերութեանց, պէտք է ասել, որ դոքա իրար Հա-
սող իրողութիւններ չեն պատմում, սակայն կան այնպիսի
պքեր, որ Խորենացին յիշում է, իսկ Կորիւնի մօտ չենք
նում. մի այլ Հատուած, որ պատմում է Կորիւնը, չկայ
րենացու մէջ։ Այս տարբերութիւնը յառաջ է գալիս այն
նգամանքից, որ երկուսի Հեղինակութեանց նպատակը տար-
ր է. Խորենացին գրում է Հայոց ընդՀանուր պատմու-
իւն, ուստի նորան անՀրաժեշտ է ժամանակակից քաղա-
ական պատմութիւնն ևս յարակցել «նշանագրերի գիւտի
տ, իսկ միւս կողմից՝ այլ տեսակէտից նայելով սբ. Մես-
պի անձնաւորութեան վերայ, իւր պատմածներն ևս տեղ-
ղ աւելի ընդարձակ են, քան նոյն իսկ սբ. Մեսրոպի վար-
ագրի գրածը։

Իսկ Կորիւնի աշխատութիւնն աւելի, այսպէս ասած,
բազան բնաւորութիւն ունի և առաւել մանրամասն նկա-
ագրում է մեծ ուսուցանողի սրբակեաց վարքը. նորա ա-
պատական և միայնակեցական կեանքն է գովաբանում՝
շտ օրինակներ բերելով սբ. գրքից և մարգարէութիւննե-
ց։ Թէ ինչպէս է ըմբռնում Կորիւն Սքանչելին իւր յանձն
ւած աշխատութեան—որ գրեց Յովսէփ կաթուղիկոսի և
իւր ընկերների խնդրանօք—նպատակն և ուղղութիւնը,
ն յայտնի երևում է նորա Հետևեալ խօսքերեց. «Եւ արդ
ւեալ նախաբանեսցուք, եթէ իցէ Համարձակութիւն գրով
անակել զվարս արանցն կատարելոց. ոչ ի մէնջ արուես-

տախօսեալ մերոյն կարծեօք վիճաբանելով, այլ յօրինակացն տուելոց զընդդիմակացն բարձրացուցանել։ Քանզի Աստուծոյ բարեբարին այնպէս բարեխօսեալ զիւրոց սիրելեաց, ոչ միայն ըստ առաքինութեան վարուց....։ Տես Կորիւն. էջ 2.

«Քանզի չէաք իսկ հանդուրժօղք՝ զամենայն արարեալսն կատակաւ զիւրաքանչիւրսն. այլ ի գիւրագոյն և ի հեշտագոյնս, յառաքելական անդր զանձինս պատսպարեցաք. որոյ անցեալ զբազմախուռն արգասեօք որքոցն, առ ի մանրակրկիտ առնելոյ զկարևորագոյնս պատմելոյ՝ զհանգամանս առացաք....։ Տես. Կորիւն. էջ 28։



## ԳԼՈՒԽ ԺԳ.

### ՀԱՅՈՑ ՀԻՆ ԵՒ «ԴԱՆԻԷԼԵԱՆ» ԿՈՉՈՒԱԾ ԳԻՐԸ

---



Եթէ բացի Կորիւն և Խորենացի ժամանակակիցներից ուրիշ ոչ ոք մեր յետագայ մատենագիրներից ոչինչ չհաղորդէր մեզ՝ Հայոց ազգային կեանքի համար այդ անսահման նշանաւոր իրողութեան մասին, մենք մի պարզ գաղափար չէինք կարող ունենալ Հայոց այբուբենի կազմակերպութեան վերաբերութեամբ։ Այդ վերոյիշեալ երկու պատմագիրներն երախտագէտ սրտով գովաբանելով իւրեանց մեծ ուսուցանողին և ճառերով էջեր լցնելով՝ բաւականանում են «Նշանագրերի գիւտն» երկու խօսքով պատմել՝ վերագրելով այդ Աստուածային շնորհաց և ընթերցողին թողնում են մտատանջութեան մէջ՝ այն բազմաթիւ հարցերի առաջ, որոնք ծագում են դոցա մութն ակնարկութիւններից։ Այսպէս օրինակի համար մեզանից իւրաքանչիւրն, որ կարդում է այդ պատմագիրների ասածները՝ կարող է իրաւամբ հարցնել.

ա. Ի՞նչպէս է պատահում, որ սբ. Մեսրոպն երկար ու ձիգ տարիներ քրտնաջան աշխատելով, երևելի ճարտասան ու լեզուագէտ անձանց դիմելով՝ չէ կարողանում իւր նպատակին հասնել, այսինքն Հայոց լեզուի համար սեպհական այբ-

ուբեն գտնել, իսկ միւս կողմից յերևան է գալիս մի քահանայ—յայտնի չէ իսկապէս Հա՞յ թէ Ասորի—և ասում թէ ինքը գիտէ, որ կան «Հայ նշանագրեր» «առարեալ ի Դանիէլէ»։ Արդ ո՞վ էր այս Դանիէլը—մի ասորի եպիսկոպոս, որի Հայերէնագիտութեան աստիճանն անյայտ է. Հայաստանից, Հայ բնիկ ժողովրդից հեռու, Միջագետքում նստած նա Հայերէն նշանագրեր է պատրաստում, որի անյարմարութիւնը մեր սբ. Սահակ և Մեսրոպը դեռ ևս երկու տարի քրտնաջան աշխատելուց և դոցա ի գործ դնելուց յետոյ են տեսնում։ Եւ այդ Դանիէլի մասին ահա՛ մեր պատմագիրները մի խօսք անգամ չեն ծախսում, բացի այն՝ թէ նա ասորի եպիսկոպոս էր և Վահրիճին ու Հաբէլին սովորեցրեց տառերի հնչիւնն և Մեսրոպին ևս աւելի չկարողացաւ տալ. մի՞թէ այս ձևով պատմուած Դանիէլը կարող է «դանիէլեան նշանագրեր» կոչուած Հայոց գրի իսկական հեղինակը լինել։

բ. Այդ երկու պատմագիրներն ևս «Դանիէլեան նշանագրերն՝ իբր անպէտք համարելով և դէն ձգելով՝ ասում են, որ սբ. Մեսրոպը «գտաւ Նոր նշանագրեր» առանց յայտնելու դոցա էութիւնն ու տեսակը։

Այսպիսի հարցումներ և գործեան հանգոյցներ շատ կարելի էր յառաջ բերել մեր վերոյիշեալ երկու պատմագիրներից, սակայն բաւականանանք այսչափով, վասն զի բարեբաղդաբար մեր յետագայ և աւելի ուշ ժամանակի պատմիչներն առաւել պարզ են ներկայացրել գործն և իրականութեան մօտիկ, քան հանճարեղ Խորենացին և սքանչելին Կորիւն։

Արդէն խօսեցինք Փարպեցու վկայութեանց արժանաւորութեան մասին, այժմ յառաջ ենք բերում այդ վկայութիւններից մի երկու կէտեր, որոնք անմիջական յարաբերութիւն ունին Խորենացու և Կորիւնի անլոյծ թողած հարցերի հետ։

Փարպեցին պարզ, հասկանալի և ճշմարիտ կերպիւ նկարագրելով այն հանգամանքներն, որոնք սբ. Մեսրոպին առիթ տուեցին Հայոց այբուբենի վերականգման մասին աշխատել՝

րունակում է. «մանաւանդ թէ զոն նշանագիրք հայերէն
շւոյս, որով հնար է ինքեան ձայնիւ, և ոչ մուրացածոյ
րբառով շահել....» և այլն։ Այս խօսքերից ակնյայտնի ե-
ւում է, որ մի ժամանակ գոյութիւն էր ունեցել հայոց մի
լբուբէն, սակայն այլ ևս չգործադրուելով՝ անյայտացել էր
որի գտնելը համարեա թէ անկարելի դարձել։ Որ սբ.
եսրոպի առաջին ջանքն էր՝ գտնել այդ կորած այբուբենը,
արզ ակնարկում է Փարպեցին ասելով. «ասացեալ է ուրումն
րքայ, թէ տեսի նշանագիրս առ ումեմն եպիսկոպոսի»...
տեսի նշանագիրս» խօսքերը վկայում են, որ խօսքը մի որոշ
շանագրերի մասին է, ուստի և պատմագիրն ոչ մի ածա-
ն չէ աւելացնում. իսկ այդ որոշ այբուբենն ո՞րը կարող է
նել, բացի հայոց՝ կորած և Մեսրոպի որոնած այբուբենը։
այդ «նշանագիրը» հայոց հին այբուբենն էր, ասում է
արզապէս նոյն իսկ Փարպեցին՝ երբ խօսում է Դանիէլի մա-
ն. «. . . Դանիէլի եպիսկոպոսի, առ որում նշանագիրքն
յերէն կային»։ Եւ ահա այս մոռացուած և նորից գտած
յբուբենը կատարելագործում է սբ. Մեսրոպը—վասն զի մի
անի պակասութիւններն անհրաժեշտ էին կացուցանում այդ
—«յերկիրելով», «դիւրահնար ճանապարհ ցուցանելով կար-
ադրութեան գրենոյս եւ հեգենային ուղղածայնութեան». և
յլն։ Այսպիսով Փարպեցին շատ հասկանալի կերպով է պատ-
ում հայոց այբուբենի վերականգման գործն և երբէք չէ
սում «Դանիէլի այբուբեն» կամ թէ «Դանիէլի շինած այ-
ուբեն»։

Փարպեցու պատմածն առաւել ընդարձակում և պար-
ում է մի աւելի ուշ ժամանակի հայ պատմաբան՝ Վարդան [1]),

---

[1]) Վարդան վարդապետ՝ պատմագիր 13-րդ դարու և
ամանակակից Կիլիկիոյ Հեթում թագաւորի և Կոստանդին կա-
ողիկոսի. բացի իւր ընդհանուր պատմութիւնից ունի նաև
յլ մանր գրուածներ։

որ Մեսրոպեան այբուբենի մասին խօսում է հետեւեալ կերպիւ. «Ի հինգերորդ ամին սորայ—այսինքն Վռամշապհոյ— եւ յառաջին ամին Արտաշրի որդւոյ Տապհոյ՝ սբ. Մեսրոպ յօրինէ դպրութիւն Հայերէն քսան եւ երկու—22—գիր առ Դանիէլի ասորւոյ գտեալ ի հին ժամանակաց, որ վասն ոչ պարզելոյն զընդարձակութիւն լեզուին՝ անհոգացեալ եղեւ յառաջնոցն. յոյն և ասորի և պարսիկ գրով շատացեալք և ոչ Մեսրոպ կարէր նոքօք փոխել զաստուածաշունչ մատեանս ի Հայ բարբառ։ Վասն որոյ աղօթիցն տուեալ զանձն՝ գործակցութեամբ սրբոյն Սահակայ, տայ նմա Աստուած զխնդրելին չորեքտասան—14—գիրս՝ աջով իւրով դրօշմեալ առաջի նորա, որպէս մեծին Մովսէսի ի լեառն Սինայ, և նմա ի լեառն Բալուայ, որպէս տախտակին ցուցանէր դրօշմն աստուածագիծ վիմին և նկարք գրերոյն, և պատուէր տեղւոյ խնկօք և ջահիւք» ²)։ Վարդանի այս խօսքերն այլ եւս բացատրութեան կարօտ չեն. այս վկայութիւնը համաձայն Փարպեցու պատմութեան, ճշտում է, որ Դանիէլեան կոչուած այբուբենը Հայոց հին գործածական գիրն էր, սակայն տեղի տալով յունաց, ասորւոց և պարսից գրերին՝ մոռացութեան էր տրուել մինչև որ նորից գտնուեցաւ և սբ. Մեսրոպի և Սահակայ ջանիւք կատարելագործուելով՝ կրկին գործածական դարձաւ ամբողջ ազգի համար։

Երբ այժմ այս պարզ հայեացքով կրկին կարդանք մեր երկու ժամանակակից պատմագիրների մօտ մնացած և ակնարկած տողերը, կտեսնենք, որ նոքա հակառակ իւրեանց ցանկութեան՝ մի և նոյնն են վկայում։

Այսպէս օրինակի համար Կորիւնի ասելով, Սահակ և Մեսրոպը համոզուեցան, որ Դանիէլի մօտ գտնուած գրերը չեն կարող կատարելապէս արտայայտել Հայոց լեզուի

²) Տես. „Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի“. էջ 50։

կապերն և վանկերը՝ „մանաւանդ զի եւ նշանագիրքըն իսկ՝ յայլոց դպրութեանց թաղեալք եւ յարուցեալք դիպեցան“։ Վերջին խօսքերով Կորիւնը ակնարկում է այն հանգամանքն, որ Հայոց հին այբուբենը մոռացուել էր՝ տեղի տալով այլոց դպրութեանց, այսինքն այլոց գրերին և ապա կրկին յայտնուել [3])։

Մի այլ տեղ ասում է Կորիւն. «Յայնժամ պատմէր նոցա արքայն վասն առն ուրումն ասորոյ եպիսկոպոսի ազնուականի Դանիէլ անուն կոչեցելոյ, որ յանկարծ ուրեմն նշանագիրս ալփաբետաց հայերէն լեզուին»: Եւ ապա թէ. «առեալ երանելի Հոգաբարձուացն զյանկարծագիւտն՝ խնդրէին» և այլն։

Խորենացին խօսելով Դանիէլեան տառերի մասին՝ ասում է. «զվաղնջուց գտեալ նշանագիրք տառից [4])»։

---

[3]) Կորիւնի խօսքերը. „Մանաւանդ զի և նշանագիրքն իսկ՝ յայլոց դպրութեանց թաղեալք և յարուցեալք դիպեցան“ պրոֆ. Էմինը թարգմանում է այսպէս. „къ тому же надобно прибавить, что эти письмена были забыты и найдены случайно“—տես. Н. Эминъ: Ист. Арм. М. Хоренскаго յաւելուած 4. էջ 366։

Իսկ Կորիւնի թարգմանիչ պրոֆ. Վէլտէն այդ նախադասութիւնը թարգմանում է հետևեալ կերպիւ. „... Zumal—da auch Buchstaben aus fremden frühern und spätern Schriften-hinzugekommen Waren“։ Պրոֆ. Էմինը հաւատարմութեամբ չէ թարգմանել Կորիւնի խօսքերն, այլ միայն միտքն. իսկ պրոֆ. Վէլտէն բոլորովին սխալ է հասկացել այդ տառերի միտքը և սխալ էլ թարգմանել։

[4]) Հայր Ինճիճեանը խօսելով Ղ. Փարպեցու հետևեալ վկայութեան մասին. „Եւ դարք աւագ քահանայից ասէին ցուրբ քահանայապետն, թէ մեք որ կամքս առաջի քո հանդերձ երանելւոյն Մաշթոցիւ, զոր զարթոյց աստուածայինն շնոր ի ցանկութիւնս յայս՝ կարգել զվաղնջուց գրեալ շարագիրս տառիցն, զորս ոչ ուրուք էր հոգացեալ արկանել ի կիր...“—տես. Փարպեցի էջ 44.—շարունակում է. „Ահա յայս միտ պարտ է առնուլ և զոր ասէ Խորենացին. „Այլ ասիցէ ոք արգելք վասն ոչ լինելոյ գիր եւ դպրութիւն ի ժամանակին“—

Այս բոլոր վկայութիւններից մենք այն եզրակացութեան ենք գալիս, որ մեր նախնիքը դեռ ևս իւրեանց կռապաշտութեան ժամանակ ունեցել են սեպհական գիր։ Այս իրողութիւնը յայտնի էր Խորենացուն և Կորիւնին—ինչպէս որ վերոյիշեալ մութը ակնարկութիւններն արտայայտում են—սակայն դոքա գտանուելով սբ. Մեսրոպի քաջազարդ գործողութեանց արդիւնաւոր ազդեցութեան տակ և տեսնելով, որ Հայոց մտաւոր աշխարհն ՚ինչ հսկայական յառաջադիմութիւն արաւ շնորհիւ այդ մեծ ուսուցանողի, իսկ միւս կողմից եռանդուն քրիստոնեայ հոգևորականներ լինելով՝ ցանկանում են այդ բոլորի պատճառը կենդրոնացնել իւրեանց մեծ վարդապետի և աստուածային շնորհաց մէջ։ Միւս կողմից աչքի առաջ ունենալով, որ Հայոց հին այբուբենը կռապաշտական ժամանակի արդիւնք էր, ըստ ինքեան հասկանալի է թէ ինչու մեր պատմագիրները չեն յիշում դորա գոյութիւնը—թէև գուցէ անգիտակցաբար, բոլորովին ծածկել չեն կարողանում։

Հայ ժողովրդին կռապաշտական յիշատակներից հեռու պահելու համար մեր եկեղեցականների եռանդն այնչափ մեծ է եղել, ՚որ մինչև անգամ Խորենացին չէ ուզում անուամբ յիշել այն ՚ոչ քրիստոնէից գրած հեղինակութիւններն, որոնցից օգուտ է քաղում, այլ ասում է, որ աչքի առաջ է ունեցել նոցա յունարէն թարգմանութիւնը, թէև ըստ ֆոն-

---

տես. Խորենացի. նոյնը. գիրք Ա. գլխ. գ. էջ 7.—ոչ գոլեցան յիշատակարանք պատմութեանց։ Այսինքն է՝ վասն ոչ ուրուք հոգալոյ ի կիր արկանել զայն գիրս, այնպէս ի բաց թողեալ կայր որպէս թէ չգոյր". տես. Ինճիճեան, նոյնը. հատ. III. էջ 75։

Հայր Ինճիճեանի այս բացատրութիւնը բռնի է, վասն զի Խորենացին անմիջապէս շարունակում է. „Այլ ոչ արդարև այսպէս կարծեցեալ լինի. քանզի գտանին և միջոցք լեալ պատերազմացն, և գիր Պարսից եւ Յունաց, որովք այժմ.... առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք..." տես. նոյն էջը։

*ւտշմիղի* [5]), այդ հատուածներից պարզ երևում է, որ Խո-
նացին նոյն իսկ բնագիրներն է իւր ձեռքի տակ ունեցել։
Արդ, ընդունելով որ մեր կռապաշտ նախնիքը սեպհա-
ն ազգային գիր ունէին, տեսնենք թէ արդեօք դորա հա-
ր այլ, և ուղղակի վկայութիւն ունե՞նք։

Մեր ամենաառաջին պատմագիրն—ըստ ժամանակագրու-
թան—*Ագաթանգեղոս* երկու անգամ վկայում է իւր պատ-
ւթեան մէջ, որ սբ. Տրդատի թագաւորութեան ժամանակ
ւներով գրելու արուեստն արդէն տարածուած էր Հայաս-
նում։ Յառաջ բերենք Ագաթանգեղոսի այդ երկու վկայու-
ւնները.

«Եւ մինչդեռ կայրն կախեալ այնպէս,—սբ. Գրիգոր Լու-
ւորիչ—խօսեցաւ զայս ամենայն և *գրեցին ատենակալ*
*պիրքն նշանագրացն· զի առ ոչինչ համարեալ զկախաղանն,*
ոչ զբրածեծ գանին կրեաց ինչ զվիշտս. զի ջարդեալ էր
մենայն մարմինն յազօրածեծն առնել։ Եւ այլ ևս բազում
ն զայս խօսեցաւ՝ մինչդեռ կայր կախեալ. և *գրեցին եւ*
*ատուցին զայն առաջի Թագաւորի·* քանզի էր կախեալ
օթն օր [6])». մի այլ տեղ խօսելով Հռիփսիմէ կուսի մասին՝
րունակում է նոյն պատմագիրն. «Արդ իբրև այս շփոթ
մբոխի եղև ի նոցանէն ի մէջ կոտորելոց մարդկան բազմու-
եան, ոմանք ի մեծամեծ ամբոխէ սպասաւորացն արքունի՝
ոգէն ընթացան պատմել թագաւորին զամենայն բանս նո-
ւ. *քանզի դիպեցան անդ նշանագիրք՝ որ գրեցին զամենայն*
*նս,* և ընթերցան առաջի թագաւորին» [7])։

Արդ խնդիր է, թէ արդեօք «*նշանագիր*» ասելով Ագա-
անգեղոսը խօսում է իսկական նշանագրերի—թէ տաւերի

---

[5]) Տես. A. von Gutschmid. „Ueber die Glaubwürdig-
ِit der Armenischen Geschichte des Moses von Khoren" եր 40.
[6]) Տես. *Ագաթանգեղեայ պատմութիւն·* եր 89—90,
[7]) Տես. նոյնն. եր 140։

մասին։ Պրօֆ. Էմինն Ագաթանգեղոսի այս վկայութիւնը չէ վերագրում տառերին, այլ ընդունում է, որ խսկական նշանագրեր պէտք է հասկանալ. Հանգ. պրօֆ. իւր ենթադրութիւնը հիմնում է այն պատճառաբանութեան վերայ, որ իբրև թէ այն դէպքերում, որտեղ Ագաթանգեղոսը յառաջ է բերում իւր վկայութիւններն, անհրաժեշտ էր արագ գրելու կարևորութիւնն և մանաւանդ վերջին դէպքում անկարելի էր սովորական տառերով գրել խօսողի արտասանած իւրաքանչիւր բառն. ուստի պէտք է ենթադրել, որ դպիրները գրում էին մի տեսակ պայմանական նշաններով [8]։

Պրօֆ. Էմինի պատճառաբանութիւնը մեզ հիմնաւոր չէ թւում և Ագաթանգեղոսի վկայութիւնը բացատրում ենք յօգուտ տառերի գոյութեան՝ հիմնուելով հետևեալ պատճառաբանութեանց վերայ.

*ա.* Ի՞նչ հիման վերայ պ. Էմին ենթադրում է, որ դպիրները պէտք է *բառ առ բառ* գրէին կոյսերի ասածներն և երկնքից լսուած ձայնի խօսքերն. արդեօք յարգելի գիտնականն ենթադրո՞ւմ է, որ Ագաթանգեղոսի յառաջ բերած՝ կուսանաց արտասանած ճառերը բառ առ բառ վերցրած են այդ նշանագրերից—չենք կարծում։ Աւելի հաւանական և բնական է, որ դպիրները միայն եղած իրողութիւնն արձանագրէին և կարդային Թագաւորի առաջ։—Այս կէտի վերայ առանձին ուշադրութիւն դարձրինք նաև այն պատճառաւ, որ հայագէտ գիտնական *Լանգլուան* ևս հաւատ է ընծայել բառացի գրելու կարևորութեան. սակայն նա չ՛ընդունելով պ. Էմինի կարծիքն, որ այդ գրերը նշանագիր կամ պատկերագիր եղած լինին, աւելի հեռու է գնում և ենթադրում, որ այդ նշանագրերը պէտք է մի տեսակ *«համառօտագրութիւն»* եղած լինին [9]։ Լանգլուայի այս կարծեաց

---

[8]) Տես. Н. ЭМИНЪ, Նշնմ. էջ 364.
[9]) Տես. V· Langlois: Collection etc· հատ. II. էջ 4։

ջատագով է հանդիսանում նոյնպէս հայր Գ. Զարբանալեանն իւր «Հայկական հին դպրութեան» մէջ՝—հատ. I. էջ 19—աւելացնելով իւր կողմից «.... որոց ձեւն, ինչպէս նաև կիրառութիւնն ի Հռովմայեցոց մեզի անցած կերեւի»—նոյնը. էջ 17. հտ. I. ։

բ. Ագաթանգեղոսի ձեռագիր օրինակներից երկուսը պարունակում են իւրեանց մէջ մի քանի էջերից բաղկացած մի յառաջաբան, որի մէջ գտնում ենք նաև հետևեալ հատուածը. «Արդ հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռոմայ և վարժեալ հայրենի արուեստիւ, հոռոմարէն և յունարէն ուսեալ դպրութեան և ոչինչ կարի անտեղեակ լեալ ծեռնարկութեան նշանագրաց, և ի վերայ այսոցիկ հասեալ ի դուռն Արշակունւոյ.... ոչ զիւր քաջութիւն սուտ ինչ հրամայեաց մեզ վիպասանել և ոչ չքմազարդ (սքողման զարդ) բանից ինչ առասպելս աւելի քան զարժանն ընթանալ, այլ իրք որ եղեալ վասն յեղանակաց ... Արդ հասեալ առ իս հրամանի ի մեծ արքայէն Տրդատայ կարգել ինձ ի ծեռնարկութեան նշանագիտ ժամանակագրացն, պատմել նախ զհայրենեացն գործս քաջութեան, քաջին Խոսրովու և այլն» 10)։

Նոյմանի ասելով—որից առնում ենք այս հատուածը—դժբաղդաբար այս յառաջաբանն անթուական է. սակայն հաւանական է, որ Ագաթանգեղոսի, այսինքն պատմութիւն գրողի գրչի ծնունդ է. ո՛րդ, ի՞նչպէս պէտք է բացատրել «ոչինչ կարի անտեղեակ լեալ ծեռնարկութեան նշանագրաց» պարբերութիւնը. Ագաթանգեղոսը—ինչպէս ինքը գրում է—մի հռոմայեցի է, ստացել է հռոմէական դաստիարակութիւն և ծանօթ է նոյնպէս յունական դպրութեան. եթէ «նշանա-

---

10) Այս հատուածը հանել է Neumann Փարիզի արքայական գրադարանի ձեռագիր օրինակից. manuscrit n° 51 pag 8—ուեւ. Nouveau Journal Asiatique. tome III. (1829) եջ 53.

գիր» բառն ըստ պ. Էմինի իսկական նշանագիր կամ թէ ըստ Լանգլուայի համառօտագիր նշանակէր [11]), ինչ կարիք ունէր մի պատմաբան իւր յառաջաբանի մէջ յիշելու, որ նա տեղեակ է նոյնպէս այդ բանին, քանի որ այդ ժամանակ, վաղուց արդէն զարգացած էր հռոմէական և յունական այբուբենը, պատկերագրի կամ նշանագրի գործածութիւնը բոլորովին մոռացութեան էր տրուել, իսկ համառօտագրութիւնն այնպիսի մի երկրորդական բան էր և միայն արտաքոյ կարգի դէպքերի համար, որ դորա յիշելն իբրև մի առանձին առաւելութիւն կամ գիտութիւն՝ բոլորովին միտք չունէր։ Աւելի հաւանական ենք համարում, որ նշանագիր ասելով Ագաթանգեղոսն ուզում է ընդհանրապէս «գիր» գաղափարն արտայայտել, ուստի և այդ պարբերութիւնը մենք այնպէս ենք ըմբռնում, որ Ագաթանգեղոսը ցանկանում է ասել, որ ինքը նոյնպէս հմուտ է գրելու կամ շարադրելու արուեստին [12])—մի անհրաժեշտ յատկութիւն՝ պատմաբանի համար։ Իսկ եթէ «նշանագիրք» բառի տակ պէտք է անպատճառ գրի մի որոշ տեսակը հասկանալ, այն ժամանակ մենք կասենք, որ դա տառ կը նշանակէ և այդ պարբերութեան վերջից մի բառ է պակասում, և այդ բառն է «հայոց». ուստի և կլինի ... և ոչինչ կարի անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրաց հայոց»..։ Այս ձևով միայն հասկանալի կըլինի մեզ համար Ագաթանգեղոսի պարծանքը. հպարտ կերպիւ յիշում է նա, որ ինքը «մեծ Հռովմից» է և դաստիարակուել է հայրենի կրթութեամբ. պակաս նշանակութիւն չէ

---

[11]) A. von Gutschmid էլ այլ կերպ է ասում. „Kündig der Schnellschreibkunst" այսինքն ծանօթ արագագրութեան արուեստին. տես. Agathangelos, տպուած է Zeitschrift d. d. m. Gesellsch. հատ. 31. էջ 9։

[12]) Neumann այս պարբերութիւնը թարգմանում է այսպէս. „... et rien de ce qui est relatifaux lettres ne lui était étranger" տես. Neumann, նոյնն. էջ 53։

լիս նաև այն հանգամանքին, որ ունել է նոյնպէս «յու-ց գպրութիւնն». այժմ հրաւիրուելով Հայաստան և նշա-կուելով Հայոց գահակալ արքայի քարտուղար, մեծէ մի անձին նշանակութիւն չը պէտք է տար նաև այն հան-մանքին, որ ինքը ծանօթ էր նոյնպէս հայոց գրին. և մ իւր այդ առաւելութիւնն իւս աշխարհին յայտնե-. համար նա պէտք է գրէր. «և ոչինչ կարի անտեղեակ ալ ձեռնարկութեան նշանագրաց Հայոց»։

Դժբաղդաբար Ագաթանգեղոսի յունարէն թարգմանու-թեան մէջ պակասում է այս առաջաբանն [13], ուստի և հա-մատութիւնն անկարելի դարձնում։

գ. Եթէ յառաջաբանի մէջ «նշանագիրք» բառը գիր կամ ու է նշանակում, նոյնը պէտք է նշանակէ և պատմու-թեան մէջ։

դ. Մեր բոլոր հին պատմագիրները «նշանագիր» ասե-լ «տառ» կամ «գիր» են հասկանում. ապացոյցներ.

1) «... Եւ յարուցեալ յաղօթիցն, ստեղծ զնշանագիրս ր...։ [14]

2) «զվաղնջուց գտեալ նշանագիր տառից..» [15]

3) «յաղագս Դանիէլեան նշանագրութեանն» [16]

4) «առ որում նշանագիրքն հայերէն կային.. [17]

5) «տեղեկանայր զկարգ նշանագրացն» [18]

6) «Եւ այսպէս գիպեալ զխտի նշանագրացն..» [19]

7) «.. յորում Մաշտոց երանելի... դանիէլեան նշանա-

---

13) Տես. A von Gutschmid: Agathangelos, նոյն. էջ 9։

14) Տես. Մ. Խորենացի. նոյն, գիրք III. գլխ. ծգ. էջ 371։

15) Տես. նոյնն. գիրք III. գլխ. ծբ. էջ 369։

16) Տես. նոյնն. „ „ էջ 367։

17) Տես. Փարպեցի, նոյնն. էջ 39։

18) Տես. Փարպեցի, նոյն. էջ 39։

19) Տես. Փարպեցի, նոյնն, էջ 41։

գրօք զդպրութիւն ըստ Հայումս յօրինէր» [20])

8) «... վերստին աստուածատուր Նշանագրօք զնոյնս յեղանակեալ յօրինէր»... [21])

9) «... Մաշթոց զԴանիէլի նշանագիրս յօրինէ... և [22])

10) «յետ միոյ ամի դարձեալ աստուածատուր նշանագրօք զնոյն եղանակէ»... [23])

11) «Եւ ծանուցին զխորհուրդն Վռամշապհոյ թագաւորին և նա ասաց ...թէ ումն եպիսկոպոս ասորի՝ Դանիէլ անուն ասաց. թէ ունիմ ես նշանագիր հայերէն լեզուի»... [24])

12) «ընդ այն ժամանակս ապա եկեալ Մեսրոպայ և բերեալ նշանագիր մերոյ լեզուիս, զոր գոգցես նմա պարգևեալ ի տեսողութենէ շնորհացն Աստուծոյ» [25]):

13) «Եւ յարուցեալ այնուհետև հասանէր—Մեսրոպ-առ սրբն. Սահակ հայրապետն Հայոց՝ յաղագս գրոց նշանագրաց»... [26])

14) «Եւ հանդիպեալ Դանիէլի ումեմն եպիսկոպոսի Ասորւոյ առաքինւոյ, որ ասաց նմա ցուցանել զնշանագիրս որում ցանկայրն» [27]):

15) «... Իսկ թագաւորն Հայոց ծանոյց նոցա վասն քա-

---

[20]) Տես. Ստեփաննոս Ասողիկ, էջ 74:

[21]) Տես. Ստեփաննոս Ասողիկ, էջ 74:

[22]) Սամուէլ Անեցի—տես. Н. Эминъ Ист. А. М. Х. և այլն նոյն. էջ 367: Այս հատուածը Բրոսէն թարգմանել է այսպէս „Le vénérable Machtots... organisent l'alphabet de Daniel..." տես. Brosset: „Collection d'Historiens Armeniens" հատ. II. էջ 381:

[23]) Սամուէլ Անեցի, նոյնն. էջ 367:

[24]) Կիրակոս Գանձակեցի, տես. М. Эминъ. նոյնն, էջ 367:

[25]) Տես. Յովհան կաթուղիկոս կամ պատմաբան գլխ. ժդ էջ 71:

[26]) Ճառընտիր. տես Գ. Զարբհանալեան. նոյն. էջ 23. հ. I

[27]) Ճառընտիր. տես. նոյն. էջ 23:

նայի միոյ ասորւոյ Դանիէլ անուն թէ խոստանայր ունել *անագիր Հայոց»* [28]։

16) «. Ապա ելանէր նոցա պարգեւական յամենաբարին տուծոյ, ժողովել գաշխարհահոգ խորհուրդն երանելի միանելոցն, և *գիրս նշանագրոյ Հայաստան* ազգին հասա-ր... [29]։

17) «... վասն որոյ եդ ի մտի—Մեսրոպ—հնարել գտա-լ *նշանագիրս հայոց* լեզուիս» [30]։

18) «... յայտ է առ ամենեսին, թէ *զնշանագիրս հայոց,* ր վարեմք, եգիտ սբ. Մեսրոպ» [31]։

19) «Այսչափ է երեք պատմչաց, մեզի աւանդածը' *յկական նշանագրաց* Մեսրոպայ ձեռքով եղած նորոգու-ենէն յառաջ ունեցած վիճակին.. վերայ» [32]).

20) «. Եւ այսպէս ըստ մերոյ նախայիշեալ պատմագրաց *ն հայկական նշանագիրք* էին, որք գտան առ Դանիէլի, *դանիէլեան նշանագիրք* էին զորս լրացոյց Մեսրոպ» [33]։

Ահա այդ փաստերի վերայ հիմնուելով, մենք չենք ըն-ունում Ագաթանգեղոսի վկայութեանց վերայ ցայժմ յայտ-ւած կարծիքներն և այդ վկայութիւնները բացատրում ենք զուտ տառերի գոյութեան [34]։

---

28) *Ցայսմաւուրք.* տես. նոյն. հատ I. էջ 46։
29) Տես. Կորիւն Աքանչելի. Նոյնը. էջ 8.
30) Տես. Կորիւն Սքանչելի. Նոյնը. էջ
31) Տես. Միք. Չամչեան, պատմութիւն հատ. I. էջ 755.
32) Տես. Գ. Զարբանալեան, նոյն, I. 33.
33) Տես. Հայր Ղ. Ինճիճեան. նոյնն, հատ. III. էջ 76.
34) *Ագաթանգեղոսի վկայութեան մասին այսչափ երկար խօ-լով, ի հարկէ ի նկատի չունեցանք այն հանգամանքն, որ վեր-րս եւրոպական գիտնականներից ոմանք բոլորովին մերժում են ․աթանգեղոսի պատմութեան արժանահաւատութիւնն, այսինքն ․դում են, որ Ագաթանգեղոսի մեզ յայտնի այժմեան պատմու-իւնը չի կարող Տրդատ արքայի քարտուղար Ագաթանգեղոսի*

Ագաթանգեղոսի վերոյիշեալ վկայութեանց դէմ եթէ կարելի լինէր մի որեւէ կասկած յարուցանել, այդ կարող է միայն այն լինել, թէ արդեօք նորա յիշած ‹նշանագիրներն›

---

աշխատութիւնը լինել: Հանգուցեալ պրօֆ. Ա. ֆոն Գուտշմիդ, որ նոյնպէս մերժում է Մ. Խորենացու պատմութեան արժանահաւատութիւնն, Ագաթանգեղոսի մասին ի միջի այլոց ասում է և հետեւեալը. Ագաթանգեղոսը յետագայ ժամանակների գործ է, որ պարունակում է հարուստ տեղեկութիւններ հայոց կռապաշտութեան մասին, սակայն չնչին պատմական հիմք ունի և իսկապէս սրբոց պատմութիւն է, որև անկարելի է, որ մի ժամանակամիջոցի աշխատութիւն լինի... սակայն ներքին պատճառներից պարզապէս երևում է, որ այս գրութիւնն ոչ ուշ քան հինգերորդ դարու միջին մասում պէտք է յառաջացած լինի: „Ագաթանգեղոս" հաւանականաբար մի կեղծ անուն—պսեւդօնիմ—է և նշանակում է Հայաստանի մէջ Քրիստոնէութեան տարածման „աւետաբեր": Տես. Al. von Gutschmid: „Ueber die Glaubwürdigkeit der Armenischen Geschichte des Moses von Khoren". էջ 1:

Բացի այս աշխատութիւնից Գուտշմիդն ունի նաև մի առանձին քննադատական յօդուած Ագաթանգեղոսի մասին—„Agathangelos" որ տպուած է Zeitschrift d. d. m. Gesellsch. հատ. 31. էջ 1—60:—որից առնում ենք հետևեալ մի քանի հատուածներն. „Հեղինակն—Ագաթանգեղոս—հռոմայեցի չէր, այլ հայ" տես. նոյնը. էջ 10. „Նա արքունի քարտուղար չէր, այլ հոգևորական"—նոյնը. էջ. „Հեղինակն ժամանակակից չէր—այսինքն անցքերին"—նոյնը. էջ 11. „Շատ հաւանական է եզրակացնել, որ սբ. Գրիգոր Լուսաւորչի յայտնագործութեան—Apokalypse—հեղինակն է և Ագաթանգեղոսի պատմութեան վերջին ձևն տուողը". Նոյնն էջ 24: Համեմատելով Կորիւն սքանչելու մի քանի հատուածներն Ագաթանգեղոսի հետ՝ Գուտշմիդն այն եզրակացութեան է գալիս, որ Ագաթանգեղոսն այդ հատուածներն առել է Կորիւնից. տես. նոյնը. էջ 27: Իւր յօդուածի վերջը Գուտշմիդն գալիս է հետևեալ եզրակացութեան. „Սբ. Գրիգորի կեանքի" առաջին մասն, որ պարունակում է Խոսրով և Տրդատ արքաների և սբ. Գրիգորի գործողութիւններն, մինչ հայոց դարձը, թէև զերծ չէ առաս-

—տառերն—Հայերէն էին թէ օտար։ Այս սոյն հարցի լուծումը կ'դժուարացնէր մեզ, եթէ օգնութեան չ'հասնէին այլ ատենագրաց վկայութիւնները։

Վարդան պատմագիրը տառերի գիւտի մասին խօսելով գրում է հետեւեալն. «*Եւ զի լեալ էր հայերէն գիր ի հնոյն՝ վկայեցաւ ի ժամանակս Լեւոնի արքայի. զի գտաւ դրամ հայերէն գրով դրոշմեալ զանազան կռապաշտ թագաւորացն Հայկազանց, զորոյ զթերութիւն ելից նորա մեր Եզրաս աստուածախառն շնորհօք լցեալ...*»—տես. Վարդան, նոյնը. էջ 50.—։

Այս վկայութիւնն արդէն բաւական կլինէր ընդունելու, որ Տրդատի ժամանակ գործ դրուած և Ագաթանգեղոսի յիշած տառերը Հայերէն պէտք է լինէին. սակայն մենք ունինք նաև մի օտար պատմագրի վկայութիւնը՝ Հայոց տառերի գոյութեան մասին նախ քան զՏրդատ։ *Փիլոստրատոսը*, որ Կա-

---

պելական խառնուրդից, այնուամենայնիւ պատմական նշանակութիւն ունի... սակայն միւս մասն, որ պարունակում է Հայոց դարձն ի Քրիստոնէութիւն և դարձից յետոյ պատահած դէպքերը Հայաստանում, բառի բուն նշանակութեամբ առած՝ պատմական է և կարելի է իբր անպայման ճիշտ աղբիւր ներկայացնել։ „Վկայաբանութիւն սբ. Գրիգորի և Հռիփսիմեանց“ պատմութեան համար անպէտք են. և միայն անուղղակի կերպիւ կարող են ծառայել պատմական քննութեան, որովհետև դոքա ներկայացնում են այն ժամանակի տեսութիւններն և ձգտումներն, երբ ապրում էր հեղինակը։ Նոյնը կարելի է ասել „սբ. Գրիգորի տեսիլք“ի և պատմութեան վերջին ձևը տուողի այլ յաւելուածների մասին“։

Տես. Gutschmid, նոյնն. էջ 60,

Մեր աշխատութեան շրջանից դուրս է քննադատութեան ենթարկել պրօֆ. Գութշմիդի այս տեսութիւնները, միայն ակնարկենք սոյն պատմաբանի այն պակասութիւնն, որ հմուտ չլինելով Հայոց լեզուին, քննադատում է ոչ թէ Հայերէն բնագիրն, այլ դորա թարգմանութիւնն—իտալերէն։

բակալլայ կայսեր ժամանակակից է, իւր «վարք Ապողոնեայ–Դիանայ» գրուածքի մէջ յիշում է, որ Պամփիւլիայում բռնուած մի յովազ պարանոցին ունէր մի ոսկեայ մանեակ, որի վերայ հայկական գրերով գրուած էին. «Արշակ Թագաւոր աստուծոյն Նիւսեայ» [35])։

Հայր Ինճիճեանը պատմում է, որ ինքը 1788 թ. Կ. Պօլսի անգղիական դեսպան Այնսլէի հին դրամների նշանաւոր հաւաքածուի մէջ տեսել է հարիւրաւոր արծաթեայ դրամներ հայերէն տառերով. այդ դրամներն այսպէս է նկարագրում մեր հնախօսն. «ի մի կողմն դրոշմեալ ունելով ատրու-

---

[35]) Փիլոստրատոսը խօսելով Տաւրոս լերան մասին՝ շարունակում է. „Ինչ որ մեր Տաւրոսի մասին ասում են—և որ երկար ժամանակ ոչ ոք չէր հաւատում—թէ նա Հայաստանի սահմաններից էլ անցնում է, հաստատում են այն յովազները, որ ինչպէս գիտեմ, բռնւում են համեմունքով առատ Պամփիւլիայիում. որովհետև այս կենդանիները սիրում են անուշ բուրմունք՝ ուստի դուրս են գալիս Հայաստանից և դիմում դէպի այն կողմերը, որտեղից քամին բերում է այդ անուշ հոտը։ Պատմում են նոյնպէս, որ մի անգամ Պանփիւլիայում բռնուել է մի յովազ, որի ոսկեայ մանեակի վերայ գրուած էր հայերէն տառերով հետևեալը. Արշակ Թագաւոր՝ Նիւսեայ աստուծուն—այսինքն Նիւսիայ աստուծուն նուէր Արշակ Թագաւորից—Այս Արշակն այն ժամանակ հայոց Թագաւորն էր և իւր բռնած յովազը, այդ կենդանու մեծութեան պատճառով, նուիրել էր Դիոնիսոսին։ Դիօնիսոսը հնդկական Նիւսաի պատճառով հնդկացիներից և արևելեան ժողովրդներից կոչւում էր Նիւսոս։ Այս կենդանին մի առ ժամանակ իրեն բոլորովին ընտանի եղաւ և թոյլ էր տալիս իրեն ձեռքով շօշափել և փաղաքշել, սակայն երբ գարունն եկաւ, երբ յովազները նոյնպէս յաղթահարւում են սիրուց, արուի պահանջ զգալով փախաւ դէպի լեռները և իւր հետ տարաւ նաև իւր զարդը. ապա գրաւուելով համեմունքի բուրմունքից՝ բռնուեցաւ ստորին Տաւրոսի վերայ։ Տես. Philostrati de vita Apollonis Tianei. գերմաներէն թարգմանութիւն Frd· Iakobsի· Stuttgart· 1829. հատ. II· էջ 229։

», ի մէջ երկուց մոգուց. իսկ ի միւս կողմն դէմք Թա-
ւորի ըստ արեւելեան օրինակի սաղաւարտեալ, ունելով
րջանակի հայկական տառս որոշ մնացեալս, Հ. տ. պ. կ.
եւ այլն, զոմանս ուղղագիրս, իսկ զոմանս խոտորնագիրս,
յց ոչ գտանելով ի նոսա տառ ինչ ձայնաւոր՝ չեղեւ ինձ
րթ անուն ինչ ընթեռնուլ» [36]):

Վերոյիշեալ բոլոր վկայութիւններն ի մի տեղ առնելով՝
նք կրկին գալիս ենք այն եզրակացութեան, որ Մեսրո-
ան այբուբենից դեռ եւս շատ առաջ հայերն արդէն ու-
ցել են սեպհական այբուբեն, որ գործածութեան մէջ է եղել:

Թէ երբ և որտեղից կարող էր ծագել Հայոց հին այ-
ւբենն, այդ մասին յաջորդ հատուածի մէջ կ'խօսենք. առ-
ժմ տեսնենք թէ մինչ երբ տևեց այդ այբուբենի գործա-
ութիւնն և ինչ պատճառներով անյայտացաւ:

Իւրաքանչիւր կրօն այնպէս սերտ կապով միացած է
ի մի որ և է տեսակի հետ, որ շատ անգամ մէկի անկու-
պատճառ է լինում միւսի անհետանալուն [37]): Մենք
դէն ակնարկեցինք, որ Հայոց հին այբուբենը կռապաշտա-
ն Հայոց գիրն էր, այստեղ աւելացնում ենք, որ այդ այ-
ւբենը Հայոց կռապաշտական կրօնի և քաղաքակրթութեան
րը լինելով պէտք է ապրէր և մեռնէր այդ կրօնի և քա-
քակրթութեան հետ ի միասին:

---

36) Տես. Ղ. Ինճիճեան. Նոյնը. հատ. III. էջ 75. էջ 1:

37) Ահա այս յարաբերութիւնը մի փոքր չափազանցելով՝
հեղինակ ասում է հետևեալն. „այն ազգերն, որ գիր չունեն,
նեն նաև կրօն, վասն զի կրօնը տարածւում է գրի միջնորդու-
ամբ": Տես. „Magazin für die neue Historie und Geographie"
Bäsching. մասն XVI. էջ 309: Թէ գիրն ինչ կապ ունի
նի և քաղաքակրթութեան հետ՝ պարզ և հետևեալ կերպիւ
բացատրում Նոյմանը. „Կրօնական պաշտաման հաստատութիւ-
և քահանայական դասի հիմնուելուց յետոյ գրի գիւտը մարդ-
յին քաղաքակրթութեան պատմութեան մէջ ամենանշանաւոր ի-

Զօրրորդ դարու սկզբում սբ. Գրիգոր Լուսաւորչի և Տըրդատ արքայի ձեռքով տապալուելով Հայոց կռապաշտական և ազգային կրօնն, անշուշտ պէտք է ասպարէզից իջնէր նաև Հայոց ազգային կռապաշտական կրօնի գիրն, ուստի և իբրև փաստ ընդունելով Ագաթանգեղոսի վկայութիւնն, այն եզրակացութեան ենք գալիս, որ այդ գիրը գործածական էր մինչև սբ. Լուսաւորչայ ժամանակներն—այսինքն մինչև Քրիստոնէութեան տարածուելը Հայաստանում։ Քրիստոնէութիւնն—և նորա եռանդուն պաշտօնեաներն—որ ամեն ջանք թափում էր կռապաշտութիւնն արմատախիլ անելու համար, բնական էր, որ հայերէն տառերի գործածութիւնն արգելելով՝ փոխարէնը յունաց և ասորոց գիրը մըտցնէր, որոց հետ և կապակցուած էին սբ. գրքի և քրիստոնէական վարդապետութիւնը քարոզող գրուածների ընթերցումն. այն ինչ հայերէն տառերը հայ ժողովրդեան միջա պէտք է յիշեցնէին կռապաշտական գրուածներն և պաշտամունքը։ Մեր եզրակացութիւնն առաւել ևս հաւանական կ'երևի, եթէ յիշենք նաև այն հանգամանքն, որ հայ ժողովուրդը Քրիստոնէութեան հետ միատեղ ընդունեց նաև բազմաթիւ օտար՝ յոյն և ասորի եկեղեցական ստորին և բարձր աստիճանի պաշտօնեաներ, որոնք իւրեանց գիրը տարածելով՝ բնական է, որ հայերին պէտք է քարոզէին՝ մոռանալ իւրեանց սեպհական ազգային տառերի գործածութիւնն իր-

---

բողոքութիւնն է։ Այն ժողովուրդը, որ չունի գրի մի որևէ տեսակը, բարբարոսների մի ժողովածու է միայն. առանց գրի անկարելի է մտածել, որ երկար ժամանակ կարող է գոյութիւն ունենալ կրօնական պաշտամունքը և մի կարգին պետութիւն Այդ պատճառով և, որչափ պատմութեանը կարողանում են հետևել, կրօնը, գիրը և քաղաքակրթութիւնը ներքին, սերտ կապով են միացած։ Տես. Neumann։ Asiatische Studien. հատ. էջ 121։

և կռապաշտական սովորութիւն։ Եւ այս մի արտաքոյ կարգի երևոյթ չէ և ունի իւր նմանները. այսպէս օրինակի համար, Իսպանացիք նուաճելով Մեքսիկան՝ արգելում են տեղացիներին իւրեանց սովորական գրի գործադրութիւնը՝ քրիստոնէութեան շուտափոյթ տարածման համար վնասակար համարելով այդ։

Հարիւր տարի անցնելուց յետոյ, երբ Կարոլոս V-ի ժամանակ—1553 թ.—Մեքսիկան հետազօտել սկսեցին, երկու ծեր անձինք հազիւ գտնուեցան այնտեղ, որոնք կարող լինէին իւրեանց առաջուայ գիրը կարդալ [38]։

Ուրեմն մի զարմանալի երևոյթ չէ, որ Հայաստանում ևս նոյնպէս 100 տարուայ միջոցում այդ այբուբենի հետքը բոլորովին անհետանում է և Միջագետքում օտարի մօտ գտնւում։

Նոյն իսկ Խորենացին պատմում է, որ յունաց ազդեցութիւնը Հայաստանից վերացնելու համար, պարսից քաղաքականութիւնն—Մեհրուժանի ձեռքով—մի և նոյն միջոցին է դիմում, այսինքն արգելում է յունաց գրի և գրականութեան տարածումը Պարսկահայաստանում և եղածն իսպառ ոչնչացնում [39]։ Արդէն մեր յառաջաբանութեան մէջ ակնարկեցինք, որ համարեա իւրաքանչիւր կրօն իւր հետ տարածում է նաև մի նոր գիր. եբրայական գիրը տարածւում է Պենթաթոյխի—այսպէս է կոչւում Մովսէսի հնգամատեանը—հետ. յունականը՝ Հոմերական երգերի, դիւանգարին՝ բրահ-

[38]) Տես. „Das Buch der Erfindungen, Gewerbe nnd Industrie" հատ. I. էջ 441։

[39]) „. . . Քանզի նախ ի Մերուժանայ այրեալ լինէին ընդհանուր աշխարհիս յոյն գիրք. դարձեալ ի բաժանել զաշխարհս Հայոց՝ չտային պարսիկ վերակացուքն յոյն ուսանել դպրութիւն ումեք յիւրեանց մասինն, այլ միայն ասորի"։ Տես. Խորենացի. գիրք III. գլխ. ծզ. էջ 373։

մայականութեան, «պալի»ն՝ բուդդայականութեան, ասորական «էստրանգելօ»ն՝—կնշանակէ գիր Համբաւոյ—աւետարանի, արաբական «նեսխի»ն՝ ղուրանի, սլաւական-կիրիլեան գիրը՝ սբ. գրքի սլաւական թարգմանութեան հետ և Մեսրոպեան այբուբենը նոյնպէս՝ սբ. գրքի հայերէն թարգմանութեան հետ ի միասին։

Որ Հայաստանում Քրիստոնէութեան հետ՝ փոխանակ մի տեսակ գրի, երկու տեսակ գրեր են տարածւում, յառաջ է գալիս այն հանգամանքից, որ այդ գործում մասնակցեցին երկու ազգեր՝ յոյներն և ասորիք—չ՚պէտք է մոռանալ նաև այն հանգամանքը, որ պարսից քաղաքականութիւնը հեռացնելով յունարէն գիրն և լեզուն մեր Եկեղեցուց, թոյլ տուեց փոխարէնն ասորոց լեզուն և գիրն։—Ուստի և այդ երկու ազգութեանց պատկանող եկեղեցական պաշտօնեաները պէտք է միմեանց հետ մրցէին՝ իւրաքանչիւրն յօգուտ իւր—ինչպէս որ այսօր Հայաստանում տարածուած Գերմանացի և Ամերիկացի բողոքական քարոզիչներն աշխատում են՝ բողոքականութեան հետ տարածել նաև իւրեանց մայրենի լեզուն ժողովրդի մէջ՝ իւրեանց բացած դպրոցների միջնորդութեամբ։—

Իսկ ազգաւ հայ եկեղեցական պաշտօնեաներն և իբրև ջերմեռանդ քրիստոնեաներ պէտք է ամենայն ճիգն թափէին՝ տապալելու այն ամենն, ինչ որ կապուած էր հայ ժողովրդի հին և կռապաշտական կրօնի հետ։ Զէ որ յաջողուեցաւ նոցա՝ հին ազգային-ժողովրդական տօների տեղ—նոր քրիստոնէական տօներ նշանակել և կատարել։ Եթէ քրիստոնեայ եկեղեցական պաշտօնեաներն ուղղակի ժողովրդի, ամբոխի հետ շփուելով՝ այդ յաջողեցրին և դարերով ժողովրդականացրած սովորութիւնները մասամբ արմատախիլ արեցին և մասամբ փոփոխեցին, որչափ առաւել դիւրութեամբ կարող էին հայոց ազգային հին գիրը մի կողմը ձգելով հետզհետէ անյայտութեան մէջ թաղել, քանի որ այն ժամանակ գիրը, տառն, ո՛չ թէ ժողովրդի սեփականութիւն, այլ քա-

նայական կամ քրմական դասի, կարելի է ասել, մենաշնորհն . ուրեմն և մի առանձին արգելք չկար այդ փոփոխութեան համար։ Եթէ նոյն իսկ քրիստոնեայ եկեղեցական պաշտնեաները Հայոց գրի դէմ հալածանք չհանէին, այլ միայն րեանք սկսէին յունարէն և ասորերէն տառերով գրել և աշտական գրքերն ոչնչացնել, այդ ևս բաւական կ՚լիր Հայոց տառերի մոռացման համար, վասն զի երբ քրմեն և քրմապետներն—որոնց ձեռքն էր միայն գիրն և գրանութիւնը—մէջտեղից վերացան, այլ ևս ո՞վ պէտք է հոր ազգային գրի մասին—ո՛չ ոք։

Իւրաքանչիւր կրօն ունի նաև իւր առանձին քաղաքաթութիւնն. այլ է կռապաշտական կրօնի քաղաքակրթութիւնն և այլ քրիստոնէականը։ Կռապաշտական Հայերն ուին իւրեանց յատուկ քաղաքակրթութեան ստիճանը, որ կաւ, երբ քրիստոնէութիւնը մուտք գործեց Հայաստն. այդ քաղաքակրթութեան անկման հետ՝ ընկաւ նաև յոց ազգային առանձնայատկութեանց մի մասն և դորա տ նաև ազգային գիրը։

Իսկ այն հանգամանքն, որ մի ազգ իւր սեպհական քաքակրթութիւնը կորցնելով՝ մոռանում է նաև իւր գիրը, ճախ տեղի է ունեցել պատմութեան մէջ։

Հարաւային Ամերիկայի խոնաւ և ջերմ անտառներում ռ ևս այսօր ապրում է «Պանոս» կոչուած ցեղը՝ մերկանմ, բանանով և ձկնորսութեամբ կերակրուող, որ գաղաար անգամ չունի գրի մասին և ոչ ևս պահանջ այդ ի գործելու. սակայն մի և նոյն ցեղը մի քանի դար առաջ—երբ պանացիք Ամերիկայ գնացին—ունէր իւր գրքերը՝ գեղեցիկ ւնաւոր նկարներով, որոնցից մանուկներն ուսանում էին րեանց ցեղի անցեալը [40]։

---

[40]) Տես. Faulmann: Geschichte der Schrift. էջ 15. նոյնպէս . Humboldt: „Vues de Cordillères" հատ. I. էջ 211։

Ինչո՞. ենք ի զուր Ամերիկայ գնում, քանի որ կենդանի օրինակն ամեն օր մեր աչքի առաջն է. այսօր մեր երկրում բնակուող, մեր լեռներում թափառող, մեծաւ մասամբ մեր ժողովրդի քրտնաջան աշխատութեան արդիւնքը յափշտակող և աւազակաբարոյ քուրդը միթէ մտածում է երբէք գրի կամ տառի մասին—ամենևին։ Սակայն այսօրուայ այդ աւազակաբարոյ քուրդը համարւում է սերունդ հին քաղդիացւոց—այն քաղդիացւոց, որոնց ձեռքն էր մի անգամ ամբողջ գիտութիւնն և որոնց իմաստութիւնն աշխարհ էր զարմացնում և որոնց հնարած ժամանակի բաժանմունքը դեռ ևս շարունակում ենք գործ դնել [41]։

Արդէն մեր յառաջաբանութեան մէջ ևս ակնարկեցինք, որ Եգիպտոսում քանի որ յոյներն և հռոմայեցիք չէին շօշափել եգիպտականը կրօնը, տեղական գրի գործածութիւնն ևս շարունակւում էր. հէնց որ քրիստոնէական կրօնը մուտ գործելով Եգիպտոս՝ կործանեց եգիպտական աստուածների գահը, մէջ տեղից վերացաւ նաև եգիպտական գիրն և ասպարէզը թողեց յունարէն այբուբենին։

Հայ ազգի բաղդն էր, որ յունաց և ասորոց գրերի գործածութեան հետ շուտով միացաւ և մի երրորդը—պարսից գիրն—և այդպիսով ո՛չ մէկը տիրող չ՚հանդիսացաւ։ Երեք այբուբեններն ևս ճանաչւում և ընդունւում էին իբր օտար իմն ինչ և ոչ ազգային. այդ երբէք տեղի չէր ունենալ, եթէ այդ երեքից միայն մէկը գործածական լինէր և տարածուէր ամբողջ Հայաստանում։ Ասում ենք, Հայ ազգի բաղդն էր վասն զի այդ դէպքում—այսինքն երբ յունաց կամ ասորոց այբ-

---

[41]) Հնախոյզ Նայարդի և այլոց հետազօտութիւններն և գիւտերն մեծ լոյս սփռեցին այդ ազգի ունեցած քաղաքակրթութեան բարձր աստիճանի վերայ։ Որ այժմեան քրդերն քաղդէացւոց սերունդն են, միայն ենթադրութիւն է և ոչ ապացուցուած իրողութիւն։

ութենն ընդունուէր իբրև հայոց գիր—դժուար թէ տեղի ունենար սբ. Մեսրոպի յառաջ բերած յեղափոխութիւնն, որի նշանակութեան մասին արդէն խօսեցինք։

Մարդս միշտ յարակցում է արդէն եղածի հետ. իւրաքանչիւր գաղափարի—իդէաի—հետ, որի զարգացումը կամ իրագործումը մարդկային ձգտման մի նոր զարկ է տալիս, կարելի է ջանասէր հետազօտութեամբ ապացուցել՝ թէ ինչպէս այդ գաղափարը վաղուց արդէն եղել է մարդոց մտածմանց շրջանում և հետզհետէ զարգացել։

Ամենայն հոգեկան յառաջադիմութիւն կարող է միայն ներքին զօրութիւնից յառաջանալ և ունի ժամանակակիցների համար միշտ գաղտնի, և որովհետև ինքնուրոյն է, անբացատրելի հիմն։ Երբ այս ներքին ոյժն յանկարծակի իւրեանից մի այնպիսի մեծ զօրութիւն է ստեղծում, որ սովորական ընթացքով անսպասելի էր, ամեն բացատրութիւնները դադարում են և գործը կարծես մի գերբնական երևոյթ է ստանում։ Սբ. Մեսրոպի և Սահակի յառաջ բերած յեղափոխութեան հետևանքներն այնպիսի մի ցնցում յառաջ բերին Հայաստանում և այնպիսի ներգործութիւն ունեցան ազգի վերայ, որ գուցէ անսպասելի էր ժամանակակիցների համար, ուստի և նոքա այդ յեղափոխութէան սկզբնապատճառը՝ հայոց գրի վերականգնումն և կատարելագործումը՝ ներկայացնում են իբրև մի գերբնական իրողութիւն և ո՛չ Մեսրոպի հանճարի արդիւնք։ Միւս կողմից նոյա յայտնի է, որ համարեա՛ իւրաքանչիւր ազգ իւր գրի գիւտը վերագրում է մի այնպիսի ժամանակի, երբ դեռ ևս մարդկութիւնն աստուածների հետ յարաբերութեան մէջ է գտանւում—վասն զի այդպիսի մի ստեղծագործութիւն մարդկային ուժից վեր է համարւում—։ Այսպիսով մեր «գիւտ»ի ժամանակակից պատմագիրները կամենում են Աստուածային շնորհն և զօրութիւնը միացնել սբ. Մեսրոպի հանճարի հետ. սակայն ինչպէս—ժամանակն և քրիստոնէական վարդապետութիւնը չեն

թույլ տալիս նոյա Մեսրոպին ուղղակի Աստուծոյ հետ յա
բերութեան մէջ դնել, ուստի և նոքա պատմում են որա
և հանճարեղ կերպիւ թէ. «տեսանէ ոչ ի քուն երազ եւ
յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երևութ
ցեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով ի վերայ վ
մի»։ Տես. Խորենացի. գիրք III. գլխ. ժզ. էջ 370։

Մեսրոպեան այբուբենը կազմուեցաւ Հայոց հին և ա
իրաւացի կերպիւ դանիէլեան կոչուած այբուբենից. ուս
մեր այբուբենի զարգացման ընթացքը գլխաւորապէս երկ
մասի է բաժանւում. առաջինը ներկայացուցիչ էր հա
կռապաշտական քաղաքակրթութեան, իսկ երկրորդը քրիստ
նէական քաղաքակրթութեան [42])։



42) Միմիայն իւրեանց սեպհական զարգացմամբ՝ ժամ
նակի ընթացքում, կարող էին լեզուների համար կազմ
կերպուել կատարեալ այբուբեններ և ոչ թէ մի բաղդաւոր գի
տով, ինչպէս որ մի լեզուի կատարեալ քերականութիւնը կա
մակերպւում է ինքնուրոյն զարգացմամբ՝ ժամանակի ընթա
քում։ Տես. Lepsius: „Paläographie als Mittel für die Sprac
forschung“ էջ 15։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### ԹԷ ԻՆՉ ՏԱՌԵՐԻՑ ԷՐ ԲԱՂԿԱՑԱԾ ՀԱՅՈՑ ՀԻՆ ԱՅԲՈՒԲԵՆԸ

*…այոց հին այբուբենի կատարելագործութիւնը. մի քանի ձայնաւորների …ախատութիւնը. մեր հին պատմագրաց վկայութիւնն այդ մասին. եօթը …ձայնաւոր տառերի ներմուծումն արտագրողներից. քանի տառից էր …աղկացած հայոց հին այբուբենը. մեր հին պատմագրաց վկայութիւ…ը. ,,Ոսկեփորիկ''. Որոնք էին այդ այբուբենի տառերը. Ինճիճեանի, …րոֆ. Էմինի, պրոֆ. Պատկանեանի, Հիւբշմանի կարծիքները. մեր տեսութիւնը:*

---




առաջ բերած փաստերից այն եզրակացութեան եկանք, որ մեր նախնիքն արդէն իւրեանց կռապաշտութեան ժամանակ ունեցել են առանձին այբուբեն. սակայն քրիստոնէութիւնը մուտ գործելով Հայաստան, նորա եռանդոտ պաշտօնեաները կռապաշտական զանազան սովորութեանց հետ ի միասին ոչնչացնում են նաև եղած քրմական գրականութիւնն և արգելում հին այբուբենի գործադրութիւնն. իսկ դորա տեղը գնում են յունական և ասո-

բական այբուբեններն, որպէս զի ժողովուրդը միշտ առիթ չունենայ անցեալի վերայ մտածելու և նոր ուսման հետ հաստատ կերպիւ միանալու։ Ահա այս հին այբուբենն է, որ համարեա մէկ դար անցնելուց յետոյ յերևան է գալիս մի ասորի եպիսկոպոսի մօտ, որի անունը Դանիէլ է լինում, ուստի և մեր մատենագիրներն այդ այբուբենը կոչում են դանիէլեան։

Սոյն այբուբենն, որ մէկ դար առաջ վտանգաւոր համարուելով քրիստոնէութեան համար՝ հալածուել էր Հայաստանից, այժմ կրկին ուրախութեամբ ընդունւում է կռապաշտ Հայոց երրորդ կամ չորրորդ քրիստոնեայ սերնդից [1]), որ իւր ազգայնութիւնը կորցնելու վտանգը տեսնելով՝ շտապում է վերականգնել հինը, սակայն բոլորովին նոր լուսով։

Հին այբուբենը մի առ ժամանակ գործ դնելով՝ Հայ ուսանողները տեսնում են նորա մէջ պակասութիւններ. և որպէս զի այդ պակասութիւններն առիթ չտան սկսած գործի անյաջողութեան, ուսուցանողների մէջ յղանում է դորա կատարելագործելու միտքն և ահա այդ նշանաւոր աշխատանքն իւր վերայ է առնում սբ. Մեսրոպը, որ քաջ ծանօթ էր Հայոց և մեր դրացի ազգերի—յունաց, ասորոց և պարսից—լեզուների հետ։ Հայոց հին այբուբենն, որ հաւանականորէն երկար ժամանակ գործածութեան մէջ էր և մի դար ևս անյայտ մնացել՝ այժմ մասամբ ևս չէր համապատասխանում Հայոց լե-

---

[1]) Առհասարակ ընդունւում է այժմ պատմութեան գիտութեան մէջ, որ մի դարու ընթացքում միջին թւով միմեանց յաջորդում են երեք մարդկային սերունդներ։ Այս իրողութիւնը բազմաթիւ փաստերով ապացուցանում էր իւր դասախօսութեանց մէջ Ենայի համալսարանի պատմութեան ուսուցչապետ Լօրենցը, որ և համառօտ կերպով ամփոփել է իւր հետևեալ գիտնական աշխատութեան մէջ.

Prof. Ot. Lorenz: Die Geschichtswissenschaft in Hauptrichtungen und Aufgaben.—Berlin. գլուխ VI. էջ 280։

ութին, որ շարունակ զարգացել և առաւել կանոնաւորուել էր։

Հին այբուբենի գլխաւոր պակասութիւններից մէկն ևս յն էր, որ չէր պարունակում իւր մէջ լեզուի բոլոր ձայնաւոր հնչիւնների համար առանձին տառեր. այս իրողութիւնը պարզապէս վկայում են մեր պատմաբաններից շատերն, որ երբև փաստ յառաջ ենք բերում այստեղ։

1) Խորենացին խօսելով «Դանիէլեան» նշանագրերի մասին՝ ասում է «. . . տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար...»։ [2])

2) Կորիւն Սքանչելի. «... Իսկ իբրև ի վերայ հասեալ թէ չեն բաւական նշանագիրքն ողջ ածել զսիղոբայս ւ զկապս հայերէն լեզուոյն...»։

3) Ասողիկ պատմաբան. «Յաւուրս Սահակայ եղև գպրութիւն Հայոց լեզուիս, քան եւ ինն ի Դանիէլէ Փիլիսոփայէ Ասորւոյ կարգեցաւ, իսկ զեօթն գրոցն պակասութիւն Մեսրոպ երանելի տարօնեցի խնդրուածովք Աստուծոյ առնու».[3]) պարզէ, որ ակնարկում է եօթը ձայնաւորներին։

4) Կիրակոս Գանձակեցի. «... տաց ինձ ումն եպիսկոպոս ասորի՝ Դանիէլ անուն, թէ ունիմ ես նշանագիր հայերէն լեզուի... բայց հայեցեալ տեսին, զի ոչ էր բաւական զամենայն սիղոբայս ողջ ածել և զշաղկապս և զբառս»[4])։

5) Ցայսմաւուրքի մէջ. «...Իսկ թագաւորն Հայոց ծանոյց նոցա վասն քահանայի(?) միոյ ասորոյ Դանիէլ անուն թէ խոստանայր ունել նշանագիր Հայոց. զոր առաքեալ բերին. և վարժեալ նովաւ մանկունս՝ տեսանէին զի ոչ բերէր

---

[2]) Տես. Խորենացի. Նոյնը. գիրք III. գլխ. ծբ. էջ 369։

[3]) Տես. Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան „Պատմութիւն տիեզերական“ էջ 139։

[4]) Տես. ЭМИНЪ և այլն. Նոյնն. էջ 367։

ուղղակի զՆեգս Հայոց բարբառոյն. քանզի յոյն գիրն միայն յարմարեալ էր.(?)։[5])

6) Գանձարանի մէջ.

«Աստ հոգին շարժեալ
Առ նոսա ազդեալ
Հայ գիր աւրինեալ.
Վռամշապուհ աւգնեալ,
Վահրիճ գործակցեալ,
Դանիէլ շնորհեալ,
Քսան եւ ինն գտեալ,
Նախննացն արարեալ.
Ամն երկուս չներբեալ
Բազումս աշխատեալ
Եւ ոչինչ օգտեալ։
«Ձեռն յԱստուծոյ ձգեալ.
Ի Բալու տըքնեալ
Մեսրոպ ապաւինեալ.
Աստուած գթացեալ.
Հրեշտակ տեառն իջեալ
Մատամբ փորագրեալ
Ի վիմին գրոշմեալ։
Աջ ձեռն երևեալ
Իբր ի ձեռն գըրեալ
Ութ գիր յօրինեալ.
Այն հոգի ջահեալ
Ձայն գիրսն յարուցեալ.
Սիգոբայք հերքեալ։։ [6])

Նոյնը մի այլ տեղ.

«....Մինչ ի Սահակ մեծն ի պարթևէն.
Մեծն Մեսրոպ ցանկալին բազմաց
Արժանի եղև սուրբ Հոգւոյն շնորհաց.
Զոր ի Նմանէ սուրբ Սահակ խնդրեաց
Գիր յաւրինել մեզ Հայոց մեծաց։
Յոլոր տեղիս վասն այն որ գնաց
Ոչ գտանէ հնար յայնմ իրաց։
Քսան եւ ինն գիր էր գտած
«Այլ անաւգուտ էր ընթերցողաց,
Զի եւ ոչ կայէր հեգ բառից անուանց,
Այլ անհոգն մարմնոյ նըմանած։
Մինչև բազում տարիք աղօթեաց
Հառաչանաւք սըրտիւ արտասուաց.
Աջն Աստուծոյ անեղին փառաց
Ըզեւթն գիրն ի քարին գըրեաց,
Որպէս երբեմն հին աւրինաց
Քարեայ տախտակըն Մովսէսի գրեաց.

---

[5]) Տես. Զարբանալեան. նոյնն I. էջ 46

[6]) Տես. Զարբանալեան, նոյնն էջ 47.

-ըՀնեալ Փրկիչն որ զՀայք Ու ո եւ ւ ի կարգին

մեծարեաց Զօր և առեալ մեծի Մեսրա-

ան զամենայն ազգս գերա- պին

կաց։ Խառնեալ ի յայլ գրերն առա-

ռեւեցաւ Մեսրաւպ ցանկալին ջին.

ամանըման մեծին Մովսիսին Սուրբ Հոգի ջաՀեցաւ Նոցին

ապաւորեալ ի սիրտս Նորին Վեցեակ վեցից Համարով գը-

ըն որ գրեցաւ աջովերկնային. րին»։ 7).

, ե և է կարգեալ ընդ ըին

Թէև Խորենացու պատմութեան ձեռագիրներից մէկը թէ

ըկուսը պարունակում են իւրեանց մէջ եօթը ձայնաւոր տա-

ռեր, սակայն Հաւանական է, որ այդ տառերը ներմուծուած

նին յետագայ ժամանակներում արտագրողների կողմից՝ որոնք

չքի առաջ են ունեցել Ասողիկ պատմաբանի վկայութիւնը[8]),

սն զի այդ եօթը տառերի տեղաւորելը բոլորովին չէ Հա-

ապատասխանում Խորենացու «գրերի գիւտի» պատմութեան

նթացքին։ [9])

---

[7]) Տես. Ջարբանալեան. նոյն. էջ 47.

[8]) Մեր այս ենթադրութիւնը միայն այն ժամանակ անՀիմն լինի, երբ գտնուի Խորենացու պատմութեան մի ձեռագիր, որ րուած լինէր 10-րդ դարուց առաջ և պարունակէր իւր մէջ ձայնաւոր տառերը։

[9]) Մեր ձեռքի տակ ունեցած Խորենացու պատմութեան օ-ինակներից մի քանիսը պարունակում են իւրեանց մէջ այդ 7 առերն իսկ մի քանիսն ոչ. այսպէս օրինակի Համար Ենայի Հա-ալսարանի մատենադարանի Խորենացու պատ. ձեռագիրը չէ պա-ունակում այդ տառերը—տես. ձեռագրի 164-րդ թերթ, երկ-որդ էջ, բ. սիւնեակ—դժբաղդաբար մոռացել ենք նշանակել՝ թէ արդեօք Լայպցիգի քաղաքային գրադարանի ձեռագիրը պա-ունակում է այդ տառերը թէ ոչ—։ Խորենացու Տփխիսի Հրա-տարակութիւնն,—էջ 370—պրօֆ. Էմինի ռուսերէն թարգմանու-թիւնն—էջ 210—Le Vaillant de Florivalի ֆրանսերէն թարգ. և բնագիրն—Հատ. II. էջ 136—նոյնպէս պարունակում են 7

Արդ ընդունելով որ Հայոց հին այբուբենը զուրկ էր մի քանի ձայնաւորներից, ինքն ըստ ինքեան յառաջ է գալիս այն հարցը. թէ արդեօք այդ այբուբենն ո՛րչափ տառ էր պարունակում իւր մէջ և թէ բաղաձայններ ևս պակասում էի՞ն թէ ո՛չ։

Եթէ ուշադրութեամբ կարդանք մեր պատմագիրների արդէն քանիցս յիշած վկայութիւնները, կը տեսնենք, որ նոքա բացի այն, որ ասում են թէ՝ հին գիրը չէին կարող գործածել, որովհետև մեր լեզուի յատուկ կապերն—այսինքն ձայնաւորները չունէր, շարունակում են, որ դոցանով չէր կարելի արտայայտել ժամանակակից Հայոց լեզուի մէջ եղած բոլոր հնչիւններն, այստեղից պարզ երևում է, որ խօսքը նաև բաղաձայնների մասին է։

Իսկ Հայոց հին այբուբենի պարունակած *տառերի քանակութեան* մասին մեր պատմական վկայութիւնները տարբերւում են միմեանցից. ինչպէս տեսանք Ասողիկ պատմաբանն և «գանձարանի» տողերը վկայում են, որ Հայոց հին այբուբենը բաղկացած էր *քսան եւ ինն*—տառերից։ Վարդան պատմիչն ասում է, որ այդ այբուբենը *քսան եւ երկու* տառ էր պարունակում՝ իսկ «կայսերաց» կոչուած յունարէնից թարգմանած մի հին ձեռագրի մէջ ասուած է հետևեալն. «ի սոցա—Արկադեայ և Ոնորիոսի—տասներորդ ամի եղև սկիզբն հայերէն *քսան եւ հինգ*—գրոց... ի սորա յաւուրսն էր սուրբն Սահակ հայրապետն, յորոյ աւուրս գտաւ *քսան եւ ինն*—գիրն հայերէն լեզուի ի Դանիելէ Փիլիսոփայէ ասորւոյ, զոր ետ բերել Վռամշապուհ թագաւորն. իսկ *զեւթն* գրոցն պակասութիւն Մեսրոպ երանելի տարաւնեցի ի Հացեկայ գեղջէ յազատ տանէ, ամսօրեայ պահօվք և աղօթիւք... այս լինէր

---

տառերն. իսկ V. Langloisի *Ֆրանսերէն* և Վիստոնեան եղբարց *լատիններէն* թարգ.—*չեն* պարունակում Ա, ե, է, ը, ի, ո, ւ, տառերը։

ստորուոյ աշխարհին՝ յորժամ վասն նորին խնդրոյ ճանապարորդեաց նա։ [10])

Դաւիթ անյաղթին վերագրած մի ոտանաւորի մէջ, որ այլաբանօրէն խօսում է գրի մասին, գտնում ենք հետեւեալ տողերը.

«Ձեռք ամենակալին ստեղծին գիս և բարձրեալն ի բարձանց ի բարձունս ընծայեաց գիս։

*«Զափ հասակի իմոյ երկիցս երկոտասան—24—այժմ մ երիցս երկոտասան—36—*[11])

Մի այլ հետաքրքիր տեղեկութիւն ևս գտնում ենք «Ոսկեփորիկ» կոչուած ձեռագրի մէջ, որ առաւել յայտնի է «Վարդանագիրք» անունով։ Այս ձեռագրի մէջ մենք գտնում ենք հայոց այբուբենի մասին աւելի ընդարձակ տեղեկութիւններ, քան նոյն հեղինակի տիեզերական պատմութեան մէջ։ Այս աշխատութիւնը գրել է մեծն Վարդանը՝ Հեթում I արքայի խնդրանօք—որ Լեւոն II-ի փեսան էր։—

Յառաջ ենք բերում այս ուշադրութեան արժանի հատուածն ամբողջովին. [12])

«Պարտ է գիտել զի հնգետասան ազգ են՝ որ դպրութիւն գիտեն. վասն զի ի Նոյէ հինգ ազգ բաժանեցան՝ յերեք որդւոցն՝ Սեմայ, Քամայ և Յաբեթի։

---

10) Տես. Զարբանալեան, նոյն, հատ. I. էջ 43, այս վկայութիւնն ինքն իրեն հակասելով՝ մեզ համար ևս անհասկանալի է. եթէ „հինգ" բառն սխալմամբ փոխանակ „ինն"ի չէ դրուած։

11) Տես. ЭМИНЪ, նոյն. էջ 369։

12) Այս հատուածը տպուած է Nouveau Journal Asiatique հրատարակութեան մէջ 1867 թ. tome IX. էջ 199։ Իսկ Վ. Լանգլուան յառաջ է բերել իւր „հաւաքածուի" մէջ թարգմանօրէն. տես. V. Langlois: Collection des Historiens Anciens et Modernes de L'Arménie. հատ. II. էջ 7. և վերջապէս նոյնը հրատարակուեցաւ „Բազմավէպ" հանդիսարանի 1887 թ. գ. պրակի մէջ—հատոր խե. էջ 197։

Որդիք Յաբեթի՝ որ դպրութիւն գիտեն՝ այս են. Հայք, Եբերացիք, Լատինացիք, Սպանիացիք, Յոյնք, Մարք, վեց ազգք։

Որդիք Սեմայ՝ որ գիտեն դպրութիւն. Հրեայք, Պարսք, Քաղդէացիք, Հնդիկք, Ասորեստանեայք, հինգ ազգք։

Որդիք Քամայ՝ որ գիտեն դպրութիւն. Փիւնիկեցիք, Եգիպտացիք, Պամփիւլացիք, Փռիւգացիք. ազգք չորք։—Ընդամէնն հնգետասան ազգ. Բայց յոլովեաց և առ այլ ազգս, որպէս Աղուանք և Վիրք և Խայտայիք և Բուլղարք, և այլք ևս։ Բայց յԱստուծոյ և ի շնորհաց նորա՝ երկու ազգ առին գիր. Հրեայք և Հայք։ *Եւ ո՛ր են գրերն զոր պարգեւեաց Աստուած*—պատասխանի. *այս են վեց գիր ձայնաւոր եւ երեքտասան անձայն*։ Եւ ձայնաւորքն են այս. ա. ե. ո. ի. ը. ւ. 13) և անձայնքն են այս. բ. գ. ժ. ծ. ձ. չ. ջ. կ. ց. շ. ճ. յ. փ. *ընդ ամէնն ինն եւ տասն*։ Եւ այս են ճըշմարտապէս ստուգիւ գտեալ. զի Ասորիք ընդ մեր թագաւորօքն էին, և նոցայն է քան և երկու գիր է, *ի նոցանէ ջանացան առնել մեր գիր։ Եւ լեալ էր հայերէն նշանագիր ի հին ժամանակս՝ սակաւ. եւ զի չկարէին բանել նոքօք թողին եւ մոռացան*։ Եւ երբ դարձեալ ի խնդիր եղեն, *գտան առ* Դանիէլ անուն ասորի եպիսկոպոս մի. և Սահակ և Մեսրոպ առաքեցին զԱբէլ անուն երէց ասորի, և եբեր։ Եւ զի չբերէր լիով զհարստութիւն լեզուիս, գնաց դարձեալ Մեսրոպ առ նոյն եպիսկոպոս Դանիէլ. և սակաւ ինչ աշխատ եղեն, և չկարացին ինչ աւելի շահիլ զի զառաջինն ի նոցանէ էր առեալ *եօթն եւ տասն գիր*, զի *զհինգ գիրն* թողեալ էր և չէր թարգմանեալ. երբ ջանային թէ թարգմանեմք ըստ մեր լեզուիս, չգայր ի բան այն հինգ գիրն։ Ապա յաղօթս ապաւինեալ՝ տեսանէր մարգարէական աչօք թաթ ձեռին աջոյ, որ գրէր ի վերայ վիմի և ամենայն հան-

---

13) *Այս հատուածի „Բազմավէպ“ի հրատարակութեան մէջ սխալմամբ մտել է նաև է տառը։*

զամանքն և որպիսութիւնն տպաւորեցաւ ի սիրտն և վաղվաղակի ստեղծանէր *ինն եւ տասն գիր*։ Եւ այն՝ որ եօթն ասէն, *վասն նոցա պատուականութեանն ասեն*՝ որ ձայնաւորք են, և որպէս հոգի են այլոցն։

Եւ ընդէ՞ր ասեն եօթն, զի վեց են ձայնաւորք։—Պատասխանի. զի „է" *գիրն կայր յԱսորւոցն*. և նա զայն էառ ի Դանիէլէ՝ վարդապետէն Մեսրոպ, վասն այնորիկ զայն այլ նմա ասեն. բայց ի մարդոյ օգտեցաւ զէ գիրն, և զիննեւտասն յԱստուծոյ։

Եւ վասն եօթն գրոյն առաւել պիտանութեան, զեօթն գիրն մէն ասեն և զավեն, և զերկոտասանն ոչ յիշեն. այլ հաստատ տեւ։

Եւ ասեն թէ *ալփայն* այլոցդ կայ՝ էր չառնուին։—Ասեմք թէ Ասորւոցն *աւ* է, որ է *ո*. և այբն՝ *այս* է *ա* չկայ[14]։ Եւ այլքդ զի ունին, բայց այլ կերպիւ. մերն յԱստուծոյ ձեւացաւ օրինակն։ Այս առանց կարծեաց է»։

Ուրեմն ըստ *Ոսկեփորիկ* կամ *Վարդանագիրք* կոչուած ձեռագրի վկայութեան՝ Հայոց հին այբուբենը պարունակում էր միայն 17 *տառ*. և սբ. Մեսրոպն աւելացրեց իւր կողմից 19 *տառ*։

Հին պատմաբաններից շատերն ևս ուղղակի Խորենացուն հետևելով ասում են, որ սբ. Մեսրոպը գտաւ ամբողջ այբուբենն՝ այսինք 36 *տառ*։ Օրինակի համար Ներսէս շնորհալին ասում է.

«Ըստ Մովսիսի արժանացեալ
Ձեռատուածագիր տառս ընկալեալ

[14]) *Այս կտորը „Բազմավէպ"ի հրատարակութեան մէջ անհասկանալի է դարձրած. „Ասեմք թէ Ասորւոյն աւեր (?) է, ո և ա այս է, ա չկայ"։ Այս նախադասութեան մէջ միտք չկայ. ուղիղ է մեր յառաջ բերածն, որով „Ոսկեփորիկ"ը մեր ո տառը համեմատում է ասորւոց աւ—վաւի հետ։*

*Նրիւք տասամբք վեցիւք յանգեալ*
*Արեգական ելիւք չափեալ՝* [15]։

Այս բոլոր միմեանցից տարբեր վկայութիւնները մեր Հին այբուբենի պարունակած տառերի թուի մասին.—29, 22, 24, 25, 17—յառաջ է գալիս այն հանգամանքից, որ ժամանակակից պատմաբաններն ոչինչ չեն հաղորդել այդ մասին և յետագաներն ևս իւրեանց ենթադրութիւններն են յառաջ բերել։

Այդ բոլոր ենթադրութիւններից մեզ ամենահաւանականն է թւում Վարդան պատմագրի վկայութիւնը. մենք ևս կարծում ենք, որ Հայոց Հին այբուբենը պէտք է 22 տառ պարունակէր իւր մէջ, վասն զի Հին սեմիտական այբուբենները նոյնպէս բաղկացած էին 22 տառից [16]։ Թէ ի՞նչ կապ ունի Հայոց Հին այբուբենը սեմիտականի Հետ, կը բացատրենք մի փոքր յետոյ, այժմ տեսնենք՝ թէ մեր այժմեան այբուբենի 38 տառերից ո՞րոնք էին Հին այբուբենը կազմում և որոնք աւելացան սբ. Մեսրոպի շնորհիւ և յետոյ։

Դիմենք դարձեալ մեր սովորական պատմական ընթացքին։

ա) Ինչպէս արդէն տեսանք, Աստղիկ պատմաբանն և դորան Հետևող մի քանի այլ մատենագիրներ՝ վկայում են, որ Հայոց Հին այբուբենը բաղկացած էր *քսան եւ ինն* տառերից. և որովհետև նոքա շարունակում են, որ սբ. Մես-

---

[15]) Տես. Ջարբանալեան, նոյն I. էջ 54։

[16]) Նոյն եզրակացութեան են եկել նաև պրոֆ. Էմին և Լանգլուա։

„ . . . Мы доходымъ до того результата, что древне-армянская азбука дѣйствительно состояла изъ 22 буквъ". տես. Эминъ, նոյնն, էջ 372։

„ . . . Le Chieffre des Vingt-deux lettres dont se composait l'ancien alphabet n'est pas douteux". տես. Langlois, նոյն հատ. II. էջ 7։

րույն աւելացրեց միայն ա. ե. է. ը. ի. ո. ւ.—7 տառերը հասկանալի է, որ հին այբուբենի տառերը պէտք է լինէին բ. գ. դ. զ. թ. ժ. լ. խ. ծ. կ. հ. ձ. ղ. ճ. մ. յ. ն. շ. չ. պ. ջ. ռ. ս. վ. տ. ր. ց. փ. ք.—29։

բ) «Ոսկեփորիկ» ձեռագիրը վկայում է, որ սբ. Մեսրոպը հին այբուբենի վերայ աւելացրեց հետևեալ տասնևինն—19—տառերն. ա. ե. ի. ը. ո. ւ. բ. գ. ժ. ծ. ձ. չ. ջ. ց. շ. վ. ճ. յ. փ.—19. հետևապէս հին այբուբենի տասնևեօթը տառերը պէտք է լինէին. է. դ. զ. թ. լ. խ. կ. հ. ղ. մ. ն. պ. ռ. ս. տ. ր. ք.—17։

գ) Հայր Ինճիճեանը տառերի մասին խօսելիս ասում է հետևեալն. «... Բաց ի ձայնաւորաց, զորս գիւրին էր Մեսրոպայ և ի յունաց առնուլ, պէտք եղեն և քանի մի բաղաձայնից՝ սեպհական եղելոց ազգիս. որպէս և զանազանիչ տառիցս կ. գ. ք. խ և ս. ձ. ց և զ. ծ և ր. ռ. և այլն» [17])։

դ) Պրօֆ. Էմինն ընդունելով որ 7 ձայնաւոր տառերը սբ. Մեսրոպի գիւտն էր և հին այբուբենը բաղկացած էր 22 տառերից, եզրակացնում է, որ սբ. Մեսրոպի աւելացրած բաղաձայների թիւը պէտք է նոյնպէս եօթը լինէր և իսկապէս հետևեալները. թ. ձ. ղ. ջ. ր. փ. ք.—7. ուրեմն հին այբուբենը պէտք է պարունակէր մնացած 22 տառերն, որք են. բ. գ. դ. զ. ժ. լ. խ. ծ. կ. հ. ճ. մ. յ. ն. շ. չ. պ. ռ. ս. վ. տ. ց—22 [18])։

---

[17]) Տես. Ինճիճեան, Նոյնը. հատ. III. էջ 74։

[18]) „Առանց վարդան պատմագրի վկայութեան դժուար կլինէր որոշել թէ ինկապէս ո՞ր տառերն էին պակասում հայոց հին այբուբենի մէջ. մեր խօսքը հարկաւ վերաբերում է բաղաձայն տառերին, որովհետև Մովսէս Խորենացին խօսելով սբ. Մեսրոպի կատարելագործած այբուբենի մասին, ակնարկում է, թէև անգիտակցաբար, հայոց այբուբենի ձայնաւոր տառերը։ Վարդան պատմագիրը սահմանափակելով հայոց հին այբուբենի տառերը 22 թուով, միջոց է տալիս մեզ որոշել՝ թէ իսկապէս որոնք էին այդ

ե) Պ ր օ ֆ. Պ ա տ կ ա ն ե ա ն ը խօսելով Դանիէլե
այբուբենի մասին՝ շարունակում է. «Ըստ Գրիգոր Մագ
տրոսի գանիէլեան այբուբենը բաղկացած էր 24 տառեր
իսկ նոր այբուբենի տառերի թիւն էր 36, ուրեմն պէտք
եզրակացնել որ Մեսրոպն աւելացրեց 12 տառ: Սակայն ո՞ր
են այս տառերը. պրօֆ. Էմինն այս հարցը վճռում է a prio
Մեսրոպին վերագրելով 14 տառերի գիւտը. 7 ձայնաւոր և
բաղաձայն. Պրօֆ. Էմինի կարծիքն այս կէտի մասին անկ
րելի է ընդունել, վասն զի նա մինչև անգամ չէ ընդունո
Հայոց հին այբուբենի մէջ ա տառի գոյութիւնն, առա
որի մի քայլ անգամ չի կարելի անել Հայոց լեզուի մէջ,
տեղ այս ձայնաւորը մասնաւորապէս չափազանց յաճախ
յառաջ գալիս, գլխաւորապէս բառերի սկզբում»: Ապա պրօ
Էմինի յառաջ բերած ենթադրութիւններն և բացատրութի
ները՝ 7 բաղաձայների ծագման մասին, համոզեցուցիչ չհ
մարելով Պատկանեանը յառաջ է բերում միայն տասն—10
տառեր, որոնք նորա կարծիքով յետագայ ժամանակների ծ
գումն ունեն որք են. «ը. է. լ. վ. ռ. փ. թ. ջ. ձ. չ»

---

տառերը: Եթէ ուշադրութեամբ քննենք այժմեան Հայոց այբ
բենը, նորա մէջ գտնում ենք իսկապէս այնպիսի տառեր, որ
տպայտում են Հայոց լեզուին յատուկ հնչիւնները: Այդ
ռերը մեր կարծիքով հետևեալներն են. թ, ձ, ղ, ջ, ր, փ, ք,
բաղաձայն տառերը եօթն են. եթէ դոցա աւելացնենք և
ձայնաւոր տառերը՝ ա, ե, է, ը, ի, ո, ւ, կստանանք տասն
չորս լրիւ թիւը: Այժմեան գործածական և Մեսրոպեան կոչ
այբուբենի 36 տառից եթէ հանենք այդ տասն և չորս տա
կստանանք հետևեալ 22 տառերը, որոնք և պէտք է կազ
Հայոց հին այբուբենը. բ, գ, դ, զ, ժ, լ, խ, ծ, կ, հ, ճ, մ,
շ, չ, պ, ռ, ս, վ, տ, ց,—22. տես. ,,Объ армянскомъ а
витѣ" Эминъ, նոյնն. էջ 371—372:

19) Տես. ,,Recherches sur la formation de la langue
ménienne" par Patkanoff. տպուած է Journal Asiatiqueի մէջ
série, tom XVI (1870) էջ 150.

Այստեղից պէտք է եզրակացնել ուրեմն, որ դանիէլեան այբուբենը բաղկացած էր մնացած 26 տառերից. ա, բ, գ, դ, ե, զ, ժ, ի, խ, ծ, կ, հ, ղ, ճ, մ, յ, ն, շ, ո, պ, ս, տ, ր, ց, ւ, ք,

դ) Պրօֆ. Հիւբշմանն իւր առաջադրած հարցին՝ թէ որոնք են 22 հին և 14 նոր տառերը, հետևեալ կերպիւ է պատասխանում. «այն պատասխանն, որ այս հարցին տալիս է պրօֆ. Էմինը, մերժում է պրօֆ. Պատկանեանն և իրաւամբ. սակայն այն եղանակն, որով Պատկանեանն կամենում է որոշել այդ տառերը, նոյնպէս սխալ է։ Այդ երկուսից ևս տարբերւում է Լանգլուայի կարծիքն, որ հետևելով «Վարդանագրքի» մի տեղեկութեանը, ընդունում է, որ հին այբուբենը 17 տառերից էր բաղկացած և Մեսրոպն աւելացրեց 19 տառ։ Սակայն այս կարծիքն ինձ բոլորովին անհիմն է թւում․․․։ Ապա պրօփ. Հիւբշմանը հայոց այբուբենի շարայարութիւնը համեմատելով յունաց այբուբենի շարայարութեան հետ, այն եզրակացութեան է գալիս, որ «դանիէլեան» կոչուած մեր հին այբուբենն ոչ այլ ինչ էր, եթէ ոչ պարզապէս յունաց այբուբենն, ուստի և դորա պարունակած տառերը համեմատ յունական 22 տառերի պէտք է լինէին հետևեալները. ա, բ, գ, դ, ե, զ, է, թ, ի, կ, ղ, մ, ն, շ, ո, պ, ռ, ս, տ, ւ, փ, ք, [20])—22։

Ինչպէս մեր յառաջ բերած օրինակները ցոյց են տալիս, այց բացատրութիւններից ոչ մէկը միւսին չէ համապատասխանում և ամեն մէկը միւսի յայտնած կարծիքը մերժելով

---

[20]) «Յունաց և հայոց այբուբենների մէջ եղած իրար համապատասխանող տառերի թիւը 22 է, իսկ հայոց լեզուին յատուկ տառերի թիւն է 14. ուրեմն հայոց հին և դանիէլեան կոչուած այբուբենը պէտք է կաղմակերպուած լինի յունաց այբուբենից։ Տես. H. Hübschmann: „Ueber Aussprache und Umschreibung des Altarmenischen" տպուած է Zeitschrift d. d. m. Gesellschaft'ի 30-րդ հատորի մէջ (1876). էջ. 63։

իւր ենթադրութիւնն է յառաջ բերում։ Այս բոլոր տարբեր տեսութիւններն յառաջ են գալիս այն հանգամանքից, որ շատ դժուար է որոշել թէ լեզուի այս կամ այն հնչիւնը վաղ թէ ուշ է յառաջացել, վասն զի այդ հնչիւնի յառաջանալուց է կախուած նաև դորան արտայայտող տառի յառաջանալը։ Միայն գրաւոր յիշատակարանների միջոցով կարելի է հաստատ որոշել, որ մի որև է հնչիւն լեզուի մի որոշ շրջանում գոյութիւն չի ունեցել և յետոյ յառաջ գալով՝ ստացել է նաև իւրեան յատուկ նշանը—տառը. աՀա այդ հին գրաւոր յիշատակարանների պակասութիւնը—Հայոց լեզուով.—անկարելի է կացուցանում Հաստատ որոշել մեր լեզուի այս կամ այն հնչիւնի ծագման ժամանակը. ուստի և այս խնդրով զբաղուող գիտնականներից իւրաքանչիւրն իր կարծիքն է յայտնել՝ առանց հաստատուն փաստ ունենալու իր ձեռքում։

Թէ պրօֆ. Էմինն և թէ մեր բոլոր մատենագիրներն—բացի պրօֆ. Պատկանեանից—և թէ օտար ազգի գիտնականները[21]) միաձայն ընդունում են, որ Հայոց հին այբուբենի մէջ ձայնաւորներ չկային՝ հիմնուելով մեր արգէն յիշած հետևեալ փաստերի վերայ.

ա. Մեր պատմագիրներն ասում են, որ հին այբուբենը չէր կարող գործածուիլ, որովհետև մեր լեզուին յատուկ բոլոր կապերը չունէր։

բ. Խորենացին «տառերի գիւտը» պատմելով յառաջ է բերում միայն ձայնաւոր տառերը։

գ. Ասողիկը և դորան հետևող այլ պատմագիրներն ասում են, որ սբ. Մեսրոպը գտաւ միայն 7 տառ, այսինքն 7 ձայնաւորները։

---

31) Մենք չենք խօսում այստեղ պրօֆ. Հիւբշմանի կարծիքի մասին, որովհետև նա չէ ընդունում Հայոց հին այբուբենի գոյութիւնն և դանիէլեան կոչուած այբուբենը համարում է յունաց այբուբենից ծագած. այս մասին մի փոքր յետոյ կը խօսենք։

Արդեօք այս փաստերը բաւականացուցիչ են ապացուցանելու համար թէ հայոց հին այբուբենը բոլորովին զուրկ էր ձայնաւոր տառերից—մեր կարծիքով ոչ։ Եթէ մեր պատմագիրներն ասում են, որ «Դանիէլեան նշանագրերն» անյարմար գտանուեցան, վասն զի մեր լեզուի բոլոր կապերը չունէին, այդ բոլորովին չէ ապացուցանում որ ոչ մէկ ձայնաւոր չ'կար հին այբուբենի մէջ, ինչպէս որ նոյն պատմագրաց վկայութիւնը թէ. «այդ տառերով չէր կարելի արտայայտել հայոց լեզուի մէջ եղած բոլոր հնչիւնները», չէ ապացուցանում, որ այդ այբուբենը բոլորովին զուրկ էր բաղաձայններից։ Աւաւել ճիշտ կլինէր այդ վկայութիւններից եզրակացնել, որ հայոց հին այբուբենի մէջ ինչպէս որ պակասում էին մի քանի բաղաձայն տառեր, նոյնպէս և չ'կային ձայնաւորներից մի քանիսը։

Մենք արդէն կասկած յայտնեցինք՝ թէ արդեօք Խորենացու պատմութեան մի կամ երկու ձեռագրների մէջ յառաջ բերած 7 ձայնաւոր տառերն իսկապէս Խորենացին է յառաջ է բերել՝ թէ ներմուծուած են յետագայ ժամանակներում՝ արտագրողների կողմից. եթէ նոյն իսկ ընդունէինք, որ այդ 7 ձայնաւորները Խորենացին է յառաջ բերում, դարձեալ ապացուցուած չէր լինի բոլոր ձայնաւորների պակասութիւնը հին այբուբենի մէջ, վասն զի Խորենացին բոլոր 36 տառերի գիւտը վերագրում է սբ. Մեսրոպին։ Սակայն եթէ Խորենացին յառաջ բերէր նոյն իսկ ամբողջ մեսրոպեան այբուբենը, մենք այսօր դարձեալ չէինք կարող մերժել հայոց հին այբուբենի գոյութիւնը. ուրեմն ինչ իրաւամբ մերժում ենք բոլոր ձայնաւորների գոյութիւնը։ Այսպիսով ոչ մի հիմնաւոր փաստ չունէինք, որով կարողանայինք ապացուցանել, որ հայոց հին այբուբենը բոլորովին զուրկ էր ձայնաւոր տառերից։

Իսկ այն պատմաբանների համար, որոնք միայն 7 ձայնաւոր տառերի գիւտն են վերագրում սբ. Մեսրոպին, գեղեցիկ կերպիւ յարմարւում է «Ոսկեփորիկի»-ի խօսքերն. «Եւ

*այն որ է (Դ գիր) ասեն, վասն նոցա պատուականութեան ասեն. որ ձայնաւորք են, եւ ո ր պ է ս հ ո գ ի ե ն ա յ ո ց։*

Թէև ընդունուած է, որ հին սեմիտական այբուբենները չէին պարունակում իւրեանց մէջ ձայնաւոր տառեր, սակայն այդ չէ նշանակում՝ թէ դոցանից ծագած այլ այբուբեններն ևս պէտք է անպատճառ ձայնաւորներ չունենային. յունաց այբուբենն, որ սեմիտականի անմիջական ծնունդն է, ունի ձայնաւորներ, որոնք յառաջ են գալիս նոյն իսկ ամենահին արձանագրութեանց մէջ։ Զենդի գրերը նոյնպէս պարունակում են ձայնաւորներ և «որչափ որ հին են ասորական արձանագրութիւններն, այնչափ ևս շատ ձայնաւորներ են պարունակում իւրեանց մէջ» ասում է երևելի Կոպպը[22]), որ արաբացւոց էլիֆ, վաւ և այլն տառերն առաջ ձայնաւորներ են եղել՝ ըստ Կոպպի չեն կասկածում նաև ամենամեծ լեզուագէտները։

*Գիրը պէտք է պատկերացնէ լեզուն.* ուստի միթէ զարմանալի չէր լինի, որ Հայոց լեզուի այբուբենը գոնէ մի քանի ձայնաւորներ չունենար, միթէ իրաւունք չունի պրօֆ. Պատկանեանն՝ ասելով որ անկարելի է ընդունել Հայոց լեզուի մի այբուբեն, առանց *ա*-այբ-տառի։

Մեր աշխատութեան միջոցին մենք այն համոզման եկանք, որ մեր հին այբուբենը պէտք է գոնէ մի քանի ձայնաւոր տառեր պարունակէր իւր մէջ։ Պատմական ոչ մի ապացոյց չ՚ունենալով, հարկաւ հաստատապէս չենք կարող ասել՝ թէ մեր 7 ձայնաւորներից ո՞րոնք էին հին այբուբենին պատ-

---

22) *Անմտութիւն է կարծել, թէ կարող է գտանուել մի այբուբեն, որ բաղկացած լինէր միմիայն բաղաձայններից. գիրը պէտք է լեզուի արտայայտութիւնը լինի։ Ասորական յիշատակարաններն որչափ աւելի հին են, այնչափ աւելի եւ ձայնաւոր տառեր ենք գտնում դոցա վերայ։* Տես. Kopp: „Bilder und Schriften der Vorzeit". Հատ. II. էջ 115։

կանողները, սակայն ուսումնասիրելով սեմիտական այբուբեն-ների համեմատական ցանկը, կարող ենք ենթադրել, որ դոքա հաւանականաբար [23]) պէտք է լինէին *ա. ե. ո* տառերը։

Արդ՝ մի կողմից ընդունելով, որ սբ. Մեսրոպը միայն չորս ձայնաւոր տառեր աւելացրեց հին այբուբենի վերայ, և միւս կողմից ճիշտ համարելով Վարդան պատմագրի վկայութիւնն, որ սբ. Մեսրոպն ամբողջապէս 14 հատ նոր տառեր աւելացրեց, պէտք է եզրակացնել որ այդ աւելացրած տառերից *տասը* բաղաձայններ էին։

Ո՞րոնք էին այդ տասը բաղաձայն տառերը։ Ինչպէս տե-սանք՝ գիտնականների կարծիքն այդ մասին բոլորովին միմեան-ցից տարբերւում են. պրոֆ. Էմինն ենթադրում է որ այդ բաղաձայններն թւով 7 էին *փ, ք, թ, ճ, ղ, ջ, ր.* [24]) իսկ ըստ պրոֆ. Պատկանեանի ութը. լ, վ, ռ, փ, թ, ջ, ձ, չ։ Մենք արդէն տեսանք թէ պրոֆ. Պատկեանն ինչ փաստեր է յառաջ բերում իւր ենթադրութեան հաւանականութեան համար, այժմ տեսնենք թէ պրոֆ. Էմինն ինչպէս է պաշտ-պանում իւր դատը։

«Զննելով այժմեան հայերէն այբուբենն —ասում է նա, տեսնում ենք տառերի յայտնի խմբեր, որոնք անկասկած սկզբում այնչափ կատարելագործուած չէին կարող լինել ինչ-պէս այժմ են։ Այս խմբերն են.

1) բ, պ, փ.
2) գ, կ, ք.
3) դ, տ, թ.
4) ծ, ց, ձ։
5) խ, ղ.

---

[23]) Ասում ենք հաւանականաբար, վասն զի քանի որ յե-րեւան չեն գալիս հայոց լեզուով գրուած արձանագրութիւններ կամ այլ գրաւոր յիշատակարաններ մեր նախնեաց կռապաշտական ժամանակներից, մեր հին այբուբենի վերաբերմամբ բոլոր բացատ-րութիւնները կը մնան միմիայն հաւանական ենթադրութիւններ:

[24]) Տես, ЭМИНЪ, Նոյնը, էջ 370։

6) չ, ջ, ճ.

7) ռ, ր.

Այս խմբերից իւրաքանչիւրի մէջ գտնում ենք մի այնպիսի տառ, որ իսկապէս պէտք է պատկանի մի աւելի ուշ և լուսաւորեալ ժամանակին, այսինքն հինգերորդ դարուն, երբ ապրում էին մեր ազգի լուսաւորութեան մեծ ներկայացուցիչները, վասն զի միայն այդպիսի շրջանում կարելի էր զբաղուել մարդկային ձայնի անալիզով—այսինքն հնչիւնների այդպիսի քնքոյշ արտայայտութիւնները տարբերելով։

1. Խմբից՝ «փ» տառը պատկանում է Մեսրոպին, իսկ առաջին երկուսը հաւանական է, որ առաջուց գոյութիւն ունենային, վասն զի բ և պ հասարակ հնչիւններ են, այն ինչ փ (պհ-p'h) բաղադրեալ հնչիւն է, և արտայայտում է ձայնի յայտնի մթնացնումն կամ փափկացումն, որ կարող է որոշել միայն լուսաւորեալ դարաշրջանին պատկանող մարդը»[25]։

Միևնոյն բառացի փաստաբանութեամբ ընդունում է պրոֆ. Էմինը, որ 2 խմբից «ք» կհ—k'h—է Մեսրոպի գտածն. 3-ից «թ»—տհ—t'h—4-ից «ծ»—ցհ—d'zh, 5-ից «ղ», 6-ից «ջ» և վերջապէս 7-ից «ր»։ [26])

Տառերի այս ընտրութիւնը մեզ հաւանական չէ թւում, վասն զի եթէ Հայոց հին և «դանիէլեան» կոչուած այբուբենից ճշմարիտ այդ տառերը պակասէին, այն ժամանակ սբ.

---

[25]) Տես, Эминъ, նոյնը, էջ 371.

[26]) „Երկրորդ խմբի մէջ, որ բաղկացած է նոյնպէս 3 տառից, առաջին երկուսը գ և կ լինելով հասարակ հնչիւնների արտայայտիչ, պէտք է գոյութիւն ունենային հին այբուբենի մէջ. այն ինչ ք (կհ —kh) բարդ տառը, որ արտայայտում է մի որոշ մթնացումն, հաւանականաբար յառաջացել է հինգերորդ դարում։

Երրորդ խմբի մէջ նոյնպէս 3 տառ կայ, որոնցից դ և տ գոյութիւն ունէին հին այբուբենում, նոյն պատճառներով իսկ թ (տհ—th) անկասկած գտել է սբ. Մեսրոպը և այլն։ Տես, Эминъ, նոյնն, էջ 371—372.

Մեսրոպը և նորա գործակիցներն այնպիսի մեծ դժուարութեանց չէին հանդիպի, որպիսին որ նկարագրում են մեր պատմագիրներն. այդ տառերի պակասութիւնը բոլորովին անկարելի չէ կացուցանում նոյն այբուբենով գրել-կարդալը։ Մեր միտքը պարզելու համար յառաջ բերենք մի քանի օրինակներ. պրօֆ. Էմինն ասում է, որ «փ» տառը սբ. Մեսրոպի աւելացրածը պէտք է լինի, վասն զի այդ տառը բարդ հընչիւն է փ—պհ—և կարող էր կազմակերպուիլ միայն զարգացեալ սերնդից։ Նոյնն ասում է «ք» և «թ» տառերի մասին։

Եթէ նոյն իսկ ենթադրենք, որ յարգելի պրօֆ. բացատրութիւնը ճշմարիտ է, դարձեալ կարող ենք հարցնել՝ թէ արդեօք այդ տառերի պակասութիւնը մի արգելք կարո՞ղ էր լինել հայոց այբուբենի գործադրման համար—երբէք. ի՞նչ դժուարութիւն կայ փոխանակ «փ» գրելու, «պհ» գրել. արդեօք զգո՞ւմ ենք մի որև է անյարմարութիւն կամ հանդի՞պում ենք մի որև է արգելքի, երբ մենք այսօր ևս գրում ենք «սեպհական», «սեպհականութիւն». արդեօք մեր հին այբուբենն անգործադրելի կմնար, եթէ չունենար «ք» և «թ» տառերն և փոխանակ դոցա գրուէր «կհ» և «տհ» կամ «դ» չէ՞ որ այսօր ևս գրում ենք առանց դժուարութեան «մարդ», «կարդալ», «կարգադրել», «կարգիչ» և այլն և արտասանում «կարքադրել», «կարքել», «կարթալ», «մարթ»։

Մի՞թէ գերմանական այբուբենն անգործադրելի է այսօր որ չունի ք և թ տառերն և փոխանակ դոցա գրում է «կհ»—ch կամ kh և տհ—th։ Մի՞թէ թ տառի պակասութիւնը գերմանական այբուբենի մէջ և հ տառի պակասութիւնը ռուսաց այբուբենի մէջ կնշանակեն որ այդ լեզուները զուրկ են թ և հ հնչիւնից—ամենևին։ Չերկարելու համար այսչափը բաւական ենք համարում պրօֆ. Էմինի և մասամբ նոյնպէս պրօֆ. Պատկանեանի յառաջ բերած հիմանց ընդունելի չլինելը պարզելու համար։ Յարգելի գիտնականների այդ բացատրութիւնը մեր կարծիքով բոլորովին հակառակ է գրի զար-

գացման ընթացքին. վասն զի գոքա բարդ հնչիւններն յառաջ են բերում պարզ հնչիւններից—ասելով որ կ և հ-ից, որ առաջուց գոյութիւն ունէին՝ յառաջացաւ ք, պ և հ-ից փ, տ և հ-ից, թ և այլն—ընդհակառակը պարզ հնչիւնները միշտ յառաջացել են ժամանակի ընթացքում բարդերից [27]) և ինչպէս արդէն սոյն աշխատութեան առաջի գլուխների մէջ տեսանք, գիրն իւր բարդութիւններից ժամանակի ընթացքում վերլուծուելով՝ միայն իւր կատարելագործման վերջին աստիճանում կարողացաւ արտայայտել իւրաքանչիւր պարզ հնչիւն։ Մեզ համար հասկանալի կլինէր՝ եթէ պրօֆ. Էմինն և Պատկանեանն ասէին, որ ք տառից յառաջացել են կ և հ տառերը [28]) կամ աւելի լաւ է ասել, որ ք հնչիւնից ժամանակի ընթացքում յառաջացել են կ և հ հնչիւնները. բայց երբ գոքա ուղղակի դորա հակառակն են ասում՝ անհասկանալի և անընդունելի է։

Ինչպէս արդէն մեր վերն յառաջ բերած տարբեր կարծիքներից տեսնուեցաւ, հայոց այբուբենի հին և նոր տառերը միմեանցից զանազանելու համար՝ լեզուագիտութեան օժանդակութիւնն և վաղ թէ ուշ յառաջացած հնչիւնների տեսութիւնները՝ բացի խնդիրն աւելի խճճելուց՝ ոչինչ չեն պարզում. ուստի և հրաժարուելով այդ տեսակէտից մեր ենթադրութիւններն անելու, թողնում ենք այդ ճանապարհն և մեր այբուբենի հին և նոր տառերն որոշելու համար դիմում ենք միայն «պալէօգրաֆիայի—Paläographie, հին գրագիտութեան արուեստ—օգնութեան։

---

[27]) „Հնչիւնը գոյութիւն ունի տառից առաջ՝ ինչպէս լեզուի, նոյնպէս և գրի մէջ։ Տես. Lepsius: Paläographie als Mittel für die Sprachforschung· էջ 90.

[28]) „Այսպէս օրինակի համար, Լեպսիուսը պնդում է, որ սեմիտական այն տառից են յառաջացել եւրոպական o և ւ տառերն, իսկ հէ-ից յառաջացել են ե և ի. տես. Lepsius: Zwei Sprachvergleichende Abhandlungen. էջ 14 և 18։

Այս համեմատութեանը կդիմենք յաջորդ յօդուածում, այժմ ասենք համառօտ կերպիւ, որ հայոց հին այբուբենը—դանիէլեան—դժուար էր գործադրել հինգերորդ դարու ըսկզբում, վասն զի պարունակելով իւր մէջ միայն սեմիտականին յատուկ հնչիւնների տառերը, հայոց լեզուի առանձնայատկութիւնները չէր կարող ճշտիւ արտայայտել. այն հնչիւնները, որոնք միայն հայոց լեզուին էին յատուկ, չկային այդ այբուբենի մէջ։ Այդ հնչիւններն էին մեր կարծիքով—փաստերն յառաջ կբերենք յաջորդ յօդուածի մէջ—ժ. ծ. հ. ձ. ղ. ճ. չ. ջ. ռ. փ։ Ահա այս հանգամանքն և մի քանի ձայնաւոր տառերի պակասութիւնը—ը. է. ի. ւ.—անգործադրելի էր կացուցանում հինգերորդ դարում հայոց հին և սեմիտական ծագումն ունեցող և մեր պատմագիրներից «դանիէլեան» կոչուած այբուբենը։

Այս հետևանքից պէտք է եզրակացնել ուրեմն, որ հայոց հին այբուբենը բաղկացած էր հետևեալ 22 տառերից. ա. բ. գ. դ. ե. զ. թ. լ. խ. կ. մ. յ. ն. շ. ո. պ. ս. վ. տ. ր. ց. ք.



## ԳԼՈՒԽ ԺԵ.

### ԵՒՐՈՊԱԿԱՆ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻ ԿԱՐԾԻՔՆԵՐԸ ՀԱՅՈՑ ԳՐԻ ՄԱՍԻՆ

*Չամչեանի, Ինճիճեանի, Լիմնի, Պատկանեանի, Պետերմանի, Վին-դիշմանի, Լանգլուայի, Սէն-Մարտէնի, Բրօսէի, Փրդ. Միւլլերի, Հիւբշմանի, Գարդհաուզենի, Վայլի, Լընորմանի եւ այլ 30 գիտնա-կանների կարծիքները։*

---



այոց հին այբուբենի գոյութիւնն ընդունե-լով, բնականաբար ծագում է այն խնդիրը՝ թէ արդեօք ո՞րտեղից է յառաջացել այդ այբուբենը, կամ թէ ո՞վ է եղել դորա սկզբնապատճառն և ստեղծողը։

Նախորդ գլուխներից մէկի մէջ արդէն յայտնեցինք այն կարծիքը, որ մի ազգի համար մի բոլորովին նոր այբուբենի ստեղծելը վեր է մի որ և է անհատի կարողութիւնից, սւստի ին-քըն ըստ ինքեան հասկանալի է, որ հայոց հին այբու-բենն ևս չէր կարող ուղղակի մի որ և է անձնաւորութիւ-նից իւր սկիզբն առնել, այլ պէտք է գոյանար հետզհետէ ժամանակի ընթացքում, կամ թէ մի կամ մի քանի անձնա-ւորութեանց միջնորդութեամբ՝ արդէն եղած և այլոց սեպ·

ական տառերից պէտք է կազմակերպուէր և ազգից ընդու-
ունէր։

Վերջին եղանակը գոյութիւն ստացան—մեր պատ-
ագրաց ասելով—վրաց և աղուանից տառերը սբ. Մեսրոպի
իջնորդութեամբ, որ Հայոց այբուբենը կարևոր փոփոխու-
թիւններով մտցրեց նոցա մէջ։ Արդեօք այդ եղանակը են
ազմակերպուել նոյնպէս Հայոց հին տառերը, թէ առաւել
անոնաւոր և ինքնուրոյն ճանապարհով՝ համաձայն տառերի
ազմակերպութեան ընդհանուր օրինաց։ Գրի կազմակերպու-
թեան ընդհանուր օրէնքն և բնական ճանապարհն, ինչպէս
րդէն տեսանք, այն է՝ որ պատկերագրից յառաջանում է
շանագիր, իսկ նշանագրից ծագում է տառը։ Մենք ընդու-
եցինք, որ մեր նախնիքը թէև պատկերագիր չեն ունեցել,
ակայն նշանագրի գործածութիւնն ընդհանրացած է եղել
այաստանում. այժմ խնդիր է՝ թէ արդեօք Հայոց հին տա-
երն ենթարկուելով ընդհանուր օրինաց՝ կազմակերպուե
ան այդ նշանագրից, թէ օտար ծագումից յառաջացան։
եզ ցանկալի կլինէր առաջինն ապացուցանել, սակայն մեր
ետազօտութեան արդիւնքը ցոյց տուեց, որ Հայոց հին այ-
ուբենն օտար ծագումից է յառաջացել. յառաջ քան մեր
յս ասածը փաստերով բացատրելու, յառաջ ենք բերում այս-
եղ Եւրոպական գիտնականների յայտնած կարծիքները՝ մեր
յբուբենի ծագման և կազմակերպութեան մասին։

1) *Հայր Միք. Չամչեանը* հետևելով մեր պատմագրաց՝
նդունում է որ սբ. Մեսրոպը բոլորովին նոր այբուբեն կազ-
ակերպեց. «Յայտ է առ ամենեսին, թէ զնշանագիրս Հայոց՝
որ վարեմք, եգիտ սբն. Մեսրոպ ընդ ամենայն՝ երեսուն և
եց տառք՝ յայրէն մինչև ի քէ, ի բաց առեալ զօն և զֆէն,
որք ի յետին ժամանակս առեալ եղեն յայլոց ազգաց» [1]։

---

[1]) Տես. Հայր Միք. Չամչեան, պատմութիւն Հայոց. Հատ.
էջ 755։

Իբր ապացոյց իւր ասածի, Հայր Ջամչեանն ասում է միայն հետևեալը. «.... Եւ թէ յիրաւի չէր հնարեալ զայն Մեսրոպայ, զիա՞րդ մարթ էր սոցա—Խորենացի, Կորիւն և Փարպեցի—զայս այսպէս վկայել, և գրով աւանդել առ աշակերտակիցս իւրեանց, և ընծայել առ մեծամեծս աշխարհին, որպէս Կորիւն առ Յովսէփ կաթողիկոս առ երեց աշակերտակից իւր. և Խորենացին առ Սահակ ասպետ մեծ և Փարպեցին առ Վահան սպարապետ և մարզպան Հայոց։ Թո՛ղ զայն, զի այս մատենագիրք երևելիք ոմանք էին ի ժամանակս իւրեանց....» [2])։

2) *Հայր Ղուկաս Ինճիճեանն* է—եթէ չենք սխալւում—առաջին անգամ պատմական փաստերով հաստատում, որ «դանիէլեան» կոչուած այբուբենն ո՛չ թէ Դանիէլի գտածն էր, այլ Հայոց հին գործածական գիրն էր որ գտանուեցաւ նորա մօտ. «Եւ այսպէս ըստ մերոց նախայիշեալ պատմագրաց հին հայկական նշանագիրք էին, որք գտան առ Դանիէլի և դանիէլեան նշանագիրք էին զորս լրացոյց Մեսրոպ. բայց ի կարգի դնելն զնոսա եղև ի Միջագետս...» [3])։ Մի այլ տեղ ասում է. «...Զորս ոչ եթէ Դանիէլի էր յօրինեալ, այլ առ նմին Դանիէլի պահեալք հին հայկական նշանագիրք... [4])։

3) *Ուսուցչապետ Էմինն* աւելի ընդարձակ պատմական փաստերով հաստատելով Հայր Ինճիճեանի տեսութիւնը դանիէլեան այբուբենի մասին՝ [5]) բոլորովին մերժում է այն

---

[2]) Տես. Չամչ. նոյնը. հատ. I. ծանօթ. բ. գրոց. էջ 761։

[3]) Տես. Հայր Ղ. Ինճիճեան. «Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի» հատ. III. էջ 76։

[4]) Տես. նոյնը, հատ. III. էջ 73.

[5]) Տես. „Объ Армянскомъ алфавитѣ“ տպուած է Խորենացու ռուսերէն հրատարակութեան հետ իբր IV յաւելուած. սոյն աշխատութիւնը թարգմանուած է ֆրանսերէն լեզուով և տպագրուած „Revue d'Orient“ հրատարակութեան 1865 թ. հատորի մէջ։

ծ(իքն, որ իբրև թէ հայերէն տառերը ծագել են զենդի
ք թէ յունաց տառերից [6]). Հիմնուելով հետևեալ երեք
տառերի վերայ. ա) հայոց տառերի ձևերը բոլորովին չեն
մապատասխանում զենդի և յունաց տառերի ձևերին, բ)
յոց տառերի թիւը չէ համապատասխանում յունաց և զեն-
տառերի թուին և գ) զենդի և յունաց այբուբենի մէջ
ն բազմաթիւ ձայնաւորներ, այն ինչ հայոց հին այբու-
նն ոչ մի ձայնաւոր չունէր։ Սակայն՝ թէ ինչ ծագումն
նէր հայոց հին այբուբենը կամ թէ ինչպէս էր յառաջա-
լ, այդ մասին պրօֆ. Էմինը—նոյնպէս և Չամչեանն ու
ճիճեանը—ոչ մի խօսք չէ ասում։

4) *Ուսուցչապետ Պատկանեանը* հաստատելով պրօֆ.
ինի կարծիքն, որ սբ. Մեսրոպից առաջ մեր նախնիքն ու-
ցել են սեպհական այբուբեն՝ աւելացնում է, որ այդ այբու-
նն անկասկած *արամայական ծագումից էր* յառաջացել և
նազան պատճառներով գործածութիւնից դուրս էր եկել
րգելի ուսուցչապետն ոչինչ փաստ չէ յառաջ բերում, որ-

---

[6]) „... Քանի որ դեռ ևս Հայոց այբուբենի հնութիւնն
պացուցուած չէր պատմական փաստերով, կարելի էր ենթադ-
լ թէ Հայոց այբուբենի տառերը կազմակերպուել են զենդի
ռերի օրինակով. սակայն մեր այս յօդուածում յառաջ բերած
պացոյցներից յետոյ դժուար է ենթադրել, գոնէ մեզ համար,
այդպիսի կարծիք։ Առաջին. Հայոց այբուբենի տառերի ձևերը
մանութիւն չունին զենդի տառերի ձևերի հետ։ Երկրորդ. զենդի
բուբենը իւր տառերի քանակութեամբ մեծապէս տարբերւում
Հայոց այբուբենից։ Երրորդ. զենդի այբուբենը հարուստ էր
յնաւոր տառերով, այն ինչ հին հայկական այբուբենը ոչ մի
յնաւոր չունէր։ Այս բոլոր հանգամանքներն ի նկատ առնելով
ժուար է ենթադրել, որ զենդի այբուբենը ազդեցութիւն ու-
ցած լինի Հայոց այբուբենի վերայ։ Իսկ ինչ վերաբերում է
ւնաց այբուբենի կատարած դերին՝ Հայոց այբուբենի կազմա-
րպութեան խնդրում, պէտք է ասենք նոյնը, ինչ որ ասացինք
նդի այբուբենի մասին։ Տես. ЭМИНЪ, նոյնը, էջ 375։

պէս զի ապացուցանէ իւր յայտնած կարծիքը հին այբուբենի ծագման մասին [7])։

Սոյն յօդուածի շարունակութեան մէջ ասում է հեղինակն. ընդունելով որ հայոց հին այբուբենն ընդօրինակուած էր իրանական այբուբեններից մէկից, դիւրին է ըմբռնել՝ թէ ինչու այդ այբուբենը չէր կարող արտայայտել հայոց լեզուի բոլոր հնչիւնները... [8])։

Յառաջ բերելով մեր այս չորս հայրենակիցների—որոնք Եւրոպական գիտնականների հռչակ ունեն—դատողութիւններն, անցնենք բուն Եւրոպացիների յայտնած կարծիքներին

5) Փրդ. Կոպպը՝ իւր «Նախնական ժամանակների պատկերներ և գրեր» յայտնի աշխատութեան մէջ թէև հայերէն այբուբենի ծագման մասին մի որոշ տեսութիւն չէ յայտնում, սակայն ի նկատի ունենալով նորա դատողութեան եղանակի ճշտութիւնն, յառաջ ենք բերում այդ համառօտ հատուածի կարճ բովանդակութիւնը։—Գիտնականները միաձայն ընդունում են, ասում է Կոպպը, հայերէն այբուբենի նոր լինելը՝ հիմնուելով մասամբ պատմութեան և մասամբ ևս գոցա յունաց այբուբենի դասակարգութեան հետ ունեցած նմանութեան վերայ։ Թէ որչափ անհիմն է վերջին կարծիքը, ցոյց են տալիս նոյն իսկ սեմիտական այբուբենները,

---

[7]) Տես. Recherches sur la formation de la Iangue arménienne" նոյնը, էջ 148—149։

[8]) Տես. նոյնը, էջ 151.

Մի այլ տեղ ասում է պրօֆ. Պատկանեանը „... Առհասարակ սբ. Մեսրոպը համարւում է հայոց այբուբենի գտողը. աւելի ճիշտ է այն կարծիքը, որի համեմատ Մեսրոպը ոչ թէ գտաւ հայոց այբուբենը, այլ արդէն եղած, բայց ընդհանուրից չգործածուած, դանիէլեան—հայկական այբուբենը կատարելագործեց. այս կարծիքը գեղեցիկ բացատրել է Էմինը". տես. Исторія Агванъ М. Каганкатваци թարգմանութեան յաւելուածի II. մասն. էջ 326։

կողմը թողնելով այն հանգամանքն, որ հայերէն այբու-
նը թէ դասակարգութեամբ, թէ հնչմամբ և թէ տառերի
ւով տարբերւում է յունարէնից։

Նոր այբուբենի գիւտը վերագրում են հինգերորդ դա-
- առաջին կիսում յայտնի եղած Մեսրոպին. սակայն Փի-
տրատոսի վկայութիւնը կասկածելի է կացուցանում այդ.
և նոյն վկայութիւնը ջրում է և այն կարծիքն, որ հա-
էն տառերի գիւտը վերագրում է Խրիսոսթոմուսին [9]։ Իսկ
ւ վերաբերում է այն հանգամանքին, որ Վատիկանում
ուած Ոսկէբերանի սիւնարձանի վերայ եղած գրութիւնն այդ
ւտը նորան է ընծայում, շատ չպէտք է զարմանալ՝ ի նը-
տի ունենալով, որ այդ բոլոր արձանագրութեանց առաս-
լականութիւնն այն ստիճանի է հասնում, որ դոցա մէջ
ւամն ևս փայլում է իբրև մի այբուբենի ստեղծող։

Սակայն նոյն իսկ ենթադրելով, որ Մեսրոպը կամ Ոս-
բերանը գտան հայոց այբուբենը դարձեալ խնդիրը նորա-
ւմն է, թէ արդեօք ինչ մասերից կազմուեցաւ այդ։ Բո-
ովին մերժելի է այն կարծիքն, որ իբրև թէ այդ այբուբենը
զմուել է յունականի և լատինականի հիմանց վերայ. առա-
լ ընդունելի կարելի է համարել դորա հին պարսկականից
ւգելու ենթադրութիւնը [10]։

Եւ ապա առանց մի որ և է վճիռ արձակելու Կոպպը

---

[9]) Chrisosthomus նշանակէ Ոսկէբերան. հեղինակն ակնար-
ւմ է Յովհան պատրիարք „Ոսկէբերան"ին։

„Ի Վատիկանեան մատենադարանի որ ի Հռովմ՝ հոյակապ
ահի մը մէջ ուր ամենայն ազգաց այբուբենից ծանօթ հնարո-
ւց դէմքերն պատկերագրուած են, մեր այբուբենքն իրենց հին
կաթագիր ձևերովն տրուած են ի ձեռս սրբոյ Ոսկէբերանի,
ւքն համարելով և կոչելով անոնց հեղինակ" տես. Զարբանա-
ան, նոյնը. հատ. I. էջ 22։

[10]) Տես. Frd. Kopp: Bilder und Schriften der Vorzeit,
ւտ. II. էջ 361—367։

յառաջ է բերում Հայերէն մի քանի տառերի համեմատու- թիւնը՝ խպտական, եթովպական և պարսից տառերի հետ։ —Տես № V.—

6) *Ս. Վալը* պատմելով Հայոց այբուբենի գիւտն ըստ Խորենացու, շարունակում է. «Արդէն Մեսրոպից առաջ Աբէլ անունով մէկը գտել էր Հայոց գիրն, որ կազմուած էր յու- նաց այբուբենից. սակայն այնպէս անկատար, որ Մեսրոպն իւր գիտաւորութիւնը չթողեց... Տառերի ձևերը մասամբ ինք- նուրոյն են. թէև Մեսրոպն առնում է օտար տառեր, սակայն այնպէս է կազմակերպում, որ հին ձևերը համարեա թէ ան- յայտանում են։ Ձախից աջ գրելու եղանակն Աբէլն առել է յոյներից, իսկ Մեսրոպը հաւանականաբար Աբէլից։—Վալն Աբէլի անունն երևի շփոթում է Դանիէլի հետ—յունական տառերի ձևերը Հայոց այբուբենի մէջ բացի էից, րից, փից, օից չի կարելի ճանաչել, և նոյն իսկ այս տառերի յունական ծագումն—ի բաց առեալ օն—դեռ ևս շատ կասկածելի է։ Սակայն անհաւանական չէ, որ Հայոց այբուբենի մէջ ասո- րոց և պարսից տառերի ձևեր գտանուին. պարսից և ասորոց գիրը սովորական էր Հայաստանում Մեսրոպից առաջ և ով *որ յեղափոխում է՝ խոհեմութեամբ պահում է հնից այնչափ, որչափ կարելի է* [11]։

7) *Նոյմանը* հետևելով Խորենացուն՝ ընդունում է, որ Հայերը Մեսրոպից առաջ գիր չունէին [12]։

8) *Գատերեր* [13]) և

9) *Շրեօդեր* [14]) գիտնականները Հայոց այբուբենը յու-

---

11) Տես. S. Wahl: Allgemeine Geschichte der morgenländischen Sprachen und Litteratur. եր 613:

12) Տես. Neumann: Mémoire sur la vie et les ouvrages de David. etc. տպուած է N. Journ. Asiatique t. III. (1829) եր 54.

13) Տես. Ioh. Ch. Gatterer: Abriss der Diplomatik եր 46.

14) Տես. Ioh. Ch. Schröderi. Thesaurus liuguae armenicae etc. մասն. I. եր 33:

արէնից ծագած են համարում։

10) *Փրիդ. Վինդիշմանը* խօսելով Հայոց գրի մասին՝ ա-
ում է հետեւեալը. «Յայտնի է, որ Հայոց այբուբենը մի
գիւտ է, որ տեղի է ունեցել հինգերորդ դարում Մեսրոպի
եռ.քով։ Որչափ որ հայ ազգն իրեն պարտաւորուած է ըզ-
ում նորանից շնորհակալ լինելու, այնուամենայնիւ յայտ-
ում ենք այն կասկածը, արդեօք այդ ժամանակամիջոցում
ի կատարեալ տառագիր այբուբենի կազմութիւնը կարելի՞ էր։
Լեզուների պատմութեան մէջ կայ մի ժամանակաշրջան,
ւր ամենայն ինչ կեանք, ստեղծող ոյժ և թարմութիւն է,
ւր անմիջական գիտակցութիւն է տիրում նորա ներքին է-
ւթեան մէջ. դորա մէջ հնչիւնները դեռ ևս բաժանուած
ն և պահպանում են իւրեանց կատարեալ անհատականու-
թիւնն։ Այն նշանները, որոնք այս ժամանակաշրջանում տըր-
ում են այս հնչիւններին, կատարելապէս յարմարւում են
ոցա բնաւորութեան։ Սակայն շուտով մոռացւում է սկզբնա-
անը. նմանութեամբ կազմակերպութիւններն և հնչիւննե-
ի փոփոխութիւնները հետզհետէ աւելի յաճախ են տեղի
ւնենում. լեզուի ներքին բնազդումը, տառերի դէպի մի-
եանց ունեցած յարաբերութեան կենդանի զգացումը հետ-
հետէ բթանում է։ Եւ մի այսպիսի ժամանակ էր ապ-
ում Մեսրոպը, նորա ժամանակակից լեզուն արդէն փչացած
?) և քայքայման դրութեան մէջ էր. այդ պատճառաւ և
ենք կարող նորա այբուբենից հնչիւնների խիստ տարբերու-
թիւն սպասել (?). Նա մանաւանդ եթէ աչքի առաջ ունե-
անք այն հանգամանքն, որ նորա հիմն օտար տառեր էին՝
սյսինքն *յունական եւ ասորական գիրը։*

Վերն յիշած տառերի [15]) արտասանութիւնն այժմեան

---

[15]) *այպ, պիէն, կիմ, տահ... գիէն, դիւն, պիւր և այլն.
յէտք է նկատել, որ հեղինակը սխալմամբ կարծում է, թէ տաճ-
ահայոց արտասանութիւնն այժմեան բոլոր հայերի արտասանու-
թիւնն է։*

գործածականն է Հայերի մէջ. սակայն՝ մի կողմից յունաց այբուբենի հետ համեմատութիւնը, միւս կողմից այն եղանակն, ինչպէս որ նոյն իսկ իրենք Հայերն յունական անուններն կոչում են, պարզապէս ցոյց են տալիս, որ այժմեան արտասանութիւնը բաւականաչափ տարբերւում է սկզբնականից...» Ապա հեղինակը լեզուաբանական օրինակներով ապացուցանում է, որ մեր այբուբենի երրորդ տառը պէտք է գ և ոչ կ արտասանել. իսկ 15-րդ տառը կ և ոչ գ. 4-րդն պէտք է լինի դ և ոչ տ, 31-րդն տ և ոչ դ. 2-րդն բ և ոչ պ, 26-րդն պ և ոչ բ և այլն [16]: Մի այլ տեղ ասում է նոյն հեղինակը. «Հայոց այբուբենի գտնողը թէև կարիք ունէր ձայնաւորների համար շատ նշաններ ձևակերպելու, սակայն լեզուի այն ժամանակուայ դրութիւնն ի նկատի ունենալով՝ անկարելի էր հնչիւնները միմեանցից նուրբ կերպիւ զանազանել: Այդպիսով կորել է սկզբնական դիալէկտների գեղեցիկ զարդը կազմող քանակութիւնն (Quantität), որ մեծ ազդեցութիւն ունի բառակազմութեան խանգարման վերայ [17]:

11) Ֆլօրիվալն իւր Խորենացու ֆրանսերէն թարգմանութեան մէջ Հայոց այբուբենի գիւտը վերագրում է սբ. Մեսրոպին [18]:

12) Բիւտներն իւր համեմատական ցանկի մէջ ի միջի այլոց ասում է և հետևեալն. «Արաքսի միւս կողմը բնակւում են Հայերն և վրացիք. այս երկու ժողովրդից իւրաքանչիւրն ունի իւր առանձին և այլոց հետ ազգակցութիւն չունեցող լեզուն և գիրը» [19]: Ապա երկար պատմելով

---

[16]) Տես. Frd. Windischmann: Die Grundlage des Armenischen in arischen Sprachstämme. տպուած է Bay. Abhand. IV. 2. էջ 5—16.

[17]) Տես. Frd. Windischmann, նոյնն, էջ 24.

[18]) Տես. Moise de Khorène... traduite par P. E. Le Vaillant de Florival. էջ VI.

[19]) Տես. Ch. W. Büttner: Vergleichungs—Tafeln der Schriftarten verschiedener Völker. մասն I. էջ 8.

ենացու ասածները և յիշելով որ Հայերը գործ էին
ում յունաց, ասորոց և պարսից գրերը՝ շարունակում է.
էոդոս երկրորդ կայսեր ժամանակ Մեսրոպ անունով մի
ոյնակեաց, որ արքունի քարտուղար էր եղել, գտաւ մի
ուբեն Հայոց համար։ Այդ այբուբենի տառերի մեծամաս-
-թեան հիմնագծերի մէջ կարելի է ճանաչել դորա հին
րսկական ծագումը։... Տառերի դասաւորութիւնը թէ
յոց և թէ վրաց այբուբենի մէջ՝ յունական է. մէջ տեղե-
տեղաւորուած են իւրեանց առանձնայատուկ տառերը...› [20]։

13) Ռ ո մ մ է լ ը խօսելով Աստուածաշնչի հայերէն թարգ-
նութեան. մասին՝ շարունակում է. ‹ . . . Որովհետև մինչ
ն ժամանակ Հայերն օտար գիր էին գործ դնում, այս ա-
թով — Աստուածաշնչի թարգմանութեան — գտնուեցաւ
մ կազմուեցաւ Հայոց այբուբենն ըստ յունական օրինա-
...› [21]։

14) Այբուբենների մի համեմատական ցանկի մէջ, որ
տարակել են երկու Բենեդիկտեան կրօնաւորներ, Հայոց
բուբենը դասաւորուած է յունաց այբուբենից ծագած գրե-
շարքի մէջ [22]։

15) Ե. Բօրէ խօսելով Հայոց այբուբենի մասին՝ ասում
«մենք չենք կարծում որ Հայոց այբուբենի տառերը վերց-
ծ լինին միայն միայն յունարէնից, ինչպէս որ կարծում
մի քանի գիտնականներ։ Այն ինչ զենդի և ասորական
բուբենների համեմատութիւնը Հայոց այբուբենի հետ մեծ
անութիւն է ցոյց տալիս՝ թէ տառերի հնչիւնով և թէ
անակութեամբ, ուստի և կարծում ենք, որ Մեսրոպն այդ

---

[20]) Տես. Büttner, նոյնը. մասն II. էջ 25—26։

[21]) Տես. Allgemeine Encyclopädie der Wissenschaften und
inste, von Ersch und Gruber Լայպցիգ 1820. Հատ. 5. էջ 360.

[22]) Տես. Nouveau Traité de Dirbomatique par deux Beli-
eux Bénédictins de la congrégation de S. Maur. Paris. M.
CCL. մասն. I. էջ 709.

այբուբենը կազմակերպեց վերոյիշեալ երկու այբուբենն
ուսումնասիրութիւնից յետոյ։ Հայաստանը միշտ եղել է ա
րոց և պարսից ազդեցութեանց տակ...» [23])։

16) „Biographie Universelle" Հրատարակութեան
«Մեսրոպ» հատուածը խօսելով Հայոց այբուբենի մասին,
սում է. «այս այբուբենն, որ բաղկացած է 36 տառեր
կազմուեցաւ երկրի մէջ սովորական հին գրի շատ նշանն
րից և յատուկ նոր գտած տառերից» [24])։

17) Նշանաւոր արևելագէտ և հնախոյզ Լընօրմա
Հայոց գիրը զենդից յառաջացած է համարում և հետև
տեղը տալիս նորան ընդհանուր գրերի շարքի մէջ.

## ՍԵՄԻՏԱԿԱՆ ՏՈՀՄ

### I

*Եբրայա-սամարական ընտանիք.*

Հին Փիւնիկեան.
Հին եբրայական.
սամարական.
սամարական նոտր գիր։

### II

*Արամայական ընտանիք.*

միջին Փիւնիկեան.
առաջին արամայական.
երկրորդ արամայական.
արամայական՝ պապիրուսի վերայ.

---

[23]) Տես. E. Boré: De l'action directe et puissante du chris
tianisme sur la société arménienne etc. տպուած է Jour. Asia
tom I. (1836) էջ 214. ծանօթ 1.

[24]) Տես. Biographie Universelle, ancienne et moderne. P
ris et Leipzig հատ. 28. էջ 101.

միւս ճիւղերը թողնելով նախկին պաշտական.
պերսեպոլեան պաշտական.
սասանեան պաշտական.
ձեռագրաց պաշտական.
զենդի
հայոց և վրաց [25]:

18) Փ ա ռ ո ւ լ մ ա ն ը հայոց այբուբենի գիւտն ըստ մեր տենագրութեան պատմելուց յետոյ, ի միջի այլոց ասում նաև հետևեալն. «... Որովհետև պատմում են—մեր մանագիրներն—որ Մեսրոպն առաջ հայոց այբուբենը կազկերպեց և յետոյ վրացոցն, որ կասկածի ենթարկելու ոչ պատճառ չունենք, այն ժամանակ աւելի հաւանական է, Մեսրոպն ոչ հայոց և ոչ ևս վրաց նշանները գտաւ. այդ նշաններն ինչպէս «րունէ» կոչուած գրերն, իբրև մանակի և հմայութեան նշաններ՝ այդ ժողովրդոց ժանգական սեպհականութիւնն էին: Եւ այն աստուածային տնութիւնն, որի մասին խօսում է Խորենացին, կայանում նորանում, որ Մեսրոպը մտածեց այս նշաններն իբրև տար գործ դնել. իսկ վրացիք հետևելով նորա խորհրդին՝ եանց սեպհական նշանները նոյնպէս տառերի փոխադրե-: Այսպիսով բացատրւում է՝ թէ ինչպէս երկու բոլորովին րբեր այբուբեններ—մերն և վրացոցը—մի և նոյն սկզբնատճառը կարող էին ունենալ: Ես կը ցանկանայի նոյնպէս շադրութիւն դարձնել այն հանգամանքի վերայ, որ հայոց ռերի անուններն այբ, բեն, գիմ, մատնացոյց են անում ն պատճառը, թէ ինչու յունաց տառերն անյարմար էին յոց լեզուի համար: Հայոց *բ* կամ *բի* կամ *պի* (?) հաւականաբար բոլորովին այլ հնչիւն ունէր քան յունաց B·:

Մեսրոպն երկնչում էր, որ արտասանութիւնն յունաց

---

[25]) Տես. Fr. Lenormant: Essai sur la Propagation de l'al-bet Phénicien. հատ. I. ցուցակ I. էջ 192.

նշանների միջնորդութեամբ կ՚փչանայ, այդ պատճառաւ և գերադասեց յունաց այբուբենից բոլորովին տարբերուող մի այլ գիր։ Երբ պատմագիրներն ասում են՝ թէ Մեսրոպը Հայոց նշաններն ըստ յունական օրինակի ձևակերպեց, այդտեղից պէտք է հասկանալ որ նա յունաց գրի ուղղութիւնը՝ ձախից—աջ, ինչպէս նաև բառերի բաժանումն և յունական այբուբենի ամբողջ արտաքին ձևն ընդունեց» [26])։

19) Հայագէտ Եդ. Դիւլօրիէն Հայոց հին այբուբենը համարում է արամայականից ծագած [27])։

20) Սէն-Մարտէնը խօսելով դանիէլեան տառերի մասին՝ ասում է, որ դոքա յունաց տառերի ձևն ունէին [28]). իսկ պատմելով Մեսրոպեան այբուբենի մասին՝ այն կարծիքն է յայտնում, որ իբրև թէ Մեսրոպը վերցնում է պարսից հին տառերից շատերը և Հայոց այբուբենի կարգն անցնում. այս Հայագէտ գիտնականի կարծիքով «Հէնց առաջին հայեացքով դիւրին է ճանաչել որ Հայոց տառերից շատերը մեծ նմանութիւն ունին զենդի և պահլաւական տառերի հետ, նոյնպէս սասանեան ժամանակի պարսկական և ասորական արձանագրութեանց տառերի հետ» [29])։

21) Հայագէտ Լանգլուան մի պարզ գաղափար չէ կարողացել կազմել Հայոց այբուբենի մասին. մի տեղ ասում է նա, որ մենք հինգերորդ դարից առաջ մեր սեպհական գիրը չենք ունեցել [30]). իսկ միւս տեղ ասում է, որ Դանիէ-

---

[26]) Տես. K. Faulmann: Illustrirte Geschichte der Schrift էջ 499—500

[27]) Տես. Journal Asiatique. t. 16. (1870). էջ 149. ծանօթ. 1.

[28]) Տես. Saint-Martin: Histoire du Bas-Empire par Lebeau etc. հատ. 5. էջ 322.

[29]) Տես. S.-Martin, նոյնը. հատ. 5. էջ 323.

[30]) Տես. V. Langlois: Etude sur les sources de l'Histoire d'Arménie de Moise de Khoren. տպուած է Bulletin de l'acad. de S.-Petersburg. հատ. III. (1861) էջ 532.

ն մօտ գտանուած գիրը Հայոց Հին այբուբենն էր [31]. և
եռանելով «Ոսկեփորիկ»ի տուած տեղեկութեան՝ ընդունում
, որ այդ այբուբենի տառերն առնուած պէտք է լինեն ա-
որականից [32]։ Մի այլ տեղ կարծես կասկածելով Հայոց Հին
յբուբենի գոյութեան մասին՝ ասում է որ գուցէ Հայաս-
անի մի քանի նահանգներում միայն գործածական էր այ-
ային այբուբենը [33]։

22) Պրոֆ. Ֆր դ. Մ ի ւ լ լ ե ր ը զբաղուելով Հայոց այբ-
ւբենի խնդրով և հետևելով Մ. Խորենացու և Կորիւն
քանչելու տուած վկայութեանց՝ Հայերէն տառերի գիւտը
ժէև վերագրում է ս. Մեսրոպին, սակայն այն եզրակացու-
թեան է գալիս, որ այդ տառերը ծագում են ոչ թէ յունաց,
յլ սեմիտական այբուբենից։ Յարգելի գիտնականն ըստ Խո-
ենացու և Կորիւնի՝ երկար պատմելով Հայոց տառերի գիւ-
ի պատմութիւնը և համեմատելով վրաց այբուբենի հետ՝ ի
իջի այլոց ասում է և հետևեալը. «Հայոց և վրաց այբուբեն-
երը ներկայացնում են յունական և սեմիտական տառերի
արայարութեանց մի խառնուրդ. վրաց այբուբենի մէջ այդ
րողութիւնը կատարուած է ճշտօրէն. այն ինչ Հայոց այ-
բուբենի մէջ այդ շարայարութիւնը խանգարուել է վերջն
աւելացած տառերով. այստեղից կարելի է եզրակացնել, որ
այս երկու այբուբենների կազմակերպութեան ժամանակ տե-
ղի է ունեցել ոչ միայն յունականի, այլ և սեմիտական այ-
բուբենի ազդեցութիւնը։ Վերջին ազդեցութիւնն աւելի աչ-
քի է ընկնում, երբ մենք Հայոց և վրաց այբուբենի իւրա-
քանչիւր տառն ուսումնասիրելու համար՝ համեմատում ենք
յունական և սեմիտական—այստեղ մասնաւորապէս արամա-
յական-տառերի հետ։ Համեմատութեան ժամանակ պէտք է

---

[31]) Տես. V. Langlois: Collection des Historiens etc. Հատ. I. Discurs Pé.iminaire էջ 15.

[32]) Տես. Langlois. նոյնը Հատ. I. էջ 7.

[33]) Տես. նոյնը. Հատ. I. էջ 15.

վերցնել Հայոց երկաթագիրն և վրաց «խուցուրի»ն։ Ապա Հայոց այբուբենի տառերի համեմատութիւնն յառաջ բերելով՝ շարունակում է. «Այս բոլորից երևում է, որ Հայոց և վրաց այբուբենների իսկական աղբիւրը պէտք է որոնել մի սեմի-տական և յատկապէս արամեական այբուբենի մէջ և գուցէ նոյն իսկ այն այբուբենի, որ այն ժամանակուայ պարսիկները գործ էին դնում և որից ծագում է նաև սասանեան պահ-լաւական գիրը։ Մեսրոպի աշխատանքը կայանում է նորա-նում, որ *նա կարողացաւ արամեական միայն բաղաձայն-ներից կազմուած գրից մի այբուբեն կազմակերպել ըստ յու-նական օրինակի, որի մէջ թէ բաղաձայն եւ թէ ձայնաւոր հաւասարապէս նշանագրուեցան*» [34]։

23) Ակադեմիկոս Բրոսէն Կիրակոս Գանձակեցու թարգմանութեան մի ծանօթութեան մէջ՝ Հայոց գրի մասին տեղեկութիւն ցանկացողին ուղարկելով Խորենացու, Ղ. Փար-պեցու, Վարդանի և այլ պատմագիրների մօտ, աւելացնում է որ Հայոց հին այբուբենը բաղկացած էր 22 տառերից, որի վերայ Մեսրոպն աւելացրեց 14 տառ. այդպիսով կազմուեցաւ նոր այբուբենն ըստ յունական շարայարութեան։ [35])

24) Պրոֆ. Հիւբշմանը խօսելով Հայոց այբուբենի մա-սին՝ ասում է հետևեալը ‹Հայոց այբուբենն՝ ըստ վկայու-թեանց հայկական մատենագիրների, գտել է սբ. Մեսրոպը հինգերորդ դարու սկզբում. սակայն նոյն մատենագիրները պարզապէս ակնարկում են, որ այս գիւտը միայն Մեսրոպի գործը չէր։ Ըստ այդ տեղեկութեանց Մեսրոպը գտնում է մի հին այբուբեն ասորի Դանիէլի մօտ և երկար ժամանակ

---

[34]) Տես. Prof. Fried. Müller: Über den Ursprung der armenischen Schrift. տպուած է Sitzungsberichte der phil. hist. cl. d. kais. Akademie d. Wissenschaften. Հատ. 48. տետր 1 և 2. էջ 438.

[35]) Տես. Brosset: Deux Historiens Arméniens—Kirakos de Gantzac. etc. St. Petersburg 1870—էջ 13. ծան. 4.

իափոխ գործ դնելուց յետոյ, տեսնելով դորա պակասու-
ւնները՝ երկար ժամանակ զանազան գիտնականների հետ
ւհրդակցելով և հոգալով՝ վերջապէս կարողացաւ Հռուփա-
ի հետ միասին կազմակերպել հայոց նոր կատարեալ այ-
բենը։ Այսպիսով Մեսրոպի ծառայութիւնն այն եղաւ, որ
կատարելագործեց հին «դանիէլեան» այբուբենն և ազգա-
գիրը տարածեց Հայաստանում՝ յետ մղելով մինչ այն ժա-
նակ գործածական պարսից, յունաց և ասորոց գիրը։ Հայա-
ռները, մասնաւորապէս Էմինը և Լանգլուան, փորձել են
և որոշելու թէ որոնք էին դանիէլեան այբուբենի տառերն
որոնք մեսրոպեան։ Դորա համար նշանակութիւն ունեցաւ
րդան պատմագրի վկայութիւնն, որով հին այբուբենը բաղ-
ցած էր 22 տառերից և Մեսրոպն աւելացրեց 14 տառ...»
յա համեմատելով հայոց ու յունաց այբուբենների շարա-
ութիւնն, այն եզրակացութեան է գալիս որ Դանիէլեան
ուբենը կազմուել է յունական այբուբենից։ Այս եզրակա-
թիւնից յետոյ շարունակում է պրոֆ. Հիւբշմանը. «Որ պար-
յ (պահլաւական) այբուբենը չէ կազմում Դանիէլեան
բուբենի հիմքը, կարելի է ընդունել հէնց նորա համար,
այդ այբուբենը 22 տառ չունէր։ Արամայական այբու-
ններից, ասորականը՝ 22 տառ ունի, որ աւելի մեծ նշա-
կութիւն է ստանում, որովհետև այդ Դանիէլն ասորի է
չւում։ սակայն համեմատելով հայոց և յունաց այբուբենն
որականի հետ... հակառակ պրոֆ. Միւլլէրի գալիս ենք
ն եզրակացութեան, որ հայոց այբուբենը կազմուել է ըստ
ւնական օրինակի. նոյն իսկ ձայնաւոր տառերն առնուած
յունաց այբեբենից—բացի «ը»—Մեսրոպից առաջ»։ [36])

[36]) Տես. H. Hübschmann: Ueber Aussprache und Umschrei-
ng des Altarmenischen. տպուած է Zeitschrift d. d. morg. Ge-
llschaft, հատ. 30 .(1876) էջ 62—64.

Մի այլ գերմանացի հեղինակ խօսելով հայոց գրի մասին՝
ում է հետևեալը. „Դանիէլեան կոչուած այբուբենը կազմուած

25) Գ ա ր դ հ ա ո ւ զ է ն ը «Հայոց գրի յունական ծագման մասին» վերնագրով մի յօդուածով կամենում է ապացուցանել, որ մեր այբուբենը ծագում է անմիջապէս յունաց այբուբենից։ Նա ասում է. «Մովսէս Խորենացին պատմում է՝ թէ ինչ դժուարութիւններով սբ. Մեսրոպն (400 թ. (?) Քրիստոսից յետոյ) իւր հայրենակիցների համար մի այբուբեն գտաւ և վերջը հրամանաւն Աստուծոյ «Հայոց տառերը ձևակերպեց ըստ օրինակի յունաց տառերի» [37]). այս այբուբենը սովորացրեց նա յետոյ վրաց և Աղուանից ժողովրդին։ Արտաքին հանգամանքները մեծ հաւանականութիւն են տալիս՝ հայոց այբուբենի յունաց գրից ծագելուն։ Հայաստանն, որ ի վաղուց հետէ իւր արևելեան և արևմտեան դրացիների կռուածաղիկն էր, քրիստոնէութիւն ընդունելուց յետոյ բացառապէս յենուած էր յունա-հռովմէական քաղաքակրթութեան վերայ և չորրորդ դարու վերջը փորձեց Հռովմի դաշնակիցը մնալու, չնայելով հռովմայեցւոց կայսրների անպիտան վարմանց և անհաւատարմութեան։ Ուրեմն երբ այս ժամանակ մի քրիստոնեայ աբեղայ կամենում էր իւր ժողովրդին մի այբուբեն տալ, պէտք է ամենից առաջ իւր եկեղեցւոյ գիրն աչքի առաջ ունենար

---

էր ասորականի ձևով, սակայն ասորական 22 տառից 5 բաց թողնելով՝ առել էր միայն 17, վասն զի այդ 5 տառերը գոյութիւն չունէին հայոց լեզուի մէջ. այսպիսով հին այբուբենը բաղկացած էր միայն 17 տառերից և Մեսրոպն աւելացնելով 19 տառ՝ ընդամենն եղաւ 36". այս հատուածի աղբիւրը չենք արձանագրել որովհետև այս կարծիքը նոր բան չէ, այլ առնուած է մեր արդէն յիշած „ոսկեփորիկ" կոչուած գրուածքից։

[37]) „Die armenischen charaktere nach dem Muster der griechischen Schriftbezeichnung formte". Այս չակերտներով անջատուած նախադասութիւնը Գարդհաուզէնը յառաջ է բերում իբրև թարգմանութիւն Խորենացու հետևեալ նախադասութեան „փոխադրելով զհայերէն աթութայսն ըստ անսայթաքութեան սիւղաբայից հելլենացւոց"—տես. Մ. Խ. գիրք III. գլխ. ծգ. էջ 371.—որ սխալ է։

և այդ գիրն յունականն էր։ [38])։(?) Սակայն այսօր հակառակ կարծիքն է տիրող հանդիսացած»։ [39]) Ասպա Գարդհաուզէնը յառաջ է բերում հայոց այբուբենի այն 22 տառերի համեմատութիւնը յունաց տառերի հետ, որոնց պրօֆ. Հիւբշմանը Դանիէլեան այբուբենին էր յատկացրել։

26) «Ընդհանուր գերմանական ռէալ-էնցիկլօպեդիայի» մէջ հայոց գրի մասին գտնում ենք հետևեալն. «ընդհանրապէս հայոց գրի գտնողը համարւում է Մեսրոպը, որ Սահակ Մեծի հետ հայոց գրականութեան հիմնադիրն է հանդիսանում։ Սակայն աւելի ճիշտ հետազօտութիւններն ապացուցանում են, որ հայերն արդէն վաղ ժամանակներում մի այբուբէն ունէին, որ առնուած էր սեմիտականից և 22 տառից էր բաղկացած, սակայն, որովհետև այլ ևս չէր բաւականացնում հայոց լեզուի պահանջը, հետզհետէ մոռացուեցաւ։ Մեսրոպն այս այբուբենը գտաւ ասորի եպիսկոպոս Դանիէլի մօտ, կատարելագործեց համաձայն հայկական հնչմանց պահանջին. գուցէ և գեղեցկացրեց Հռուփանոս գեղեցկագրի—Kalligraph—օժանդակութեամբ և շարայարեց ըստ յունական այբուբենի։ Սահակը նոյնպէս գործակից էր և երկուսը տարածեցին այդ նոր այբուբենն՝ երկրի բոլոր մասերում ուսումնարաններ հիմնարկելով։ Հայոց գրի այս գիւտը, կամ աւելի լաւ է ասել կատարելագործումը տեղի ունեցաւ ոչ թէ 406 թ., ինչպէս սովորաբար կարծւում է, այլ 406—410 թ. (!)»։ [40])

27) Պրօֆ. Կ. Կ ո խ ն—իւր «Ճանապարհորդութեան մէջ

---

[38]) Որպէս զի մեր հարցական նշանը սխալ չհասկացուի, ասենք՝ որ այն ժամանակ մեր եկեղեցու գիրը միայն յունարէնը չէր, այլ մեծաւ մասամբ ասորոց գիրը։

[39]) Տե՛ս V. Gardthausen: Ueber den griechischen Ursprung der armenischen Schrift. տպուած է Zeitschrift d. d. m. Gesellschaft. հատ. 30 (1876). էջ 74.

[40]) Տե՛ս Allgemeine deutsche Real-Fncyklopädie etc. Conversations—Lexikon. Լայպցիգ 1864. 11-րդ հրատ. Հ. II. էջ 127.

*խօսելով «Հայկի» գիւղի մասին՝ ասում է հետեւեալն. «Այս գիւղում ծնուեցաւ Հայոց և վրաց այբուբենի գտնող Մեսրոպն—առաջինի գիւտը պէտք է տեղի ունեցած լինի 406 թ.—։ Մինչ այն ժամանակ հայերը գործ էին դրել ասորոց և յունաց գիրը։ Բայց որովհետև այդ երկուսն եւս չէին բաւականանում Հայոց հնչիւնների համար և պարսից տիրապետութեան ժամանակ յունաց հետ յարաբերութիւն ունենալն արգելուած էր հայերին, Մեսրոպը Հայոց լեզուի համար գտաւ 36 տառեր, որի վերայ յետոյ—խաչակրաց արշաւանքի ժամանակ—երկուսն եւս աւելացան և այժմեան այբուբենը բաղկացած է 38 տառերից։ Սակայն աւելի հաւանական է բաց պրոֆ. Պետերմանի կարծեաց, որ հայերն արդէն իւրեանց սեպհական գիրն ունէին և Մեսրոպը միայն ընդարձակեց այդ գիրը»։* [41])

28) *Հ. Պ ե տ ե ր մ ա ն ը խօսելով Հայոց գրականութեան մասին՝ շարունակում է. «Հայոց տառերի գիւտը վերագրում են Մեսրոպին, սակայն նորագոյն հետազօտութիւնները ցոյց են տալիս, որ նա ոչ թէ ամբողջ այբուբենն է գտել կամ կազմել, այլ մի հին, վաղուց մոռացուած այբուբենը վերականգնել, կատարելագործել և ամբողջ երկրի մէջ տարածել...»* [42]) *Մի այլ տեղ խօսելով Մեսրոպի մասին՝ ասում է հետեւեալը. «Մեսրոպի ներմուծած այբուբենը բաղկացած է 36 տառերից և լիովին յարմարում է Հայոց լեզուին, շարայարուած է ըստ յունաց այբուբենական կարգի և Հայոց լեզուին յատուկ հնչիւնները տեղաւորուած են դոցա մէջտեղերն. գրելու ուղղութիւնն այլ է քան միւս արևելեան այբուբեններինը—ձախից աջ. իւրաքանչիւր տառի ձեւն և անունն առնուած է*

[41]) *Տես.* Professor Dr. K. Koch: Wanderungen im Oriente etc. *հատ.* II. *եր* 405—406.

[42]) *Տես.* H. Petermann*ի յօդուածը* Real-Encyklopädie für protestantische Theologie und Kirche von Herzog und Plitt*ի մէ*. 2 Auflage. *Լայպցիգ* 1877. *հատ.* I. *եր* 666.

յունական օրինակից. այբ—Ալֆա. բեն—Բեթա. գիմ—գամա և այլն»։ 43)

29) Պ ա ո ւ լ դ ը Լ ա գ ա ր դ հայագէտ պրօֆ. նոյնպէս ընդունելով, որ Հայոց այբուբենի հիմքը յունականն է կազմում, 44) շարունակում է. «Հայոց այբուբենի գտնողները (!) ունել են Ալէքսանդրիայում(!!), ուստի այդ այբուբենի չորս տառերի ձևերն առնուած են խըպտական այբուբենից—հ. ձ. ճ. վ—կարելի էր նոյնպէս խ և շ տառերը խըպտականից ծագած համարել»։ 45)

30) Գիտնական Հայր Բ ա ր ս ե ղ Ս ա ր գ ս ե ա ն ի կարծիքով սբ. Մեսրոպը «առեալ ի միասին զպարսկերէն, զյունարէն և զասորերէն այբուբենս, նորակերտել է մի այլ այբուբեն»։ 46)



---

[43]) Նոյնը. հատոր IX. էջ 617.

[44]) Տես. Paul de Lagard. Gesammelte Abhaudlungen—Լայպցիգ 1866. յառաջաբան էջ IX.

[45]) Տես. P. de Lagard: նոյնն, էջ X.

[46]) Տես. „Բազմավէպ“ 1889 թ. № 1. „տեսութիւն տառադարձութեան խնդրոյն և հայերէն նշանագրոց վրայ“

# ԳԼՈՒԽ ԺԶ.

## ՀԱՅՈՑ ԳՐԻ ԾԱԳՈՒՄԸ,

### ԿԱՄ ԹԷ

## ՈՐՏԵՂԻՑ ԵՆ ՅԱՌԱՋԱՑԵԼ ՀԱՅՈՑ ՀԻՆ ՏԱՌԵՐԸ:

*Եւրոպական գիտնականների այդ մասին յայտնած տարբեր կարծիքների պատճառները. Հայոց գիրը պատկանում է սեմիտական ընտանիքին. գիրն ենթարկւում է փոփոխութեանց. Հայոց սահմանակից ազգերի գիրը. սեմիտական ո՞ր գրից է ծագում Հայոց այբուբենը. Համեմատութիւն Հայոց այբուբենի՝ փիւնիկեան, հին եբրայական, արամական եւ պալմիրական տառերի հետ. Մեսրոպեան 14 տառերի ծագումը. Հայոց յարաբերութիւնը փիւնիկեցիների եւ ասորա-քաղդէացիների հետ. կրօնը, լեզուն, վաճառականութիւնը եւ քաղաքական դրութիւնն իբրեւ միջոց այդ հաղորդակցութեան. Հայոց հին այբուբենի տառերը վերցուած են փիւնիկեան այբուբենից:*

---



տսական գիտնականների այս բոլոր միմեանցից տարբեր կարծիքներն իւրեանց պատճառներն ունին. սոցանից մի քանիսը միայն Խորենացու հետ ծանօթ լինելով նորա ասածներն են յառաջ բերում և իւրեանց կարծիքները յայտնում. միւսները բոլորովին ծանօթ չեն Հայոց գրականութեան հետ և ենթադրութիւններ են անում. երրորդ խումբը ծանօթ է

ր գրականութեան հետ, սակայն մանրամասն չէ ուսում-
սիրել խնդիրը. իսկ ընդհանրապէս առած համարեա բոլո-
ն էլ—բացի մի քանիսից—միայն կարծիքներ են յայտնում,
անց իւրեանց ասածը փաստերով ապացուցանելու։ Աւե-
դ աշխատանք կը լինէր, առանց փաստերի յառաջ բերած
տարբեր կարծիքները մի առ մի հերքել—Ֆրդ. Միւլլէրի
Գարդհաուզէնի յառաջ բերած ապացոյցներն ի նկատի կ՚առ-
նք տառերի համեմատութեան ժամանակ—ուստի և յա-
ռջ ենք բերում այդ կարծիքների հաւաքածուն, որ կարե-
է հինգ մասի բաժանել։

ա) Մերժում են այն իրողութիւնն, որ հայերը Մեսրո-
ց առաջ սեպհական գիր ունէին—Չամչեան, Նոյման,
նդիշման, Ֆլօրիվալ, Բիւտներ և այլն։

բ) Չեն ասում թէ որտեղից է ծագել հայոց գիրը —
Ճիճեան, Էմին, Վալ և այլն։

գ) Կարծում են որ հայոց այբուբենը ծագել է արա-
յականից—Պատկանեան, Դիւլօրիէ, Ֆրդ. Միւլլէր և այլն։

դ) Զենդից—Կոպպ, Բիւտներ, Բօրէ, Լընօրման, Սէն-
րտէն և այլն։

ե) Յունաց այբուբենից—Գատերեր, Տրեօդեր, Ռոմ-
լ, Հիւբշման, Գարդհաուզէն և այլն։

Որ հայերը Մեսրոպից առաջ գիր են ունեցել, բաւա-
նին ընդարձակ փաստերով ցոյց տուինք նախընթաց հա-
ւածների մէջ, ուստի այդ մասին այլ ևս կարևոր չէ խօ-
լ։ Հայերէն տառերի և հին պարսկականի—զենդի—մէջ ե-
ծ նմանութիւնը բոլորովին ժխտել անկարելի է, վասն զի
դ երկու այբուբենների մէջ ևս կան տառեր, որոնք թէ
րեանց ձևով և թէ անուամբ մի փոքր նմանութիւն ու-
ն միմեանց հետ [1]։

---

[1]) Համեմատութեան ժամանակ պէտք է տառերը շրջել,
ն զի պարսիկները գրում էին—և գրում են—աջից՝ ձախ, իսկ
ք գրում ենք ձախից՝ աջ։

Համարեա նոյն յարաբերութեան մէջ է գտանւում Հայոց այբուբենը յունաց տառերի հետ—այստեղ հարկ չկայ ի հարկէ տառերը շրջելու—։ Սակայն ընդունել, որ Հայոց տառերն ուղղակի ծագում են պարսկականից կամ յունականից, դեռա-հաս վճիռ կլինէր։ Այն գիտնականներն, որոնք ընդունում են, որ Հայոց այբուբենը ծագել է յունականից, միշտ խառնում են Հայոց հին այբուբենը Մեսրոպեան այբուբենի հետ. դոքա իբր ապացոյց իւրեանց փաստաբանութեան յառաջ են բերում այն իրողութիւնն, որ Հայոց այբուբենի շարահիւսութիւնը, ձայնաւոր հնչիւններից մի քանիսը և մի քանի տառերի ձևերն առնուած են յունաց այբուբենից. դոքա չգիտեն, կամ թէ չեն ուզում գիտենալ, որ Հայոց հին այբուբենն էր, որ սբ. Մեսրոպը կատարելագործեց և որչափ կարելի էր նըմանեցրեց յունականին. այդ չէ նշանակում, որ Հայոց հին այբուբենը նոյնն էր, ինչ որ յունականն—ինչպէս որ կարծում են Հիւբշմանը և Գարդհաուզէնը—։ Մեսրոպեան այբուբենը խառնուրդ է Հայոց հին այբուբենի տառերի և Մեսրոպից աւելացրած նշանների, ուստի առաջ պէտք է որոշել թէ ո՛ր տառերն աւելացրեց սբ. Մեսրոպը և որոնք էին հին այբուբենի տառերը. սորա համար առաջ պէտք է զբաղուել այն խնդրով թէ հին տառերն ո՛րտեղից կարող էին ծագել և ոչ թէ ուղղակի յունաց այբուբենը վերցնելով ասել՝ թէ այն տառերն, որոնք չկան սորա մէջ, գտաւ սբ. Մեսրոպը, իսկ մնացեալն էր Հայոց հին այբուբենը 2)։ Հայոց այբուբենի շարահիւսութիւնն ինչ յարաբերութիւն որ ունի յունաց այբուբենի հետ, համարեա և միևնոյն յարաբերութեան մէջ է գտանւում—բացի մի երկու տառից—և լատինական այբուբենի հետ. մի՞թէ այստեղից կարելի է եզրակացնել, որ Հայոց այբուբենը ծագում է լատինականից։

---

2) Այդպէս են վարւում պրօֆ. Հիւբշմանը և Գարդհաուզէնը մեր արդէն յիշած աշխատութեանց մէջ։

Հայերէն հին տառերը պատկանում են սեմիտական մեծ
տանիքին և ունին իւրեանց բոլոր ազգակիցների հետ մի
և է նմանութիւն, թէ ձևի, թէ հնչման և թէ շարա-
ւառութեան կողմից. իսկ սեմիտական ընտանիքին պատկա-
ղ բոլոր այբուբեններն [3]) իւրեանց սկզբնական ծագումն
ւնում են Փիւնիկեան տառերից, սակայն ո՞վ կարող է պա-
նջել, որ այսօր հռովմէական տառերն անպատճառ նման
նին Փիւնիկեան այբուբենին։

Ինչպէս որ Կոպպը գեղեցիկ կերպիւ նկատում է. «գրերը
տեսակ նմանութիւն ունին բոյսերի հետ, վասն զի կլի-
ն և երկիրը փոխադրութեան ժամանակ՝ դոցա վերայ ևս
զդում են» [4])։

Սովորութիւններն, ազգային գաղափարները, լեզուն և
նչև անգամ սահմանակից ազգերի ազդեցութիւնն օժան-
ակում են այդ փոփոխութեան։

Եթէ գրերը նոյն իսկ իւրեանց հայրենիքում ժամանակի
տ փոփոխութեան են ենթարկւում, որչափ առաւել ևս
տք է տարբերութիւն միմեանցից դոցա սերունդներն, որ ար-
ն հեռացել են իւրեանց հայրենի տնից և իւրաքանչիւրն
լ ճանապարհով է յառաջ ընթանում։ Մի ընտանեաց պատ-
նող գրերի միմեանց հետ համեմատութիւնը դժուարաց-
ւմ է նաև այբուբենների դասակարգութիւնը կամ շարա-
ւառութիւնն, որ միշտ փոփոխութեան է ենթարկւում՝ որոշ
ռերի աւելանալով կամ պակասելով. սակայն այդ հանգա-
նքն ևս թոյլ չէ տալիս մի որ և է այբուբենի սկզբնական
ղումը բոլորովին ժխտելու։ Քրիստոնեայ ասորական գիրը,

---

[3]) Եբրայական, արամայական—ասորա-բաբելական, յունա-
ն, հռովմէական, գոթական, պարսկական, արաբական, հնդկա-
ն, եթովպական և բոլոր եւրոպական ազգերի և այլն։

[4]) Տես. Kopp: Bilder und Schriften der vorzlit. հատ II.
105։

չնայելով յունական ձայնաւորների աւելացման, չէ դադարում դեռ ևս սեմիտական լինելուց [5]։

Մի որ և է ազգի գրի հետազօտութիւնն աւելի կատարեալ կլինի, երբ աչքի առաջ ունենանք այդ ազգի դրացի և սահմանակից ժողովրդեան գործածած գրի տեսակները Հետևելով այս սկզբունքին՝ մի համառօտ ակնարկ ձգենք Հայ ժողովրդեան հետ յարաբերութիւն ունեցող և Հայաստանի սահմանակից ազգերի գրերի վերայ։ Այդ ազգերի թւում առաջին տեղը բռնում են՝ արամայեցիք—ասորա-քաղդեացիք—յոյները և պարսիկները. յայտնի է նոյնպէս, որ մեր նախնիքն ամենահին ժամանակներից վաճառականական յարաբերութեան մէջ են եղել Փիւնիկեցւոց հետ։

Սեմիտական գրի ամենահին յիշատակներն են Փիւնիկեան տառերն, որոնք արդէն 900 տարի Քրիստոսից առաջ գործադրութեան մէջ էին [6]։ Գտանուած արձանագրութիւնները ցոյց են տալիս նոյնպէս, որ Փիւնիկեան տառերի գործադրութիւնը տևել է մինչև 150 թ. Քրիստոսից յետոյ Փիւնիկեան գրից յառաջանում են արամայական և պալմիրական տառերն, որոնց գոյութիւնը մինչև երկրորդ դարն ապացուցուած է գտանուած արձանագրութեանց շնորհիւ

Պարսից գիրն, որ նոյնպէս ծագում է Փիւնիկեանից, բաժանւում է չորս տեսակի.

1) Զենդի, 2) պահլաւական, 3) ասորա-պարսկական կամ սասանական—և 4) արաբա-պարսկական։

---

5) Ութերորդ դարում Քրիստոսից յառաջ Թէոփիլոս Եդեսացին Հոմերի գրուածները թարգմանելով ասորերէն, յունաց ձայնաւորները մոցնում է ասորոց գրի մէջ։ Տես Wahl: Allg. Gesch. etc. էջ 640. նոյնպէս V. Langlois: Collection etc. յառաջաբան էջ XV.

6) Նախկին Մովաբացւոց երկրում գտանուած Մեշա արքայի արձանագրութիւններն—գրուած 9-րդ դարում Քրիստոսից առաջ—ամենահիններն են, որ գրուած են Փիւնիկեան տառերով։

Թէև զենդի և պահլաւական տառերն իւրեանց ծագումն
-նում են հին սեմիտականից, սակայն սասանականն առաւել
ո է նոր-պալմիրականին, ասում է Կօպպը[7]) վկայ բերելով նաև
լեփանոսի խօսքերը. Թէ պարսիկներից շատերը բացի պարսկա-
նից գործ էին դնում նաև ասորականն, այնպէս, ինչպէս որ
ո ազգեր—Թէև գոյանից իւրաքանչիւրն իւր յատուկ գիրն
նէր—գործ էին դնում յունաց տառերը. պարսիկներից շա-
րն ևս գործ էին դնում նմ մանաւանդ պալմիրական տա-
րը: Այս գործածութեան ժամանակ, աւելացնում է Կօպպը,
րող էին պալմիրականի մէջ պարսկական տառեր ապրդել
պղպխով ահա յառաջացել է սասանական այբուբենը: Հին
րաբական գիրը պէտք է ծագած լինի մասամբ ասորակա-
ց և մասամբ պարսկականից և այս զարմանալի չէ, քանի
նոյն իսկ պարսիկները բացի իւրեանց գրից, գործ էին
ում նոյնպէս ասորոց տառերը: Այդ հին արաբականից հետզ-
տէ յառաջացել է այժմեան արաբականն, որ «Նեսխի» է
չւում. ասում ենք հետզհետէ, վասն զի անհիմն է այն
դհանրացած կարծիքն, որ իբրև թէ այդ տառերը գտել է
անձն «Էմին Մօկլա» անուամբ: Նոր տառերի հներից յա-
ջանալը կարելի է պարզ կերպիւ նկատել արձանների և
ատակարանների վերայ:

Յունաց տառերը նոյնպէս ծագում են հին սեմիտակա-
յ. յունաց աւանդութիւնն այդ գիրը բերում է Փիւնիկեայ-
և այբուբենն ևս հաստատում է այդ աւանդութեան ճըշ-
րտութիւնը: Հնդկա-Եւրոպական յոյների համար ի հարկէ
-րին չէր լինի գործ դնել այդ բաղաձայների այբուբենն,
միայն սեմիտական լեզուների համար էր յարմարեցրած.
ափ և փիւնիկեան այբուբենի կիսաձայների տեղ, յոյնե-
մտցնում են իւրեանց այբուբենի մէջ իւրեանց լեզուին

[7]) Տես. Kopp: Նոյնը. հատ. II. էջ 286.

յատուկ ձայնաւորները։ Տառերի թիւն և շարաձևւութիւնը սկզբում մնում է նոյնը։ [8])

Յոյները սկզբում պահել են նաև սեմիտական գրի ուղղութիւնը, այսինքն աջից-ձախ. մի փոքր ժամանակից յետոյ ոմանք սկսում են ձախից աջ գրել և այդպիսով երկու ուղղութիւններն ևս միմեանց հետ խառնուելով յառաջ է գալիս այն օձապտոյտ ձևն—այսինքն առաջին տողն աջից-ձախ, երկրորդ տողը ձախից աջ և այդպէս շարունակ—որ գործածական էր Սօլօնի ժամանակ Աթէնում և 6-րդ դարում Քրիստոսից առաջ ամենատարածուած ձևն էր Յունաստանում։ Սակայն այդ ուղղութիւնն երկար չէ տևում և արդէն հինգերորդ դարում սովորական է դառնում ձախից աջ գրելը։ Ահա այդ սկզբնական 22 տառերից բաղկացած այբուբենն երկար դարերի ընթացքում զանազան փոփոխութեանց ենթարկուելով յառաջացել է այսօրուայ յունաց այբուբենն, որ յարաբերում է իւր սկզբնականին այնպէս, ինչպէս որ մեր այժմեան գործածական այբուբենը յարաբերում է Մեսրոպից առաջ գոյութիւն ունեցող հայոց հին այբուբենին։

Արդ, եթէ այս մեծ ազգերն, որ իւրեանց ժամանակի ամենաքաղաքակրթեալ ներկայացուցիչներն էին և մարդկութեան պատմութեան մէջ առաջին տեղն էին բռնում, իւրեանց տառերը փոխ են առել մի ուրիշից, ինչ հարկ կայ պնդելու, որ հայերն ևս,—որ դոցա հետ համեմատելով մի չնչին ազգ էին—դոցա հետ շփուելով դոցանից պէտք է ուսանէին տառերի գործածութեան արուեստն և դոցա գիրն իբր օրինակ ի նկատի ունենալով կազմակերպէին սեպհական ազգային այբուբենը։

Դժբաղդաբար ցայժմ չէ գտնուել միորևէ արձանագրութիւն հայոց հին տառերով, որով կարելի լինէր մի գաղա-

---

[8]) Տես. A. Kirchhoff: Studien zur Geschichte des griechischen Alphabets. էջ 157.

ար կազմել թէ մօտաւորապէս ո՞ր ժամանակն են սկսել մեր
ախնիքը սեմիտական տառագիրը գործ դնել· այդ ժամա-
ակի լայտնուիլը կարող էր միայն պարզել ճշտութեամբ այն
ընդիրը՝ թէ արդեօք Հայերը սեմիտական ծագումն ունե-
ղ ո՞ր գրի անմիջական ազդեցութեան ներքոյ կազմակերպե-
ն իւրեանց այբուբենն. արդեօք անմիջապէս Փիւնիկեցինե-
ց առա՞ն—ինչպէս յոյներն, ասորա-քաղդէացիք և այլն—թէ
ւաւել ուշ՝ ասորա-քաղդէացիներից կամ յոյներից ընդունե-
ն։ Մեզ մնում է միայն մէկ միջոց խնդիրը լուծելու Հա-
ար. և այդ միջոցն է՝ տառերի ձեւերի և անուանց Համե-
ստութիւնը։ [9])

Հայոց Հին այբուբենի այս Համեմատութեամբ մենք
յանք այն եզրակացութեան, որ

1) մեր այբուբենի տառերը ծագում են անմիջապէս
միտական տառերից եւ ոչ յունաց այբուբենից [10]).

2) սեմիտական ձեւերի մէջ Հայոց տառերն առաւել նը-
անւում են փիւնիկեան տառերի ձեւերին։ Յառաջ քան այս
կրորդ եզրակացութեան մասին խօսելը, մի երկու խօսք

---

[9]) Հայոց Հին այբուբենի 22 տառերի ձեւերի մանրամասն
մեմատութիւնը՝ Փիւնիկեան, Հին եբրայական, արամայական և
ւմիրական տառերի Հետ, տարաբախտաբար ստիպուած ենք այս
քի ծաւալից դուրս թողնել՝ Թիֆլիզի տպագրական արուես-
անկատարելութեան պատճառով։ Գուցէ մեզ յաջողուի մեր
խատութեան այդ Հատուածն առանձին ապագրել տալ արտա-
Հմանում։ Առ այժմ տալիս ենք այդ Համեմատութեան ընդ-
նուր ցանկը։ Տես № VI.

[10]) Մեր առաջը դրուած են յունաց այբուբենի վաթսուն
ն տեսակները—զանազան ժամանակներից և միմեանցից սակաւ
րբերութեամբ—սակայն դոքա Համարեա թէ ոչինչ նմանու-
ւն չունին Հայոց այբուբենի տառերի Հետ։ Այդ 60 տեսակ-
րը կարելի է տեսնել Kirchhoff Studien zur Geschichte des
iech. Alphabets. աշխատութեան յաւելուածների մէջ։

ևս ասենք ընդդէմ այն կասկածանաց, որ կարող էին յառաջանալ հետևեալ հարցումներից. ա. Ի՞նչպէս է պատահում, որ Հայերը գրում են *ձախից-աջ*, այն ինչ յայտնի է, որ սեմիտական տառեր գործածող հին ազգերն ընդհակառակն *աջից-ձախ* են գրում։ Քանիցս արդէն ասացինք, որ Հայոց հին տառերով գրուած մի որ և է արձանագրութիւն կամ մագաղաթ չէ հասել մեր ձեռքն, ուստի ակնյայտնի է, որ մենք չենք կարող գիտենալ՝ թէ արդեօք մեր նախնիքն աջից-ձախ էին գրում, թէ ձախից-աջ։ Եթէ նոյն իսկ հին ժամանակը Հայերը ձախից-աջ գրէին, այդ ևս ապացոյց չի կարող լինել, որ մեր տառերը սեմիտական ծագումն չունին, վասն զի արդէն յայտնի է յունաց տառերի սեմիտական լինելը, թէև նոքա ևս ձախից աջ են գրում։ Որովհետև մեզ յայտնի չէ, թէ արդեօք մեր նախնիքը հետևելով սեմիտական գրի ուղղութեան, աջից-ձախ էին գրում մինչև սբ. Մեսրոպի ժամանակը, թէ արդէն առաջուց սովորել էին ձախից-աջ գրել, ուստի և կարելի չէ որոշ ասել՝ թէ սեմիտական այն տառերն, որոնք մեր այբուբենի մէջ շրջած են հանդիպանում՝ սկզբից արդէն այդ ձևերն էին ընդունել, թէ սբ. Մեսրոպի միջնորդութեամբ այդ ձևակերպութիւնը ստացան։ Այս խնդրի որոշումը մնում է ապագային, երբ յերևան կգան նախաքրիստոնէական ժամանակի հայկական գրաւոր յիշատակարաններ։ Մեզ հաւանական է թւում, որ մեր նախնիքը պահած լինէին սեմիտական գրի ուղիղ ձեւերն եւ գրելու ուղղութիւնը մինչեւ սբ. Մեսրոպ:

բ. Ինչո՞ւ մեր այբուբենը տարբեր կերպիւ է շարահիւսուած կամ դասաւորուած քան սեմիտականը։ Այդ մասին արդէն խօսել ենք. միայն Հայոց այբուբենը չէ, որ տարբեր շարահիւսութիւն ունի. սակայն մենք այդ ևս չգիտենք, թէ արդեօք Հայոց հին այբուբենն ինչպէս էր դասաւորուած. մեր ձեռքն է միայն սբ. Մեսրոպի կատարելագործած և աւելացրած այբուբենը. այս այբուբենով չի կարելի դատել

նը—ինչպէս որ սխալմամբ անում են Հիւբշմանն և Գարդ-
սուզէնը—։ Սբ. Մեսրոպը հին այբուբենը կատարելագոր-
ելով փոխեց նաև դորա շարահիւսութիւնը և մօտեցրեց
ւնաց այբուբենի դասաւորութեան. ահա այս կէտն է գըլ-
աւորապէս պատճառ եղել այն գիտնականների ենթադրու-
եանց, որոնք կարծում են թէ Հայոց այբուբենը ծագել է
նմիջապէս յունաց այբուբենից։

գ. Եթէ նոյն իսկ Հայոց տառերի ձևերն ուղղակի ճըշ-
րէն չհամապատասխանէին սեմիտական ձևերին, այնուա-
նայնիւ չէր կարելի մերժել, առանց այլևայլութեան,
ցա նոյն ծագումն ունենալը, վասն զի բազմաթիւ օրի-
ակներից յայտնի է, որ երբ մի ազգ իւր այբուբենն առ-
ւմ է մի այլ ազգից, անպայման չէ ընդունում այդ այբ-
բենի տառերի թիւը, շարահիւսութիւնը և ձևերն, այլ
թարկում է փոփոխութեան՝ յարմարեցնելով իւր լեզուին
ճաշակին, թէև հին տառերի գլխաւոր յատկութիւններն
տիպերը մնում են միշտ [11]։

11) Նոյն իսկ այն կարելիութիւնն, որ մի ազգ կարող է
ի արուեստն ընդունել մի այլ ազգից՝ առանց դորա այբու-
նի տառերի ձևերն ընդունելու, այսօր մի ապացուցուած իրո-
ւթիւն է։ Նոյն իսկ այս դարուս երկրորդ կիսին արևմտեան
Ֆրիկայի մի Նեգր դասաւորեց մի այբուբեն, որի գործադրու-
իւնը տեսնելով եւրոպացիք հարցնում են՝ թէ ի՞նչպէս գտաւ
ս տառերը. Նեգրը պատասխանում է, որ երազի մէջ մի պա-
ւարժան սպիտակ և երկար զգեստով մարդ իրեն տուեց մի
րք և սովորեցրեց՝ թէ ինչպէս պէտք է գրել։ Պարզ է, որ մի
րոպացի միսիօներ պէտք է լինէր այդ երազի մէջ տեսած
րդն և նորան ուսուցած լատիներէն տառերն։ Այդ նեգրն աչ-
առաջ ունենալով լատինական տառերն՝ ինքնահնար կերպիւ
սաւորել էր 162 ձևերից բաղկացած մի այբուբեն, որոնցից
տերը ներկայացնում էին ոչ թէ մի հնչիւն, այլ մի վանկ.
ինակի համար Ka-մբէ, N-պօ և այլն։ Տես. Tyler: Forschungen
er die Urgeschichte. գլխ 5. էջ 132

Նոյն ձեւով պէտք է յառաջացած լինի Հայոց Հին այբուբենը փիւնիկեան այբուբենից՝ կամ անմիջապէս կամ արամայեցիների միջնորդութեամբ։ Դրութեան արուեստի աւանդումն չէ նշանակում մանրամասն ու առանձին-առանձին նշանների փոխառութիւն. ոչ թէ միայն Հայոց այբուբենն, այլ նաև բոլոր սեմիտական ծագումն ունեցող այբուբեններն քիչ թէ շատ տարբերւում են փիւնիկեանից։

Հայոց Հին այբուբենը տարբերւում է փիւնիկեանից նաև նորանով, որ պարունակում է իւր մէջ երեք ձայնաւորներ. այն ինչ սեմիտական այբուբենն ունի միայն կիսաձայններ. որդ, որտեղից է յառաջանում այդ տարբերութիւնը. սեմիտական լեզուների մէջ ձայնաւորն երկրորդական նշանակութիւն ունի. ոչ մի բառ չէ սկսւում ձայնաւորով [12]. ուստի և պարզ է, որ Հարկ չկար ձայնաւորների Համար առանձին տառեր Հնարել [13], իսկ Հնդկա-եւրոպական լեզուների մէջ, ուստի և Հայոց լեզուի մէջ, ձայնաւորները մեծ դեր են խաղում և բազմաթիւ բառեր եւս ձայնաւորներով են սկսւում։

Հայերը փիւնիկեցիներից վերցնելով իւրեանց այբուբենը, Հարկաւ առանց ձայնաւորի չէին կարող գործ դնել. այդ

---

[12] Տես. Ferd. Hitzig, նոյնն. էջ 10։

[13] Հասարակ վանկի բաժանումը մի բաղաձայնի և ձայնաւորի վերայ միայն արհեստական է, երբ երկուսն եւս ինքնուրոյն պէտք է նկատուին։ Բնութեան մէջ բաղաձայնն և ձայնաւորն այնպէս են միմեանց որոշում, որ ականջի Համար մի բոլորովին անբաժանելի միութիւն են կազմում։ Եթէ գիրն եւս այս բնական յատկութիւնը պէտք է արտայայտէ, այն ժամանակ առաւել ճիշտ է, ինչպէս որ շատ ասիական այբուբեններն են անում, ձայնաւորներն ոչ թէ իբր առանձին տառեր, այլ իբրև բաղաձայնների որոշումներ կամ փոփոխութիւններ գործ դնել։ Խնկապէս առած ձայնաւորներն եւս միայն չեն կարող արտասանուիլ. դոցա կազմակերպող օդի Հոսանքը պէտք է յարակցուած լինի դորան լսելի անող Հարուածով կամ արտաշնչմամբ։ Տես. W. Humboldt: Kavi Sprache etc. էջ LXXXV.

պատճառաւ և փիւնիկեան «ալէփ», «նէ» և «այն» կիսաձայններին տալիս են ձայնաւորների նշանակութիւն. կարող է պատահել, որ այս փոփոխութիւնն իսկոյն չեղաւ, այլ տեղի ունեցաւ ժամանակի ընթացքում և հետզհետէ։ Եւ այդ փիւնիկեան և մասամբ փոփոխուած այբուբենը դարձաւ հայոց ազգային այբուբենը մինչև քրիստոնէութեան մուտ գործելը Հայաստան. ապա քրիստոնէութեան տարածման համար վնասակար համարուելով դուրս եկաւ գործածութիւնից և մի դարու ընթացքում մոռացութեան տրուեցաւ, մինչև որ չորրորդ դարու վերջին հայ սերունդը զգալով ազգային այբուբենի կարևորութիւնը և անհրաժեշտութիւնը՝ սկսեց որոնել և գտնելով ազգային հին սեպհականութիւնն, իւր մեծ ներկայացուցիչների միջնորդութեամբ և օտար գիտնականաց օժանդակութեամբ վերականգնեց և կատարելագործեց, վասն զի ժամանակի ընթացքում հայոց լեզուն ևս կատարելագործուել էր և հին գիրը չէր համապատասխանում լեզուի բոլոր հնչիւններին։ Սբ. Մեսրոպը հին այբուբենի վերայ աւելացրեց 14 նոր տառ, փոփոխեց հին այբուբենի շարահիւսութիւնն և մօտեցրեց յունաց այբուբենին ըստ արտաքին ձևերի։ Տասն և չորս նոր աւելացրած տառերի ձևերը սբ. Մեսրոպն առաւ, մեծաւ մասամբ, արդէն եղած 22 ձևերից՝ զանազան աննշան փոփոխութիւններ անելով՝ հարկաւ նաև աչքի առաջ ունենալով դրացի ազգերի տառերի ձևերը։ Այդ 14 տառերից *չորսը* ձայնաւորներ էին և *տասը* բաղաձայն։

Այդ 14 տառերի ձևերից միայն երկուսն առնուած են երևում ուղղակի յունական ձևերից, իսկ մնացեալ 12ի ձևերն առնուած են հայոց հին այբուբենի տառերի ձևերից։

Մեսրոպեան տառերի մէջ միայն Φ և Ϫ [14]) տառերի

14) «Ճ» տառը Կոպպն իրաւամբ համեմատում է խպտական „Ϫ"—ժանժաի հետ. տես. Kopp։ նոյնն. էջ 365. II.

ձևերն օտար են Հայոց հին սեմիտական այբուբենի համար, ուստի և պէտք է առնուած լինեն յունական Φ և X տառերի ձևերից։ Միւս 12 տառերի ձևերն արդէն պարունակւում էին հին այբուբենի մէջ և դոցա կազմակերպութիւնը պէտք է հետևեալ կերպիւ յառաջացած լինի. Հայոց հին այբուբենի մէջ ամենապարզ ձևերից մէկն է Լ որից և օգուտ է քաղել սբ. Մեսրոպը։ Այդ տառից են յառաջացել մեսրոպեան

1 2 3 4 5

հինգ ձևերն. Ը Ղ Ի Ւ Է. առաջին և երկրորդ ձևերը պահպանելով ներքևի գիծը, միև նոյն տեսակի մի գիծ միացրել են իւրեանց վերևի ծայրերին՝ մէկը դէպի աջ, միւսը դէպի ձախ. երրորդ և չորրորդ ձևերը յառաջացել են «Լիւնի» ներքևի գիծը բարձրացնելով մինչև մէջ տեղը. Հինգերորդ ձևը պահպանելով ներքևի գիծը՝ ստացել է մի նման գիծ իւր վերևի ծայրից մի փոքր ցած։

Հին այբուբենի «Ձ» տառից յառաջացել են «Հ» և «Յ» տառերն. առաջին դէպքում վերևի շրջագիծը փոքրացնելով, իսկ երկրորդ դէպքում բոլորովին վերցնելով։ Միևնոյն «Ձ»-ից կամ «Շ» կազմուել են «Ջ», «Չ», «Ժ» և «Ճ» երկրորդական գծերի փոփոխութեամբ և շրջանաձև գծի տեղափոխութեամբ։ Եւ վերջապէս Մեսրոպեան «Ր» ձևը նոյնն է, ինչ որ հին այբուբենի «Ո» տառը. միայն երկրորդ գծի կողքին աւելացրած է «լիւն» հիմնական ձևի ներքևի գիծը։

Մեսրոպեան այբուբենի վերայ աւելացան 12-րդ դարում «օ» և «ֆ» տառերը։

Համեմատելով մեր հին այբուբենը սեմիտական հին այբուբենների հետ, տեսանք որ Հայոց այբուբենի տառերն ամենից առաւել նման են փիւնիկեան և ապա արամական՝ այսինքն ասորա-բաբելական այբուբենի տառերին։ Այս հանգամանքը պարզ ապացոյց է, որ մեր նախնիքն իւրեանց այբուբենն առել են անմիջապէս փիւնիկեցիներից կամ արա-

մայեցիների միջնորդութեամբ։ Այս իրողութիւնը շատ բնական է թւում մեզ, ի նկատի ունենալով այն յարաբերութիւնն, որ Հայերն ունեցել են նախկին դարերում փիւնիկեցիների և ասորա-բաբելացիների հետ։ Այս յարաբերութեան պատճառը կամ միջնորդն եղել է՝ կրօնը, վաճառականութիւնն և քաղաքական դրութիւնը։ Թէ ինչ մեծ կապ ունեն միմեանց հետ մի ազգի կրօնն և գիրն, արդէն տեսանք նախորդ հատուածների մէջ. եթէ մեզ ճիշտ և մանրամասն յայտնի լինէր մեր կռապաշտ նախնեաց կրօնի էութիւնն և պաշտած աստուածների անունները՝ դիւրութեամբ կարող էինք գտնել մեր հին գրի սկզբնաւորութիւնը դրանց մէջ։

Սակայն նոյն իսկ մեր գիտեցած հատ և կտոր տեղեկութիւններից յայտնի է, որ մեր կռապաշտ նախնեաց աստուածներից շատերը պատկանում էին փիւնիկեցւոց և արամայեցւոց դիւցաբանութեան։ Նախորդ հատուածներից մէկի մէջ խօսեցինք, որ երբ մի ազգ ենթարկուելով օտար քաղաքակրթութեան ազդեցութեան, նոր գաղափարներ է ընդունում, այդ գաղափարների հետ ընդունում է նաև դրանց նշանակութիւնն արտայայտող բառերն. որ մեր նախնիքն իրեանց կրօնական գաղափարներից շատերը վերցրել են արամայեցիներից, ապացուցանում է նաև այն հանգամանքն, որ հայերէն «քուրմ» «քահանայ» բառերը ծագում են արամայական լեզուից [15]). ինչպէս որ մեր քրիստոնեայ նախնիքն իւրեանց նոր կրօնական գաղափարները յոյներից ստանալով, ընդունել են նաև այդ գաղափարներն արտայայտող յունարէն բառերը. ինչպէս օրինակի համար. եկեղեցի, պատրիարք, կաթուղիկոս, սաղմոս, կիւրակէ, հեթանոս, եպիսկոպոս, երէց և այլն [16]).

[15]) Տես. Frd. Müller: Sitzugsberichte etc. Wien, հատ. 41 էջ 12.։ Նոյնպէս Schröderi, նոյնն էջ 46։

[16]) Տես. Schröderi, նոյնն էջ 47.

Մեր և նոյնպէս օտար մատենագիրներից յայտնի է, որ Հայերը վաճառականական յարաբերութիւններ ունէին փիւնիկեցիների և ասորա-բաբելացիների հետ։ Մծբին 17), Եդեսիա 18) և այլ վաճառաշահ քաղաքներն, որ մեր մատենագիրները հայոց քաղաքներ են անուանում, ոչ այլ ինչ էին, եթէ ոչ սկզբնական փիւնիկեցւոց գաղթականութիւններ, որ

---

17) Nisibis կամ Nisibe է հայոց Մծբին. „Nisibe, wille fort ancienne au midi de Mardin, appelée en arménien Մծբին, en syriaque Netsybyn, en arab Nesybyn, en arménien vulgaire Նսեպին. Cette Wille qui existait probablement avant l'invasion d'Alexandre en Asie, fut appelée par les Macédoniens Antische de Mygdonie". տես. S. Martin: Memoires. sur l'Arménie հատ. I. էջ 161.

«Նիսիբ—Մծբին—քաղաքը գտանւում է այն ճանապարհի միջավայրում, որ հարաւից Նինուէ է տանում և այս դիրքով նոյն իսկ ասորական հարստութեան ժամանակ մեծ վաճառականական նշանակութիւն պէտք է ունեցած լինի. այստեղ էր պարթևների տէրութիւնից և ասիական արևմուտքից բերուող վաճառականական ապրանքների գլխաւոր կենդրոնատեղին» տես. Prof. Movers: Die Phönizier, հատ. III. մասն 1. էջ 250։

18) „Հարաւից դէպի հիւսիս գտանուող հին և իւր սրբութիւններով նշանաւոր հանդիսացած Եդեսա քաղաքում ևս հանդիպում ենք փիւնիկեան աստուածապաշտութեան։ Ցուլիանոս պատմագիրն, որ այստեղ օգուտ է քաղել փիլոյից—որն ինչպէս երևում է, երկար զբաղուել է փիւնիկեան Կռօնոսի ուղևորութիւններով—Եդեսայի աստուածներին անուանում է փիւնիկեան և Եդեսան կոչում է «Ուրանոս»ից Հելիոսին—ըստ տեղական աղբիւրների, սա համապատասխանում է Բէլին—ընծայուած վայր, այսինքն՝ դիւցաբանօրէն խօսելով՝ Բէլն իւր ուղևորութեանց միջոցին հիմնում է այս քաղաքը։ Այս արևի աստուած Բէլն՝ իբրև նոյն տեղի պահապան աստուած, նոյնն է, որին յոյներն «Եդեսացի» են կոչում և իբրև Հերակլէս ցոյց տալիս։ Մենք այստեղ տեսնում ենք բոլորովին փիւնիկեան կրօնի հայեցողութիւն, որ քաղաքի աստուած Մելկարթի և դիւցաբանական արևի հերոս Հերակլէսի հետ պաշտում էր նաև արևի աստուած «Բաալսամին»ին։ Տես. Movers, նոյնը, հատ. III. մաս I. էջ 250։

յետոյ մեր նախնեաց ձեռքն անցան։ Որ Մծբինը—Հիւսիսային Միջագետքի ամենանշանաւոր վաճառաշահ կենդրոններից մէկը—Փիւնիկեցւոց գաղթականութիւն է եղել, Հաստատում են նաև Փիլոի Սանխոնիաթոն գրուածքից մնացած հատուածները։ Փիլոն խօսում է այդ գրուածքի մէջ այն սիւների մասին, որոնք Մծբնում էին գտնւում և որոնցից նոյնպէս առել էր քաղաքն իւր անունը։

Այս հատուածը գտնում ենք Ստեփանոս Բիւզանդացու մօտ. սոյն Բիւզանդացին յիշում է նոյնպէս, որ Ուրանիուն իւր մի աշխատութեան մէջ—արաբական աշխարհագրութեան—Նիսիբ անունը համարում է փիւնիկեցւոց լեզուից ծագած՝ նոյնպէս ի նկատի ունենալով իբրև փիւնիկեցիների գաղթականութիւն։

«Նիսիբ» փիւնիկեցւոց լեզուով նշանակում է «սիւներ» [19]. այս բառն՝ յաճախ կարդացւում է փիւնիկեան արձանագրութեանց մէջ և ոչ այլ ինչ է, եթէ ոչ փիւնիկեցիների պաշտաման արտաքին նշան. այդ նշանները՝ սիւները գտանուելով և Մծբնում, ակնյայտնի է, որ դոցա կառուցել են Փիւնիկեցիները։ Ո՛չ միայն Եդեսա, Մծբին և այլ նշանաւոր քաղաքներ արդիւնք էին Փիւնիկեցիների քաղաքակրթութեան, այլ նաև վերջը պարսից մայրաքաղաք դարձող «Կտեսիփոնը» կամ հայերէն «Տիզբոնը» փիւնիկեցիների վաճառականութեան գլխաւոր կենդրոններից մէկն էր [20]։

Եթէ մի ակնարկ ձգենք Եփրատի և Տիգրիսի շրջակայքըն ապրող ժողովրդների վաճառականական զարգացման և

---

[19]) Տես. Movers, նոյնն, հատ. II. մասն 2 163։

[20]) «Այն ճանապարհի վերայ, որ Տիգրիսի ափով դէպի պարսից ծոցն է ձգւում, Եզեկիել մարգարէն յիշում է իբր փիւնիկեան վաճառականութեան կենդրոն նաև «Կալնեհ» և «Եդէն» քաղաքները. Կալնեհն ասորական ամենահին քաղաքներից մէկն էր և վերջը նշանաւոր հանդիսացաւ իբր Կտեսիփոն։ Տես. Movers, նոյնն, հատ. III. մասն 1. էջ 251։

ծաղկման վերայ, կտեսնենք, որ վաճառականական մեծ յարաբերութեանց առաջին պայմանը՝ ժողովրդի կենդրոնացումը մեծ քաղաքների մէջ, այստեղ առաւել վաղ էր տեղի ունեցել քան այլ ուրեք։ Անդադար գաղթող ցեղերը, գեռ Հոսանքին Հետեւելով արդէն սկզբնական ժամանակներից Եփրատ և Տիգրիս գետերի պտղաբեր Հովիտներն ընտրել էին իւրեանց Հանգստութեան տեղ, որ ամենայն կողմից յարմարւում էր նոցա Հովուական կեանքի Հանգամանքներին։ Եւ այդպիսով ահա այս սեմիտական և արիական աշխարՀների սաՀմանագլխի վերայ ժողովւում են տարբեր ազգայնութեանց պատկանող ժողովուրդներ, որոնք նա մանաւանդ Հին Բաբելօնում, արդէն սկզբնական ժամանակներում միմեանց մօտ, սակայն իւրաքանչիւրն առանձին կերպիւ, զարգանում և յառաջադիմում էին։ Հասկանալի է, որ ժողովրդների այդ միատեղ Հաւաքումը պէտք է նպաստէր արՀեստների զարգացման. իսկ երկրի յարմար դիրքն իւր կողմից առիթ պէտք է տար արտաքին աշխարՀի Հետ յարաբերութեան մէջ մտնելու։

Հայաստանից, Պարսկաստանից և առՀասարակ արեւելեան Ասիայից եկող բոլոր վաճառականական ճանապարՀները Հանդիպում են միմեանց այս երկրում։ Այս ճանապարՀների մի մասն իւր վերջնակէտը գտնում էր պարսից ծոցում, որ իւր կողմից կազմում էր նաև սկզբնակէտն այն Հաղորդակցութեանց ուղիների, որոնք Հարաւային Արաբիայից և արեւելեան Աֆրիկայից դէպ երկրի ներսերն էին տանում Եփրատի և Տիգրիսի վերայով կամ դոցա ափերով։ Նոյնպէս Միջերկրական ծովից, Եգիպտոսից և Փոքր Ասիայից տարածուող Հին պատերազմական և վաճառականական ճանապարՀներն անցնում էին այս երկրի միջից։ ԱՀա այս Հանգամանքների շնորՀիւ Տիգրիս և Եփրատ գետերի մէջ ներփակուած և դոցա շրջակայ երկիրներն, ամենաՀին ժամանակներից մինչև նորագոյն դարերը, ասիական ժողովրդների և վաճառականութեան կենդրոնատեղին էին։

Այս հանգամանքներից ինքն ըստ ինքեան հասկանալի է, թէ ինչ նշանակութիւն պէտք է ունենար Միջագետքը փիւնիկեցիների նման մի աշխարհահռչակ վաճառականական ժողովրդի համար։ Մեծ քաղաքների արհեստներով պարապող բնակիչներն արտադրում էին բազմաթիւ և բազմատեսակ վաճառականական իրեր փիւնիկեցիների համար, որոնք այդպիսի լաւ ապրանք և միևնոյն ժամանակ արժան գնով չէին կարող ստանալ իւրեանց սեպհական արհեստանոցներից։

Միւս կողմից Եփրատի շրջակաների մեծ քաղաքները ժողովատեղի էին այն ապրանքների համար, որոնք մասամբ ցամաքային ճանապարհով, մասամբ ծովային ուղիով՝ պարսից ծոցի վերայով միջին և արևելեան Ասիայից էին բերւում։

Թէև փիւնիկեցիները նաև Արաբիայի վերայով ուղղակի կամ անուղղակի յարաբերութեան մէջ էին Հնդկաստանի և արևելեան Ասիայի հետ, սակայն այնուամենայնիւ այդ ծովային ուղիով վաճառականութիւնն այնչափ հին չէր, որչափ դէպի Միջագետք տանող կարաւանի հաղորդակցութիւնը։ Միջին դարերում ապրող մի մատենագրի նկատողութիւնն այդ երկու վաճառականական ճանապարհների մասին կարող ենք նաև հին դարերին վերագրել. այդ մատենագրի ասելով [21]՝ այն ապրանքներն, որոնք թեթև քաշ ունէին, սակայն թանկագին էին, Հնդկաստանից և Չինաստանից բերւում էին ցամաքային ճանապարհով և Միջագետքի վերայով դէպի Միջերկրական ծովն. իսկ այն ապրանքներն, որ արժանագին և ծանր քաշ ունէին, բերւում էին ծովային ճանապարհով և Արաբիայի վերայով, վասն զի ցամաքային ճանապարհածախսն և վճարելիք մաքսերը բաւականին թանկացնում էին ապրանքը։ Ուստի և նոյն իսկ հնագոյն ժամանակներում ամենաթանկագին իրերն, ինչպէս մետաքս, ծանրագին գործուածքներ և

[21]) Տես. Movers, նոյնը, հատ. III. մասն 1. էջ 240։

այլն Հնդկաստանից և Չինաստանից բերւում էին Միջագետքի վերայով։ Բացի գորանից փիւնիկեցիք բերում էին իւրեանց հետ դէպի Միջագետք և միջին Ասիայ նոյնպէս եւրոպական ապրանքներ, որոնցից սախացինների համար մեծ նշանակութիւն ունէր ծիրանին, իբր իշխանների և արքաների գործածական հանդերձ. եգիպտական ապրանքներն Ասիայ էին գալիս նոյնպէս փիւնիկեցիների միջնորդութեամբ։ Այսպիսով Եփրատի շրջակայ երկիրները կազմում էին արևելեան և արևմտեան վաճառականութեան կենդրոնատեղին և Նինուէի ու Բաբելոնի և վերջը Բաղդադի, Բասրայի ու Մոսուլի անունները մինչև 16-րդ դարու ճառենագիրների և ճանապարհորդների համար զարմանքի առարկայ էին։

Աւելի քան երկնքի աստղերը, բազմաթիւ քան մորեխների խմբերն էին օտար վաճառականներն, որ ապրում էին հին Ասորեստանի մայրաքաղաք Նինուէում, ասում է Նաւում մարգարէն [22])։

Արդ ի նկատի ունենալով այս բոլոր հանգամանքներն, ինքն ըստ ինքեան հասկանալի չէ՞, որ հին աշխարհի կենդրոն կազմող այդ Միջագետքն անմիջապէս շրջափող Հայաստանը չէր կարող առանձնացած մնալ և պէտք է մասնակցէր իւր դրացիների շարժողութեանց։

Հայաստանի պէս մի բերրի և պտղաբեր երկիր չէ՞ր արտադրում արդեօք իւր հում և անմշակ նիւթերն իւր փարթամ կեանք վարող դրացի մեծ քաղաքներին և չէ՞ր ընդունում այնտեղից փարթամութեան բեկորներն իւր արքայազուն իշխանների և ազնուականների համար. այդ տեսակ

22) «Բազմեցուցեր զվաճառս քո իբրև զաստեղս երկնից. գիմեաց ջորեակ՝ և թռեաւ։ Խաղաց իբրև զգրուիճ և խառնիճաղանճ քո իբրև զմարախ ժածեալ զցանգով յաւուր ցրտոյ։ Ծագեցաւ արև. խաղաց և ծանեաւ տեղի իւր։ Վայ նոցա»։ Տես. Աստուածաշունչ գիրք. մարգարէութիւն Նաւումայ. գլխ. գ. տուն 16—17. էջ 869։

*անկարելի է թւում մեզ, որչափ որ այդ այդ ժամանակա-
միջոցի Հայոց զարգացման աստիճանը ստորադասէին։ Նոյն
իսկ ենթադրելով, որ այն ժամանակի Հայերն ընդունակ չէին
իւրեանց դրացիների հետ վաճառականական անմիջական յա-
րաբերութեանց մէջ մտնելու, մինթէ փիւնիկեցիք, որ Հընդ-
կաստան և Չինաստան էին հասել, չէին գալիս Հայաստան՝
տեղական բերքերը գնելու և իւրեանց արհեստանոցների ար-
տադրութիւններն այդտեղ վաճառելու։ Յիշենք օրինակի հա-
մար Հայաստանի բերքերից մէկը՝ գինին. յայտնի է, որ Բա-
բելոնի նման մի գեղխ և փարթամ կեանք վարող քաղաք
որչափ մեծ քանակութեամբ գինի պէտք է գործ դնէր, նա-
մանաւանդ, որ իւրաքանչիւր օր որոշ քանակութեամբ գինի
պէտք է դրւէր կուռքերի առաջ* [23]*։ Իսկ Բաբելոնում գինի
չ՚լինելով* [24]*, պարզ է, որ օտար երկրից պէտք է բերւէր և
ահա Հայաստանը Նոյի տնկած բոյսի զօրեղ հեղանիւթն ար-
տադրելով՝ պէտք է փոխարէնն ընդունէր Բաբելոնից այն-
պիսի իրեր, որոնց ինքը չէր արտադրում։*

*Բարեբաղդաբար մեր այս ասածները լոկ ենթադրու-
թիւններ չեն և հին՝ թէ հայոց և թէ օտար մատենագիր-
ները վկայում են, որ հայերը վաճառականութեան միջնոր-
դութեամբ յարաբերութեան մէջ էին փիւնիկեցիների և ասո-
րա-բաբելացիների հետ։*

---

[23] *«Գինու առևտուրն ևս նշանաւոր դեր ունէր Փիւնի-
կեան և ասորական վաճառականութեան ասպարիզում. Բաբելո-
նում գինի չ՚կար, թէև ահագին քանակութեամբ գինի էր գոր-
ծածւում, վասն զի ամենայն օր կուռքերի առաջ դրւում էր որոշ
քանակութեամբ կերակուր և գինի»։ տես.* Movers. *նոյնը, հատ*
3 *մասն ա. էջ* 270։

[24] *«Ասորեստան երկրում շատ քիչ է անձրևում... ծառեր
չեն բուսնում, թուզ, որթ և ձիթենի չկայ, սակայն հացարդյս
շատ». տես. Հերոդոտի գերման. թարգմանութիւն* von dr. Ad.
Schöll. *գիրք Ա. գլ.* 193. *էջ* 168)։

Եւ օտար մատենագիրներից ո՛չ այլ ոք, եթէ ոչ նոյն իսկ աշխարհիս առաջին պատմաբանը, Հերոդոտն է, որ մանրամասն խօսում է այս յարաբերութեան եղանակի մասին։ Հետեւեալ կերպիւ է նկարագրում Հերոդոտն այն նաւակների ձեւն, որոնք Եփրատի վերայով Հայաստանի բերքերը տանում էին Բաբելոն 25)։

«Ի Հայաստան, որ կայ ի վերայ ասորեստանեայց, յաստոց ուռենեաց զկողս (նաւուն) գործեն մորթածեալ ի վերայ արտաքուստ պատին զայն ըստ օրինակի յատակի. ոչ զխելս նաւուն և ոչ զառաջսն որոշեալ ունելով, այլ վահանաձեւ բոլորակեան 26)։ Զայսպիսի նաւ բեռնաւորեալ լի վաճառօք՝ մանաւանդ գինւով 27), թողուն վարել ի գետ անդր, երկուց ոմանց միայն ղեկավարելով թիակ ի ձեռին 28)։ «Մեծամեծք նաև մանունք գտանին ի նաւուց աստի, յորոց մեծամեծքն տանին նաև կշիռս հինգ հազար տաղանդոյ. այլ իւրաքանչիւրքն կրեն ի կենդանեաց էշս. մեծամեծքն առաւել բազմաթիւ. Նաւարկողք իբրև հասանին ի Բաբիլոն

---

25) Հերոդոտը պատմելով Կիւրոսի պատերազմներն Ասիայում և Բաբելոնի նուաճումը՝ առիթ է գտնում նաև խօսելու Ասորեստանցոց երկրի և սովորութեանց մասին. ահա այս վերջին հատուածի մէջ է խօսում այդ նաւակների մասին, որ հետեւեալ կերպիւ է սկսում. «Սակայն ինչ որ ինձ այդ ամբողջ երկրում ամենազարմանալին է թւում, ահա պատմեմ իսկոյն. դոցա նաւակներն, որ գետի հոսանքով Բաբիլոն են գալիս, կլոր են և շինուած են կաշուից». տես. Հերոդոտի գերմ. թարգմանութիւն. գիրք, Ա. գլխ. 194. (էջ 169—170)։

26) Այստեղ պակասում է Հերոդոտի հետեւեալ նախադասութիւնը. «Ապա լցնում են ամբողջ նաւակը յարդով»։

27) «Ամաններով լի արմաւագինի — Palmenwein»· մենք կասկածում ենք որ այս գինին արմաւից պատրաստած գինի լինէր, վասն զի ողկոյզի բերքն առատ է Հայաստանի շատ մասերում։

28) «Եւ երբ մեկը թիակը ջրից հանում է, միւսը մտցնում է ջրի մէջ»։

և զբեռն դատարկեն, զկողս նաւուն և զամենայն վաճառեն, այլ զմորթն յէշս բարձեալ՝ վարեն ի Հայաստան. զի ընդդէմ գետոյն նաւարկել բնաւ չէ հնար սակս սրնթաց լինելոյ. և վասն այնորիկ ոչ ի փայտէ՝ այլ ի մորթոյ գործեն զնաւսն։ Յորժամ այսպէս վարեալ իշոյ դառնան ի Հայաստան, զայլ նաւս կազմեն նովին օրինակաւ [29])»։

Որ մեր նախնիքն իւրեանց վաճառականական առաջին յարաբերութիւնները փիւնիկեցիների և ասորա-բաբելացիների հետ սկսեցին, պարզ երևում է նաև այն հանգամանքից, որ ըստ Ֆրդ. Միւլլերի, «քաղաք», «մաքս» և այլն բառերը ծագում են արամայական լեզուից[30])։ Նոյն իսկ «մետաքս» և «մաշկ» բառերի արամայական ծագումն ապացոյց պէտք է լինի, որ հայ վաճառականներն արամայեցիների միջնորդութեամբ ծանօթացան մետաքսի հետ։

Երկու տարբեր ազգերի անհատները միմեանց հետ ունեցած վաճառականական հաղորդակցութեան սկզբներում, անծանօթ լինելով միմեանց լեզուին, չեն հասկանում միմեանց. այդ պատճառաւ և պէտք է լինում դիմել մի երրորդ անձի միջնորդութեան, որ տեղեակ է այդ երկու լեզուներին ևս. ահա այդ միջնորդ անձնաւորութիւնը կոչվում է հայերէն «թարգման» իսկ այն իրողութիւնն, որ թարգման բառը նոյնպէս ծագում է արամայականից[31]), ապացոյց է, որ հայոց վաճառականական առաջին յարաբերութիւններն ասորա-բաբելացիների հետ պէտք է լինէր։ Որ սկզբնական ժամանակներում հայերն ենթարկուել են սեմիտական ժողովրդների քաղաքակրթութեան, ապացոյց է նաև

---

[29]) Տես Հայր Ինճիճեան. Հնախօսութիւն etc հատ 1. էջ 217 և Հերոդոտ. գիրք Ա. գլխ. 194. (էջ 169—170)։

[30]) Տես. Fid. Muller. sitzungsberichte etc. հատ. 41. (էջ 12—13). նոյնպէս և Schröderi, նոյն, էջ 46։

[31]) Տես Fd. Müller. նոյն էջ 12 նոյնպէս և Schröderi, էջ 46։

այն հանգամանքն, որ Հայոց լեզուի մէջ գտնւում են բազմաթիւ սեմիտական բառեր. այդ բառերի թիւն այնքան շատ է, որ մի ժամանակ ընդհանրացած կարծիք էր, թէ Հայոց լեզուն ծագում է սեմիտականից։ Հ. Էվալդը խօսելով օտար լեզուների ունեցած ազդեցութեան մասին Հայոց լեզուի վերայ՝ շարունակում է. «Հարաւից սեմիտական և այս դէպքում արամայական լեզուի, ազդեցութիւնը Հայոց լեզուի վերայ անժխտելի է. այս սահմանի վերայ—այսինքն Հարաւում—նոյն իսկ հնագոյն ժամանակներից սեմիտներն և Հայերը խառնուեցան իրար հետ, ինչպէս որ աւելի ուշ ժամանակներում Եզեկիոյ պատմութիւնը ցոյց է տալիս։ Ցլպալիսով շատ սեմիտական բառեր, արդէն վաղ ժամանակներում մտել են Հայոց լեզուի մէջ և հայացել։ Սակայն նոյն իսկ սեմիտականին յատուկ հնչիւնները մտել են Հայոց լեզուի մէջ և ամուր տեղ բռնել...» «Նոյն իսկ Արամ երկրի անունը հաւանականաբար նոյն ծագումն ունի, ինչ որ Արմէնեան. այնպէս որ արամացիներ և Հայեր—Արմենի էր—միայն երկու ժողովուրդների անուններն են, որոնք բոլորովին տարբեր ցեղից են. և որոնք միմեանց ետևից այստեղ բնակուեցան և վերջը նոյնպէս միմեանց հետ խառնուեցան 32)»։

Ապա խօսելով հիւսիսային սահմանակիցների մասին՝ ասում է հետևեալը. «...Սակայն մի այնպիսի զօրեղ ազդեցութիւն չունեցան այն ազգերն, ինչպէս որ սեմիտականն, այս ապացուցանում է նոյնպէս և Հայոց լեզուն իր բառերի պաշարով, ինչպէս որ տեսնում ենք այդ պատմալէս 33)»։

Թէև Հայոց լեզուն պատկանում է Հնդկա Եւրոպական ցեղին, սակայն համեմատելով այդ ցեղին պատկանող այլ լեզուների հետ, սակաւ ձայնաւորներ ունի. Հայոց լեզուի մէջ

32) Տես. H. Ewald: Sprachwissenschaftliche Abhandlungen. տպուած է. Abhandlungen der königlichen Gesellschaft der Vissenschaften zu Gottingen հատոր 10. էջ 66.

33) տես. H. Ewald: նոյնն էջ 68.

յառաջ են գալիս այնպիսի բաղաձայնների բարդութիւններ, որ ոչ մի հնդկաեւրոպական լեզու չունի[34]), ինչպէս օրինակի համար բժիշկ, անբժշկելի, մկրտչի, քրթմնջել, տրտնջել և այլն։ Այս իրողութիւնը նոյնպէս ապացոյց է՝ սեմիտական լեզուի, և այդպիսով քաղաքակրթութեան, ազդեցութեան տարածման սկզբնական Հայաստանում։

Ցայժմ մենք խօսեցինք այն երկու պատճառների մասին, որոնք առիթ պէտք է տային Հայերին փիւնիկեցիների և ասորա-բաբելացիների հետ շփուելու՝ կրօնի և վաճառականութեան։ Մեզ մնում է ի նկատի ունենալ մի այլ երրորդ պատճառ. այդ է քաղաքական դրութիւնից յառաջացած հանգամանքը. մեր նպատակից դուրս է այստեղ մանրամասն խօսել Հայոց քաղաքական յարաբերութեան մասին ասորա-բաբելացիների հետ. որ մեր նախնեաց կռապաշտութեան ժամանակն այդ քաղաքական յարաբերութիւնը միշտ փոփոխութեան էր ենթարկւում յայտնի է, ո՛չ թէ միայն մեր և օտար մատենագիրներից, այլ նաև ժամանակակից աղբիւրներից՝ այսինքն արձանագրութիւններից։ Այդ հանգամանքների փոփոխութիւնն այն էր, որ Հայաստանն երբեմըն անկախ էր, երբեմն հպատակում էր Միջագետքին և երբեմն ևս իշխում Միջագետքի վերայ[35])։

Քաղաքական՝ թէ բարեկամական և թէ թշնամական յարաբերութիւնը պատճառ էր լինում նաև գաղթականու-

34) տես. Sitzungsberichte etc. հատ. 38. էջ 570.

35) Այս վերջինը տեղի ունեցաւ Տիգրան II-ի ժամանակ ևս, որ տիրեց Միջագետքը, Կապադովկեան, Ասորիքի և Փիւնիկիայի մի մասն. այս վկայում է նաև դարուս նշանաւոր քննադատ-պատմաբան հանգուցեալ Լէօպոլդ Փ. Ռանքէն. «Տիգրան II-ը նուաճեց Ադիաբենը, միջագետքը, Կապադովկիայի մեծ մասը. յետոյ դիմեց դէպի ասորական յառաջաւոր Ասիան. Անտիոքը, Փիւնիկիայի մեծագոյն մասը, պտղոմաիսը նորա ձեռքն անցան»։ Տես. Leop. von Ranke. Weltgeschichte, հատ. II. մասն 2. էջ 178.

թեանց. խաղաղութեան ժամանակ ասորաբաբելացիք գաղթում կամ փախչում էին Հայաստան և իբրև բարեկամ ընդունւում, իսկ պատերազմի ժամանակ բերւում էին իբրև գերի և ցրւում Հայաստանի նահանգներում։ Պատմաբաններից ոմանք նոյնպէս այն կարծիքն են յայտնել, որ Բաբելոնաբնակ Քաղդիացիները նախապատմական ժամանակներում, կամ աւելի ուշ, Հայաստանից են Բաբիլոն գաղթել[36]։ Իսկ այլ պատմաբաններ ևս ընդհակառակը կարծում են, որ հայերն են Բաբիլոնից գաղթել[37]։

Ասորեստանցւոց Տիգլատպիլեզէր և Սարգոն արքաները տիրելով Ասորիքը և Հայաստանի մասերը՝ բնակիչներին մէկ տեղից միւս տեղ են փոխադրում Հայաստանից-Ասորիք և Ասորիքից Հայաստան[38]։

---

36) Տես. Eb. Schrader. „Die Abstammung der Chaldäer und die Ursitze der Semiten" տպուած է Zeitschrift. d. d. morg. Gesell. հատ. 27. էջ 397.

37) «Նոյն իսկ Բաբելոնից, ամենահին ժամանակներում, մի մեծ գաղթականութիւն դուրս գնաց—գաղթեցին հայերը, փիւնիկեցիներն և այլն. տես. Carl Sax. Ueber die babylonische Urgeschichte etc. տպուած է Zeitschrift d. d. morg. Gesellschaft հատ. 22. էջ 67.

38) Տես. Ed. Mayer. Geschichte des Alterthums. հատ 1. էջ 462. Լագարդ ասում է, որ Փռիւգացւոց գաղթականութիւնը *) դէպի Հայաստան, տեղի է ունեցել 8-րդ դարում Քրիստոսից առաջ. տես. P. de Lagard. Gesammelte Abhandl. էջ 163։

---

*) Պատմահայր Հերոդոտը խօսելով Քսերքսէսի զօրաց մասին և մի առ մի պատմելով դոցա ազգայնութեան և զինւորութեան մասին՝ հետևեալն է ասում Փռիւգացւոց և հայոց մասին. «Փռիւգացիները միևնոյն զէնքերն ունէին, ինչ որ պափլագոնացիք, մի փոքր տարբերութեամբ։ Փռիւգացիք, ըստ մակեդոնական աւանդութեան, անուանւում էին Բրիգներ՝ երբ նոքա իբր եւրոպական ժողովուրդ, մակեդոնացիների հետ էին բնակւում. սակայն երբ Ասիայ գաղթեցին, երկրի հետ ի միասին փոխեցին

Այս չափով բաւականանում ենք։

Մեր նպատակն էր՝ ցոյց տալ այն նշանաւոր հանգամանքներն, որոնց միջնորդութեամբ հայերն իւրեանց կռապաշտութեան դարերում պէտք է բնականապէս հաղորդակցութիւն ունենային ասորա-բաբելացիների և փիւնիկեցիների հետ[39]։ Երբ այս հաղորդակցութեան գոյութիւնն ապացուցւեցաւ, այնուհետև հասկանալի է, որ հայ ազգն—եթէ դա մի փոքր ընդունակ և դէպ յառաջադիմութիւն ձգտող մի ազգ էր, որ վկայում են թէ հին և թէ նոր ժամանակների օտար ազգութեանց պատկանող անձինք—չէր կարող չ'ենթարկուել այդ ժողովրդների քաղաքակրթութեան։ Արդ, քաղաքակրթութեան արդիւնքներից մէկն էր և գիրն, ուստի և եթէ մեր վերն յառաջ բերած հանգամանքները տեղի են ունեցել, այն ժամանակ անկարելի էր, որ հայերը կամ ուղղակի դոցա գիրը չառնէին, կամ թէ նոցա հետեւողութեամբ եւ նմանութեամբ սեպհական գիր չ'կազմակերպէին։

Որ մեր նկարագրած հանգամանքները ճիշտ են և հայերն ենթարկուեցան ասորա-բաբելացիների քաղաքակրթութեան, ակնյայտնի ապացոյց է այն պարզ իրողութիւնն, որ մեր նախնիքը հետևելով ասորա-բաբելացիներին, իւրեանց երկրի մէջ մտցրին սեպաձև գրի գործածութիւնն՝ սկզբում նոյն իսկ ասորա-բաբելական գրով ու լեզուով, ապա փոքր

---

նաև իւրեանց անունը՝ Փռիւգացիների։ Ապա հայերն ևս զինուած էին ինչպէս Փռիւգացիք, վասն զի դոքա Փռիւգացիների սերունդներն են»։ Տես. Հերոդոտի պատմութեան գերմ. թարգմանութիւնն. von dr. Ad. Schöll, հատ. 7. գիրք 7. գլխ. 74. էջ 872.

39) Թէ հայերն որչափ յարաբերութիւն են ունեցել սեմիտականների հետ, ակնյայտնի է նաև այն հանգամանքից, որ նոյն իսկ մարդաբանական հետազօտութիւնները ցոյց են տալիս սեմիտների խառնուիլն հայոց հետ. տես Նլիսէեվի «Ճանապարհորդութիւն մարդաբանական նպատակով Փոքր Ասիայի միջով» «Արձագանք» շաբաթաթերթ 1887 թ. № 33, էջ 530։

ժամանակ անցնելուց յետոյ տեղական լեզուով և մասամբ փոփոխուած սեպագրով։ Այսպիսով թէ և Հայերն ասորաբաբելացիներից առան սեպագիրը, սակայն շուտով դարձրին իւրեանց ազգային սեփականութիւն, տալով նորան ազգային առանձնայատկութիւն[40])։

Արդ բնական չէ, որ նոյն կերպիւ կազմակերպէին մեր նախնիքը նաև իւրեանց ազգային այբուբենն, այսինքն տառագիրը։ Այդ էր հանգամանքներից յառաջացած բնական ճանապարհն և այլ տեսակ ևս չէր կարող լինել[41])։ Այն հեղինակների կարծիքն, որ պնդում են, թէ Հայերը սուրբ Մեսրոպից առաջ գիր չ'ունէին, չէ համապատասխանում այս հանգամանքներին. այն ազգն, որ արդէն Քրիստոսից 7—8 դար առաջ իւր դրացիների նմանողութեամբ իւր համար առանձին ազգային գիր կազմակերպեց, մի՞թէ այնուհետև այնչափ յետադիմեց, որ պէտք չ'զգաց այլ ևս գրի գործածութեան և հետևելով իւր դրացիների քաղաքակրթութեան՝ իւր գիրն ևս նոցա նման չը կատարելագործեց՝ սեպագրից աւելի պարզ և հասարակ այբուբեն կազմելով։ Նոյն հանգամանքներին չէ համապատասխանում նաև այն կարծիքը — էմին — որ իբրև թէ Հայերը քրիստոնէութիւն ընդունելու ժամանակաշրջանում գործ էին ածում բառագիր նշանագրեր, այս ճանապարհը բոլորովին անբնական է. այն ազգն, որ արդէն իւրաքանչիւր վանկի — և մասամբ ևս տառի — համար առանձին գիր ունէր — սեպագիրը, — մի՞թէ յետ դառնալով պէտք է դիմէր գրի աւելի նախնական տեսակին, այսինքն

40) «Ուրարտին — Արարատեան աշխարհն — ասորեստանցւոց հետ յարաբերութեան մէջ մտնելով՝ քաղաքակրթուեցաւ և ընդօրինակեց իւր թշնամիների արուեստներն և մինչև անգամ գիրը». Տես. Maspero. Geschichte der morgenl. Völker etc. էջ 395.

41) Այն հանգամանքն որ «աթուլթայ» — տառ — բառը ծագում է սեմիտականից, նոյնպէս ապացոյց է այս իրողութեան *)։

*) Տես. Paul de Lagard. Arménische Studien. հատ. 1. էջ 166.

*իւրաքանչիւր բառ արտայայտէր մի նշանով, քանի որ իւր դըրացի ազգերն արդէն վաղուց այնչափ յառաջադիմել էին, որ մի նշանով ոչ թէ մի վանկ, այլ այժմ միայն մի հնչիւն էին արտայայտում։*

*Այս բոլորից յետոյ գալիս ենք այն եզրակացութեան, որ Հայերն անմիջապէս փիւնիկեցիներից, կամ թէ ասորաբաբելացիների միջնորդութեամբ, վերցնելով Փիւնիկեան քսան և երկու տառերից բաղկացած այբուբենը՝ մի քանի փոփոխութիւններով դարձրին իւրեանց ազգային գիրն, որ յետոյ գտնուեցաւ Դանիէլի մօտ և կատարելագործուեցաւ սուրբ Մեսրոպի միջնորդութեամբ։*



## Ա.

### ԹԷ Ո՞Ր ԹՈՒԻՆ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ ՀԱՅՈՑ «ԳՐԻ ԳԻՒՏ»-Ն



Այս խնդիրը լուծելու համար դիմենք դարձեալ մեր սովորական ընթացքին՝ այսինքն ամենից առաջ յառաջ բերենք մեր պատմագիրների վկայութիւններն այդ խնդրի մասին։

Մ. Խորենացին թէև ուղղակի չէ յիշում գրի գիւտի» թուականն, սակայն պատմութեան շարայարութիւնից պարզ երևում է, որ «Դանիէլեան» կոչուած այբուբենի գիւտը պատահում է Յունաց Արկադ կայսեր ժամանակ, . .Յայնմ ժամանակի հիւանդացեալ Արկադ, և շարժմանց ահագնից և հրընկեցութիւն եղեալ ի Բիւզանդիոն. . . Վռամշապուհ արքայեաց Վռամշապհոյ մեր թագաւորին իջանել ի միջագետս. . [1]։

—Ահա այդտեղ լսում է Վռամշապուհ արքան հայոց գրին այբուբենի գոյութեան մասին։

---

1) Տես. Խորենացի, պատմութիւն Հայոց գիրք 3. գլխ. Տր. էջ 367.

Ապա մի այլ տեղ պատմելով որ «Վախճանեալ Արկա-
դայ, փոխանակ թագաւորէ նորին որդի, որ կոչեցաւ Թէոդո
Փոքր...» և այլն՝ աւելացնում է. «Ընդ այն ժամանակս եկեա
Մեսրոպայ և բերեալ գնշանագիրս մերոյ լեզուիս...» [2]։

Այսպէս ուրեմն ըստ Մ. Խորենացու «Դանիէլեան» և
«Մեսրոպեան» տառերի գիւտը պէտք է տեղի ունեցած լինի
395 և 408 թուերի մէջ եղած ժամանակամիջոցում։

*Կորիւն Սքանչելին* պատմելով «Դանիէլեան» այբուբենի
մասին՝ ասում է, թէ Վահրիճ այդ այբուբենն Հայաստա
բերեց Վռամշապուհի թագաւորութեան *հինգերորդ* տարին [3]
իսկ մի փոքր յետոյ պատմելով Մեսրոպեան այբուբենի
«գիւտն» ասում է. Մեսրոպ վերադարձաւ Նոր-քաղաք—Նա-
խիջևան—Վռամշապուհի թագաւորութեան *վեցերորդ* տա-
րին [4]։

Որ այս թուերն ճիշդ չեն, ինքն ըստ ինքեան հասկա-
նալի է, վասն զի նոյն իսկ ինքն Կորիւն յայտնում է, ո
սուրբ Մեսրոպը դեռ ևս *երկու* տարի աշխատեց «Դանիէլեան
գրերով և ապա թէ «գտաւ» նոր այբուբենն։ —«Եւ իբրև ամ
*երկուս* կարգեալ զվարդապետութիւն իւր և նովին նշանա-
գրովք տանէր...»։

*Սեբաստիանոս Ասողիկ* պատմագիրը կրկնում է Կորիւնի
ասածն. «Եւ գտաք հանդիպեալ *յերկրորդ* ամին Արտաշի
արքային Պարսից զ*հինգերորդ* ամն Վռամշապհոյ արքայի Հա-
յոց, յորում Մաշտոցն երանելի... Դանիէլեան նշանագրոք
զդպրութիւն ըստ հայումս յօրինէր...։ Յետ որոյ դարձեա
ևս ի *վեցերորդում* Նորին Վռամշապհոյ, որ է առաջի
Վռամայ Կրման արքայի՝ վերստին աստուածային շնորհա

---

[2]) Խորենացի, նոյն, գիրք 3. գլխ. ծդ. էջ 371։

[3]) *Կորիւն, վարքագրութիւն սուրբ Մեսրոպայ* էջ 10։

[4]) *Կորիւն,* նոյն. էջ 15։

ւեալ նշանագրօք՝ զնոյնս յեղանակեալ յօրինէր» [5]։

*Վարդան վարդապետ* պատմագիրը գրում է «ի հինգերորդ ին սորա—Վռամշապհոյ—և յառաջին ամին Արտաշրի ւոյ Շապհոյ սուրբ Մեսրոպ յօրինէ դպրութիւն Հայե-...» [6]։

«*Կայսերաց*» կոչուած ժամանակագրական և բաւականին ն ձեռագրի մէջ ասուած է. «ի Սոցա—Արկադեայ և Ոնո-ուի—տասներորդ ամի եղև սկիզբն Հայերէն քան և հինգ ոց... ի սորա աւուրսն էր սուրբ Սահակ հայրապետն, յորոյ ուրս գտաւ քան և ինն գիրն Հայերէն լեզուի ի Դանիէլէ լիափայէ ասորւոյ, զոր եռ բերել Վռամշապուհ թագա-ն...» [7]։

*Սամուէլ Անեցին* Դանիէլեան նշանագրերի գիւտը նոյն-ս դնում է Վռամշապուհի թագաւորութեան *հինգերորդ* րին—այլ ձեռագիրների մէջ նաև երկրորդ տարին—և յա մի տարուց յետոյ Մեսրոպեան այբուբենի «գիւտն»։ [8])

*Ղազար Փարպեցին* բոլորովին այլ կերպ է վկայում. սո-աելով Վռամշապուհի թագաւորութեան հինգերորդ տա-ն ոչ թէ Դանիէլեան նշանագիրները գտանուեցան, ինչպէս ղորդում են Կորիւն և այլք, այլ այդ թուականին թողեց րը Մեսրոպն իւր անապատական կենցաղը և եկաւ սուրբ Հակի մօտ. «Կայր յանապատս ի բազում տեղիս քարան-ւաց մեծաւ առաքինութեամբ և խստամբեր վարուք, բա-մ և այլ սուրբ վարուք կրօնաւորօք և ազօթասէր եղ-րբք, մինչև յամս հինգերորդ՝ արքային Հայոց Վռամշապ-

---

[5]) Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն Տիե-րական էջ 74։

[6]) Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի էջ 49։

[7]) Հայր Զարբանալեան, «Հայկական հին դպրութեան ամութիւն» հատ. 1 էջ 43։

[8]) Հայր Միք. Չամչեան, պատմութիւն Հայոց հատ. 1 763։

հոյ եղբօր Խօսրովու [9])»։ Եւ որովհետեւ այս տողին անմիջա-
պէս հետեւում է. «Եւ զայս եթէ կամիցի ոք գիտել հաւաս-
տեաւ, ի պատմութենէ գրոց առն ցանկալի Կորեան աշա-
կերտի նորին երանելոյն Մաշթոցի, կարդասցէ՝ տեղեկասցի
զվարս կենաց նորա, և զիւր հայերէն նշանագրացն [10])» հա-
տուածն, Հայր Չամչեանը կամենում է այս վկայութեամբ
ուղղել Կորիւնի տուածն—թէ ի Ե. ամի Վռամշապհոյ եկե
գիւտ Դանիէլեան նշանագրաց. և ի գ. ամի Վռամշապհոյ
եկն Մեսրոպ ի Հայս հանդերձ Աստուածատուր գրովք—ասե-
լով թէ Վռամշապուհի թագաւորութեան հինգերորդ տարին
վերաբերում է սուրբ Մեսրոպի Սահակի մօտ գալու ժամա-
նակին. իսկ տառերի գիւտին վերաբերեալ թուանշանը պէտք
է լինի «ժգ»-16, որ արտագրողների շնորհիւ «ժ» մոռացուել
և մնացել է միայն «գ»։ [11])

Այս ենթադրութիւնը Չամչեանը հաստատում է այն
փաստով, որ Կորիւն Սքանչելին մի այլ վկայութեամբ ասում
է. «Եւ արդ լինի համար հաւատոց երանելոյն ամք 45. և ի
դպրութեննէն Հայոց մինչև ցվախճան որբոյն ամք 35».—[12])
այսինքն սուրբ Մեսրոպի *քարոզութեան օրից* մինչև տառերի
գիւտն անցել էր *տաս* տարի ժամանակամիջոց։

Սակայն եթէ խնդիրը մի փոքր աւաւել ուշադրութեամբ
քննենք, կ՚տեսնենք, որ Ղ. Փարպեցու վկայութիւնը բոլոր-
վին չէ համապատասխանում Կորիւնի վերջին վկայութեան.
Կորիւն ասում է, որ սուրբ Մեսրոպը գրերի գիւտից արդէն
տաս տարի առաջ էր սկսել վարդապետել, այսինքն քրիստո-
նէութիւն քարոզել—Հայոց արքունիքը թողնելուց յետոյ—
իսկ Հայր Չամչեանը կամենում է այդ քարոզութեան առաջին
և Վռամշապուհ արքայի թագաւորութեան հինգերորդ տա-

---

9) *Ղ. Փարպեցի* էջ 34։
10) *Ղ. Փարպեցի*, նոյն, էջ 35։
11) *Չամչեան*, նոյն, հատ. 1 էջ 763։
12) *Կորիւն*, նոյն, էջ 44 և *Չամչեան*, նոյն հատ. 1 էջ 764։

րին միացնել՝ հիմնուելով Ղ. Փարպեցու վկայութեան վերայ։ Մենք կարծում ենք, որ Հայր Զամչեանի այդ տեսութիւնը սխալ է և Փարպեցու այդ հատուածը բոլորովին չէ համապատասխանում Կորիւնի վերոյիշեալ վկայութեան։

Վասն զի Ղ. Փարպեցին ասում է, որ սուրբ Մեսրոպն եկաւ սուրբ Սահակի մօտ Վռամշապուհ արքայի թագաւորութեան հինգերորդ տարին. իսկ այդ տարին չի կարող նորա քարոզութեան առաջին տարին համարուել, որովհետև նոյն իսկ Կորիւնի վկայութեամբ սուրբ Մեսրոպը յառաջ քան սուրբ Սահակի մօտ գալն, երկար ժամանակ քարոզում էր Գողթանում [13]։ Այս վկայում է Մ. Խորենացին առաւել պարզ կերպիւ մինչդեռ «Եւ երթեալ ի գաւառն Գողթան բնակէ զմիայնակեցութեան վարս ստացեալ» ասելուց անմիջապէս կցում է նորա քարոզութիւնն. «Եւ որ ի նմա զօղեալ աղանդն հեթանոսական, թագուցեալ յաւուրսն Տրդատայ մինչև յայն ժամանակս, և ապա յայտնեցաւ ի վատթարել թագաւորութեան Արշակունեաց, զայն եբարձ օգնականութեամբ իշխանի գաւառին, որում անուն էր Շամբիթ...» որ ասել է՝ թէ սուրբ Մեսրոպը նոյն իսկ այդ միայնակեցութեան ժամանակ ևս քարոզում էր. և ոչ միայն Գողթանում է քարոզում, ինչպէս ասում է Կորիւն, այլ և. «...Եւ ոչինչ յայնցանէ պակաս արարեալ գաւառի և Սիւնեաց աշխարհին, օգնականութեամբ նորին իշխանին, որ կոչէր Վաղինակ». և ապա թէ. «Եւ ի վարդապետել երանելոյն Մեսրոպայ՝ ոչ փոքր կրէր վտանգս, քանզի ինքն էր ընթերցող և թարգմանիչ. և եթէ այլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր, զանխուլ ի ժողովրդոցն լինէր՝ յաղագս ոչ լինելոյ թարգմանիչ։ Վասն որոյ եդ ի մտի հնարել գտանել նշանագիրս Հայոց լեզուիս. և արկեալ զանձն ի ջանս պէս պէս փորձիւք տաժանէր...»։ [14]) Մի՞թէ կարելի

13) Կորիւն, նոյն, էջ 8։
14) Մ. Խորենացի, նոյն, գիրք—3, գլուխ ԽԷ, էջ 356։

է այս բոլորը սուրբ Մեսրոպի քարոզութեան տարիներից դուրս ձգել և նորա սուրբ Սահակի մօտ գալը քարոզութեան սկզբնաւորութիւն ընդունել. կարծում ենք, որ ոչ. և այդ պատճառաւ իսկ Ղ. Փարպեցու վկայութիւնը չի կարող համապատասխանել Կորիւնի յառաջ բերած թուերին, թէև Հայր Չամչեանը ճգնում է այդ ապացուցանել։ Նոյն իսկ Փարպեցու խօսքերից «ապա յանապատական կրօնս փոխեալ՝ զարմանալի երևէր և հռչակաւոր» երևում է, որ սուրբ Մեսրոպը նոյն իսկ այդ անապատական կեանք վարելու ժամանակ պէտք է պարապէր քարոզութեամբ, եթէ ոչ ինչպէս պէտք է «զարմանալի» և «հռչակաւոր» լինէր։

Կորիւն Սքանչելին սուրբ Մեսրոպի վարքագրութիւնը վերջացնում է նորա գործունէութեան տարիները թուելով «Եւ արդ լինի համար հաւատոյ երանելոյն ամք խ և ե—45—և ի դպրութիւնէն Հայոց մինչև ցվախճան սրբոյն ամք լե—35, որք համարին այսպէս. Թագաւորեալ Դիմոնայ[15] Պարսից արքայի—ամս զ.—6—և Յազկերտի՝ ամս իա—21։—Եւ յառաջնումն ամի երկրորդի Յազկերտի որդւոյ Վռամայ՝ վախճանեցաւ երանելին։ Եւ արդ առնու համար ամաց սրբոց հաւատոյ ի չորրորդ ամէ Կրմանայ արքայի՝ մինչև ցառաջին ամն երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ, և դպրութեանն Հայոց, յութերորդ ամէ Յազկերտի առեալ սկիզբն» [16])։

Համեմատելով մեր պատմագիրների վերն յառաջ բերած

---

15) Պրոֆ. Վէլտէ Կորիւնի գերմաներէն թարգմանութեան մէջ Դիմոն թարգմանում է իբրև Պարսից արքայի անուն—տես. նոյն, էջ 44—Իսկ Հայր Չամչեանը Դիմոն բառից յետոյ փակագծի մէջ դնում է «այսինքն Վռամ—Կրման ի Տիսբոն» տես. Չամչեան, նոյն, հատ. 1, էջ 764։ Որովհետև պատմութեան մէջ Վռամ Դ. կամ Վռամ—Կրման—շահ կոչուած—հայոց պատմագիրները կրճատելով ասում են Վռամ—Կրման—Պարսից արքան յայտնի չէ մի այդպիսի անունով, ուստի և Հայր Չամչեանի բացատրութիւնն աւելի իրաւացի ենք գտնում։

16) Կորիւն, նոյն, էջ 29. Չամչեան, նոյն հատ. 1, էջ 764։

կայութիւնները՝ տառերի «գիւտի» ժամանակի մասին, անկարելի է մի որ և է եզրակացութեան գալ, վասն զի բոլորն էլ շփոթում են տարեթուերի համեմատութիւնը Պարսից արքաների թագաւորութեան ժամանակի հետ և յաճախ միմեանց հակասում. այսպէս օրինակի համար Ասողիկ պատմագիրն ասում է. «յերկրորդ ամին Արտաշրի արքայի Պարսից, որ է հինգերորդ ամ Վռամշապհոյ»... Իսկ Վարդան վարդապետ պատմագիրն ասում է ի հինգերորդ ամին Վռամշապհոյ և առաջին ամին Արտաշրի›...։ Կորիւն սքանչելին ասում է։ «Եւ առնու համար ամաց սրբոց հաւատոց—այսինքն տաս տարի գրերի «գիւտից» առաջ—ի չորրորդում ամէն Կրմանայ 17) արքայի»... իսկ Ասողիկն «ի վեցերորդումն Նորին Վռամշապհոյ, որ է ամ առաջին Վռամ Կրման արքայի՝ վերստին աստուածատուր նշանագրօք գնոյն լեզանակեալ յօրինէր›... և այլն։

Եթէ մեր պատմագիրների այս ժամանակագրական վկայութիւնները թուերի փոխադրենք՝ կը ստանանք մի այնպիսի շփոթ, որից կարելի չէ մի բան դուրս բերել։

Ենթադրենք օրինակի համար, որ գրերի ‹գիւտն» տեղի ունեցաւ իսկապէս Հայոց Վռամշապուհ արքայի թագաւորու-

17) Պարսից Վռամ Դ. արքան կոչւում է նաև Կրման-շահ, վասն զի սկզբում նա այդ նահանգի կառավարիչն էր. այս արքային են վերագրում նոյնպէս Կրմանշահ քաղաքի շինութիւնը։ Ըստ Իւստի —Justi, geschichte des alten Persiens, էջ 193—Դէֆոնսերի դքսի ձեռքն է գտնւում այժմ այս արքայի կնիքն, որ կրում է նորա պատկերը հետևեալ գրութեամբ. «Վարահրան, արքայ Կըրմանի, որդի Մազդեզանց աստուածային Շապուհի արքայից արքայի՝ Արեաց և Անարեաց երկնային ցեղից»։ Այս Վռամ-Կրման-շահ արքային մատենագիրներից ոմանք անուանում են եղբայր Շապուհի և ոմանք որդի Շապուհի, որ խնդրին մօտիկ ծանօթ չ'եղողներին կարող է շփոթութիւն պատճառել. այդպէս կոչուելու պատճառն այն է, որ Կրման-շահի թէ հայրն և թէ եղբայրը թագաւորեցին և երկուսն էլ կոչւում էին Շապուհ։

թեան հինգերորդ տարին և այդ տարին ընդունենք իբրև մի որոշ սկզբնակէտ. սակայն ո՞ր թուականն է համապատասխանում Վռամշապուհի թագաւորութեան հինգերորդ տարուն. ահա այս է խնդիրն. այդ իմանալու համար մենք ոչ մի այլ միջոց չունենք, բացի Պարսից արքաների թագաւորութեանց ժամանակի համեմատութիւնը. տեսնենք այս համեմատութեան հետևանքներն։ Ասողիկն ասում է, որ Արտաշիր պարսից արքայի թագաւորութեան երկրորդ տարին է Վռամշապուհ հայոց արքայի թագաւորութեան հինգերորդ տարին. ուրեմն Վռամշապուհի թագաւորութեան հինգերորդ տարին իմանալու համար պէտք է իմանալ՝ թէ պարսից Արտաշիր արքայի թագաւորութեան երկրորդ տարին ո՞ր թուականն է. ըստ նորագոյն հետազօտութեանց՝ պարսից Արտաշիր II. արքան թագաւորում է 379[18] թուի 19 օգոստոսի[19]. ուրեմն 380 թ. օգոստոս ամսից յետոյ կլինի դորա թագաւորութեան երկրորդ տարին։ Այստեղից պէտք է եզրակացնել ուրեմն, որ Վռամշապուհ հայոց արքայի թագաւորութեան հինգերորդ տարին է Քրիստոսի թուականի 380—381. ուրեմն և ըստ Ասողիկ պատմագրի, ըստ Կորիւն Սքանչելու, Վարդան պատմագրի[20] և այլն, այդ թուականին գտնուեցաւ «Դանիէլեան այբուբենը»։ Թուցէ մենք այս թուի դէմ ոչինչ չ'ասէինք, եթէ Ասողիկը գործով բաւականանար. սակայն բանը նորանումն է, որ նա աւելացնում է և հետևեալ տողերն. «յետ որոյ

---

18) *Ռիխտէր Արտաշիր Բ-ի թագաւորութեան տարիները դնում է* 381—385 *թ. տես.* Richter. Historisch-kritischer Versuch über die Arsaciden-und Sassaniden-Dynastie etc. *էջ* 194

19) T. Nöldeke: Tabari, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sassaniden, *աշխատութեան հետ կցուած սասանական արքաների ժամանակագրական աղիւսակն։*

20) *Թէև Վարդան ասում է «յառաջին ամին Արտաշրի որդւոյ Շապհոյ»—սակայն այդ մի տարուայ տարբերութիւնը թող բանի տեղ չ'դնենք։*

րձեալ եւ ի վեցերորդումն նորին Վռամշապհոյ, որ է աջին Վռամայ Կրման արքայի՝ վերստին աստուածային րհաց տուեալ նշանագիրք, զնոյնս յեղանակեալ յօրինէր»։ րսից Վռամ Դ. և Կրման—շահ կոչուած արքան ըստ նոգոյն հետազօտութեանց թագաւորում է 388 թ. [21]) 16 սատոսի. ուրեմն և դորա թագաւորութեան առաջին տան է 388—389։ Մէթէ զարմանալի չէ, որ հայոց Վռամմպուհ արքայի թագաւորութեան հինգերորդ տարին է 0—381 թիւն, իսկ վեցերորդ տարին 388—389 թիւն։— թէ նոյն իսկ, ըստ Հայր Չամչեանի, փոխանակ վեցի, տասւվեց դնենք, կրկին չի կարող յարմարուել, վասն զի 6—397 թիւը չէ համապատասխանում Վռամ—Կրման—հի թագաւորութեան առաջին տարուն։—

Պրօֆ. Պատկանեանը—նաև պրօֆ. Էմինը—հայոց Վռամպուհ արքայի թագաւորութեան տարիները հաշւում է 0—421, նոյնպէս և Պարսից Յազկերտ I արքայի թագարութեան տարիներն 400—421 [22])։

---

21) Սորա թագաւորութեան սկզբնաթուի մասին եւս կարքները տարբերւում են. այսպէս օրինակի համար պրօֆ. Պատնեանի կարծիքով Վռամ—Կրման—շահ և յոյներից Նոյնպէս արարանէս կոչուած արքան թագաւորում է 386—397 թ.— ես. Journal Asiatique, tome 7 (1866) էջ 158։—Ռիխտէրի րծիքով Վռամ Դ. թագաւորում է 389—400 թիւը. տես. ichter նոյնն, էջ 200։ Բրոսէն ասում է. «Vahram IV, père Jezdedjerd, avait régné 397—408, ou (?) 389—400. տես. Bros-t: Collection etc. հատ. 1. էջ 63. ծթ. 3.

Մալկոլմի կարծիքով Վռամ Դ. թագաւորել 390—404 տես. Malcolm: Geschichte von Persien etc. հատ. 1. էջ 90։ Ս-Մարտէն ասում է. «... la premiere année royale de Bahram a du se compter du 18 mai 388 տես. Saint-Martin, stoire du Bas—Empire etc. հատ. 5. էջ 182. ծան.

22) Տես. Պրօֆ. Պատկանեանի թարգմանութիւնն.— сторія Агванъ Мойсея Каганкатваци". etc. յաւելուած II.

Եթէ մեր Վռամշապուհ և պարսից Յազկերտ Ա. արքաները մի և նոյն տարին են սկսում թագաւորել, ապա ուր մնացին մեր պատմագիրների ժամանակագրական համեմատութիւնները՝ Վռամշապուհի և Պարսից Արտաշիր և Վռամ-Կրմանշահ արքաների մէջ։ Պարսից Շապուհ Բ.-ին յաջորդում է Արտաշիր Բ. սորան յաջորդում է Շապուհ Գ. այս Շապուհին յաջորդում է Վռամ Դ. կամ կրմանշահ կոչուածն և ապա թէ Յազկերտ Ա։ Արդ, եթէ Վռամշապուհ արքան Պարսից Յազկերտ Ա.-ի հետ սկսեց թագաւորել, ապա ուր մնացին Մ. Խորենացու պատմածներն. «Եւ Արտաշրի ընկեցեալ զնա—Խոսրով—ի տէրութենէն, փոխանակ կացուցանելով զՎռամշապուհ եղբայր նորին, ոչ զՄեծն Սահակ և ոչ զոք ի նախարարացն կարգելոցն Խոսրովայ եթող, այլ մրգովեաց ի պատուոյ իւրաքանչիւր»[23])... և այլն. «Թուղթ Արտաշրի առ Վռամշապուհ. Մազդեզանց

---

մասի, էջ 326։ Պրոֆ. Պատկանեանը Ցազկերտ Ա.-ի թագաւորութեան տարիները մի այլ տեղ դնում է 397—417 (թէև գրուած է 517, բայց ակնյայտնի է, որ տպագրական սխալ է). տես. Պատկանեանի „Опитъ Исторій династ. Сасанидовъ" etc. աշխատութեան ֆրանսերէն թարգմանութիւնն. E. Prudhomme. Essai d'une Histoire de la Dynastie des Sassanides etc. տպուած է Journal Asiatique. t. 7. էջ 159:

Պրոֆ. Էմինը նոյնպէս Վռամշապուհի թագաւորութեան տարիները հաշւում է 400—421 Տես. Эминъ: Ист. Арм. М. Хоренскаго. էջ 331.

Իսկ Սէն- Մարտէնը Վռամշապուհի թագաւորութեան առաջին տարին համարում է 392 թ. «...Bahram-schapour, couronné l'an 392 de notre ére" տես. Histoire d'Arménie par le patriarch Jean IV, traduit par M. Saint-Martin էջ 400 ծթ. (Notes de L'éditeur). նոյնպէս Sain-Martin: Mémoires historiques et géographique sur L'Armenie հատ. 1. էջ 413.

Լանգլուան նոյնպէս ասում է. „Vramschapouh régna de l'an 392 jusqu'à sa mort, en 414" տես. V. Langlois: Collection etc. հատ. 2. էջ. 10. ծթ. 2.

23) Տես. Մ. Խորենացի, նոյնը. գիրք 3. գլխ. ծ. էջ 362

ոջ, Արտաշիր արքայից արքայ, առ եղբայր Վռամշապուհ
ագաւոր Հայոց ողջոյն շատ...»[24]) մի այլ տեղ. «Բայց յոր-
ամ եկն մեծն Սահակ և զամենայն պարգևեալսն յԱրտաշ-
 հաստատեաց, մեռաւ արքայն Պարսից Արտաշիր, և փո-
անակ նորա թագաւորեաց Վռամ, որ և Կրման կոչեցաւ
յս տասն[25]): Եւ զնոյն բարեկամութիւն կալաւ ընդ աշ-
արհս Հայոց և ընդ թագաւորին Վռամշապհոյ... Եւ Վր-
ամշապուհ ունէր զաշխարհս մեր և ծառայէր երկոցունց
ագաւորացն՝ տալով զհարկս, զմասինն Պարսից՝ Վռամայ,
 զմասինն Յունաց՝ Արկադեայ»: [26]) Դարձեալ թէ «... վասն
ոյ Վռամ հրամայեաց Վռամշապհոյ մեր թագաւորին ի-
նել ի Միջագետս, զի խաղաղացուցեալ կարգեսցէ զնո-
ս...»[27]) և այլն:

Այս բոլոր վկայութիւնները—մի կողմը թողնելով այլ
ատմագրաց յիշածները—չենք կարող մերժել, ուստի և
նք կարող ընդունել, որ Վռամշապուհ արքան պարսից
ազկերտ I-ի ժամանակ միայն թագաւորեց—400—421 թ.:
Սակայն մեր պատմաբանների վկայութեանց մէջ ես—
 արդէն յառաջ բերինք—մի այնպիսի հաստատուն սկզբնա-
տ չենք գտնում, որից կարողանայինք գտնել մեր այբու-
նի վերանորոգման տարեթիւն: Ուստի և այս շփոթ տե-
կութեանց մէջ չը մոլորուելու համար, մենք մի այլ հաս-
ատուն կէտ ի նկատի ունենալով, յառաջ ենք բերում մեր

---

[24]) Տես. Մ. Խորենացի, նոյնը, գիրք 3. գլխ. ծա. էջ 366.

[25]) Խորենացին բոլորովին չէ յիշում Շապուհ Գ-ին, որ
սջորդեց Արտաշիր երկրորդին և թագաւորեց ամբողջ հինգ
արի. ըստ Մալկոլմի 385—390.—տես. Malcolm, նոյնն, էջ 90
ատ. 1.—իսկ ըստ Նեօլդեկէի 383—388—տես. Nöldeke, նոյն
նկն.—իսկ Ռիխտէրը հաշւում է չորս տարի, 385—389.—տես.
chter, նոյնն, էջ 197.

[26]) Տես. Մ. Խորենացի. նոյնը, գիրք 3 .գլխ. ծա. էջ 366:

[27]) Տես. Մ. Խորենացի. նոյնը, գիրք 3. գլխ. ծբ. էջ 368:

տեսութիւնն։ Այդ հատուածում կէտը մենք ընդունում ենք մեր արդէն յառաջ բերած Կորիւն Աքանչելու վկայութիւնն. «Եւ արդ լինի համար հաւատոյ երանելոյն ամք 45 և ի դպրութենէն Հայոց մինչև ցվախճան սորոյն ամք 35, որք... Եւ յառաջնումն ամի երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ[28]) վախճանեցաւ երանելին—Մեսրոպ—։ Եւ առնու համար ամաց սրբոց հաւատոց ի չորրորդ ամէ Վռամայ արքայի մինչև ցառաջին ամն երկրորդ Յազկերտի[29]) որդւոյ Վռամայ...»։ Այս վկայութիւնը մեզ յայտնում է մի քանի պարզ իրողութիւններ. ա. որ ս. Մեսրոպն իբր եկեղեցական պաշտօնեայ, ծառայեց Հայաստանեայց ս. եկեղեցուն ամբողջ քառասուն և հինգ տարի, այսինքն այդչափ ժամանակամիջոց անցաւ նորա հայոց արքունիքը թողնելու և վախճանման թուականի մէջ. բ. ս. Մեսրոպի հայոց արքունիքը թողնելուց յետոյ անցել էր ամբողջ տաս տարի, երբ վերականգնեցաւ հայոց այբուբենն. գ. հայոց այբուբենի վերանորոգուելուց յետոյ ս. Մեսրոպն ապրեց երեսուն և հինգ տարի. դ. ս. Մեսրոպը թողեց հայոց արքունիքը պարսից Վռամ Դ. և Կրման—շահ կոչուող արքայի թագաւորութեան չորրորդ տարին և վերջապէս ե. ս. Մեսրոպը վախճանեցաւ պարսից Յազկերտ Բ. արքայի թագաւորութեան առաջին տարին։

Վերջին երկու կէտերը մօտաւորապէս ճշտում են ա. կէտն, վասն զի ըստ Նեօլդեկէի՝ պարսից Վռամ Դ. և Կրմանշահ կոչուած արքան թագաւորում է 388 թ., ուրեմն եթէ

---

28) Վռամ V, որ կոչւում է նոյնպէս Վռամ—գոր—թագաւորեց 420—438. Տես. Silvestre de Sacy: Mémoires sur diverses antiquités de la Perse. էջ 331։

29) Յազկերտ անունը սասանական դրամների վերայ գրուած է հետևեալ կերպիւ j. z. d. k. r. d. i. կամ yzdkrti—եզդկրդի կամ եզդկրտի. տես. Mordtmann: Ueber sassanidische Münzen. տպուած է. Zeitschrift d. d. morg. Gesell. etc. հատ. 4. (1850).

այս թուին աւելացնենք Կորիւնի յիշած 4 տարին—կը լինի 392. այս թուին ուրեմն թողեց սուրբ Մեսրոպը Հայոց արքունիքն. ըստ նոյն Նեօլդեկէի Յազկերտ Բ. պարսից արքան թագաւորեց 438 թ.[30]) և Կորիւնի ասելով սորա թագաւորութեան առաջին տարին—այս կարող է լինել թէ՛ 438 և թէ 439 թ.—վախճանեցաւ ս. Մեսրոպը. ուրեմն առաջին թիւը հանելով երկրորդից կ'ստանանք 46—47 տարի, որի տարբերութիւնը Կորիւնի հաշուած 45 տարուց՝ մեծ չէ։

Իբրև մի հաստատուն սկզբնակէտ, ինչպէս արդէն ասացինք, ընդունում ենք Յազկերտ Բ-ի թագաւորութեան առաջին տարին, վասն զի ինչպէս Կորիւն, նոյնպէս և Մ. Խորենացին—երկուսն ևս ժամանակակից—հաստատ ասում են, որ ս. Սահակը վախճանեցաւ Յազկերտ Բ-ի թագաւորութեան առաջին տարին, իսկ ս. Մեսրոպը փոխուեցաւ վեց ամիս Պարթևի մահից յետոյ. նոյնը կրկնում է Ղազար Փարպեցին և այլք։

Մ. Խորենացին խօսելով ս. Սահակի մասին, ասում է, որ նա ապրեց. «մինչ ցսկիզբն ամին երկրորդի Յազկերտի եղելոյ պարսից թագաւորի, յելս ամսոյն Նաւասարդի[31]), յա-

---

30) Տես. Նեօլդեկէ. Tabari etc. նոյնն, էջ 435.

31) Նաւասարդ բառին Հայր Ղ. Ինճիճեանը հետևեալ բացատրութիւնն է տալիս. «Նաւասարդ=Նաւաստ աւարտ. և ահա՛ ի հայկական բարբառս մեր գտանեմք զյիշատակ նորուն ի նոյն իսկ յանուն առաջին ամսեան տարւոյն, յորում եբաց Նոյ զձեղունն, կոչեցեալ նաւասարդ, համառօտեալ յանուանէս նաւաստ աւարտ. զի յայնժամ եղև համօրէն մարդկան և տապանակերպ նաւուն նաւաստութեան աւարտ». տես. Հայր Ղ. Ինճիճեան. Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի. հատ. 3. էջ 18։

Այս բացատրութիւնն այնչափ կամայական և անհիմն է լեզուագիտական տեսակէտից, որ ապացոյցի կարևորութիւն չունի. Պ. դը Լագարդն այդ բառը համեմատում է սանսկրիտ «Նաւասարդ» բառի հետ, որ բակտրիական լեզուով ասւում է «Նաւա-

ւուր իւրոյ ծննդեանն... Եւ զկնի վեց ամսոց անցելոյ, եւ-րեքտասանն Մեհեկանի, և երանելին Մեսրոպ փոխեցաւ յաշ-խարհէ ի Վաղարշապատ քաղաքի...[32])»։

Կորիւն Սքանչելու վկայութիւնը հաստատում է, որ Խորենացու խօսքերը «մինչ ցսկիզբն ամին երկրորդի Յազ-կերտի» պէտք է հասկանալ Յազկերտ երկրորդի թագաւո-րութեան առաջին տարուայ սկիզբն և ոչ թէ Յազկերտի երկրորդ տարուայ սկիզբն, ինչպէս որ շատերը բացատրել են։ Նոյնն է ասում և հայր Բարսեղ Սարգսեանը՝ պրօֆ. Գութշ-միդի դէմ գրած մի յօդուածի մէջ—Բազմավիպի այդ թուա-համարը չենք յիշում—նա համեմատել է Խորենացու պատ-մութեան եօթը ձեռագիրներն, որոնցից երկուսը չեն գրում «ցսկիզբն ամին երկրորդի», այլ «ցսկիզբ երկրորդ Յազկերտի պարսից եղելոյ թագաւորի», մանաւանդ որ «Երկրորդ» բա-ռը գլխատառով է գրուած, որ աւելի Յազկերտին է վե-րաբերում, քան տարուն։

Ենայի Համալսարանի գրադարանում գտնուող Խորենա-ցու Հայոց պատմութեան մի ձեռագիր անթուական օրինա-կի մէջ նոյնպէս ասուած է, «Մինչ ցսկիզբն երկրորդին ամի Յազկերտի պարսից եղելոյ թագաւորի [33])»։ Մենք նոյնպէս համեմատել ենք Տփխիսում հրատարակուած Խորենացու պատ-մութիւնը՝ Լայպցիգի քաղաքային գրադարանի մէջ գտնուող Խորենացու պատմութեան մի ձեռագիր օրինակի հետ, սա-կայն այդ կէտը չենք նշանակել, երևի այն պատճառով, որ տարբերութիւն չի եղել։

---

սարիդա» իսկ Նոր պարսկական լեզուով «Նաու-սալ». տես. Paul de Lagard. Armenische Studien. էջ 180։

[32]) տես. Մ. Խորենացի, նոյնը, գիրք III. գլխ. կէ. էջ. 406 — 407

[33]) Տես. ձեռագրի 180-րդ թերթն. էջ առաջին, բ. սիւնեակ. տող 6—8։

Թէև Ֆլօրիվալի հրատարակած Խորենացու մէջ ևս գըրուած է. «մինչ ցսկիզբն ամին երկրորդի Յազկերտի». սակայն այդ հեղինակը ֆրանսերէն թարգմանութեան մէջ ասում է. „jusqu'au commencement de la Deuxiéme année de règne de Hazguerd [34])...“։ Պրօֆ. Էմինը Խորենացու պատմութեան ռուսերէն թարգմանութեան մէջ ևս գրել է «մինչև Յազկերտի թագաւորութեան երկրորդ տարուայ սկիզբն» [35])։

Մովսէս Կաղանկատուացու ռուսերէն թարգմանութեան մէջ ասուած է. Յազկերտ երկրորդի առաջին տարին, Նաւասարդի վերջին մեռաւ սուրբ Սահակը և վեց ամսից յետոյ սուրբ Մեսրոպը[36])։

Ինչպէս արդէն ասացինք, Կորիւն Սքանչելու վկայութիւնը պարզապէս ցոյց է տալիս մեր բացատրութեան ճըշտութիւնը[37])։

---

[34]) Տես. Vailland de Florival· Moise de Khoréne etc· հատ. II· էջ. 189։

[35]) „До начала втораго года вацаренія царя парсискаго Язкерта“· տես. Эминъ, Ист· Арм· М· Х· etc· էջ 227։

[36]) Въ первый годъ втораго Газкерта въ концѣ Навасарда преставился св· Саакъ, и по прошествіи 6 Мѣсяцевъ... Месропъ... տես. պրօֆ. Պատկանեան։ Истор· Агванъ etc· նոյն, էջ. 90։

[37]) Եթէ նոյն իսկ ընդունենք, որ Մ. Խորենացին Յազկերտի թագաւորութեան երկրորդ տարուայ սկիզբն է ասում, դարձեալ ճիշտ կլինի մեր հաշիւը, վասն զի թէ Սէն-Մարտէն և թէ Նեօլդեկէ— Tabari etc· էջ 403—հաստատ պնդում են- ծանրակշիռ փաստերով,—որ Պարսից արքաներն իւրեանց գահը բարձրանալու անմիջապէս հետևող նոր տարին հաշւում էին իբր իւրեանց թագաւորութեան երկրորդ տարին· 438 թ. ըստ Նեօլդեկէի—տես Tabari, նոյնը, էջ 436—պարսից Նոր տարին ընկնում է Օգոստոսի 4-ին, ուրեմն եթէ Յազկերտը նոյն իսկ 438 թուի Յուլիս ամսին բարձրանար արքայական գահը, նոյն թուի Օգոստոսի 4-ից յետոյ նա հաշւում է իբր իւր թագաւորութեան երկրորդ տարին—թէ և ընդամենն մի ամիս է անցել։—Այսպիսով

Այս վկայութիւններն արդէն ինքն ըստ ինքեան կ'լուծէին խնդիրն – ընդունելով Կորիւնի վկայութիւնն, որ սուրբ Մեսրոպը «Գիւտ»-ից յետոյ ապրեց 35 տարի—եթէ Յազկերտ Բ-ի թագաւորութեան առաջին տարին իսկզբանէ որոշ լինէր, սակայն դժբաղդաբար այդ թուականն երկար ժամանակ վիճաբանութեանց առարկայ է եղել։ Գիտնականներից ոմանք ենթադրում են, որ պարսից Յազկերտ Բ-ի թագաւորութեան առաջին տարին է 438 թուականն—այս կարծիքի են պրօֆ. Պատկանեան[38]), պրօֆ. Գութշմիդը և Մալկոլմ[39])—միւսներն ընդունում են 439 թուականն—այս կարծիքի է նոյնպէս Հայր Չամչեանը[40])—այլք 440 թուականն—այս կարծիքի են անգղիացի Ռաուլինսոն գիտնականն և Լանգլուան[41]). իսկ Ռիխտէրը 442 թիւն է ընդունում[42]).

Մենք ընդունում ենք 438 թուականն իբրև ամենից հաւանականը, վասն զի գիտութեան այս ճիւղի—սասանեան պատմութեան—ամենավերջին հետազօտութիւնները հաստատում են այդ և պարսից Յազկերտ երկրորդ արքայի թագաւորութեան առաջին տարին այդ թուականն ընդունում[43])»

---

պարզ է, որ 438 թուի Սեպտեմբեր ամիսն—«յելս Նաւասարդի»—այդ պարսկական հաշուով կարող է արդէն Յազկերտի թագաւորութեան երկրորդ տարին համարուել։

38) Տես. journal Asiatique t. VII. էջ 163։

39) Տես. Malcolm: Geschichte von Persien etc. հատ. I. էջ. 98։

40) Տես. Չամչեան. նոյնը, հատ I. էջ 752.

41) Տես. V. Langlois: Collection etc. հատ. II. էջ 14 ծթ. 2.

42) Տես. Richter, նոյնը, էջ 209։

43) Տես. Ferd. Iusti: Geschichte des alten Persiens, էջ 196 և Նէօլդեկէի մեր արդէն յիշած աշխատութիւնը։ Այս վերջին աղբիւրին է դիմում միշտ՝ Սասանեան պատմութեան մասին խօսելիս, դարուս ամենանշանաւոր և յայտնի պատմագիրներից՝ հան-

Տեսնենք արդեօք Հայոց պատմութեան միջնորդութեամբ չէ՞ կարելի հաստատել այդ թուականը։

«Ոսկեղնիկ» Եղիշէն պատմելով Յազկերտ Բ-ի հալածանքները քրիստոնէից դէմ՝ շարունակում է. «Արդ *իսկզբան երկոտասանորորդ ամի թագաւորութեան իւրոյ*՝ գունդ գումարէր — Յազկերտ Բ — անհամար բազմութեամբ, յարձակեալ հասանէր յերկիրն Թետաղական[44])». աՀա այս ժամանակ է տեղի ունենում Քուշանաց դէմ պատերազմը և «զբազմութիւն այրուձիոյն Հայոց» արգելումն «ի ներքոյ պահ դըրանն»[45])։ Եւ ապա Եղիշէն յառաջ բերելով այն թղթի բովանդակութիւնն, որ Հայերն ուղարկեցին Թէոդոս կայսեր, շարունակում է. «Եւ մինչդեռ երանելին Թէոդոս հարցանէր զամենայն սինկղիտոսն, և հնարս խնդրէր կամէր գտանել խաղաղութեամբ, և հոգ տանէր մեծաւ յօժարութեամբ՝ զի մի՛ եկեղեցիքն արևելեայ յափշտակեսցին յանօրէն հեթանոսացն, *ի նմին ժամանակի անդէն վաղվաղակի հասանէր վախճան* կատարածի կենաց նորա և կորի չար խափանումն լինէր գործոյն օգնականութեան»[46])։

---

գուցեալ Լէոպոլդ ֆօն Ռանքէն՝ իւր ընդհանուր պատմութեան բազմահատոր աշխատութեան մէջ։ Սասանեան պատմութիւնն այնչափ սերտ կապ ունի մեր պատմութեան հետ, որ առանց դորա չի կարելի որոշել մի որև է ժամանակագրական շրջան — հարկաւ միայն Սասանեան իշխանութեան ժամանակ — ուստի և յօդուածիս վերջը հրատարակում ենք Նեօլդեկէի «Սասանեանց ժամանակագրական ցուցակն», որ արդիւնք է համեմատական աշխատութեան և այժմ ընդհանուր հեղինակութիւն ունի Եւրոպայի պատմաբանների համար։

44) Տես. Եղիշէ — Տփխիսի հրատարակութիւն, յեղանակ երկրորդ, էջ 23։

45) Տես. Եղիշէ, նոյնը, էջ 24։

46) Տես. Եղիշէ, նոյնը, յեղանակ երրորդ, էջ 104։

Եղիշէի վկայութիւնն՝ իբրև ժամանակակից պատմագրի, մեծ նըշանակութիւն ունի, ուստի և նոյն իսկ Նեօլդեկէն ասում է, որ

Ա՛րդ, եթէ Քուշանաց պատերազմից մինչև Հայոց թըղթի Բիւզանդիոն հասնելը նոյն իսկ մի տարի անցած լինէր, այն ժամանակ Թէոդոս Փոքրի մահուան տարին Յազկերտ Բ. պէտք է ամբողջ տասն և երկու—12—տարի պարսից թագաւոր եղած լինէր, վասն զի, ինչպէս որ տեսանք վերոյիշեալ վկայութիւնից՝ Եղիշէն ասում է. «Ի սկզբան երկոտասաներորդ ամի թագաւորութեան իւրոյ—Յազկերտ Բ-ի»

Յայտնի է որ Թէոդոս Բ. կայսրն—որին մեր պատմագիրները Թէոդոս Փոքր են անուանում՝ Թէոդոս Մեծից զանազանելու համար—վախճանեցաւ 450 թուին. եթէ 450 թուին Յազկերտ Բ. արդէն տասներկու տարի թագաւորած էր, ուրեմըն նորա թագաւորութեան առաջին տարին պէտք է բնականապէս լինէր 450—12=438 թուականը։

Այժմ դիմենք մեր մի այլ պատմագրի վկայութեան։

Ղազար Փարպեցին Վարդանանց նահատակութիւնը դնում է Յազկերտ Բ-ի թագաւորութեան 13 տարին. «Արդ խաղացուցեալ գնոսա (Հայոց իշխաններին) զամենեսեան առաջի իւր յերկիրն պարսից՝ նենգաւորն Վասակ, յերերտասաներորդում ամի Յազկերտի արքային պարսից…»[47])

Ա՛րդ, Վարդանանց նահատակութիւնն, այսինքն Հայոց խղճի և սրտի բռնաբարման դէմ պատերազմն, տեղի ունեցաւ Թէոդոս Բ. կայսեր մահուան յաջորդ տարին, 451 թուին։ Եթէ այս թուից դուրս գանք տասներեք—13—տարի—տարբերութիւնը կարող է մի քանի ամիսների մէջ լինել—, կըտեսնենք որ ըստ Փարպեցու վկայութեան ևս Յազկերտ Բ. թագաւորեց 438 թուին։

---

Եղիշէի հեղինակութիւնը—Autorität—գերազանցում է միւս բոլոր պատմագիրների վկայութեանց. „…Denn der Zeitgenosse Elisäus—Եղիշէ,—dessen Autorität hier die aller Anderen weit überragt…" տես. Նէօլդեկէ, նոյնը, էջ 426։

47) Տես. Ղ. Փարպեցի, նոյնը, էջ 223։

Այսպէս ուրեմն Յազկերտ Բ-ի թագաւորութեան առա-
ն տարեթիւն՝ 438, որ մենք ամենահաւանականը համարե-
նք, համապատասխանում է ո՛չ միայն օտար պատմա-
րների, այլ և Հայոց մատենագիրների վկայութեանց։

Այս թուականից անմիջական կախումն ունի Մեծն Սա-
կ Պարթև կաթողիկոսի և Հայ երկրի ուսուցանողի—սուրբ
րոպի—մահուան տարեթիւն. սակայն յառաջ քան վերո-
եալ փաստերի հիմանց վերայ մեր եզրակացութիւնն ա-
ելու՝ յառաջ ենք բերում այն կարծիքներն, որ յայտնուել
ցայժմ սուրբ Սահակի և Մեսրոպի մահուան տարեթուի
սին։ Այս կարծիքները հարկաւ տարբերւում են միմեան-
յ. ոմանք ընդունում են 439, ոմանք 442 և 443, իսկ
ծամասնութիւնը 440 և 441 թուականը։ Յիշենք մի քա-
հեղինակների անուններն, որոնք այդ մասին կարծիք են
յտնել։

Հայագէտ Դիւլօրիէն սուրբ Սահակի մահուան տարին
շւում է 439 թուի սեպտեմբերի 4-ին[48])։ այդ պատճա-
ու և Հայագէտ Բրօսէն ասում է. S. Sahac siége 400—440»։

«440 և 441» թուականը ճիշտ են համարում ա. Հայր
ամչեանը[49]), բ. պրոֆ. Էմինը[50]), գ. պրոֆ. Պատկանեանը[51]),

48) Տես. Dulaurier, Chronologie armèn. etc. էջ 203. դըժ-
ղդաբար չ'կարողացանք Դիւլօրիէի այդ աշխատութիւնը ձեռք
ռել, որպէս զի տեսնէինք թէ նա ի՞նչ հիման վերայ է ընդու-
մ 439 թիւն. վերոյիշեալ նկատողութիւնը մենք առնում ենք
osset-ից. Collection d'Historiens Arméniens. հատ. II. էջ
8. ծթ. 1.

49) Տես. Չամչեան, նոյնը, հատ. I. էջ 533։

50) Տես. Эминъ: Ист. Арм. М. Х. etc. էջ 362.

51) Տես. Պատկանեան։ Ист. Агванъ etc. յաւելուած II.
սի. էջ 326։

դ. Գր. Խալաթեանը[52]), ե. Իւստին[53]),—որ սուրբ Սահակի մահուան տարեթիւը 440 թ. նշանակելով՝ սխալմամբ շարունակում է՝ թէ Մեսրոպը մէկ տարի կաթուղիկոսական տեղապահ էր—զ. Բրոսէն[54]), է. Փլօրիվալը[55]), ը. Լանգլուան[56]) և այլք։

442 թիւն ընդունում է Գուտշմիդն իբրև սուրբ Սահակի մահուան տարին[57]), իսկ 443 թ. ընդունում է Սէն-Մարտէնը. «La mort de Sahac, arrivée en la 2 année (?!) d'-Jezdedjerd II, roi de Perse en l'an 443[58])։

Վերոյիշեալ հեղինակների այս տարբեր կարծիքներն յառաջանում են այն հանգամանքից, որ դոցանից իւրաքանչիւրն այլ թիւ է ընդունում Յազկերտ Բ-ի թագաւորութեան առաջին տարուայ համար և երկրորդ. համարեա թէ մեծամասնութիւնը հաշւում է Յազկերտ Բ-ի թագաւորութեան երկրորդ տարին իբրև սուրբ Սահակի մահուան տարին։ Մենք արդէն ընդունեցինք—որոշ փաստերի հիմանց վերայ—որ սուրբ Սահակը վախճանուեցաւ Յազկերտ Բ-ի թագաւորութեան առաջին տարուայ սկզբին. և որ Յազկերտ Բ. թագաւորեց 438 թուին. այստեղից պէտք է եզրակացնենք ուրեմն, որ սուրբ Սահակը վախճանեցաւ 438 թուականին

Մեր բոլոր պատմագիրներն որոշ ասում են, որ սուրբ

---

52) Տես. Գր խալաթեան. Ղազար Փարպեցի և գործքները. էջ 60։

53) Տես. Iusti. նոյնը, էջ 196։

54) Տես. Brosset: Collection etc. նոյնը, հատ. I. էջ 67 ծթ. b. c. նոյնպէս հատ. II. էջ 378 ծթ. 1։

55) Տես. Vailland de Florival: Möise de Khorène etc. յառաջաբան, էջ 8։

56) Տես. Langlois: Collection etc. նոյնը, հատ. II. էջ 9 ծթ. 2 և էջ 10 ծթ. 1։

57) Տես. Alf. von Gutschmid: Agathangelos. տպուած է Zeitschrift d. d. morg. Gesellschaft հատ. 31-ի մէջ. էջ 55։

58) Տես. Histoire du Ras-Empire, etc. հատ. 5 էջ 30 ծթ. 1։

Հակը փոխեցաւ Նաւասարդ ամսի վերջին օրն. այդ ամիսն, մեր հին նախնեաց հաշուով տարուայ առաջին ամիսն Համապատասխանում է օգոստոս ամսին, ուրեմն և Նաւասարդի վերջին օրը պէտք է լինի սեպտեմբերի առաջին րին[59]։ Այս իրողութիւնը ճշտիւ համապատասխանում է հանգամանքին, որ Նեօլդեկէն Յազկերտ Բ-ի գահակալութեան ամսաթիւը նշանակում է 438 թ. օգոստոսի 4-ին. րեմն այդ արքայի թագաւորութեան նոյն իսկ երկրորդ ամն վախճանուեցաւ սուրբ Սահակը. որ այս հաշիւը ճիշտ է, այում են պարզապէս մեր պատմագիրներն՝ ասելով «գաւիգն ամին երկրորդի Յազկերտի»։

Մեր պատմագիրները նոյնպէս միաբերան վկայում են՝ Մեծն Պարթև կաթուղիկոսի մահից վեց ամիս յետոյ՝ Մեկանի 13-ին վախճանեցաւ Հայ երկրի ուսուցիչ՝ սուրբ Եսրոպը։

Մեհեկան ամիսը համապատասխանում է փետրուար ամ[60]. ուրեմն սուրբ Մեսրոպն իւր մահկանացուն կնքեց

59) Վասն զի մեր նախնիքը, բացի այն 12 ամիսներից—Նաւասարդ, Հոռի, Սահմի, Տրէ, Քաղոց, Արաց, Մեհեկան, Արեգ, Ահեն, Մարերի, Մարգաց և Հրոտեաց—որ բաղկացած էին 30 օրից, ունէին նաև մի 13-րդ ամիս «աւելեաց»՝ բաղկացած 5 կամ օրից։ Մենք չենք մտնում օրն որոշելու խնդրի մէջ. ընդհանպէս ընդունուած է, որ Նաւասարդի վերջին օրը համապատասխանում է սեպտեմբերի 9-ին. սակայն Բրոսէն սխալ է մարում այդ հաշիւն ասելով, որ 440 թ. Նաւասարդի 1. ընկում է օգոստոսի 8-ին, ուրեմն Նաւասարդի 30 պէտք է լինի պտեմբերի վեցը այս հաշիւն ի հարկէ չենք կարող ընունել, վասն զի յարմարեցրած է 440 թ։ Տես. Brosset. Colction etc. նոյնը, հատ. I. էջ 67 ծթ. b. c.

60) Է. Բորէն կարծում է՝ որ Մեհեկանը համապատասխաում է Յուլիս ամսին—երևի Նաւասարդը խառնելով Յունուարի ստ. տես. E. Boré: Elégie sur la prise de Constantinopele յերէնից թարգմանուած յօդուածի ծանօթութեան մէջ. տես. urnal Asiatique t. 15 (1835) էջ 283։

439 թուի փետրուար ամսին[61]։

Այս թիւն որոշելով և Կորիւն Սքանչելու վկայութիւնն ընդունելով դժուար չէ այժմ գտնել մեր Հին ալբուբենի վերանորոգման և կատարելագործման թուականը. սակայն դեռ ևս տեսնենք՝ թէ ցայժմ ինչ կարծիքներ են յայտնուել այդ մասին։

Հայր Չամչեանը «գրերի գիւտի» տարեթիւը դնում է 406—տես պատմութիւն Հայոց. Հատ. I. էջ 762—765։

Պրօֆ. Էմինը Խորենացու ռուսերէն թարգմանութեան մի ծանօթութեան մէջ—տես Эминъ, ист. Арм. М. Х. etc. ծթ. 470. էջ 319—դնում է 406 թիւն. իսկ նոյն գրքի վերջը կցած Հայկազանց և արշակունեաց ժամանակագրական ցուցակի մէջ դնում է 404 թ.—տես. Эминъ, նոյնն, էջ 331։ Այս երկու տարբեր թուերն ևս ոչ մի խօսքով բացատրուած կամ ապացուցուած չեն, ուստի և մեզ անհասկանալի եղաւ թէ՝ պրօֆ. Էմինն այդ թուերից որն է ճիշտ համարում։

Իուստին չգիտենք ինչ հաշուով «տառերի գիւտ»-ի թուականը համարում է 397 թիւն[62])։

Նոյմանն ընդունում է նոյնպէս 406 թիւն[63])։

---

61) Այս դէպքում ևս չենք որոշում օրուայ խնդիրն. առհասարակ ընդունուած է, որ Մեհեկանի 13 համապատասխանում է Փետրուարի 19-ին. իսկ Բրօսէն այդ սխալ համարելով՝ ասում է, որ այդ օրը համապատասխանում է Փետրուարի 16-ին—այստեղ նոյնպէս հաշուելով 441 թուի համար. տես. Brosset. Collection etc. նոյնը, հատ. I. էջ 67 ծթ. b. c. La mort de saint Mesrob eut lieu le 19 fevrier 441. Le mois persan Mihragan consacré an dieu Mihr ou Mihra. տես. Langlois: Collection etc. նոյնը, հատ. II. էջ 173 ծթ. 2.

62) Տես. Iusti. նոյնը, էջ 196։

63) Տես. Neumann: Memoire sur la vie et les ouvrages de David, philosoph arménien etc. տես. nouveau journal Asiatique t. 3 (1823) էջ 54։

*Բրոսէն*, նկատելով որ Սամուէլ Անեցու յիշած թուականն՝ 418 ժամանակագրական սխալ է, աւելացնում է. անվիճելի է, որ «տառերի գիւտ»-ը տեղի ունեցաւ հինգերորդ դարու առաջին տարիներում 406 կամ 408[64]) թ: Մի այլ տեղ Բրոսէն քննադատելով Սամուէլ Անեցու միմեանցից տարբեր և միմեանց հակասող վկայութիւնները տառերի գիւտի թուականի մասին՝ ասում է. «ամենահմուտ քննադատներն 406 և 408 թուականն ընդունում են իբրև հայոց այբուբենի գիւտի թուականը...[65]): Սակայն միևնոյն Ակադեմիկոս Բրոսէն Մխիթար Այրիվանեցու «պատմութիւն ժամանակագրական»-ի թարգմանութեան մէջ նկատում է, որ ընդհանուր կարծեաց համեմատ հայոց այբուբենը վերականգնեցաւ 404 *թուին*[66]):

Թէ ո՞ր թիւն է Բրոսէն ճիշտ համարում, նոյնպէս կարելի չէ իմանալ, վասն զի և դոցանից ոչ մէկը փաստերով չէ հաստատում և իւր որոշ կարծիքն յայտնում:

Մ՚իւս բոլոր՝ թէ հայ և թէ օտար մատենագիրներն և և քննիչներն ընդունում են այդ թուերից մէկը կամ միւսն, ուստի և առանձին առանձին յիշելն այստեղ կարևոր չէ:

Տեսնենք այժմ թէ այդ թուերից ո՞րն է ճիշտն ըստ մեր սկզբնական տեսութեան և հաշուի: Մի կողմից մենք ընդունում ենք Կորիւն Սքանչելու վկայութիւնն, որ սուրբ Մեսրոպը մեր նոր այբուբենը կազմակերպելուց յետոյ մինչև իւր մահն՝ ապրեց և գործեց երեսուն և հինգ (35)

[64]) Տես. Brosset: Deux Historiens Arméniens Kiracos de gantzac etc. Ouktanes D'ourha etc. էջ 13 ծթ. 4. տես. նոյնպէս Brosset Collection. etc. հատ. 1. էջ 63. ծթ. 4:

[65]) Տես. Brosset: Samouel d'Ani, revue générale de sa chronologie. տպուած է Bulletin de l'académie imperiale des Sciences de St.-Petersbourg հատ. 18. (1873).

[66]) Տես. Brosset-ի թարգմանութիւնը, որ տպուած է Mémoires l'academie imperiale des science de St. Pétersbourg. VII. série, tome VIII. (1869) № 5. էջ 66:

տարի. իսկ միւս կողմից աշխատեցինք փաստերով ապացուցանել, որ սուրբ Մեսրոպն իւր երկրաւորը կնքեց 439 թ. պարզ է, որ մեսրոպեան այբուբենի կազմակերպութեան թիւն օրոշելու համար պէտք է 439 թ. հանել 35 թիւն, որ և կստանանք 404։

*Սուրբ Մեսրոպը հայոց այբուբենը կազմակերպեց Քրիստոսի 404 թուականին։*

Այժմ տեսնենք՝ թէ արդեօք այլ վկայութիւններ ևս կա՞ն, որոնք հաստատէին մեր կարծիքն. ինչպէս արդէն տեսանք, Կորիւնն ասում է. «Եւ առնու համար ամաց սրբոց հաւատոց ի չորորդ ամէ Կրմանայ արքայի՝ մինչև ցառաջին ամյն երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ. և *դպրութեան հայոց յութերորդ ամէ Եազկերտի առեալ սկիզբն»։* Այս Յազկերտն ինհարկէ Յազկերտ առաջինը կարող է լինել. արդ, եթէ ըստ Իւստի ընդունենք, որ պարսից Յազկերտ Ա. թագաւորեց 397 թ. [67]) կ'տեսնենք որ դորա թագաւորութեան ութերորդ տարին կլինի 397 և 7=404, որ ճշտիւ համապատասխանում է մեր հաշուին։

Թէև Սամուէլ Անեցու ժամանակագրութիւնը մեր ձեռքը չէ դժբաղդաբար, սակայն ըստ Բրօսէի [68]) այդ պատմաբանը վկայում է, որ Արկադ կամ Արկադիոսի բիւզանդական թագաւորութեան *տասներորդ* տարին տեղի ունեցաւ հայկական դպրութեան սկիզբն՝ այսինքն մեսրոպեան այբուբենի կազմակերպութիւնը։ Յօդուածիս սկզբում յառաջ բերած «կայ-

---

67) Տես. Iusti, նոյնը, էջ 193. Նեօլդեկէն Եազկերտ I-*թագաւորութեան սկիզբը դնում է* 399 *թ. ինչպէս արդէն տեսանք պրօֆ. Պատկանեանը ևս մի տեղ Յազկերտի թագաւորութեան առաջին տարին դնում է* 397 *թ. ուրեմն համաձայն Իւստի կամ աւելի լաւ է ասել ընդհակառակն, վասն զի երկրորդի աշխատասիրութիւնն աւելի ուշ է լոյս տեսել։*

68) Տես. Brosset. Bulletin etc. նոյնը, հատ. 18. նոյն յօդուածն։

սերայց» կոչուած մի ձեռագիր ևս վկայում է, որ «տառերի գիւտ»-ը տեղի ունեցաւ Արկադիոս և Ոնորիոս կայսերաց թագաւորութեան *տասներորդ* տարին։ Ա՛րդ, յայտնի է, որ այդ երկու կայսրները միատեղ թագաւորեցին 395 թուականին[69]. ուրեմն դոցա թագաւորութեան *տասներորդ* տարին կլինի 395 և 9=404[70]։

Այսպիսով այս երկու վկայութիւններն ևս հաստատում են մեր տեսութիւնն, այսինքն Մեսրոպեան այբուբենի կազմակերպութիւնը Քրիստոսի 404 թուականին։

Թէև այսչափ փաստերը բաւական են, սակայն յառաջ բերենք դարձեալ մի կողմնակի վկայութիւն, որ անուղղակի կերպիւ կրկին հաստատում է մեր տեսութիւնը։

*Նոյմանը* խօսելով Դաւիթ Անյաղթ փիլիսոփայի մասին՝ ի միջի այլոյ ասում է նաև հետևեալը։ «Ես կարծում եմ, որ այս աշխատութեան պատմական մասի ճշտութիւնն իբրև անժխտելի պէտք է ընդունել, որովհետև այդ նոյնպէս հաստատուած է *Յովսէփ* կաթուղիկոսի մի նամակով, որ ուղղուած է Թէոդոս Փոքր կայսեր. և ինչպէս երևում է այդ նամակը

---

69) Թէոդոս մեծը վախճանուելով՝—ըստ իւր առաջուց որոշման—395 թուին Հռովմայեցւոց կայսրութիւնը բաժանուեցաւ երկու մասի. արևելեան բաժնի—կամ բիւզանդական կայսրութեան—կայսր դարձաւ Թէոդոսի անդրանիկ որդին՝ Արկադիւս. իսկ արևմըտեան բաժնի—իսկական Հռովմէական կայսրութեան—կայսր դարձաւ կրտսեր որդին՝ Ոնորիուս. ահա՛ այստեղից է յառաջանում այն հանգամանքը, որ երկուսն ևս միաժամանակ են տիրում—395 թուից սկսած։

70) 1699 թ. Ամստերդամ տպուած մի փոքրիկ գրքի մէջ—որ այժմ գտնւում է Ենայի համալսարանի գրադարանում—ասուած է «... Գիրն Հայոց գտաւ *յամի տեառն* 422. վերնային շնորհօք և երկասիրութեամբ բազմերախտ Հարցն սրբոց Իսահակայ մերոյ Հայրապետին և Մեսրոպայ եռամեծի վարդապետին»։ Տես. *Ոսկեայ դուռն դպրատան*, վասն Նորեկ դեռակիրթ և խակավարժ մանկանց Հայկազունեանց և այլն։

պէտք է գրուած լինի 440 *Թուականի սկզբում*..... [71])

Յայտնի իրողութիւն է, որ Յովսէփը Կաթողիկոսական գահը բարձրացաւ սբ. Մեսրոպի մահից յետոյ. մրդ, եթէ 440 Թուականի սկզբում Յովսէփն արդէն կաթուղիկոս էր, ակնայայտնի է, որ սբ. Մեսրոպը պէտք է վախճանէր 439 Թուին. եթէ այբուբենի կազմակերպութիւնից յետոյ սբ. Մեսրոպն ապրեց դեռ ևս 35 տարի՛ կ՚նշանակէ, որ այդ կազմակերպութիւնը տեղի ունեցաւ 439—35=404 Թուին։

Մեր հին պատմագիրների շատ վկայութիւններն եթէ առանձին-առանձին վերցնենք՝ չեն համապատասխանում մեր տեսութեան, սակայն այդպիսով չէ խախտւում այս տեսութիւնը, վասն զի այդ վկայութիւնները միմեանց հակասելով պարզապէս ապացուցանում են, որ ճիշտ չեն. մենք մի հաստատուն սկզբնակէտ ընդունելով Կորիւն Սքանչելու վկայութիւնն և սբ. Մեսրոպի մահուան տարեթուի որոշումն՝ ստոյգ-աստիճանաբար և փաստերով յառաջ բերինք այս տեսութիւնը՝ հիմնուելով պատմական հետազօտութեանց ցայժմ տուած հետևանքների վերայ։

### ՑՈՒՑԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՍԱՍԱՆԵԱՆ ԱՐՔԱՅԻՑ ԸՍՏ ՆԷՕԼԴԷԿԷԻ։ [72])

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Արտաշիր Ա. | 226 | Թ. | 26 [73]) | սեպտեմ. |
| 2 | Շապուհ Ա. | 241 | Թ. | 22 | „ |
| 3 | Որմիզդ Ա. | 272 | Թ. | 14 | „ |
| 4 | Վռամ-Բահրամ Ա. | 273 | Թ. | 14 | „ |

---

71) Տես. Neumann. Memoire sur la vie de David etc. նոյնը, էջ 51։

72) Այս ցանկը Նէօլդէկէն հրատարակել է Tabari-ի պատմութեան թարգմանութեան կից. տես. Nöldeke: Tabari etc. նոյնը, էջ 435։

73) Տարեթուերը ցոյց են տալիս պարսից արքայից թագաւորութեան առաջին նոր տարուայ սկզբնաւորութիւնն ըստ հաշուի։

| | | | |
|---|---|---|---|
| Վռամ Բ. . . . | 276 թ. | 13 | „ |
| Վռամ-Շահնշահ Գ. Նարսեհ . | 293 թ. | 9 | „ |
| Որմիզդ Բ. . . . | 302 թ. | 7 | „ |
| Շապուհ Բ. . . . | 309 թ. | 5 | „ |
| Արտաշիր Բ. . . . | 379 թ. | 19 | Օգոստոսի |
| Շապուհ Գ. . . . | 383 թ. | 18 | „ |
| Վռամ-Կրման-Շահ Դ. . | 388 թ. | 16 | „ |
| Յազկերտ Ա. . . . | 399 թ. | 14 | „ |
| Վռամ-Գոր Ե. . . | 420 թ. | 8 | „ |
| Յազկերտ Բ. . . . | 438 թ. | 4 | „ |
| Որմիզդ Գ. . . . | 457 թ. | 30 | Յուլիսի |
| Պերոզ . . . . | 457 թ. | 30 | (459 թ. 30 յուլ). |
| Վաղաշ-Բալաշ. . . | 484 թ. | 22 | „ |
| Կաւատ Ա. . . . | 488 թ. | 22 | „ |
| Զամասպ. . . . | 496 թ. | 20 | „ |
| Խոսրով Ա. Անուշիրվան . | 531 թ. | 12 | „ |
| Որմիզդ Դ. . . . | 578 թ. | 30 | Յունիսի |
| Խոսրով Բ. . . . | 590 թ. | 27 | „ |
| (Վռամ Զ. Չոբին, Վշտամ-Բիստամ) | | | |
| Կաւատ Բ. շէրսէր . . | 627 թ. | 18 | „ |
| Արտաշիր Գ. . . . | 628 թ. | 17 | „ |
| Շահր Վարազ-Շարբարազ. | 629 թ. | 17 | „ |
| Բորան . . . . | 630 թ. | 17 | „ |
| Որմիզդ Ե. . . . | 631 թ. | 17 | „ |
| Յազկերտ Գ. . . . | 632 թ. | 16 | „ |



## Բ.

## ԹԷ Ո՛ՐՏԵՂ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ «ԳՐԻ ԳԻՒՏ»-Ը։



Հայոց գրի իսկական գիւտի տեղն, այսինքն Հայոց հին այբուբենի երեւան գալու վայրն, ոչ ոք մեր պատմաբաններից չէ յիշում. Մ. Խորենացին պատմում է, որ երբ Վռամշապուհը միջագետքումն էր. «...մատուցեալ առ արքայն քահանայի որումն Հաբէլ անուն կոչեցեալ, խոստանայր հայկականացս լեզուաց առնել նշանագիր, յարմարեալ ի Դանիէլէ եպիսկոպոսէ՝ յիւրմէ մերձաւորէ...»։ 1) Բայց թէ ո՛րտեղացի էին այդ քահանան և Եպիսկոպոսը, չէ ասում Խորենացին. ապա խօսելով Վահրիճի դեսպանութեան մասին՝ ասում է. «...առաքեաց... առ Հաբէլն այն։ Զոր առեալ, և երթեալ Նովաւ հանդերձ քաջ հմտացեալ ի Դանիէլ է.. եկեալ ետուն ցմեծն Սահակ և Մեսրոպ»։ 2) Այս տողերից երեւում է, որ Հաբէլն այլ տեղ էր բնակւում, Դանիէլն այլ, սակայն ո՛րտեղ — այդ չէ յիշւում։

Կորիւն Սքանչելին ասում է. «Յայնժամ պատմէր նոցա արքայ2) Այս ն առն ուրումն ասորոյ Եպիսկոպոսի ազնուա-

---

1) Տես. Մ. Խորենացի, նոյնը գիրք III. գլխ. ծբ. էջ 368։

2) Տես. Խորենացի, նոյնը, էջ 369։

կանի Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս ալփաբետաց հայերէն լեզուին.., Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն հրովարտակօք առ այր մի երէց որոյ անունն Հաբէլ կոչէին, որ էր մերձաւոր Դանիէլի ասորոյ Եպիսկոպոսի։ Իսկ Հաբէլին զայն լուեալ՝ փութանակի հասանէր առ Դանիէլն...» [3]) Նոյնպէս անորոշ է մնում թէ ո՞րտեղ էր Հաբէլը և ո՞րտեղ Դանիէլը։

Ղազար Փարպեցին մի փոքր աւելի պարզ է ասում «...ասացեալ է ուրումն ցարքայ, թէ տեսի նշանագիրս առ ումեմն Եպիսկոպոսի ի գեօղ միում... Վաղվաղակի սախպով առաքեալ դեսպան զՎահրիճ ումն անուն կոչեցեալ ի ծնողաց իւրոց՝ հանդերձ հրովարտակաւ, առ այր մի երեց Հաբէլ անուն, որոյ ասացեալ էր յառաջագոյն ցարքայ, որև մերձաւոր էր առն բարեպաշտի Դանիէլի եպիսկոպոսի, առ որում նշանագիրքն հայերէն կային. և երանելւոյն Հաբէլի ընկալեալ զհրովարտակն ի Վահրիճէ և լուեալ զիրսն, փութանակի հասանէր առ սքանչելի Եպիսկոպոսն դանիէլ...» [4])։

Այս վկայութիւնից այնչափ է միայն պարզւում խնդիրն, որ Դանիէլ Եպիսկոպոսը մի գիւղում է լինում. սակայն թէ ի՞նչպէս էր կոչւում այդ գիւղը դարձեալ մնում է անորոշ։

Այս տեղի անյայտ մնալու պատճառն այն է, որ մեր վերոյիշեալ մատենագիրները «գրի գիւտ» ասելով՝ ոչ թէ հայոց հին այբուբենի գիւտն են ուզում արտայայտել, այլ այդ այբուբենի կատարելագործուիլը Սբ. Մեսրոպի ձեռքով. ահա մեր այբուբենի այդ կատարելագործութեան տեղի մասին են խօսում մեր մատենագիրները՝ սակայն տարբեր կերպիւ։

Մ. Խորենացին սբ. Մեսրոպի Եգեսիայ [5]) գնալը պատ-

---

3) Տես. Կորիւն. Նոյնը, էջ։
4) Տես. Ղ. Փարպեցի Նոյնը, էջ 37—38։
5) Տես. Մ. Խորենացի, Նոյնը, գիրք III. գլ. ծգ. էջ 370։

## Բ.

## ԹԷ Ո՛ՐՏԵՂ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ «ԳՐԻ ԳԻՒՏ»-Ը։



այոց գրի իսկական գիւտի տեղն, այսինքն Հայոց հին այբուբենի երեւան գալու վայրն ոչ ոք մեր պատմաբաններից չէ յիշում. Մ. Խորենացին պատմում է, որ երբ Վռամշապուհը միջագետքումն էր. «...մատուցեալ առ արքայն քահանայի ուրումն Հաբէլ անուն կոչեցեալ, խոստանայր հայկական լեզուաց առնել նշանագիր, յարմարեալ ի Դանիէլէ եպիսկոպոսէ՝ յիւրմէ մերձաւորէ....։ 1) Բայց թէ որտեղացի էին այդ քահանան և Եպիսկոպոսը, չէ ասում Խորենացին. ապա խօսելով Վահրիճի դեսպանութեան մասին ասում է. «...առաքեաց... առ Հաբէլն այն։ Զոր առեալ, և երթեալ Նովաւ հանդերձ քաջ հմտացեալ ի Դանիէլ է.. եկեալ եառուն ցմեծն Սահակ և Մեսրոպ»։ 2) Այս տողերից երևում է, որ Հաբէլն այլ տեղ էր բնակւում, Դանիէլն այլ, սակայն որտեղ — այդ չէ յիշւում։

Կորիւն Սքանչելին ասում է. «Յայնժամ պատմէր նոցա արքայն [illegible] առն ուրումն ասորւոյ Եպիսկոպոսի ազնուա-

1) Տես. Մ. Խորենացի, նոյնը գիրք III. գլխ. ծբ. էջ 368։
2) Տես. Խորենացի, նոյնը, էջ 369։

նի Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ յանկարծ ուրեմն նշա-
ագիրս ալփաբետաց հայերէն լեզուին—, Եւ նա առաջէր զամն
աՀրիճ անուն Հռովմայեցի զոմն Հռովմաստակօք առ այլ մի երէց որոյ ա-
ւնն Հաբէլ կոչէին, որ էր մերձաւոր Դանիէլի ասորոյ Ե-
ակոպոսի։ Իսկ Հաբէլին զայն լուեալ՝ փութանակի հասանէր
ւ Դանիէլն...» [3]) Նոյնպէս անորոշ է մնում թէ ո՞րտեղ էր
աբէլը և ո՞րտեղ Դանիէլը։

*Ղազար Փարպեցին* մի փոքր աւելի պարզ է ասում «...ա-
ոցեալ է ուրումն ցարքայ, թէ տեսի նշանագիրս առ ումեմն
պիսկոպոսի ի *գեօղ միում*... Վաղվաղակի առխպով առաքեալ
եսպան զՎաՀրիճ ոմն անուն կոչեցեալ ի ծնողաց իւրոց՝
ննդեալ Հռովմաստակաւ, առ այլ մի երեց Հաբէլ անուն,
ոյ ասացեալ էր յառաջագոյն ցարքայ, որև մերձաւոր էր
ռն բարեպաշտի Դանիէլի եպիսկոպոսի, առ որում նշանա-
իքն Հայերէն կային. և երանելւոյն Հաբէլի ընկալեալ զՀրո-
վմաստակն ի ՎաՀրիճէ և լուեալ զխօսն, փութանակի Հա-
նէր առ սքանչելի Եպիսկոպոսն դանիէլ...» [4])։

Այս վկայութիւնից այնչափ է միայն պարզւում խնդիրն,
Դանիէլ Եպիսկոպոսը մի գիւղում է լինում. սակայն թէ
նչպէս էր կոչւում այդ գիւղը գարձեալ մնում է անորոշ։

Այս տեղի անյայտ մնալու պատճառն այն է, որ մեր
րոյիշեալ մատենագիրները «գրի գիւտ» ասելով՝ ոչ թէ Հա-
ի հին այբուբենի գիւտն են ուզում արտայայտել, այլ այդ
բուբենի կատարելագործումը Սր. Մեսրոպի ձեռքով. ահա
ր այբուբենի այդ կատարելագործութեան տեղի մասին
խօսում մեր մատենագիրները՝ սակայն տարբեր կեր-
ու։

*Մ. Խորենացին* սբ. Մեսրոպի Եգեսիայ [5]) գնալը պատ-

---

3) Տես. Կորիւն. Նոյնը, էջ։
4) Տես. Ղ. Փարպեցի Նոյնը, էջ 37—38։
5) Տես. *Մ. Խորենացի*, Նոյնը, գիրք III. գլխ. ԾԳ. էջ 37

մելուց յետոյ՝ շարունակում է. «Յայնժամ Մեսրոպայ օգնականութիւն ի Բաբելոսէ եպիսկոպոսէ գտեալ և անցեալ ընդ Փիւնիկէ ի Սամոս դիմէ. քանզի եպիփանու վճարելով զկենցաղս՝ թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռոփանոս... որ ի Սամոս էր միայնացեալ։ Առ սա երթեալ Մեսրոպայ ... Եւ յարուցեալ յաղօթիցն, ստեղծ զնշանագիրս մեր՝ Հանդերձ Հռոփանոսիւ...6)։

Ղ. Փարպեցին ոչինչ չէ յիշում այդ մասին, ի բաց առեալ այն հատուածն, որ բառացի առնուած է Խորենացուց և բովանդակում է վերոյիշեալ տողերը։

Կորիւն Սքանչելին բոլորովին անորոշ է թողնում այդ վայրը. Նորա ասելով՝ սբ. Մեսրոպը «դանիէլեան» այբուբենի անյաջողութիւնից յետոյ՝ իւր աշակերտներով հանդերձ գնում է ասորոց Եդեսիայ և Ամիդ 7) քաղաքներն և պատուով ընդունուելուց յետոյ իւր աշակերտներին բաժանում է երկու մասի, որոնցից մէկը պէտք է զբաղուէր յունարէնի, իսկ միւսն ասորերէնի ուսումնասիրութեամբ՝ իսկ ինքը գնում է Սամոսատայ քաղաքն և իւրեան նուիրում աղօթից։

Եւ այսպէս մինչ նա բազում ջանիւք իւր ժողովրդի համար ճգնում և աղօթում էր, Ամենառողորմած Աստուածը կատարում է նորա ցանկութիւնը և այդպիսով ստեղծւում են Հայոց տառերն. այս պատմելուց յետոյ Կորիւնն անմիջապէս շարունակում է, որ սբ. Մեսրոպը բաժանուեցաւ Եպիսկոպոս-

---

6) Եդեսիան է Հայոց Հին «Ուռհայ»-ն, գտանւում է Միջագետքում և այսօր ունի մօտ 40,000 բնակիչ. «Ուռհայ կամ ժողովրդական բառով Ուրֆայ քաղաքը, որ գտանւում է Աղձնեաց աշխարհում, կառուցել է Աբգար թագաւորը...» տես. Ed. Dulaurier: „Extrait de la chronique de Michel le Syrien“ արպուած է journal Asiatique t. 7 (1848) էջ 317 ծթ.

7) Ամիդ քաղաքն այսօր կոչւում է Դիարբէքիր, գտանւում է 38° ի տակ և 620 մետր բարձրութիւն ունի ծովի մակերևոյթից, շինուած է Տիգրիսի աջ ափին և ունի 10,000 բնակիչ։

ներից և գնաց Սամոսատայ քաղաքն, այնտեղի Եպիսկոպոսից պատուով ընդունուեցաւ և Հռոփանոսի օգնութեամբ ձևակերպեց նոր տառերը [8]։ Այսպիսով Կորիւնը կրկին անգամ ուղարկում է սբ. Մեսրոպին Սամոսատայ, առանց յիշելու նորա այնտեղից դուրս գալն և ուր գնալն, որով և խնդիրն անլուծելի է մնում։

Վարդան պատմագիրը խօսելով «տառերի գիւտ»-ի մասին՝ շարունակում է. աջով իւրով դրոշմեալ առաջի նորա, որպէս մեծին Մովսէսի ի լեառն Սինայ և սմա ի լեառն Բալուայ. որպէս տակաւին ցուցանի դրոշմն աստուածագիծ վիմին և նկարք գրերոյն, և պատուի տեղին խնկօք և ջահիւք միշտ ի (Տաճկաց և Քրիստոնէից) բնակչաց տեղոյն» [9]։ «Ոսկեփորիկ»-ի մէջ—որ նոյն հեղինակի աշխատութիւնն է—գտնում ենք հետևեալ տողերն, «Աթախ և Հենի, Դերջան և Բալու, ուր զգիրն եգիտ Մեսրոպ վարդապետն. այսօրքիկ Արշակունիք կոչին» [10]։

Այսպէս ուրեմն «Սամոս» [11]) կղզին, ասորոց «Սամոսատայ» [12]) քաղաքն և «Բալուայ լեառն» հանդիսանում են մեր

---

8) Տես. Կորիւն, նոյնը, էջ 14—16։

9) Տես. Վարդան պատմագիր, նոյնը, էջ 50։

10) Տես. Վարդանայ վարդապետի աշխարհացոյց ամենայն տիեզերաց. (Ոսկիփորիկ).—Բազմավէպ հանդիսարան հատոր խե. (1887) բ. պրակ. էջ 140։

11) Սամոսը փոքր Ասիայի եզերքը գտանուող նշանաւոր կղզիներից մէկն է. ունի $8^1/_2$ քառակուսի մղոն տարածութիւն և բնակիչների թիւը վերջին տարիներում արագապէս բազմանում է—մինչև 1882 թ. տպուած աշխարհագրական ձեռնարկների մէջ—տես. Guthés Lehrbuch der geographie հատ. I. էջ 574—հաշուած է 38,000 բնակիչ, վերջին ժողովրդագրութիւնից—1885 թ.—երևեցաւ, որ կղզին ունի 41,156 բնակիչ—20,795 արական և 20,361 իգական սեռից։

12) Սամոսատ կամ Սամուսատա գտանւում էր Միջագետ-

պատմագրաց վկայութեամբ այն վայրերն, ուր կատարուեցաւ աստուածային շնորհաց հրաշալիքը։ Սակայն սոցանից որն է ճիշտը. մի գործողութիւն երեք անգամ չէր կարող տեղի ունենալ։

Վարդան պատմագրի և Ոսկիփորիկի աւանդած «Բալուայ լեառն» և այնտեղ գտնուած «աստուածագիծ դրոշմով» վէմն, պարզ երևում է, որ միայն ժողովրդական առասպել է, վասն զի Մեսրոպ. «տեսանէ ոչ ի քուն երազ և ոչ յայտնութեան տեսիլ. այլ ի սրտին գործարանի երևոյթացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ» 13)։

Ուրեմն նոյն իսկ այդ հրաշքը պատմող մատենագիրները մի իսկական քար չեն երևակայում։ Ինչպէս երևում է, այդ լերան վրայ գտնուելիս է եղել մի արձանագրուած վէմ, որև առիթ է տուել այդ առասպելական աւանդութեան։ 14)

Մնում են վիճելի «Սամոս» և «Սամոսատայ», որ գուցէ իւրեանց նմանութեան պատճառաւ շփոթում են մեր հին մատենագիրները միմեանց հետ. Նոր մատենագիրներից ոմանք

---

քում եդեսիայից հիւսիս արևմուտք— Դրա տեղ այժմ Եփրատի աջ ափին, $37^{0}$ ներքոյ գտնւում է Սամսատ. տես. պրօֆ. Կիպերտի Փոքր Ասիայի մեծ քարտէզը։

«Սամոստիա, Սամոսատ, Շամուշատ, et. Շամշատ, capitale de la comagene, auprès de l'Euphrate et non loin de Marasch", տես. Ed. Dulaurier: Extrait de la chronique dc Michel le syrien etc. նոյնը, էջ 352 ծթ։

13) Տես. Մ. Խորենացի, նոյնը, գիրք III. գլխ. ծգ. էջ 370.

14) Վարդան պատմագրի հրատարակիչ Վենետիկցիք ծանօթութեան մէջ գրում են հետևեալը. «Բալուայ գիւղ անձաւ է այլ թերևս ոչ անպատճառ, զի ոչ միայն աղօթարան և մատուռն սբ. Մեսրոպայ պատուի անդ ի գլուխ լերին՝ յորում Բերդն Բալուայ և յիշատակի անդստին ի ժդ (14) դարէ, այլ զի և յանձաւի անդ լերինն՝ ուր հեղինակս ասէ զաստուածագիծ վէմն, գըտաւ ի նորումս Բեւեռաքանդակ արձանագիր հին» տես. նոյնը, էջ 50. ծթ.

ընդունում են Սամոս, ոմանք Սամոսատայ. Չամչեանը[15]) պրօֆ. Էմինը,[16]) Սէն-Մարտէնը[17]), Իուստին[18]) և այլք ընդունում են «Սամ.սատան». Փրդ. Միւլէրը[19]) և մասամբ, Լա Լանգլուան[20]) և այլք ընդունում են Սամոս. Վերոյիշեալ մատենագիրները մէկը կամ միւսը հաւանական համարելով՝ բաւականանում են առանց մի որ և է կարծիք յայտնելու թէ ինչո՞ւ մէկը հաւանական է, իսկ միւսը ոչ։ Մի որ և է հաստատ կարծիք յայտնել հարկաւ կարելի չէ, վասն զի պակասում են դորա համար պատմական փաստեր. երկու ժամանակակից հեղինակներից մէկը «Սամոս» է ասում, միւսը «Սամոսատայ» ո՞րն է ճիշտը. մենք չենք կարծում, որ այդ տարբերութիւնը գոյութիւն ունենայ այդ հեղինակների իսկական ձեռագրների մէջ. տարբերութիւնը պէտք է յառաջացած լինի յետոյ՝ արտագրողների կողմից. սակայն ո՞րն է սկզբնականը, ճիշտը և որը փոփոխուած.

---

15) Տես. Հայր Չամչեան, նոյնը, հատ. I. էջ 761։

16) Տես. Эминъ: Ист. Арм. М. Х. etc. էջ 322. ծթ. 479.

17) Տես. Saint-Martin, Histoire du Ras-Empire etc. հատ. 5 էջ 322 ծթ. 3։

18) Իուստին ընդունելով Սամոսատան, սխալ կերպիւ շարունակում է beide Schriftsteller, Welche von dieser Erfindung (գրի) reden, Mose von Chorene und Koriun, schreiben Samos". տես. Iusti, նոյնը, էջ 196.—ինչպէս արդէն տեսանք Կորիւնն է միայն, որ Սամոսատ է ասում. Իուստին ինչպէս երևում է Փարպեցուն խառնել է Կորիւնի հետ։

19) Փրդ. Միւլլէրն ասելով՝ որ Հռուփանոսը Սամոս է առանձնանում, ծանօթութեան մէջ նկատում է, որ Կորիւնի ասած «քաղաքն Սամոսատացւոյ» „ist offenbar ein alter Fehler" տես. F. Müller. Über den Ursprung der armenischen Schrift նոյնը, էջ 433։

20) Լանգլուան մէկ տեղ Սամոսատ է ասում տես. Langlois: Collection etc. նոյնը, հատ. II. էջ 8 ծթ. 1։ Իսկ դորա հակառակ յառաջաբանի մէջ ասում է. Սամոս տես. նոյնը, discours Préliminaire, էջ XV. ահա այս հակասութեան պատճառաւ ասացինք «մասամբ»։

աչքի առաջ ունենալով, որ արտագրելու ժամանակ աւելի հեշտ է բառերի վանկերը մոռանալ, քան թէ մի նոր վանկ աւելացնել—թէ և վերջինն ևս անկարելի չէ—հաւանական է, որ սկզբնական բառը լինի «Սամոսատայ», որի վերջին երկու վանկերը բաց թողնելով մնացել է՝ «Սամոս»։ Աչքի առաջ ունենալով նոյնպէս Սամոս կղզու հեռաւորութիւնը Հայաստանից և Սամոսատի մօտաւորութիւնը, և այս այն հանգամանքը, որ Խորենացին կղզի բառը չէ յիշում, այլ ասում է «ի Սամոս դիմէ»,—աւելի հաւանական է ընդունել Սամոսատայ։ Այս հաւանականութիւնը մի փոքր ճշտութեան կը մօտենայ, եթէ ընդունենք Հայր Չամչեանի հետևեալ վկայութիւնը. «... Նա և զի և այն Հռուփանոս, որ եղև գործակից Մեսրոպայ ի Սամոսատիա, բնակեալ էր ի նմին քաղաքի, և եղև յետոյ եպիսկոպոս Սամոսատացւոց. որպէս է տեսանել ի գիրս արտաքին մատենագրաց»։ 21)

Սբ. Մեսրոպն իւր կատարելագործած այբուբենին վերջնական ձև տուեց այդ Հռուփանոսի օգնութեամբ. Նոր աւելացած հնչիւնները հարկաւ միանգամից չէին ստեղծուի, այլ երկար ժամանակի մտածմանց և խորհրդածութեանց արդիւնք պէտք է լինէին իսկ տառերի ձևերը մի հմուտ գրագրի ձեռ-

---

21) Տես. Հայր Չամչեան, նոյնը, հատ. I. էջ 761։

22) Էնայի համալսարանի գրադարանում եղած Խորենացու ձեռագրի մէջ մի տեղ ասուած է. «աշակերտ մի անուանեալ Հռուփոնոս տես. թերթ 164. էջ երկրորդ. բ. սիւնեակ տող 5. մի այլ տեղ «..։ հանդերձ Ռուփանոսիւ»—տես. նոյնը. թերթ 165. էջ առաջին. ա. սիւնեակ 2 տող—սակայն աչքի առաջ ունենալ, վերոյիշեալ ձեռագրի մէջ անթիւ տառասխալներն, այդ անուան ճիշտ ձևը համարում ենք «Հռուփանոս» կամ «Հռոփանոս»։

Կիրակոս Գանձակեցին Հռոփանոսին կոչում է Հրհօմանոս Սամոսացի և սբ. Մահակ Մեսրոպի աշակերտ համարում. այս սխալ տեղեկութիւնը նեղութիւն է տալիս Ակադեմիկոս Բրօսէին իզուր տեղն այդ անունն որոնել Հայր Չամչեանի յիշած սբ. Մես-

քով—ինչպէս որ էր Հռուփանոսը պատմագիրների վկայութեամբ—կարող էին շուտով ձևակերպուել. ուստի և մեր այբուբենի վերջնական կազմակերպութիւն ասելով մենք հասկանում ենք տառերի ձևերի վերջնական ձևակերպութիւնն, որ տեղի ունեցաւ Սամոսատայ կամ Սամոսատ քաղաքում Հռուփանոս 22) հմուտ գրագրի օժանդակութեամբ։



---

բացի 27 աշակերտների թուի մէջ։ Տես. Brosset: Deux Historiens Arméniens etc. նոյնը, էջ 14 ծ/թ. 3։

## Գ.

## ՀԱՅՈՑ ԳԻՐԸ ԵՒ ՊՐՈՖ. ՖՐԻԴ. ՄԻԽԼԵՐ

Յայտնի արևելագէտ և հայագէտ *Ֆրիդրիխ Միլլէրը* (պրօֆ. Վիէննայի համալսարանի) մի փոքրիկ յօդուած է նուիրել հայոց նշանագրերի կնճռոտ խնդրի պարզուելուն, որ տպուած է «Zeitschrift für die kunde des Morgenlandes» Վիէննայում հրատարակուողների ամսեայ թերթի մէջ (տես. 1888 թ. տետր 3, էջ 245—248)։

Այս յօդուածն ամբողջովին թարգմանուած գտնելով Վիէննայի «Հանդէս ամսօրեայ» թերթում (տես. 1889 թ. թիւ 5 էջ 86—87), առանց մի որ և է քննադատական ծանօթութեան, հարկ ենք համարում հետևեալ քանի մի դիտողութիւններն անել։

Յարգելի գիտնականն այս առաջին անգամը չէ, որ զբաղւում է *հայոց գրի* խնդրով. Նա արդէն 1864 թուին մի ընդարձակ յօդուած է ներկայացրել Վիէննայի կայսերական գիտութեանց ճեմարանին «Հայոց գրի ծագման մասին» — Über den Ursprung der armênischen schrift (տես. Sitzungsberichte der kaiserlichen Akademie der Wissenschaften, Wien հատոր 48)։

Այժմ համեմատելով այս երկու յօդուածները, կարծիքի փոփոխութիւն ենք գտնում. յարգելի ուսուցչապետը 64-ին գրած յօդուածում հայոց այբուբենի գիւտը վերագրում է ամբողջովին սուրբ Մեսրոպին՝ հիմնուելով Մ. Խորենացու, Ղ. Փարպեցու և Կորիւն Սքանչելու վկայութեանց վրայ և հետևեալ եզրակացութիւնն է անում. «Մեսրոպի աշխատութիւնը կայանում է նորանում, որ նա կարողացաւ *արամա-*

ական բաղաձայն գրերից մի այբուբեն կազմակերպել, որի
ջ թէ բաղաձայն եւ թէ ձայնաւոր համապատասխան նշա-
ագրութեան յունաց տառերի օրինակին հետեւելով»։

Քսան ու չորս տարի անցնելուց յետոյ միայն յարգելի
ունականը համոզուել է, որ սուրբ Մեսրոպն ոչ թէ մի բո-
ովին նոր այբուբեն կազմակերպեց, այլ արդէն գոյութիւն
նեցող հայոց այբուբենը կատարելագործեց, թէեւ նա այդ
բուբենի գիւտը վերագրում է ասորի Դանիէլին։

Վերջին յօդուածից երեւում է, որ կարծիքի այս փոփո-
ւթեան առիթն եղել է Ստեփաննոս Ասողիկ պատմագրի
ռւեալ վկայութիւնը. «...Ի սորա աւուրս էր սուրբ հայ-
պետն Հայոց Սահակ, յորոյ աւուրս դպրութիւն Հայոց լե-
ւի ԻԹ (29) գիր ի Դանիէլէ փիլիսոփայէ Ասորւոյ կարգե-
ւ, իսկ զեօթն գրոցն պակասութիւն Մեսրոպ երանելի
րօնեցի խնդրուածովք յԱստուծոյ առնու»։ (Տես. Ստե-
ննոսի Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն տիեզերական
Պետերբուրգ. 1885 թ. էջ 139—140)։

Այս վկայութիւնը, պրոֆ. Միւլլէրի ասելով, «անակնկալ
ս է ձգում հայոց գրի ծագման խնդրի վրայ», ուստի և
գունելով 29 տառի գոյութիւնը, նա այս յօդուածի մէջ
մենում է ցոյց տալ, թէ սուրբ Մեսրոպի աւելացրած եօթը
առերը որո՞նք են։ Եւ յառաջ քան իւր կարծիքը յայտնելու,
ոֆ. Միւլլէրը յառաջ է բերում պրօֆ. դը-Լագարդի յայտ-
ած միտքը (տես. Göttinger gelehrte Anzeigen, 1883 էջ
1)․ դը Լագարդն ենթադրում է, որ հայոց հին այբուբենի
մէջը կազմում են յունաց այբուբենի 23 ձեւերը, որոնց
այ աւելացել են չորս տառ խալդէրէնից (հ, ձ, ճ, վ,) և
կու տառ ասորի այբուբենից (յ և ծ), իսկ ը, ժ, խ, ղ,
ր, ց, եօթը տառերի ծագումը տարակուսական է հա-
րում։

Այս ենթադրութիւնն անհաւանական համարելով. պրօֆ.
իւլլէրն այն կարծիքն է յայտնում, որ սուրբ Մեսրոպի գտած

եօթը տառերը մեր այբուբենի եօթը ձայնաւորներն են (այս կարծիքը վաղուց արդէն ընդունուած է շատերից և նոր բան չէ), հիմնուելով Մ. Խորենացու այն հատուածի վրայ, որ յառաջ է բերած եօթը ձայնաւոր տառերը ա, ե, է, ը, ի, ո, ւ։

Վերոյիշեալից տեսնում ենք, որ պրօֆ. Միւլլերը կամենում է որոշել երկու բան. ա. որ սուրբ Մեսրոպը միայն եօթը տառ աւելացրեց և բ. որ այդ եօթը տառերը մեր ձայնաւորներն են։

Արդեօք համոզեցուցի՞չ են յարգելի գիտնականի յառաջ բերած ապացոյցները։

Ո՛չ։

Ա. Ի՞նչ հիման վրայ պէտք է ընդունենք Ասողիկ պատմագրի վկայութիւնն իբրև ճշտագոյն. քանի որ նա սուրբ Մեսրոպի ժամանակակից չէ, այլ տասներորդ դարու պատմագիր, քանի որ այլ վկայութիւններ տարբեր կերպիւ են որոշում հին այբուբենի տառերի քանակութիւնը, օրինակի համար.

1) *Դաւիթ անյաղթին* վերագրուած մի գեղեցիկ այլաբանական հատուածի մէջ ասւում է, որ հին այբուբենը բաղկացած էր 24 տառից. «Ձեռք ամենակալին ստեղծին զիս և բարձրեալն ի բարձանց ի Բարձունս ընծայեաց զիս»։

Զափ հասակի իմոյ *երկիցս երկոտասան* (24) այժմ եմ երիցս երկոտասան» (36) [1]։

2) *Վարդան պատմիչը* վկայում է, որ հայոց հին այբուբենը բաղկացած էր 22 տառից։

3) «*Ոսկեփորիկ*» կոչուած ձեռագրների մէջ նոյնպէս 22 է համարում ՛հին տառերի թիւը։

4) «*Այսերաց*» կոչուած յունարէնից թարգմանած մի հին ձեռագրի մէջ ասուած է. «ի սոցա (Արկադիոսի և Ոնո-

---

1) Այս հատուածն յառաջ է բերում պրօֆ. Էմինը Մ. Խորենացու ռուսերէն թարգմանութեան յաւելուածի մէջ՝ մի ձեռագրից. (տես. էջ 359)։

րխօսի) տասներորդ ամի եղև սկիզբն Հայերէն *քսան եւ հինգ գրոց»*... և այլն։

Բ. Պրօֆ. Միւլլէրի գլխաւոր ապացոյցն այն է, որ Մովսէս Խորենացու Հայոց պատմութեան մի կամ երկու ձեռագրների մէջ յառաջ են բերուած մեր այբուբենի եօթը ձայնաւորները։

Արդեօք այդ եօթը տառերի շարայարութիւնը Մ. Խորենացու գրչի՞ն է պատկանում։

Կասկածում ենք.

Որովհետև. ա. եթէ այդպէս լինի, այն ժամանակ մեծ պատմաբանը պէտք է ամբողջովին ոչնչացնէ այն ամենն, ինչ որ ինքը պատմում է Հայոց գրի գիւտի մասին. բ. այդ հատուածը պէտք է գտանուէր Խորենացու պատմութեան բոլոր ձեռագրների մէջ 2). գ. նոյնը պէտք է յիշէին և նորա ժամանակակից պատմագիրները, Ղ. Փարպեցին և Կորիւն Սքանչելին, որոնք շատ տեղ բառացի նմանութեամբ կրկնում են Խորենացու մէջ գտանուած խօսքերը։

Ուրեմն որտե՞ղից են ներմուծուել Խորենացու մի երկու ձեռագրների մէջ այդ տառերը։

Մեր համոզմամբ այդ պէտք է տեղի ունեցած լինի յետագայ ժամանակներում արտագրողների կողմից, և հաւանական է, որ Ասողիկ պատմագրի վկայութիւնն ազդեցութիւն է ունեցել այդ արարմունքի վրայ. արտագրողը տեղեակ է եղել Ասողիկի վկայութեանը և այդ հիման վրայ Խորենացու պատմութեան մէջ անկապ կերպիւ մտցրել եօթը ձայնաւոր տառերն, որ ամենևին չեն համապատասխանում գրի գիւտի մասին նորա պատմութեան ընթացքին։

---

2) Խորենացու պատմութեան ո՛չ Լատիներէն թարգմանութիւնը (Վիստոնեանց եղբարց ձեռքով) և ոչ էլ Ֆրանսերէն թարգ. չեն պարունակում եօթը ձայնաւոր տառերը։ Լայպցիգի քաղաքային գրադարանում և Ենայի համալսարանի գրադարանում եղած և մեր տեսած ձեռագրների մէջ ևս չկան այդ տառերը։

Գ. Արդեօք մեր հին այբուբենի վրայ սուրբ Մեսրոպը միմիայն ձայնաւոր տառեր աւելացրեց։

Ոչ մի փաստ չունինք այդ բանը հաստատ ու դրական կերպիւ ընդունելու, որովհետև մեր պատմաբանները պարզ կերպիւ ակնարկում են, որ հին այբուբենի մէջ, բացի ձայնաւոր տառերից, պակասում էին նաև *բաղաձայն* տառեր. օրինակի համար.

1) *Մ. Խորենացին* ասում է. «... տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք սողոփել *զհեգենայ* բառից հայկականաց հագներգաբար...»։

2) Նոյնը բառացի կերպիւ գտնում ենք Ղ. *Փարպեցու* պատմութեան մէջ։

3) *Կորիւն Սքանչելին* ասում է. «...իսկ իբրև ի վերայ հասեալ թէ չեն բաւական նշանագիրքն ողջ ածել *զսիւղոբայս* և *զկապս* հայերէն լեզուոյն...»։

4) *Կիրակոս Գանձակեցին* ասում է նոյնպէս. «... բայց հայեցեալ տեսին, զի ոչ էր բաւական (Դանիէլեան այբուբենը) զամենայն *սիղոբայս* ողջ ածել և *զշաղկապս* և զբառս...։

5) «*Ցայսմաւուրքի*» մէջ ասած է. «...վարժեալ նախամանկունս տեսանէին զի ոչ բերեն ուղղակի *զհեգս* Հայոց բարբառոյն...»։

Այս վկայութիւններն ի նկատի ունենալով, չի կարելի ասել. 1) որ մեր հին այբուբենի մէջ *միմիայն* ձայնաւորներն էին պակասում և նոյնպէս անկարելի է պնդել, որ 2) հին այբուբենի մէջ *ոչ մի* ձայնաւոր չկար։

Հայոց հին այբուբենը *թերակատար* էր թէ ձայնաւորների և թէ բաղաձայնների կողմից—այսչափն որոշ ու հաստատ է։



Գիտութեան անխոնջ մշակ և քաջ հայերէնագէտ ուսուցչապետ *Փրիդ. Միւլլերը* դարձեալ մի յօդուած է նուիրել Հայոց այբուբենի ծագման խնդրին „Zur Geschichte der armenischen Schrift“ վերտառութեամբ։ Այս յօդուածը տպուած

է, ,,Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes‘‘ Հրատարակութեան մէջ—տես. Հատ. IV. փետր—4. էջ 284—288 ու արդէն Հայերէն թարգմանութեամբ լոյս տեսած Վէննայի Մխիթարեանց «Հանդէս Ամսօրեայի» մէջ—տես. 1891 թ. № 3, էջ 68—70։

Յարգելի գիտնականն այս ահա երրորդ անգամն է Հրապարակ Հանում իր ուսումնասիրութիւնը Հայոց գրի առթիւ և ամեն անգամ տարբեր եզրակացութեանց գալիս. Հաւանականօրէն պատճառն այն է, որ բազմաթիւ արևելեան լեզուների ուսումնասիրութեամբ զբաղուելով միջոց չունի Հայոց գրին վերաբերեալ բոլոր աղբիւրներն ուսումնասիրելու միանգամից և մի ամփոփ տեսութիւն կազմելու. Նա ուսումնասիրում է մէկ-մէկ աղբիւր և այդպիսով ուրոյն Հետևանքի Հասնում։

Մենք ընդդիմախօսեցինք յարգելի պրօֆ. պաշտպանած տեսութեան դէմ և այս ամառ ես Վեննայում անձամբ Նրա Հետ երկար խօսեցինք նոյն նիւթի վերաբերութեամբ։ Մեր կարծիքն այն էր, որ Մ. Խորենացու մի, կամ մի քանի ձեռագրների մէջ եղած եօթը ձայնաւոր տառերը ներմուծուած էինք Համարում յետագայ ժամանակներում և ոչ իսկապէս Մ. Խորենացու գրչի ծնունդ. իսկ Ստեփաննոս Ասողիկի վկայութիւնն ես Հիմնուած այդ օտար գրչի արդիւնքի վրայ և սխալ։

Ֆրիդ. Միւլլերի այժմ Հրատարակած յօդուածը Հիմնուած է Վարդան Բարձրբերդցի պատմագրի վկայութեան ուսումնասիրութեան վրայ և այն եզրակացութեան է գալիս, որ սուրբ Մեսրոպը Դանիէլեան կոչուած այբուբենի վրայ աւելացրեց բացի եօթը ձայնաւորներից նաև եօթը բաղաձայն տառ. սակայն Խորենացու մի քանի օրինակների մէջ եղած և Ասողիկի սխալ վկայած եօթը ձայնաւոր տառերը դարձեալ շփոթում են յարգելի գիտնականին, ուստի նա ենթադրում է, որ սուրբ Մեսրոպն առաջին անգամ միայն եօթը

քաղաճային տառերն աւելացրեց Դանիէլեան այբուբենի վրայ և տալա թէ եօթը ճայնաւորները։

Այդ Հիման վրայ նա ենթադրում է նոյնպէս, որ Ասողիկ պատմագիրը Մեսրոպի առաջին կատարելագործած այբուբենը վերագրում է Դանիէլին, ասելով որ նրա մօտ գտնուած այբուբենը քսան եւ ինը տառից էր բաղկացած։ Այժմ Միւլլերն այլ եւս չէ պնդում որ նախամեսրոպեան այբուբենը Դանիէլի գրերն է, այլ ենթադրում է, որ այդ այբուբենը առաջուց գոյութիւն ունէր և Համարում է այդ «Քրիստոնէական առաջին դարերի պալմիրական գիրը, կամ գուցէ աւելի հին այբուբեն»։

Մենք Համոզուած ենք, որ եթէ մեր յարգելի Հայերէնագէտը ժամանակ գտնէ աւելի խորը թափանցելու Հայոց այբուբենի ծագման մասին՝ մեր պատմագիրների տուած տեղեկութիւնները, այն եզրակացութեան կըգայ, որ Հայոց Հին այբուբենը ծնունդ է նախաքրիստոնէական և կռապաշտական դարերի։ Ֆրիդ. Միւլլերը սկզբից մինչև այժմ Հաւատարիմ է մնացել այն սկզբունքին, որ Հայոց գիրը ծագում է սեմական այբուբենից և ոչ թէ յունարէնից, ինչպէս որ սխալմամբ կարծում են եւրոպացի Հայագէտ գիտնականներից շատերը։



## Գ.

## ՀԱՅՐ Բ. ՍԱՐԳՍԵԱՆԸ ԵՒ ՀԱՅՈՑ ԳԻՐԸ.

Վենետիկի Մխիթարեանց հրատարակած «Բազմավէպ» նդիսի այս տարուայ առաջին համարը պարունակում է, միջի այլոց, նաև յայտնի գիտնական հայր Բարսեղ Սարսեանի երկու գիտնական նշանակութիւն ունեցող հետաուութիւնները, որոնցից մէկն է «Ազաթանգեղոս եւ իւր զմաղարեան զաղտնիքն» վերնագիրը կրող աշխատութեան երածութիւնը», իսկ երկրորդը «Տեսութիւն տառադարձուան խնդրոյն եւ հայերէն նշանագրոց վրայ»։ Երկրորդւածով գիտնական հայրը կամենում է յայտնել իւր տեւթիւնը հայերէն տառադարձութեան խնդրի վերաբերուեամբ, որ արծարծուեցաւ «Արձագանք»-ի մէջ 85 թուին և նչև այժմ զբաղեցնում է արևելեան և արևմտեան հայոց նասէրների միջը։ Հայր Սարգսեանը ճշտիւ ըմբռնելով նդրի էութիւնը,ասում է՝ «...հայերէն տառերու ներքին րութիւնն կամ հնչումն ուղղապէս ճանաչելու համար՝ էտք է գիտնալ նոցա ծագումն և գիւտի գաղտնիքը»...— ւաջ քան տառադարձութեան մասին խօսելը, համառօտ սութիւն է անում հայոց այբուբենի մասին՝ պալէօգրաւական հայեցակէտից։ Ահա սոյն տեսութեան վերաբերուամբ կամենում ենք մի քանի խօսք ասել, առ այժմ ընրձակ քննադատութիւնը թողնելով մօտիկ ապագային։

Գիտնական հայրը հայոց այբուբենի հրաշքով ստեղւելը «թէպէտև կարելի, բայց ոչ յանկաւոր և պատմական» նելով, ուսումնասիրութեան խնդիր է դարձնում այն, որ ռեալ (սուրբ Մեսրոպ) ի միասին զպարսկերէն, զյունարէն

և զասորերէն այբուբենս, նորակերտել է մի այլ այբուբեն։ Մի քանի խօսքով ընդդիմախօսելով դը-Լագարդ ու Միւլլէր հայագէտ պրօֆ. յայտնած կարծիքների դէմ, գիտնական Հայրն ասում է՝ «Ես գտած եմ մի այլ յիշատակարան, որ գլխովին տարբեր իրողութիւններ կը յայտնէ, որ մինչև ցայսօր ծանօթ չէր ամենեցուն հրատարակութեամբ»... և ի զարմանս իմ, յառաջ է բերում այն արդէն վաղուց յայտնի հատուածը, որ գտանւում է «Վարդանագիրք» կամ «Ոսկեփորիկ» ձեռագիր հաւաքածուի մէջ։ Այս հատուածն արդէն 1867 թ. տպուած է Պարիզում հրատարակուող «Nouveau journal Asiatique»-ի (տես. tome IX. էջ 199—200) մէջ հայերէն. իսկ դորա ֆրանսերէն թարգմանութիւնը տուել է Լանգլուան իւր աշխատութեան մէջ. (տես. L a n g l o i s Collection des Historiens Anciens et Modernes de L'Armenié (հատոր II. էջ 7—8)։ Թուցէ Վենետիկում նոր ձեռք բերուած ձեռագիրը մի նորութիւն է, սակայն, ինչպէս ասացինք, այդ հատուածի բովանդակութիւնը մի նոր գիւտ չէ։

Հայերէն և յունարէն տառերի համեմատութիւնից առաջ գիտնական Հայրն ասում է. «...բաղդատութենէն առաջ հարկ կը համարեմ ծանուցանել, թէ յունարէն այբուբենից, բայց ի ծածուկ (arcana)կոչուած գրութենէն, 19 տեսակ գրութիւններ ևս կան, զորս Մոնֆոկոն մէջ կը բերէ իւր հռչակաւոր երկասիրութեան մէջ...»։ Այս տողերով յարգելի գիտնականն ապացուցանում է, որ պալէօգրաֆիան խոկապէս չէ ուսումնասիրել, եթէ ոչ հարկ չէր համարի դիմել մի գիտնական աշխատութեան, որ գրուել է 18-րդ դարում, (Paleographia graeca. Parisüs M. DCC. VIII) քանի որ բացի այլ նոր գրուածքներից գոյութիւն ունի Կ ի ր խ օ ֆ ի նման մի յայտնի գիտնականի աշխատութիւնն այդ նիւթի մասին (A Kirchoff: „Studien zur Geschichte des griechischen Alphabets“ Berlin 1877 թ)։ Եթէ Հայր Սարգսեանը ծանօթ լինէր այս վերջին աշխատութեան հետ, նա կ'տեսնէր որ գ-

յութիւն ունին ոչ թէ 19 տեսակ գրութիւններ յունաց այբուբենի, այլ *մօտ վաթսուն*, որ գործ են դրուել զանազան ժամանակներում և տարբեր տեղերում։ Այնուհետև, համեմատելով հայոց և յունաց այբուբենի տառերն առանձին առանձին (որ վաղուց արդէն արել է Գարդթհաուզէնը), հայր Սարգսեանն այն եզրակացութեան է գալիս, որ մեր այբուբենի 21 տառը վերցրած է յունաց այբուբենից, իսկ մնացած տառերը ասորոց ու պարսից գրերից, սակայն ինքն ևս նկատելով այս եզրակացութեան ոչ հիմնաւոր կերպիւ ապացուցուած լինելն, աւելացնում է... «Սուրբ Մեսրովբ ոչ միայն արիականէն փոխ առած տառերն, այլ նոյն իսկ յունարէն այբուբենէն առնուածները ձևաւորած ժամանակ *փիւնիկեցւոց* և մանաւանդ զանդկերէն այբուբենն ևս ունեցած է իւր դիմաց, իբրև նախատիպ օրինակ...» (էջ 35)։ Արդ, եթէ սուրբ Մեսրոպն իւր ձեռքն ունէր փիւնիկեցւոց այբուբենն, այլ ևս ինչ հարկ կար յունարէն այբուբենի տառերը վերցնելու, քանի որ յայտնի է, թէ յունաց այբուբենը անմիջապէս առնուած է փիւնիկեան այբուբենից։ Մի անճշտութիւն ևս գտնում ենք հայր Սարգսեանի գիտնական մեթոդի մէջ, որ հետևեալն է. հայոց և յունաց այբուբենի տառերը համեմատելիս նա վերցնում է յունաց այբուբենի *զանազան տեսակները*, իսկ այդ տարբեր տեսակները գործ էին դրւում զանազան ժամանակներում և զանազան տեղեր։ Եթէ սուրբ Մեսրոպը հայոց տառերը վերցնէր յունաց այբուբենից, նա անպատճառ կ'օգտուէր իւր ժամանակ գործ դրւող յունաց այբուբենից, այսինքն այդ այբուբենի *մի* տեսակից, ուստի, թէև դիւրին, սակայն սխալ ճանապարհ է համեմատութեան համար յառաջ բերել այդ այբուբենի այն տեսակները, որոնք գուցէ յառաջացել են սուրբ Մեսրոպից շատ յետոյ։

Համեմատութեան ժամանակ պէտք է վերցնել հայոց մեծ *երկաթագիր* այբուբենը, որ համարւում է ամենահին

տեսակը և կոչւում է Մեսրոպեան, և ոչ թէ բոլորագիրը։ Իբր ապացոյց, որ Հայր Սարգսեանի համեմատական եղանակը ճիշտ չէ, յառաջ բերենք այդտեղից միայն «այբի» համեմատութիւնը։ «Այդ յունարէն՝ տպագրական ալփան երեք ուղղահայեաց գծերէ կազմուած է՝ մէկ հորիզոնական խարախի վրայ և բերանը դէպի վեր. նոյնպէս և հայերէն այբը...»։ Միթէ յունարէն տպագրական ալփան, համեմատելով հայերէն բոլորագիր այբի հետ, կարելի է եզրակացնել, որ սուրբ Մեսրոպն այբի ձևը վերցրել է յունարէն ալփայի ձևից։ Չէ՞ որ երկաթագիր (ուրեմն և ամենահին) այբն երեք ուղղահայեաց գիծ չունի, այլ երկու....։

Ե.

## ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ ՎՐԱՑ ԵՒ ԱՂՈՒԱՆԻՑ ԱՅԲՈՒԲԵՆԻ ՄԱՍԻՆ

Մ. Խորենացին և Կորիւն Սքանչելին—սոցա հետևելով նաև մեր յետագայ պատմիչները—միաձայն հաղորդում են, որ սուրբ Մեսրոպը Հայոց այբուբենը կազմակերպելուց յետոյ ստեղծեց նոյնպէս Վրաց և Աղուանից տառերը։

Մ. Խորենացին պատմում է այդ հետևեալ կերպիւ. «Իսկ Մեսրոպ երթեալ յաշխարհն Վրաց, առնէ եւ նոցա նշանագիրս տուեցելովն ի վերուստ շնորհաւն, հանդերձ Ջաղայիւ ումամբ թարգմանաւ Յեղյէն եւ հայ լեզուի. ձեռնտու լինելոյ արքայի նոցա Բակրոյ [1]), և եպիսկոպոսին Մովսիսի։ Եւ ընտ-

[1]) Վրաց պատմութիւնն այդ ժամանակամիջոցում մի Բակուր անունով արքայ չէ յիշում։ Բակուր անունը կրում է Վաչէ արքայի յաջորդ և որդի թագաւորն 213 թ. որ Արշակունեաց ցեղից էր։—Տես. Վախտանգ V. թագաւորի «Վրաց պատմութիւն»ը, որ կիսով չափ թարգմանել է Iulius Klaproth իւր „Reise in den Kaukasus und Georgien“ (Halle und Berlin 1814) գրքի geschichte von Georgien մասի մէջ, հատ. II. գլխ. 37. էջ 131.

եալ մանկունս, և յերկուս բաժանեալ դասս, և վարդա-
պետս Թողու նոցա յաշակերտաց իւրոց զՏէր Խորենացի, և
զՄուշէ տարօնեցի։

Եւ ինքն յԱղուանս իջեալ առ Արսվաղէն Թագաւոր
նոցա և առ եպիսկոպոսապետն Երեմիայ. որոց կամաւ յանձն
առեալ զվարդապետութիւն նորա, ետուն մանկունս ընտիրս։
Եւ կոչեալ զԲենիամին ոմն շնորհաւոր Թարգման, զոր ան-
անդատ արձակեաց մանուկն Վասակ Սիւնեաց տէր՝ ի ձեռն
Անանիայի եպիսկոպոսի իւրոյ. զորովք ստեղծ նշանագիրս կո-
կորդախօս աղխազուր խժական խեցբեկագունին այնորիկ գար-
գարացւոց լեզուին։ Եւ վերակացու Թողեալ զաշակերտս իւր
Յովնաթան, միանգամայն և քահանայս կացուցեալ դրանն
արքունի, ինքն դառնայ ի Հայս...»։ — տես. Մ. Խորենացի,
այն, գիրք III. գլխ. ծգ. էջ 372 – 373։

Կարիւնն ասում է «...Մի փոքր ժամանակ անցնելուց
ետոյ Քրիստոսի սիրելին — սուրբ Մեսրոպը — սկսեց դարձեալ

---

Կլապրոտը յիշում է մի երկրորդ նման անուն՝ Բաքար — (այլ
ես ոչ Վախտանգից, այլ ուրիշ աղբիւրներից առած), որ Թագա-
ւորեց 342 Թ. Սա Խոսրովեանց ցեղից և Միրիան արքայի — որի
ժամանակ Վրացիները Քրիստոնէութիւն ընդունեցին — որդին էր։
Տես. Klaproth, նոյնը, էջ 161. II.

Բաքարին յաջորդում է նորա որդի Բարզաբաքար 379 Թ.
այս յաջորդում են կարգաւ Տիրդատ 395 Թ., Փարսման 405
Թ., Միրդատ II. որ պարսից Ուքարաքի արքայից յաղթուելով
երի է տարւում։ Տես. Klaproth, նոյնը, էջ 162—163։

Պարսից պատմութեան մէջ չենք ճանաչում մի արքայ, որ
էր այդ անունը. իսկ այդ ժամանակամիջոցում պարսկաստանում
թագաւորում էր Յազկերտ I. արքան։ Դորնը հաստատում է
ասածն, մինչդեռ նա ասելով՝ որ Միրդատի ժամանակ պար-
կներն աւերում են Վրաստանն և Մցխեթայում մի Ատրուշան
ուցանում, փակագծի մէջ դնում է „Wohl unter Jesdegherd
տես. „Versuch einer Erklärung von drei Münzen mit sa-
niden-Gepräge," von B. Dorn. տպուած է Bulletin de
cad. etc. հատ. I. №. (1844) էջ 36։

հոգալ բարբարոսական երկրների համար։ Նա կարգի բերեց վրաց լեզուի համար տառեր աստուածային շնորհիւ՝ յարմարեցնելով նոցա լեզուին և կանոնների ենթարկելով. ապա վերցնելով իւր յառաջադէմ աշակերտներից մի քանիսին, գնաց վրաց երկիրը նորա թագաւոր Բակուրի և եպիսկոպոս Մովսէսի մօտ և սկսեց ուսուցանել։ Նա գտաւ Ջաղայ անունով մէկին, որ հասկանում էր վրաց լեզուն և տեղեակ էր գրելու արուեստին.—տես. Կորիւն, նոյնը, էջ 15.—ապա պատմելով սուրբ Մեսրոպի Բիւզանդիոն գնալն և դառնալը շարունակում է. այս ժամանակ եկաւ նորա մօտ մի ազգանից քահանայ, Բենիամին անունով. Մեսրոպը գորանից տեղեկու-

Դարձեալ Բակուր անունով մի արքայ թագաւորում է ըստ Dorn-ի վեցերորդ դարում (557—570 կամ 542—555)։

Սէն-Մարտէնն եւ Մ. Խորենացու վկայութիւնը չ'կարողանալով համաձայնեցնել վրաց պատմութեան հետ՝ այն կարծիքն է յայտնում, որ Բակուրը կարող էր փոքր իշխաններից մէկը լինել Տես. Saint-Martin: Histoire du Bas-Empire etc: հատ. V. էջ 324. ծթ. 1։

Այսպիսով թէ և Մ. Խորենացու «Բակուր»-ը չէ համապատասխանում վրաց պատմութեան աւանդութեան, սակայն դորա յաջորդ «Արձիլ»-ն է վրաց պատմութեան մէջ յայտնի «Արչիլ» արքան. Խորենացին խօսելով սբ. Մեսրոպի կրկին քարոզութեան մասին՝ ասում է. «առ որով ժամանակաւ Արճիլ ոմն էր կացեալ թագաւոր վրաց»։ Տես. Խորենացի, նոյնը, գիրք III. գլխ. Կ. էջ 388։

Կորիւնը նոյնպէս ասում է. «սբ. Մեսրոպն եկաւ այն կողմերն, երբ Արձիւղ=Արձիլ վրաց թագաւոր էր.» —տես. Կորիւն, նոյնը, էջ 31։

Վրաց Արչիլ արքան ըստ կլապրոթի թագաւորում է 413 թ.—տես. Klaproth նոյնը, հատ. II. էջ 163.—ըստ Սէն-Մարտէնի նոյնպէս 413 թ.—տես. Histoire du Bas-Empire etc հատ. V. էջ 324—ըստ Դօրնի 410—474 կամ 397—421. տես. B. Dorn: Versuch einer Erklärung etc. նոյնը, էջ 36։—Ըստ Բրօսէի 410—434—տես. Brosset. Deux Historiens Arméniens etc. նոյնը, էջ 15. ծթ. 3։

իւն հարցրեց հայոց լեզուից չեղուող Աղուանից բառերի
ասին, յետոյ վերցրեց այբուբենն եւ յորմարեցրեց աղուանից
հզուին... Ապա գնալով Աղուանից երկիրն՝ ուղղակի գնաց
րքայ Արսվաղէնի և եպիսկոպոս Երեմիայի մօտ և բացատ-
եց նոցա թէ ինչու համար է եկել։ Թագաւորն և եպիս-
ոպոսն իւրեանք ուսան գրել-կարդալու արուեստն և հրա-
ան տուին ամենայն տեղ դպրոցներ բանալ և երիտասար-
աց ուսուցանել գրել-կարդալ... և այլն —տես Կորիւն. նոյնը,
ջ 18—19։

Ղ. Փարպեցին ոչինչ չի յիշում Վրաց և Աղուանից տա-
-երի գիւտի մասին։

Վերոյիշեալ երկու պատմագիրներն, ինչպէս որ տարբեր
տեղեկութիւններ են տալիս հայոց այբուբենի կազմակերպու-
թեան տեղի մասին, միևնոյն տարբերութիւնը տեղի ունի
աև վրաց և աղուանից տառերի կամ աւելի լաւ է ասել՝
յբուբենի կազմակերպութեան վայրի վերաբերութեամբ։
Մէկ կողմից պատմում են, որ սուրբ Մեսրոպը Հայաստանում
արգի բերեց երկու այբուբեններն ևս և ապա նոցա աշխարհը
նալով՝ ուղղակի գործադրեց, իսկ միւս կողմից վկայում են
ր սուրբ Մեսրոպը գնալով Վրաց և Աղուանից աշխարհներն,
յնտեղ է կազմակերպում այբուբենն և գործադրում։ Սա-
այն այս տարբեր վկայութիւններն այնչափ նշանակութիւն
ունին, որչափ նոյն պատմագիրների այն ընդհանուր հա-
մաձայնութիւնը, որ սբ. Մեսրոպը Վրաց և Աղուանից այբու-
բենը կարգի բերելու համար կարօտ էր թարգմանների միջ-
նորդութեան։ Այս վկայութիւնը նշանակութիւն ունի նորա
համար, որ ուղղակի ապացուցանում է՝ թէ սբ. Մեսրոպը տե-
ղեակ չէր վրաց և Աղուանից լեզուներին, թէև միւս կողմից
րևում է, որ այդ լեզուները—նա մանաւանդ Աղուանից լե-
ուն—նմանութիւն պէտք է ունենային հայերէնի հետ, եթէ
Կորիւնը չէր ասի թէ սբ. Մեսրոպը տեղեկութիւններ հարց-
եց—Աղուանից Բենիամին քահանայից—հայերէնից չեղուող

*բառերի մասին. այս խօսքերից պարզ երևում է, որ տարբերութիւնը մեծ չպէտք է լինէր* [2]), *թէ և Խորենացին այդ լեզուին շատ փաղաքշական ածականներ չէ տալիս, կոչելով նորան «կոկորդախօս, աղխազուր=կոշտ, խժական=բարբարոսական և խեցբեկագոյն=կոտրտուած»։ Կորիւնը նոյնպէս ասում է. «Սրով և անդէն յական թօթափել վայրենամիտ և դատարկասուն և անասնաբարոյ աշխարհն աղուանից մարգարէագէտք և առաքելածանօթք և աւետարանաժառանգք լինէին, և ամենայն աւանդելոյն Աստուծոյ ոչ իւիք անտեղեակք»* [3])։

*Մեր պատմագիրների այդ հաստատ վկայութիւնը, որ սբ. Մեսրոպը կազմակերպեց Վրաց և Աղուանից այբուբենն, ընդունուած է—շատ սակաւ բացառութեամբ—այն բոլոր Եւրոպական գիտնականներից, որոնք զբաղուել են այդ խնդրով. նոյն իսկ հանդուցեալ պրօֆ. Գաթշմիդի նման խիստ քննադատը ճիշտ է համարում այդ վկայութիւնը*։ [4]) *Նոյն իսկ այն հանգամանքն, որ մինչև այժմ գտնուած չէ Աղուանից գիրն, առիթ չէ տուել այդ հաստատ վկայութեան մերժման*։

*Այժմեան Վրացիքն ունին երկու միմեանցից տարբեր այբուբեններ*. 1 *«խուցուրի» կոչուածն, որ գործ է դրւում եկեղե-*

---

2) *«Եւ թէպէտ լեզու աղուանից ոչ էր ի բնէ այլ ի Հայոց, բայց ամենևին փոփոխեալ էր և օտարացեալ, որպէս և ազգն գլխովին՝ խառնեալ ընդ ալանս լեկզոց. վասն որոյ պիտոյ էր զայլ գիր և յաղագս նոցա կարգել, և զայլ թարգմանութիւնս առնել»*։ Տես. *Չամչեան*, նոյնը, հատ. I. էջ 495։

3) Տես. *Չամչեան*, նոյնը, հատ. I. էջ 495։

4) *Գութշմիդը համեմատելով Կորիւնի վարքագրութիւնն Ագաթանգեղոսի հետ, իմիջի այլոց ասում է և հետևեալն.* „Hier—*Կորիւնի մօտ*—Werden ausser Armenien nurnoch Jberien und Albanien genannt, v o n d e n e n e s s i c h e r s t e h e t, d a s s Mesrob sie mit eigenen schriftarten bedachte“. *տես.* Alf. V. G u t s c h m i d: Agathangelos. Zeitschrift d. d. morgl. Gesellschaft“ 31 *հատորի մէջ, տես.* էջ 25։

ցական գրուածքների համար և 2 «մխեգրուլի», որ գործածական է հասարակ տպագրութեան մէջ. առաջինն, որ բաւականաչափ նմանութիւն ունի հայոց այբուբենի հետ՝ համարւում է սբ. Մեսրոպի գտածը։

Պրօֆ. Ֆրդ. Միւլլէրն ասում է. «...Վրաց և հայոց այբուբենի սանդղակը միևնոյն անձն է, ուստի և հետևապէս երկուսի ծագումն եւ միևնոյն աղբիւրից է։ Վրաց այբուբենը, թէ տառերի շարայարութեամբ և թէ ձևերով նման է հայոց այբուբենին. երկու այբուբենների մէջ էլ հին տառերը կատարելապէս համապատասխանում են միմեանց՝ ա—ք և օ—ֆ։ Այդտեղից սկսած յերևան եկող տարբերութիւնը կայանում է նորանում, որ հայոց լեզուին յատուկ տառերն, այսինքն նոր կազմակերպուածները, դասաւորուել են եղած տառերի միջավայրերում, այն ինչ վրաց լեզուին յատուկ տառերը կարգով շարուել են ֆ-ից յետոյ...»[5]) Ապա պրօֆ. Միւլլէրը համեմատելով այդ երկու այբուբենների առանձին առանձին տառերը՝ հաստատում է իւր յայտնած կարծիքն, որ երկուսի ծագումն եւ միևնոյն աղբիւրից է։

Բոլորովին հակառակ կարծիքի է Ֆառլմանը։ Սա պատմելով հայոց և վրաց տառերի գիւտն ըստ մեր մատենագրութեան՝ շարունակում է. «պէտք է նկատել, որ չարաչար կ՚սխալուէինք, եթէ այս պատմութեան հիման վերայ ընդունէինք հայոց և վրաց այբուբենների նմանութիւնը. թէև այդ երկու այբուբենի մէջ էլ գտանւում են նման տառեր, սակայն դոքա՝ բոլորովին տարբեր նշանակութիւն ունին... Հայոց և վրաց տառերի դասաւորութիւնն այնպէս է կարգուած, յոր առաւել հասկանալի կ՚լինէր, եթէ մեզ ասէին, որ սբ. Մեսրոպն առաջ դասաւորեց վրաց այբուբենը՝ համեմատ արամայական այբուբենի և ապա կազմակերպեց հայոց այբուբենը։

[5]) Տես. Frd. Müller: Über den Ursprung der armenischen Schrift. Նոյնը, էջ 434—435։

